# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1417 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ՅՈՒՆՈՒԱՐ 2000

ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ.

عدد رقم ١٤١٧ — الخميس ٦ يناير ٢٠٠٠


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## 2000 ՏԱՐՒՈՅ ՍԵՄԻՆ ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆԸ ՓՆՏՌԵՆՔ ՆԱԽ ՄԵՐ ԱՆՁԻՆ ՄԷՋ

*Օրերը, շաբաթները, ամիսները իրարու յաջորդեցին և այսպէս, վերջը եկաւ ոչ միայն 1999 տարւոյ, այլ 2000 տարին մտնելով, վերջը բերած եղանք 20-րդ դարու: Հետեւաբար 2001 Յունուար 1-ին պիտի սկսի 21-րդ դար՝ երրորդ հազարամեակ: Ուրեմն 2000 տարին մտնելով նոր հազարամեակ չի սկսիր, ինչպէս որ ոմանք կը պնդեն:*

*Սակայն ի՜նչ փոյթ. էականը տարի մը եւս ձգեցինք մեր ետին և նորանոր յոյսերով, բեռնաւոր տարւոյ մը սեմին կը գտնուինք: Արդարեւ անցնող շրջանը կրնայ միշտ նոր լոյս սփռել ապագայի վրայ և կատարել փարոսի դեր, երբ մութ անկիւններ գոյութիւն ունին:*

*Նոր տարուան այս օրերուն, կրկին մեր մաղթանքն ու ցանկութիւնը կ'ըլլայ ապրիլ երջանիկ, սիրով ու յաջողութիւններով: Սակայն երջանիկ ապրիլ և զգալ, առաւելաբար մարդ էակին ձեռքն է: Եթէ կ'ուզենք երջանիկ ըլլալ, ամէն բանէ առաջ պէտք է սանձել գիտնանք մեր ցանկութիւնները: Քաղաքակրթութեան ձգտող այս աշխարհին մէջ, պէտք է գիտնանք որ մարդկութիւնը անձնասիրութեան և անձնական շահերու վրայ չէ հիմնուած: Երջանկութիւնը պէտք է նախ փնտռենք մեր անձին մէջ, կեանքի ընկալման ու կիրարկումին մէջ:*

*Բոլորս ալ պէտք է լաւ գիտնանք, թէ երկիր կոչուած այս փոքր մոլորակը, մեր բոլորին հասարակաց հայրենիքն է, որմէ կ'օգտուինք և պարտաւորութիւն ունինք պաշտպանելու զայն դժբախտութիւններէ և կործանումներէ: Այս բոլորը ջանքի կը կարօտի: Թէեւ հսկաքական ջանքերով կը փորձենք արդիականացնել աշխարհը, մանաւանդ ճարտարապետական և հաղորդակցական միջոցներով, սակայն չենք մոռնար նաեւ արդիականացնել պատերազմի զէնքերն ու հիւլէական կործանումի աւերիչ փորձերը:*

*Ի՜նչ արժէք կրնան ունենալ կաղանդուան պատգամները երկրիս հզօրներուն, երբ անոնք պարզ մարդը անօթութենէ, անվստահութենէ և նման այլ վտանգներէ ձերբազատելու համար ոչինչ կ'ընեն: Վերջապէս ի՜նչ արժէք կը ներկայացնէ երջանկութեան ձեւական մաղթանքները, երբ բովանդակ մարդկութեան միջեւ սիրոյ, իրար-հասկացողութեան և օգնութեան բարի տրամադրութեան ոգին մշակելու համար ոչ մէկ ջանք կը տարուի:*

*Յատկապէս համայն քրիստոնեայ աշխարհը մեծ շուքով ու պերճանքով տօնեց 2000 ամեակը այս տարի: Սակայն ի՞նչ արժէք ունի, եթէ Յիսուս Քրիստոսի յեղաշրջած գաղափարները պիտի չգործադրուին: Այդ սուրբ գաղափարները առաւելաբար կը կեդրոնանան, որ Աստուած սէր է, բարի է և ոչ վրէժխնդիր, նաեւ հոն՝ կը գտնուի երկնքի արքայութիւնը:*

*Այսօր, այս նոր տարուան սեմին, համայն մարդկութենէն կը պահանջուի սերմանել եղբայրութիւն և միասնականութեան ոգի, վասն արդարութեան և վասն խաղաղութեան: Նոյնը նաեւ կը պահանջուի հայ ազգէն, որ ամենէն աւելի պէտք ունի անոնց: Մարդկութիւնը, ուշ կամ կանուխ, պիտի անդրադառնայ, որ աշխարհի փրկութեան միակ և ապահով ճամբան մարդոց և ժողովուրդներու միջեւ խաղաղութեան հաստատումն է, արդարութեան և յարգանքի ընդհանուր մթնոլորտի մը մէջ:*

*Ինչպէս գիտենք, հայու ճակատագիրը 20-րդ դարուն սկսաւ ողբերգութեամբ՝ ջարդով ու պանդուխտով և կ'աւարտի ողբերգութեամբ: Իրօք, համայն մարդկութեան նման, հայուն համար 20-րդ դարը սկսա՛ւ վառ յոյսերով ու երազներով. բայց 1915-ին, Համաշխարհային պատերազմի օրերուն՝ քսաներորդ դարու առաջին ցեղասպանութիւնը գործած էր իր աւերը, 1.5 միլիոն զոհերով, և ցաւալիօրէն անպատիժ մնացած ըլլալու իրողութեամբ, առաւել եւս կը ճնշէ մեր հոգիին վրայ: Այս օրերուն, արտասահմանի պարագային՝ ձուլման, ապազգայնացման վտանգները միշտ ներկայ են, որոնց դէմ անհրաժեշտ է լարուած և ծրագրուած աշխատանք տարուի: Իսկ հայրենիքի պարագային՝ ընկերային անարդարութիւնը վերացնելու, կաշառակերութիւնը չքացնելու, իրաւական պետութիւն հաստատելու և Արցախեան տագնապի հայանպաստ լուծում գտնելու աշխատանքները յառաջ տարուին համբերութեամբ և վճռականութեամբ: Ահաւասիկ հայ անհատին և ժողովուրդին առջեւ դրուած հրամայական պահանջները:*

*20-րդ դարու յատկանշական երեւոյթներէն մէկն ալ, նախկին Խորհրդային Միութեան փլուզումն էր, որուն արդիւնքը եղաւ ամերիկեան գերակշիռ ուժին տիրացումը: Թէեւ միաժամանակ՝*

2



## ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴ

Խորհուրդ մեծ եւ սքանչելի
Որ յայսմ աւուր յայտնեցաւ,
Հովիւք երգեն ընդ հրեշտակս,
Տան աւետիս աշխարհի:

Ծնաւ նոր արքայ ի
Բեթղեհեմ քաղաքի,
Որդիք մարդկան օրհնեցէք
Զի վասն մեր մարմնացաւ:

Անբաւելին երկնի եւ երկրի
Ի խանձարուրս պատեցաւ,
Ոչ մեկնելով ի Հօրէ
Ի սուրբ այրին բազմեցաւ:

Այսօր ցնծան երկինք ի վերուստ
Մեծապայծառ աւետեաւք,
Եւ արարածք ամենայն
Զգեցան հանդերձ փրկութեան:

Այսօր այրին ընծայեցաւ
Քրիստոս Որդին Աստուծոյ,
Եւ հրեղինաց բազմութիւնք
Յերկնից յերկիր վայր իջեալ:

Այսօր հովուացըն տեսեալ
Զարդարութեան արեգակն
Եւ ընդ հրեշտակըս երգէին
Փա՜ռք ի բարձունս Աստուծոյ:

ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՑ ԶԻՆՈՒՈՐՆԵՐԻ ԱՄԱՆՈՐՆ ՈՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ Ամենայն Հայոց կաթողիկոսը՝ հաւատարիմ երջանկայիշատակ Գարեգին Ա. Հայրապետի կողմից հաստատուած աւանդոյթին, Դեկտեմբերի 30-ին այցելեց հայկական բանակ՝ ամանօրեայ եւ Սուրբ Ծննդեան Հայրապետական օրհնութիւնն ու մաղթանքը յայտնելու հայրենիքի պաշտպաններին:

Ինչպէս յայտնեցին Մայր Աթոռի մամլոյ դիւանից, Վեհափառ Հայրապետը ՀՀ պաշտպանութեան նախարար Վաղարշակ Յարութիւնեանի ուղեկցութեամբ նախ եղել է բանակի զօրամասերից մէկում, ապա այցելել հանրապետական հիւանդանոց:

Ողջունելով զօրամասի ծառայողներին, Նորին Սրբութիւնը նշել է, որ Հայ եկեղեցին մշտապէս եղել է իր ժողովրդի հետ, օրհասական պահերին իր օրհնութիւնն է տուել հայ մարտիկին, իսկ անհրաժեշտ

2

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՌՈԲԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆԻ ԱՄԱՆՈՐԻ ՇՆՈՐՀԱՒՈՐԱԿԱՆ ՈՒՂԵՐՁԸ

*Սիրելի հայրենակիցներ,*

*Պատմութիւն է դառնում 1999 թուականը: Անցնող տարում մենք արձանագրում էինք զգալի յառաջընթացներ: Եթէ չլինէին Հոկտեմբերի 27-ի՝ երկիրը ցնցող իրադարձութիւնները, մենք կը կարողանայինք վստահօրէն ասել, որ տարւայ հիմնական առաջադրանքները կատարուել են: Ժողովրդավարութեան խորացման, քաղաքական մթնոլորտի առողջացման համար էական նշանակութիւն ունեցան խորհրդարանական եւ տեղական մարմինների ընտրութիւնները: Մենք փաստօրէն կանգնած ենք Եւրոպայի Խորհրդին անդամակցելու շեմին, ինչը կ'ամփոփի երկարատեւ աշխատանքի արդիւնքները: Կառավարութիւնը լծուեց երկրի տնտեսական զարգացման եւ ժողովրդի սոցիալական խնդիրների լուծման աշխատանքներին: Աշխատանքի տեմպը եւ եռանդը վստահութիւն էին ներշնչում, որ կարճ ժամանակում ժողովուրդը կը զգայ տնտեսական վիճակի էական բարելաւում:*

*Ակտիւացաւ Հայաստանի արտաքին քաղաքականութիւնը՝ արձանագրելով նախորդ շրջանի որոշ կնճիռներ: Ղարաբաղեան հակամարտութեան խաղաղ կարգաւորման գործընթացում եւս նկատելի է առաջընթաց:*

*Տարին նշանակալից էր Հայրենիք-Սփիւռք փոխյարաբերութիւնների աշխուժացման եւ արդիւնաւէտութեան առումով: Յաջողութեամբ անցկացուեցին Առաջին համահայկական խաղերը, որ դարձան սփիւռքահայ նոր սերնդին հայրենիքի հետ կապելու գեղեցիկ առիթ:*

*Առաջին անգամ Երեւանում տեղի ունեցաւ Հայաստան-Սփիւռք խորհրդաժողովը, որ սկիզբ դրեց թէեւ դժուարին, բայց խիստ անհրաժեշտ ու անյետաձգելի գործընթացի:*

*Այն է. մէկտեղել հայ ժողովրդի բոլոր հատուածների կազմակերպական, մտաւոր եւ նիւթական հսկայական ներուժը յանուն մեր համազգային խնդիրների լուծման:*

*Ցաւօք, վտանգուած են դրական տենդենցները, եւ այս տօնական գիշերը մենք չենք կարողանում լիասիրտ ուրախանալ: Թարմ են վէրքերը, եւ մեր հոգիներում դեռ արձագանքում են Հոկտեմբերի 27-ի ողբերգական դէպքերը: Ծանր փորձութիւն էր մեր երիտասարդ պետականութեան համար: Արուել է հնարաւոր առաւելագոյնը անաչառ հետաքննութիւն ապահովելու համար, որովհետեւ տեսանելի ապագայում մեր երկրի ներքին զարգացումները մեծապէս կախուած են լինելու դրա արդիւնքներից:*

*Սիրելի հայրենակիցներ,*

*Մենք մեծ կորուստներ ունեցանք, բայց երկիրը շարունակում է ապրել, եւ մեր ազգային նպատակները նոյնն են մնում: Մենք ուղղակի պարտաւոր ենք եռապատկել այդ նպատակներն իրականացնելու մեր ջանքերը յանուն մեր ժողովրդի ապագայի, յանուն Վազգէն Սարգսեանի, Կարէն Դեմիրճեանի, մեր միւս զոհուած զինակիցների յիշատակի:*

*Ես հաւատում եմ մեր ժողովրդի դարաւոր փորձին եւ իմաստնութեանը, որ միշտ իր մէջ ուժ է գտել նայելու առաջ: Դրա համար է, որ իշխանութեան բոլոր թեւերը եւ պետական օղակները այսօր աւելի մեծ պատասխանատուութեամբ պէտք է լծուեն աշխատանքի եւ վճռականութիւն դրսեւորեն առկայ խնդիրների լուծման գործում:*

*Միայն այդպէս եւ ժողովրդի համակողմանի աջակցութեամբ ու վստահութեամբ մենք կը կարողանանք յաղթահարել դժուարութիւնները:*

*Թանկագին հայրենակիցներ,*

*Այս տօնական գիշերը առանձնակի ջերմութեամբ եմ յիշում մեր հայրենիքի պաշտպաններին, նրանց, ովքեր այս պահին իրենց պարտքն են կատարում Հայրենիքի հանդէպ՝ ապահովելով մեր երկրի ու ժողովրդի անդորրը եւ խաղաղ կեանքը:*

*Նոր Տարին այն տօնն է, որ իւրաքանչիւր ընտանիք դիմաւորում է նոր յոյսերով:*

*Հաւատանք մեր ուժերին ու ապագային: Մենք ի վիճակի ենք սերունդներին ժառանգել արժանապատիւ հայրենիք:*

*Լաւատեսութեան այս զգացումով շնորհաւորում եմ ողջ հայ ժողովրդի Նոր Տարին՝ մաղթելով երջանկութիւն, առողջութիւն եւ ամենայն բարիք:*

*Շնորհաւոր Նոր Տարի:*

## ՈՉ ԵՒՍ Է ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՏԻ ՈՒ ՄՇԱԿՈՅԹԻ ԱՆՎԵՀԵՐ ՋԱՀԱԿԻՐԸ՝ ԴՈԿՏ. ԳԷՈՐԳ ՊԱՂՃԵԱՆ (ՎԱԶԳԷՆ ԱՅԳՈՒՆԻ)

Շաբաթ, Հոկտեմբեր 23ին, Մոնրէալի մէջ մահացած է սփիւռքահայ ծանօթ մտաւորական, հասարակական գործիչ, հրապարակախօս, վաստակաշատ դաստիարակ, խմբագիր, պատմաբան Դոկտ. Գէորգ Պաղճեան, որ ծանօթ է մանաւանդ Վազգէն Այգունի գրչանունով: Իբրեւ պատմաբան, Դոկտ. Պաղճեան որքան սփիւռքահայ մտաւորական շրջանակներուն, նոյնքան եւ աւելի ծանօթ է օտար շրջանակներուն, Հայ Դատին ու Հայոց Իրաւունքներու պաշտպանութեան նուիրուած իր ուսումնասիրութիւններով որոնք հրատարակուած են ֆրանսերէն չորս հատորներու մէջ:

*(Յապաղումով)*

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## Ս.Դ.Հ.Կ.-ի ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԸ ՈՒԱՇԻՆԿԹԸՆԻ ՄՕՏ Հ.Հ. ԴԵՍՊԱՆ ՊՐՆ. ԱՐՄԱՆ ԿԻՐԱԿՈՍԵԱՆԻ ՀԵՏ

*Երկուշաբթի, 27 Դեկտեմբեր 1999, Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմնի ղեկավար ընկերներ պաշտօնական հանդիպում մը ունեցան Հայաստանի Հանրապետութեան Ուաշինկթընի մօտ նոր նշանակուած դեսպան Պրն. Արման Կիրակոսեանի հետ, որ Լոս Անճելըս կը գտնուէր յատուկ այցելութեամբ մը: Հանդիպումին ներկայ էր նաեւ Հայաստանի Հանրապետութեան Լոս Անճելըսի մօտ աւագ հիւպատոս Պրն. Արմէն Մելքոնեան:*

*Աւելի քան ժամ մը տեւող հանդիպումի ընթացքին, Պրն. Արման Կիրակոսեան խօսեցաւ իր պաշտօնին մասին, վեր առնելով անոր բարդ եւ նուրբ հանգամանքը, յատկապէս Ամերիկայի Միացեալ Նահանգներու նման երկրէ մը ներս Հայաստանի ներկայացուցիչ ըլլալու պարագան, ուր հարկ է թէ դիւանագիտութիւն ընել եւ թէ պաշտպանը հանդիսանալ սեփական հայրենիքի:*

*Դեսպանը չեշտ դրաւ յատկապէս Հայաստանի ներքին կացութեան մասին, որ Հոկտեմբեր 27-ի դէպքերէն ասդին կ'ընթանար դէպի աստիճանական բարելաւում եւ յոյս յայտնեց որ շնորհիւ երկրի իշխանութեանց առած քայլերուն, երկրի տնտեսութիւնն ու ժողովուրդի կեանքի պայմանները յարաբերական վերելք կ'արձանագրեն մօտիկ ապագային: Անդրադարձաւ նաեւ Հայաստանի ընդհանուր վիճակին կովկասեան տարածքաշրջանէն ներս, ինչպէս նաեւ ղարաբաղեան հարցի լուծման որոշ կարելիութեանց եւ դժուարութեանց մասին:*

*Արծարծուած հարցերու շուրջ, Ս.Դ.Հ.Կ.ի պատուիրակութեան անդամները յայտնեցին իրենց տեսակէտները, մաղթելով որ դեսպանը կը յաջողի իր առաքելութեան մէջ տրուած ըլլալով որ Ուաշինկթըն այն կարեւոր մայրաքաղաքներէն մէկն է ուր հայութեան եւ Հայաստանի շահերը հետապնդելու շուրջ եւ դժուարին աշխատանք պէտք է տարուի:*

*Սիրալիր եւ անկեղծ հանդիպումի աւարտին, երկուստեք փափաք յայտնուեցաւ պարբերական հանդիպումները շարունակել, միշտ ի մտի ունենալով գերագոյն շահերը հայ ժողովուրդին:*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԳՐԻԳՈՐ ԹԱԹՈՒԼԵԱՆ՝ ՀԱՅ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՖՈՆՏԻ (ՀՕՖ) ՏՆՕՐԷՆ

*Վերջերս, Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ ԱՄՆի Արեւելեան թեմի հովանաւորութեամբ գործող Հայ Օգնութեան Ֆոնտի (ՀՕՖ) տնօրէն նշանակուեցաւ Գրիգոր Թաթուլեան: Հայաստանի տարածքին բարեսիրական լայն գործունէութիւն ծաւալող ՀՕՖը կը նկատուի աչխոյժ այն կազմակերպութիւններէն մէկը, որ գոյութեան կոչուեցաւ Հայաստանի երկրաշարժէն ետք եւ որուն նպատակն է աջակցութիւն ցուցաբերել Հայաստանի ժողովուրդին կենցաղային կեանքին բարելաւման, կրթաթոշակներով նպաստել հայ ուսանողներու, ԱՄՆէն ուղարկուած նպաստներով սատարել մեծահասակներու եւ զանազան կառոյցներ հաստատելով՝ մասնակցիլ Հայաստանի շինարարութիւն:*

*Նախկին լիբանանահայ եւ ապա Գանատա տեղափոխուած Ընկ. Գ. Թաթուլեան վերջին տարիներուն նշեալ կազմակերպութենէն ներս կը գործէր որպէս սնունդի բաժնի պատասխանատու տնօրէն, իսկ վերջերս շահելով կազմակերպութեան վերին մարմնին վստահութիւնն ու զօրակցութիւնը, արդար գնահատանքով մը նշանակուեցաւ ընդհանուր տնօրէն, ինչ որ կ'ենթադրէ շուրջ պատասխանատուութիւն եւ ծանրակշիռ աշխատանք, որուն համար ալ կը փոխանցենք մեր շնորհաւորութիւնները՝ իրեն մաղթելով բեղուն եւ օգտաշատ գործունէութիւն:*

## 2000 ՏԱՐՈՒՈՅ ՍԵՄԻՆ ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆԸ ՓՆՏՐԵՆՔ ՆԱԽ ՄԵՐ ԱՆՁԻՆ ՄԷՋ

*1 ➩ կիսանկախ ազգեր մէկ օրէն միւսը անկախացան կամ վերագտան իրենց անկախութիւնը, մաս կազմելով ազատ ազգերու ընտանիքին, որոնցմէ մէկն ալ եղաւ ներկայ Հայաստանի Հանրապետութիւնը: Այո՛, թէպէտեւ գոյութիւն ունի անկախ Հայաստան, սակայն դժբախտաբար ան կ'ապրի տագնապալի վիճակ և ներքաղաքական պայքարի անախորժ կացութիւն...:*

*Իրաւամբ, տարին՝ իր օրերու համագումարով, կ'ըլլայ նոր, երբ մեր սիրտը կենսունակ ու նորոգուած կը պահենք իր տրոփումներով: Նոր տարի կը նշանակէ նոր հոգի, նոր գաղափարներ, նոր սգացումներ և նոր կեանք:*

*Հետեւաբար Նոր Տարուան և նոր հազարամեակի մօտաւոր սեմին, մեր հայ ժողովուրդին կը մաղթենք աւելի խաղաղ և աւելի ստեղծագործ պայմաններ, կարենալ տոկալու ներքին և արտաքին վտանգներու, իսկ Աստուծմէ կը հայցենք որ սիրոյ ու եղբայրութեան շնորհքը աւելցնէ ամէն հայու սրտին մէջ:*

*Նոյնպէս մարդկութեան կը մաղթենք ամենայն բարիք, երջանիկ և լաւատես կեանք մը ապրելու համար, իրաւ սիրոյ բարի տրամադրութիւններով:*

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Տեղեկացանք որ մեր բարեկամներէն եւ համայնքիս սիրուած ազգայիններէն՝ Պր. Էտուար Քիւփէլեան, վերջերս սրտի փոքր տագնապի պատճառաւ փոխադրուած է «Էլ Հայա» հիւանդանոցը: Բարեբախտաբար ան քանի մը օր մնալէ ետք վերադարձած է իր բնակարանը եւ այժմ արդէն սկսած է ոսկերչական իր գործին լծուիլ:

Կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:

**ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ**

## «ՀՈԳԱՏԱՐՈՒԹԻՒՆ» ՍՓԻՒՌՔԻ ԴՊՐՈՑՆԵՐՈՒՆ

Հայաստանի Կրթութեան ու Գիտութեան Նախարարութիւնը, ըստ Սփիւռքի բաժնի պետ Ե. Նաւոյեանի, հետամուտ է Սփիւռքի միօրեայ դպրոցներուն համար դասագիրք պատրաստելու ծրագրին: Ըսուածը այն է, որ Եւրոպայի երկիրներուն մէջ կան հայկական դպրոցներ, ուր արեւմտահայերէն ու արեւելահայերէն կը գործածուին, դժուարացնելով ուսուցիչներու գործը: Պատրաստուած է փրոֆ. Պետրոս Պետիրեանի հայերէնի դասագիրքը, ուր նոյն նիւթերը տրուած են թէ՝ դասական եւ թէ՛ նոր ուղղագրութեամբ: Ներկայիս ան փորձի շրջան մը կ'ապրի Վիեննայի մէջ ու եթէ դրական արդիւնք առնուի, դասագիրքին գործածութեան շրջանակը աւելի կ'ընդլայնուի: Համալսարանի ընդունելութեան ընթացքին ալ Սփիւռքէն դիմողներու 60 տեղ յատկացուած է, որպէսզի Սփիւռքի դպրոցներուն համար ուսուցիչ պատրաստուի, քանի որ այդ պատրաստութիւնը ներկայիս տարբեր կեդրոններու մէջ կ'ըլլայ «տարում եւ հոգեբանական անջրպետ» մատնելով: Ուստի նախարարութիւնը կը ձգտի փորձել որ Սփիւռքի դպրոցները իրենց կատարելագործումի ճամբուն վրայ, որպէս առանցք դիտեն Հայաստանի կրթական համակարգը:

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՑ ԶԻՆՈՒՈՐՆԵՐԻ ԱՄԱՆՈՐՆ ՈՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

1 ➩ ժամին՝ նաեւ մարտնչել նրա կողքին: Նորին Սրբութիւնը զինուորներին մաղթել է խաղաղութիւն, յաղթական ոգի եւ փառքը Աւարայրի, Սարդարապատի եւ Արցախի մարտիկների: Ապա զինուորները հանդիսաւոր երթով պատուի են առել Վեհափառ Հայրապետին ու նախարարին, ցուցադրել իրենց զինուորական հմտութիւնները:

Այցելելով հիւանդանոց, Վեհափառ Հայրապետը շրջել է տարբեր բաժանմունքներում, զրուցել հիւանդների հետ՝ օրհնելով եւ առողջութիւն մաղթելով նրանց:

Նորին Սրբութեան կողմից զօրամասին եւ հիւանդանոցին յանձնուել է նուէրներ:

**ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ**

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք ղրկել « M. BALAYAN »ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

## Գալուստեան Ազգային Վարժարանի Շրջանաւարտներու Փայլուն Հանդէսը

*Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս Գալուստեան Ազգ. վարժարանի շրջանաւարտներու հանդէսը պսակուեցաւ յաջողութեամբ, որ տեղի ունեցաւ Ուրբաթ 3 Դեկտ.ի երեկոյեան:*

*Հանդիսութեան հովանաւորութիւնը սիրով ստանձնած էր Եգիպտոսի թեմի առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան եւ նախագահութիւնը՝ յարգելի ազգայիններ Տէր եւ Տիկին Անդրանիկ Մեսրոպեաններ: Ներկայ էին Քաղաքական Ժողովի ատենապետ Պր. Նուպար Սիմոնեան, վարժարանի Հոգաբարձութեան ատենապետ Պր. Պետրոս Մխտիկեան, Նուպարեան Ազգ. վարժարանի տնօրէնուհի Տք.հի Հերմինէ Վարժապետեան, ներկայացուցչական դէմքեր, ուսուցիչներ, ծնողներ եւ հանդիսականներ:*

*Այս տարի հանդէսը կը կրէր Ս. Կապուտիկեանի «Խօսք իմ որդուն» քերթուածի տողերէն՝ «ՔՈ ՄԱՅՐ ԼԵԶՈՒՆ ՉՄՈՌԱՆԱՍ», որ զետեղուած էր բեմի խորքին: Եգիպտոսի, Հայաստանի եւ Գալուստեան վրժ.ի քայլերգներով բացումը կատարուեցաւ հանդիսութեան, որուն պատշաճ աշակերտական խօսքով հանդէս եկաւ վարժարանի ուշիմ աշակերտուհիներէն՝ Անժելինա Գազանճեան:*

*Ապա սկսաւ աշակերտական կոկիկ յայտագիրը, որ ընդհանրապէս կը բովանդակէր ամեակներու արժանացած անուանի բանաստեղծներու քերթուածներէն՝ ինչպէս Յ. Թումանեան, Ս. Կապուտիկեան կամ Պ. Սեւակ, տարբեր կարգերու աշակերտ-աշակերտուհիներու կողմէ: Անոնց ելոյթները ջերմապէս գնահատուեցան ներկաներէն, քանի որ անոնք կ'արտասանէին ապրումով եւ հասկացողութեամբ: Անգլերէն արտասանութեանց կողքին հաճելի էր ունկնդրել էյամ Յարութիւնեանի ջութակի կատարողութիւնը:*

*Վարժարանի կորովի տնօրէն Պր. Սիմոն Զամքէրթճեան բեմ բարձրանալով, ներկայացուց 1998-99 կրթաշրջանի տեղեկագիրը: Ան իր խօսքին մէջ չեշտեց, թէ շնորհիւ լուսամիտ բարերար Աղա Կարապետ Գալուստի դպրոցը իր արմատները դրած է անցեալ դարուն (1854-ին) եւ կը շարունակէ իր առաքելութիւնը առ այսօր, մտնելով 21-րդ դար: Դրուատելով բոլոր անոնց որոնք անվերապահ իրենց աջակցութիւնը կը բերեն դպրոցին, տուաւ «Հուսկ բանք»ը ամփոփ գիծերու մէջ, որուն վերջաւորութեան դիտել տուաւ, որ տնօրէնութիւնը իր առաւելագոյն ջանքերը ի գործ կը դնէ դպրոցին մակարդակը ժամանակակից պահանջքներու մակարդակին հասցնելու, ուրեմն ինչո՞ւ կարգ մը ծնողներ իրենց զաւակները օտար վարժարան կը ղրկեն:*

*Խօսքը ուղղելով շրջանաւարտներուն, յարգելի տնօրէնը խրախուսիչ արտայայտութիւններով վեր առաւ անոնց ջանասիրութիւնը, մաղթելով բարի երթ:*

*Տնօրէնի խօսքի աւարտին, խմբերգներու գնահատելի ելոյթով հանդէս եկաւ աշակերտական երգչախումբը՝ Դոց. Դաւիթ Զալեանի խմբավարութեամբ եւ Հայրենի դաշնակահարուհի Իրինա Զալեանի նուագակցութեամբ:*

*Շրջանաւարտներու մրցանակաբաշխութենէն ետք, աշակերտական զգայուն ուղերձ կարդաց շրջանաւարտ Քրիստին Սոլոմոն:*

*Չմոռնանք նշելու որ վարժարանի թուաբանութեան կարող ուսուցիչ Պր. Ռուպէր Արթինեան եւ անգլերէն լեզուի ջանասէր ուսուցչուհի Տիկ. Նահէտ Սեռքի, տրուած ըլլալով որ Գահիրէի Արեւմտեան կրթաշրջանի ուսուցչական արհիմիութենէն ստացած էին գնահատանքի գիրեր, որպէս տիպար ուսուցիչ, Տնօրէն Պր. Ս. Զամքէրթճեան եւս իր կարգին անոնց տուաւ յիշատակի նուէրներ, առ ի երախտագիտութիւն:*

*Հուսկ ուրեմն, հանդիսականներուն հայրական պատգամ փոխանցեց Առաջնորդ Սրբազան Հայրը, որ չեշտեց հայեցի դաստիարակութեան կարեւորութիւնը:*

*Հանդէսը իր բարեյաջող աւարտին հասաւ, երբ ներկաները կը հիւրասիրուէին համադամ քաղցրաւենիներով:*

*Կը շնորհաւորենք բոլոր անոնց որոնք իրենց մասնակցութիւնը բերին սոյն հանդէսի յաջողութեան, յատկապէս շնորհաւորելի է դպրոցի տնօրինութիւնը եւ անոր ժրաջան տնօրէն՝ Պր. Սիմոն Զամքէրթճեանը:*

**ԱՊԱՀՈՒՆԻ**

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

*Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ ՀՀ Կրթութեան եւ գիտութեան նախարարութիւնը նախատեսում է կազմակերպել սփիւռքահայ ուսուցիչների վերապատրաստման մեկամսեայ դասընթացներ առանձին-առանձին նախակրթարանների, միջին կարգի դասարանների եւ աւագ դպրոցի ուսուցիչների համար:*

*Դասընթացները վարուելու են արեւմտահայերէնով, Հայաստանի եւ Սփիւռքի լաւագոյն մասնագէտների ներգրաւմամբ:*

*Սփիւռքի կազմակերպութիւնները եւ կրթօճախները կարող են իրենց յայտերը՝ ուսուցիչների քանակի եւ նախընտրելի ժամկէտների նշումով ներկայացնել ՀՀ Կրթութեան եւ Գիտութեան նախարարութիւն Գահիրէում ՀՀ դեսպանութեան միջոցով:*

*Հրաւիրուող ուսուցիչների կեցութեան պայմանները, դասընթացների ուսումնական ծրագրերը եւ դասատախտակը կը ներկայացուեն համապատասխան յայտերի առկայութեան դէպքում:*

**ԳԱՀԻՐԷՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

## Հրէական Ցեղասպանութեանը Նուիրուած Միջազգային Գոնֆերանսում Հայաստանը Չի Հրաւիրուել

Շուէտիայի կառավարութեան նախաձեռնութեամբ Յունուարի 25-28-ը Ստոկհոլմում անցկացուող հրեաների ցեղասպանութեան հարցին նուիրուած միջազգային գոնֆերանսում, որքան էլ զարմանալի է, հրաւիրեալ 40 երկրների ցանկում, այդ թւում Թուրքիայի, չի ընդգրկուած Հայաստանը: Այդ մասին ԱՐՄԵՆՓՐԵՍԻՆ յայտնեց Շուէտիայի հայկական միութիւնների համադրող կենտրոնի Հայաստանի ներկայացուցիչ Սեւան Ամիրեանը, որը մասնակցել է Ուփսալայում Դեկտեմբերի 4-ին Կենտրոնի կողմից հրաւիրուած ժողովին, որտեղ արտայայտուել է երկրի հայ համայնքի դժգոհութիւնն այդ կապակցութեամբ:

Պրն. Ամիրեանի ասելով, Կենտրոնը դիմել է Շուէտիայի պետական մարմիններին՝ բարձր մակարդակի այդ հանդիպմանը Հայաստանին հրաւիրելու առաջարկով, քանզի այդ գոնֆերանսի հետապնդած նպատակները առնչւում են նաեւ հայ ժողովրդին, որը ենթարկուել է 20-րդ դարի առաջին ծրագրաւորուած ցեղասպանութեանը:




# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴԸ ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ



| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀՐԱՉ ՍԻՄՈՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |
|---|---|---|
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՐԴ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ<br>ETALEX | ՏԻԱՐ<br>ՎՐԷԺ Լ. ՍԷՖԷՐԵԱՆ<br>ELPAR SHOES<br>ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՐՈՒԺԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |

| ՏԻԱՐ<br>ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԻԿԻՆ<br>ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ<br>ՄԱՐԿՐԻԹ Պ. ՅԱԿՈԲԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՀԱԳՆ ՏԵՓՈՅԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՍՈՒՐԷՆ ՊԱՅՐԱՄԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՖՐԵՏԻ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |
|---|---|---|---|---|---|
| ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՒ ՆՈՒՊԱՐ<br>ՏԸՆԿՃԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄԱՐՏԻԿ ՊԱԼԱԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ՔԷՉԷՃԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՕՆՆԻԿ ԱԼԻՔՍԱՆԵԱՆ<br>ՄՈՆԹՐԷԱԼ - ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՕՆՆԻԿ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՆԴՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ԹԷՐՁԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՐՈՒԺԱՆ ՏԱՏՈՒՐԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>ԳԸՋԸԼԵԱՆ-ԿԷՎՐԷԿԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՆԱՅԼ<br>ՔՐՈՔՈՏԱՅԼ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄԻՍԱՔ ՉԷՉՃԷՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿ ՆԱԳԱՇԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՆՈՐԱՅՐ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԳԷՈՐԳ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՍԻՄՈՆ ՉԱՄՔԷՐԹԷՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԻԱՐ<br>ՆՇԱՆ ՎԱՐԴԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ԱՐԹԻՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |
| ՏԻԿԻՆ<br>ՁԱՐՈՒՀԻ ՁՈՐԱՅԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ԱԿՆԱՎԻՐԱԲՈՅԺ<br>ՏՔԹ. ՏԻԳՐԱՆ ՅՈՎԱԿԻՄԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԽՈՍՐՈՎ ՉԱՔԱՐԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԻԱՐ<br>ՅԱԿՈԲ ՊԱՍՄԱՃԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԻԱՐ<br>ԳՐԻԳՈՐ ՄԱՐԳԱՐԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԱՄ ԳՈՒԹՆՈՒԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՀԷ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԹՕ ՍՐԱՊԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ԴՈԿՏ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԺՈՐԺ ՍԻՄՈՆԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԻԱՐ<br>ՄԱՆՈՒԷԼ ԿԱՐՄԻՐԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԻԱՐ<br>ԼԵՒՈՆ ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ՉՐԱՔԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՆՈՐԱՅՐ ՍԻՄՈՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>«ԵՐՈՒԱՆԴ»<br>ԳԱՀԻՐԷ | ՏԻԱՐ<br>ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԵԼՔՈՆԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ԴԵՂԱՐԱՆ<br>«ՔԱՐՆԱՔ»<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ |
| ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏԻ ԳԱՍԱՊԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏՈՒԱՐ ՔԻՒՓԷԼԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԻԱՐ<br>ՊԵՏՐՈՍ Յ. ԳՈԳՈՐԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԺՈՐԺ ԱՒԱԳԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԱ ՏԵՓՈՅԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԱՄ ԱԲԻԿԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԽՈՐԷՆ ԳԱԼԸՆԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏՈՒԱՐ ՄԻՆՆԷԹԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՇԱՀԷՆ ՄԱԶԼՈՒՄԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՄԻՔԱՅԷԼԵԱՆ<br>ԸՆՏԱՆԻՔ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԷՏՈՒԱՐ ՍԱՅԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ՕՏԱՊԱՇԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՀԱՅԿ ՀԱՃԻ ԳԷՈՐԳԵԱՆ<br>ԵՒ ՈՐԴԻՆ ԺՈԶԵՖ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՍԱՐԳԻՍ ՎՈՒՔՈՒՖԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԻԱՐ<br>ՎԱՂԱՐՇ ՉԱՔԱՐԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԳԷՈՐԳ ՄԱՐԳԻՍԵԱՆ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՐՃ ԱՍԼԱՆԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ |
| ՉԷՉՃԷՆԵԱՆ<br>ԸՆՏԱՆԻՔ<br>ԳԱՀԻՐԷ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՌՈՒԲԷՆ ՍԻՄՈՆԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐՕ ԱԲԳԱՐԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԳԵՂԱՄ ԹՐԱՅԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԲԻՒԶԱՆԴ ՉԱՔԱՐԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ԷՔՍԷՐՃԵԱՆ<br>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ |

ՋԱՀԱԿԻՐ

# ՇՆՈՐՀԱՒՈՐ ՆՈՐ ՏԱՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴ



ՄԱՐՏԻԿ ԵՒ ՌՈՒԲԷՆ
ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆ ԵՂԲԱՐՔ
ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ
ԳԱՀԻՐԷ

ԱՐԹՕ ԵՒ ԴԱՆԻԷԼ
ՃՌՃՌԵԱՆ ԵՂԲԱՐՔ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

*JACQUES SEROP*
Կահոյքի կերպասներ, վարգոյրներ, անձեռոցներ եւ ծածկոցներ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԺՈԶԷՖ ՌՍԱՍԷՖ
ԳԱՀԻՐԷ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐՍԷՆ ԷՄԻՐԶԵԱՆ
ԵՒ ՈՐԴԻՆ՝ ԱԼԷՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

STUDIO PHILIPE
**PHILIPE PHOTO TRADE**
ԳԱՀԻՐԷ

إيزابيل
Isabelle
JEWELRY
4, Omar Ebn El Khattab - Heliopolis, Egypt

FUTURE COMPANY
ՏԻԱՐ
ԷՏՈՒԱՐ ՄԵԼԻՔԵԱՆ
ԳԱՀԻՐԷ

We Stand For Quality
Lark Printing House
3,Dr. Ahmed El Khashab St.Nasr City.
Tel.: 2724293 / 2724294 / 2724298 Fax : 2724298

MECHANICAL WORKSHOP
**WANIS KAZANDJIAN**
83, Saptia St. Cairo
Tel. 5773634

Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Հ.Բ.Ը .ՄԻՈՒԹԻՒՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՍԵԴԻ ԵՒ ՊԵԼԻՆԱ
ԳՕՉՈՒՆԵԱՆ
ԱՒՍՏՐԱԼԻԱ

ԱՍԱՏՈՒՐԵԱՆ
ԸՆՏԱՆԻՔ
ԳԱՅԻՐԷ

ՏԻԱՐ
ՇԱՀԷ ԼՈՒՍԱՐԱՐԵԱՆ
ԳԱՅԻՐԷ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԻՎԱՆ ԹՈՐՈՍԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

CECIL
AND
BABY CECIL - SHOES
ԱՐԹՕ ԵՒ ԿԱՐՕ
ԹՕՍՈՒՆԵԱՆ ԵՂԲԱՐՔ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԿԱՐՊԻՍ ԵԱԶԸՃԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԻԿԻՆ
ԱՆՈՒՇ ՊԱԼԱԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀՐԻՃ ՃԷՐԷՃԵԱՆ
ՊԷՅՐՈՒԹ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ԵՂԻԿ ՃԷՐԷՃԵԱՆ
ՊԷՅՐՈՒԹ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՄԿՕ ԽԱՆՃԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԻԿԻՆ
ԼՈՒՍԻ ՊԱԼԱԵԱՆ
ՄՈՆԹՐԷԱԼ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԼԵՒՈՆ ԳԱՂԹԱՅԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԻԳԷՆ ՃԻՋՄԷՃԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԳԷՈՐԳ ԷՔՍԷՐՃԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԻԱՐ
ՎԱՐԴԳԷՍ ՔՐԷՏԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱԼՊԷՌ ՔՐԷՏԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆՈՐԱՅՐ ՊԷՆՕՀԱՆԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԻԱՐ
ՊԵՐՃ ՓԱԼԱՆՃԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ԿԱՐՊԻՍ ԹՕՍՈՒՆԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԻԿԻՆ
ՍԻՐԱՐՓԻ ՔԻԼԻՏՃԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՇԱՆԹ Ս. ՊԱԼԱԵԱՆ
ՄՈՆԹՐԷԱԼ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԷ Զ. ՊԱԼԱԵԱՆ
ՄՈՆԹՐԷԱԼ

ՕՀԱՆՆԷՍԵԱՆ
ԸՆՏԱՆԻՔ
ԳԱՅԻՐԷ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԱՐԳԵՒ ՍԱՐԳԻՍԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԹՕ ԱՐԹԻՆԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆՈՒՊԱՐ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԱՄ ՍԱՀԱԿԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ
ԱՒՍՏՐԱԼԻԱ

ԴՈԿՏ.
ՄԻՔԱՅԷԼ ԵՐԱՄԵԱՆ
ԳԱՅԻՐԷ

ՏԻԱՐ
ՌՈՊԷՐ ԹԱՇՃԵԱՆ
ԳԱՅԻՐԷ

ՏԻԱՐ
ԺԻՐԱՅՐ ՊԱԼԱԵԱՆ
ՊՈՍԹՈՆ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՃՈՐՃ ՍԷՖԷՐԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՄՈՒՇԵՂ ՊԱՍՄԱՃԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԻԿԻՆ
ԺԱԳԼԻՆ ՓԱՐԹԱՄԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՐՃ ԳՈԳՈՐԵԱՆ
ՄՈՆԹՐԷԱԼ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԹԱԳՒՈՐ ԱՐԱՊԵԱՆ
ԳԱԼԻՖՈՐՆԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԽԱՉԻԿ ԳԱՍԱՊԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԻԿ. ՅԱՍՄԻԿ ՊՕՅԱՃԵԱՆ
ԵՒ ՈՐԴԻՆ ՊՐ. ՃՈՐՃ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ԱՆՍՈՒՐԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ԳՈԼՈՅԵԱՆ
ԳԱՅԻՐԷ

ՏԻԱՐ
ՆՈՒՊԱՐ ԿԷՐԻԿԵԱՆ
ՄՈՆԹՐԷԱԼ

ՎԱՀԷ ԴԵՐՁԱԿԵԱՆ
ԵՒ ԸՆԿ.
ԳԱՅԻՐԷ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ
ԵՒ ՈՐԴԻՆ ԱՐԱՄ
ՄՈՆԹՐԷԱԼ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆԱԶԱՐԷԹ ԳԱՐԹԱԼԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՍԱՐԳԻՍ ԹՕՍՈՒՆԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՀՐԱՅՐ ՏՐԴԱՏԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ԺԱՆ ԻՍԿԵՆՏԷՐԵԱՆ
ՀԵԼԻՈՊՈԼԻՍ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅՈՎՍԷՓ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Ն. ԵՒ Ե.
ԴԱՒԻԹԵԱՆ ԵՂԲԱՐՔ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԺՈՐԺ ԿՈՐԿՈՏԵԱՆ
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ՏԻԱՐ
ԱՐԹՕ ՍԱՐԱՖԵԱՆ
ԳԱՅԻՐԷ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԹՕ ՓՈԼԱՏԵԱՆ
ԱՒՍՏՐԱԼԻԱ

# ՆՈՐԱՆՈՒՆ ՊԱՐԲԵՐԱԿԱՆՆԵՐՈՒ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

**ՏԻԳՐԱՆ ԳԷՈՐԳԵԱՆ**

Սակաւաթիւ օրերու Հայրենիք այցելութենէն վերադարձին, բարեկամս՝ որպէս արմաղան, երեւանեան թարմ Հրատարակութիւններու դէզ մը յանձնեց ինծի, բոլորն ալ՝ խիստ շահեկան աշխատութիւններ, որոնցմէ՝ առաջին հերթին ընթերցողին նկատառութեան կ'ուզեմ յանձնել Հայաստանի Ազգային Գրադարանի փոխ տնօրէն՝ մատենագէտ Ներսէս Հայրապետեանի բծախնդրօրէն պատրաստած *ժամանակակից մամուլի տասր տարուան համապատկերը:*

Փոքրածաւալ այս հատորը՝ 20x14 սմ., լոյս տեսած «Գիրք» Հրատարակչութեան կողմէ, Երեւան՝ 1999-ին, 330 էջերու մէջ կը պարփակէ 1987-1996 տարիներու ՆՈՐԱՆՈՒՆ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ՝ բոլորովին նոր հայեցքով:

Որպէս *Մուտք*՝ կը ներկայացուի 1987-1996 թթ. ժամանակակից Հայ Մամուլը (էջ 7-14), նոյնը՝ անգլերէն լեզուով (էջ 15-21), սակայն՝ աւելի ամբողջական եւ կուռ ոճով:

Ուսումնասիրողը, նորագոյն շրջանի հայ մամուլի պատմութեան սկիզբը՝ իրաւամբ կը համարէ 1988 թուականը, երբ՝ ազատ, ժողովրդավարական մամուլին սկիզբը պայմանաւորուած էր *«վերակառուցման»* քաղաքականութեամբ, թէեւ՝ առաջին անկախ պարբերականը, Ազգային Ինքնորոշում Միաւորումի «Անկախութիւն» թերթը լոյս տեսած է 1987 Հոկտեմբեր 24-էն սկսեալ, սակայն անիկա ազատ մամուլի առաջնեկը կը նկատուի միայն:

*Ինքնահրատ մամուլը* սկսած է 1988 թ. Փետրուարին՝ «Ղարաբաղեան» անունը կրող շարժումով, երբ հայաստանեան մամուլին դիմագիծը եւ էութիւնը ամբողջութեամբ ու արմատապէս փոփոխութիւն կրեց. ուրեմն, *նոր մամուլ* պատկերացումը՝ կը վերաբերի բոլոր պարբերականներուն, «Հայաստանի Հանրապետութիւն»-էն մինչեւ «Գոլոս Արմենիի»:

Մամուլի պատմութեան նորագոյն շրջանը բաժնուած է երեք փուլի.

ա. 1987-1989 թթ., Ինքնահրատ շրջան:

բ. 1990-1991 թթ., Անցումային շրջան:

գ. 1992-էն մինչեւ այսօր, Ձեւաւորման շրջան:

Պէտք է բացատրել *ինքնահրատ* եզրը՝ որ ռուսերէն samizdat-ին թարգմանութիւնն է, առաջին անգամ գործածուած Նիքոլայ Կլազքովին կողմէ՝ 1952 թ.: Ուսումնասիրողին խոստովանութեամբ, *ինքնահրատ հասկացութեան ճշգրիտ սահմանում տալը՝ դժուար է:*

Ինքնահրատ պարբերականներու մեծ մասը մեքենագրուած եւ բազմացուած է պատճէնահանումի եղանակով, առանց տպարանային ձեւաւորումի եւ պատկերազարդումի. ինքնահրատ մամուլը՝ տարածումի շրջանակ եւ հասարակական միտքի վրայ ազդելու հնարաւորութիւն գրեթէ չէ ունեցած:

Պարբերականին ինքնահրատ ըլլալը՝ տպագրութեան կամ բազմացումի եղանակով չի պայմանաւորուիր. ինքնահրատ մամուլը՝ իշխանութիւններուն, մամուլի նկատմամբ վարած քաղաքականութեան հակազդեցութեան դրսեւորումն է, կամ՝ անկախ լրագրողի կեցուածք եւ հոգեբանութիւն:

Ինքնահրատ մամլուի շրջանը աւարտած է, երբ 1989 Նոյեմբեր 2-ին, Հայոց Համազգային Շարժումի առաջին համագումարին առիթով լոյս տեսած է «Հայք» թերթին առաջին համարը՝ որ, 1990-ի Յունուարէն սկսեալ, սկսած է տպագրուիլ կանոնաւոր պարբերականութեամբ եւ մեծ տպաքանակով:

Հին եւ նոր մամուլին մրցակցութիւնը՝ 1990 թ., թեւակոխած է նոր փուլ, զոր ուսումնասիրողը կոչած է անցումային շրջան: Ըստ բնոյթի, անցումային փուլն ալ երկճիւղուած է *արմատական* եւ *վերանորոգչական* ուղղութիւններու:

Հայ պարբերական մամուլի զարթօնքը՝ միայն Հայաստանի մէջ չէ եղած, այլ՝ նախկին Խորհրդային Միութեան ամբողջ տարածքին:

1989 թ. սկսեալ, երկլեզու՝ Հայերէն-ռուսերէն, կամ այլալեզու պարբերականներ երեւան եկած են՝ Ռիկայի, Մոսկուայի, Սիմֆերոպոլի, Թալլինի, Թբիլիսիի, Քիեւի, Ռոստովի, Քրասնոտարի, Նովոռոսիյսկիի մէջ եւ այլ վայրեր:




Պարբերական մամուլը վերածնունդ կ'ապրի նաեւ Լեռնային Ղարաբաղի մէջ. այնտեղ կը գտնենք հասարականկանքաղաքական, գիտական, գրական-գեղարուեստական, հոգեւոր, երգիծական, կրթական, ռազմական 16 նոր պարբերականներ:

Նոր մամուլի *կառուցուածքային* եւ *բովանդակային ձեւաւորումի* շրջանը կը սկսի 1992 թ., երբ 1991 Սեպտեմբեր 21-ին՝ կը հռչակուի Հայաստանի Հանրապետութեան անկախութիւնը. ապա Հոկտեմբերի 8-ին կը հրապարակուի ՀՀ Գերագոյն Խորհուրդի «Մամուլի եւ զանգուածային լրատուութեան միւս միջոցներու մասին» օրէնքը՝ որով կը ձեւաւորուին մամուլի գործունէութեան կարգաւորումի իրաւական շրջանակները:

1991-էն սկսեալ, Հայաստանի մէջ ազատ կը գործեն հայ աւանդական կուսակցութիւնները՝ Հայ Յեղափոխական Դաշնակցութիւն, Հայաստանի Ռամկավար-Ազատական Կուսակցութիւն, Սոցիալ-Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութիւն. երեքն ալ կ'ունենան իրենց տպագիր պաշտօնաթերթերը:

Ձեւաւորումի շրջանին՝ համակարգիչները մուտք գործեցին լրագրական ասպարեզ, որ դարձաւ հրատարակչական ձեւաւորումի հիմնական եղանակը:

Մատենագիտութեան կազմութեան հանգամանքները եւ սկզբունքները (էջ 22-26), նոյնը՝ անգլերէն (էջ 27-30): Ներկայացուած է 583 պարբերական հրատարակութիւն: Մատենագիտութեան դասաւորումի առաջին սկզբունքը՝ *ժամանակագրականն* է, ըստ տարիներու. երկրորդը՝ ամէն տարեթիւէ ներս, *այբբենականը,* նախ՝ հայերէն, ապա՝ ռուսերէն եւ անգլերէն պարբերականները:

*Մատենագիտութիւնը* կը սկսի հայաստանեան մամուլով. ապա՝ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան եւ Վրաստանի, Ռուսաստանի, Ուրքաինայի, Ուզպէքիստանի ու Պալթեան երկիրներու հայերէն կամ հայկական պարբերականները:

Մատենագէտը՝ հայկական չէ համարած եւ ցանկին մէջ չէ ընդգրկած օտարերկրեայ դեսպանատուներու եւ միջազգային կազմակերպութիւններու կողմէ հրատարակուող պարբերականները:

Նոյնպէս չեն գրանցուած *ծառայողական* օգտագործումի նպատակով՝ տարբեր գերատեսչութիւններու կողմէ հրատարակուած տեղեկագիրները:

Մատենագիտական գրանցումները կու տան հետեւեալ տեղեկութիւնները. *պարբերականին խորագիրը, ենթախորագրային տուեալները, հիմնադիր-հրատարակիչը, խմբագիրը, վայրը, հրատարակութեան ժամանակագրական սկիզբը* (տարի, ամսաթիւ), *վերջը* (եթէ յայտնի է), *էջաքանակը, պարբերականութիւնը, չափը, տպաքանակը, տպարանը:*

Ինքնուրոյն համարակալումով լոյս տեսած *յաւելուածները*՝ նկարագրուած են առանձին, մայր պարբերականին եւ յաւելուածին միջեւ խաչաձեւ յղումներ ընելով:

Պարբերական մամուլ համարելով՝ պայմանականօրէն, մատենագիտութեան մէջ ընդգրկուած են նաեւ *միօրեայ* կամ մէկ անգամ տպագրուած պարբերականները:

Մատենագիտութեան գործածութիւնը դիւրացնելու եւ ընդգրկունութիւն ապահովելու համար՝ լրացուած են յաւելուածներով եւ ցանկերով.

Համառօտագրութիւններու ցանկ, էջ 31-33: Անգլերէն՝ էջ 34-35:

Հայկական նորանուն Մամուլը. Հայաստանի Հանրապետութիւն, 1987-1996, էջ 37-221:

Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւն, 1989-1996. էջ 223-227:

Հայկական Մամուլը Անկախ Պետութիւններու Հասարակապետութեան եւ Պալթեան երկիրներու մէջ, 1989-1996. էջ 229-245:

Անստոյգ կամ մատենագիտական տուեալները չճշտուած պարբերականներ. էջ 247-252:




Յաւելուածներ եւ ցանկեր. Յաւելուած 1, Մատենագիտութեան մէջ չգրանցուած ոչ նորանուն պարբերական հրատարակութիւններ. էջ 254-255: Անգլերէնով՝ էջ 256-257: Յաւելուած 2, Անուանափոխուած լրագրեր եւ հանդէսներ. էջ 258-260: Անգլերէնով՝ էջ 260-262:

Վերնագրերու ցանկ. էջ 263-272: Անգլերէնով՝ էջ 272-282:

Անուանացանկ. էջ 283-294: Անգլերէնով՝ էջ 295-304:

Հրատարակիչ եւ հովանաւոր կազմակերպութիւններու ցանկ. էջ 305-314: Անգլերէնով՝ էջ 315-323:

Մայր պարբերականներու եւ յաւելուածներու ցանկ. էջ 324-325: Անգլերէնով՝ էջ 325-326:

Տպագրութեան վայրերու եւ յիշատակուած աշխարհագրական անուններու ցանկ. էջ 327-328: Անգլերէնով՝ 328-330:

Գոնէ տարտամ գաղափար կազմելու համար նոր պարբերականներու անուններուն մասին, այստեղ ջոկովի կը ներկայացնեմ փունջ մը՝ պահպանելով ուղղագրութիւնը:

«02», «3x3-ի Զրուցարան», «7 Օր» «9-րդ Հրաշալիք», «14-րդ Հարկ», «15 Օր», «20x20», «...21 ...», «1000 Գումարած 1»:

«Ալո», «Աղ եւ Լույս», «Այո», «Այո էքսպրես», «Այսօր 32», «Ապոլոն», «Աջ», «Առավոտ Լուսո», «Առերեսում», «Ասպար», «Ասպանջակ», «Աստծո Փրկություն» «Աստղային Սուրհանդակ» «Ար», «Արայի», «Արմենա»:

«Բանախոս», «Բանման» (Պպգեյշն, Կկգեյշն, Հաբոգեյշն), «Բարեւ», «Բեկոր», «Բժշկություն Ձեզ համար», «Բիզնես Պրես», «Բնօրրան», «Բոտան», «Բռավո», «Բումերանգ», «Գարդմանք», «Գինդ», «Գոյ», «Գումարած Դու», «Գոմինո», «Եղինջ», «Եմ, Ես, Է», «Ես», «Եվ այլն», «Երիցուկ», «Երկուշաբթի Գումարած», «Զանգի Զրանգի», «Զարկան», «Զարկերակ», «Զբաղվածություն», «Զինավոր», «Զվարճալիք», «Զրուցակից», «ԷԻՍ էքսպրես», «էլեկտրոնիկա + Բիզնես», «էրոս», «Թուղթ ու Գիր»:

«Ժամանց եւ Գործ», «Ժպիտ», «Իլիկ», «Իմպուլս», «Ի՞նչ, Որտե՞ղ, Ե՞րբ», «Իրան Նամէ», «Լիալուսին», «Լոռէ», «Խայդ», «Խորան», «Ծիծաղի Սենեակ», «Կարինե», «Կենաց», «Կես կատակ Կես լուրջ», «Կիկոս», «Կին եւ Տղամարդ», «Հայաստ», «Հայորդի», «Հանդիպում», «Հավատամք», «Հեւք», «Հերմես», «Հիշողություն», «Հոգին», «Հորոսկոպ Բախտացույց», «Հուսո Շաբաթ»:

«Ճախարակ», «Ճեպընթաց», «Մարգեթինկ Բոլորի Համար», «Մաքսիմում», «Մենք ենք Մեր սարերը», «Մի Խոսքով», «Մի Պահ», «Միրհավ», «Մոնթե», «Մոսի», «Մունետիկ», «Նաեւ Հացիվ», «Նար», «Նարեկ», «Նե», «Նժար», «Նժդեհ», «Նժդեհյան Սերունդ», «Նոյ», «Նստացույց», «Ուշադրություն Ուշադրություն», «Շաբաթ», «Շաղեր», «Շիրակուհի», «Շունն ու Կատուն», «Շրջան»:

«Ջամչուկ», «Ջորրորդ Իշխանություն», «ՋօxՋօ», «ՊԱՍ», «Պըլը Պուղի», «Պոլոզ Մուկուչ», «Պուլիկ», «Պուլ Պուլ», «Ռոք», «Սելենա», «Սենսացիա», «Ս-էքսպրես», «Սլացք», «Սրինգ», «Սրտակից», «Վարկած», «Վարուժան», «Վիդեո Նորություններ», «Տարօրինակ Թերթ», «Տեսադաշտ», «Տեսակետ», Տիգրան Մեծ», «Տուրք», «Ցեղակրոն», «Ցեմենտ», «Փետրուար», «Փրկություն», «Քիմիական Լուսավորչություն», «Քո Թերթը», «Քրիստոնյա», «Օլիմպիկոս», «Օջախ», «Օրենք, Օրենսգիրք, Օրինագիծ», «Օրեր», «Ֆուտբոլ», «Ֆոնֆոն»:

Թէեւ երկարեցաւ թուարկումը՝ սակայն, այլապէս կարելի պիտի չըլլար պէսպիսունութիւնը հաստատել...:

Կարելի է յուսալ՝ որ հատորը կազմող Ներսէս Հայրապետեան կը շարունակէ իր օգտաշատ աշխատանքը, եւ յաջորդական մատենագիտական հատորներով՝ իրազեկ կը պահէ պարբերական մամուլով հետաքրքրուող շրջանակը:

# ՆԱԽԱԳԱՀ ՌՈԲԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ ԿԱՐԵՒՈՐԵՑ ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԲԱՐԵՓՈԽՄԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑԸ

*Նախագահ Ռոբերթ Քոչարեանը Դեկտեմբերի 29-ին անցկացրեց աշխատանքային խորհրդակցութիւն՝ Հայաստան-Սփիւռք պետական յանձնաժողովի անդամների մասնակցութեամբ:*

*Ինչպէս ԱՐՄԷՆՓՐԵՍԻՆ յայտնեցին ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակից, մեծ նշանակութիւն տալով Հայաստան եւ Սփիւռք յարաբերութիւնների բարեփոխմանը, Նախագահը կարեւորել է այդ գործընթացի շարունակականութիւնը եւ ասաց, որ այժմ սկսում է աւելի գործնական աշխատանքի փուլը: Նրա խօսքերով, գալիք տարում եւս անհրաժեշտ է պահպանել հայրենիքում տարաբնոյթ համահայկական միջոցառումների կազմակերպման արդէն իսկ ձեւաւորուած բարի աւանդոյթը:*

*Խորհրդակցութեան ընթացքում քննարկուել եւ հաւանութեան է արժանացել պետական յանձնաժողովի 2000 թ. աշխատանքային ծրագիրը: Որպէս առաջնահերթ լուծում պահանջող խնդիր նշուել է համահայկական հեռուստաալիքի կազմաւորումը:*

*Այդ նպատակով պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել աշխատանքային խումբ ստեղծել՝ ներգրաւելով մասնագէտներ սփիւռքից: Քննարկուել են Հայաստանում մշտապէս գործող երիտասարդական կենտրոնի ստեղծման հետ կապուած կազմակերպական հարցեր եւ տրուել են կոնկրետ յանձնարարականներ:*

*Անդրադարձ է եղել նաեւ կոնկրետ խնդիրների, մասնաւորապէս, կարեւորուել է Հայաստանում սփիւռքահայ ուսուցիչների վերապատրաստման ծրագիրը:*

*Խորհրդակցութեան մասնակիցների կարծիքով, անհրաժեշտ է յատուկ ուշադրութիւն յատկացնել Հայաստանում քրիստոնէութիւնը որպէս պետական կրօն հռչակելու 1700-ամեակին նուիրուած միջոցառումների կազմակերպմանը:*

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Կիրակի 19 Դեկտեմբեր 1999 կ. ե. ժամը 7.30-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր տաճարին մէջ, ի ներկայութեան հայ թէ օտար հրաւիրեալներու, տեղի ունեցաւ պսակադրութիւնը Հայկ. Ընթերցասրահի հաւատաւոր անդամներէն՝

**ՊՐ. ԳԷՈՐԳ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ**

**Ընդ**

**ՕՐ. ՍՕՍԻ ՄԱՃԱՌԵԱՆԻ**

կնքահայրութեամբ համայնքիս սիրուած ազգայիններէն՝ Պր. Պերճ Ասլանեանի:

Ձեռնադրութիւնը կատարեց Եգիպտահայոց բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան: Հարսանեկան երգեցողութիւնները կատարուեցան ղեկավարութեամբ հայրենի խմբավար Դաւիթ Զալեանի, որուն աւարտին Սրբազան Հայրը շնորհաւորեց նորապսակ ամոլը եւ հայրական իր օրհնութիւններուն ընկերացուց իր յորդորները:

Գիշերը, մեծ թիւով հրաւիրեալներ ներկայ գտնուեցան ճոխ խրախճանքի մը, օդային պաշտպանութեան հսկայ ակումբի՝ «Փասանթ» շքեղ սրահին մէջ: Հարսնեւորները երջանկութեան կենացներ պարպեցին, որուն ընթացքին տեղի ունեցաւ օշարակի սպասարկութիւն: Կէս գիշերին տեղի առաջնակարգ նուագախումբը հաճելի երգերով մեծապէս խանդավառեց ներկաները եւ երիտասարդութիւնը ոտքի հանեց շուրջպարի, աւելի ջերմացնելով մթնոլորտը:

Հսկայ կարկանդակը կիսելու արարողութեան յաջորդեց համադամ ընթրիքի սպասարկութիւն: Եւ խրախճանքը շարունակուեցաւ մինչեւ առաւօտեան ժամերը:

Պր. Գ. Սարգիսեան արհեստով կարող դերձակ է եւ ունի իր անձնական աշխատանոցը, իսկ շնորհալի հարսը աւարտելով «Էյն Շամս» համալսարանի, Անգլիական Գրականութեան բաժինը, այժմ կը դասաւանդէ անգերէն լեզուն «Սէնթ Գաթրին» երկրորդական վարժարանէն ներս:

Այս բարեբաստիկ առիթով խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորապսակ ամոլին, փեսին քրոջ՝ Տիկին Զարուհի Սարգիսեանի եւ հարսին մօր՝ Տիկին Արմինէ Մաճառեանի եւ եղբօր՝ Պր. Սարգիս Մաճառեանի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն, մաղթելով հարսն ու փեսին խաղաղ եւ երջանիկ կեանք:

## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

**Պր. ԿԱՐԷՆ ՃՌՃՌԵԱՆ**

**Եւ**

**ՕՐ. ՍՕՍԻ ՍԻՄՈՆԵԱՆ**

*Աղեքսանդրիա - Գահիրէ* *25 Դեկտեմբեր 1999*

«Ջահակիր» իր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնէ խօստեցեալ զոյգին, մաղթելով երջանիկ եւ անամպ կեանք: Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նաեւ անոնց ծնողաց՝ Տէր եւ Տիկին Դանիէլ եւ Մայտա Ճռճռեաններուն, Տէր եւ Տիկին Հրաչ եւ Վիվիան Սիմոնեաններուն նաեւ անոնց մեծ մայրերուն Տիկնայք՝ Լուսի Պալաեանի Աղաւնի Ճռճռեանի, Տիգրանուհի Սիմոնեանի եւ Ալիս Ճամճեանի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն:

## «ՋԱՀԱԿԻՐ» ՇԱԲԱԹԱԹԵՐԹԸ ՆՈՒԷՐ ՁԵՐ ՍԻՐԵԼԻՆԵՐՈՒՆ

Այն ազգայինները, որոնք կը փափաքին Նոր Տարուան առթիւ «Ջահակիր» նուիրել Հայաստանի կամ արտասահմանի իրենց ազգականներուն եւ բարեկամներուն, կրնան հաղորդակցիլ թերթիս վարչութեան (հեռ. 4530327) ամէն օր կ. ա. ժամը 10էն 5 (ի բաց առեալ Ուրբաթ օրերէն): Իսկ Աղեքսանդրիոյ մէջ, ընկ. Վրէժ Սէֆէրեանի:

Տարեկան բաժանորդագրութեան սակն է 40 եգ. ոսկի (օդային փոստով):

## ԿԸ ՎԱՃԱՌՈՒԻ

Գահիրէի Ազգային Առաջնորդարանիս դիւանատունը ստացած է ողբացեալ գրող եւ բանաստեղծ

**ԱՆԴՐԱՆԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ**

**Ավկայծող Հայեր Եւրոպայի Լոյսերուն Մէջ**

յետ մահու հրատարակութենէն, սակաւաթիւ օրինակներ վաճառքի համար:

Հատորին գինն է 50 եգ. Ոսկի 222 էջ,

մաքուր տպագրութիւն, Տպարան Կիլիկիա, Հալէպ:

Փափաքողներէն կը խնդրուի դիմել Ազգային Առաջնորդարանիս Դիւանատան:

**ԴԻՒԱՆ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ԾՆՈՒՆԴ

*Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Արմէն եւ Գարոլին Պալթայեաններ 5 Դեկտեմբեր 1999-ին, բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Յակոբ:*

*Այս ուրախ առթիւ մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նորածին մանկան ծնողները, ինչպէս նաեւ մեծ ծնողները՝ Տիկ. Մարկրիթ Պալթաեանն ու Տէր եւ Տիկ. Մինաս եւ Օլկա Տէր Յակոբեանները, մաղթելով նորածինին երջանիկ եւ առողջ կեանք:*

***

*Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Գրիգոր եւ Սիլվա Աբիկեաններ Երկուշաբթի 27 Դեկտեմբեր 1999-ին բախտաւորուած են երկրորդ զաւակով մը, զոր անուանակոչած են Ռիթա:*

*Այս բարեբաստիկ առիթով մեր խնդակցութիւնները կը յայտնենք նորածինին ծնողներուն, մեծ ծնողներուն՝ Տէր եւ Տիկ. Արամ եւ Մարի Աբիկեաններուն ու Տէր եւ Տիկ. Հրաչ եւ Վիվիան Սիմոնեաններուն եւ մեծ մեծ մօր՝ Տիկ. Տիգրանուհի Սիմոնեանի, մաղթելով նորածին մանկան արեւշատ եւ երկար կեանք:*

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատութիւն թերթիս ազգօգուտ գործունէութեան, Նոր Տարւոյ եւ Ս. Ծննդեան տօներուն առթիւ, Մոնթրէալէն շնորհակալութեամբ ստացած ենք հետեւեալ նուիրատուութիւնները.

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկին Շանթ Պալաեան | 500 |
| Տէր եւ Տիկին Վահան Գայանճեան եւ պաւակը Պր.Արամ | 125 |
| Տէր եւ Տիկին Պերճ Գոգորեան | 125 |
| Տէր եւ Տիկին Վահէ Պալաեան | 125 |

**Առ ի գնահատութիւն թերթիս ազգօգուտ գործունէութեան, Նոր Տարւոյ եւ Ս. Ծննդեան տօներուն առթիւ, Տիար Յովհաննէս Տէր Պետրոսեան կը նուիրէ 50**

**Պր. Գէորգ Սարգիսեանի ընդ Օր. Սօսի Մաճառեանի ամուսնութեան ուրախ առթիւ, վասն խնդակցութեան Տիար Արթօ Գասպարեան կը նուիրէ 20**

## ՍՏԱՑԱՆՔ

-Շնորհակալութեամբ ստացանք Հ.Բ.Ը.Միութեան 2000 տարւոյ պատի գեղատիպ օրացոյցը, օրական թերթիկներով, որ նկարազարդուած է «Աստուածամայրը գահի վրայ» գունաւոր նկարով, գործ՝ գեղանկարիչ Վ. Սուրէնեանցի: Տպագրութիւն՝ «Նուպար» տպագրատան:

-Շնորհակալութեամբ ստացանք Յուսաբեր»ի 2000 տարւոյ պատի գունատիպ օրացոյցը, ամսական էջերով, որ նկարազարդուած է հայկական 12 յիշարժան նկարներով, ինչպէս նաեւ աւելի քան 4000 հեռաձայնի թիւերու տետրը: Տպագրութիւն՝ «Նուպար» տպագրատան:



## ՄԱՀԱԶԴ

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը խոր ցաւով կը գուժէ մահը, Թեմական եւ Քաղաքական Ժողովներու նախկին երկարամեայ եւ ծառայասէր անդամին, Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի Քաղաքական - Գործադիր ժողովներու ատենապետին, Ս. Ներսէս Շնորհալի շքանշանակիր Ողբ.՝

**ԲԻՒԶԱՆԴ ԲՐՈՒՏԵԱՆԻ**

որ հանգեաւ ի Տէր, Կիրակի 26 Դեկտ. 1999-ին, Հելիոպոլսոյ «Քլէոփաթրա» հիւանդանոցին մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան:

Հանգուցեալը ծանօթ էր իբրեւ եկեղեցասէր, կրթասէր եւ ազգասիրական իր ծառայութեամբ:

Յուղարկաւորութեան արարողութիւնը կատարուեցաւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, Երկուշաբթի 27 Դեկտ. յ.մ.ի ժամը 2-ին եւ մարմինը ամփոփուեցաւ Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Ազգային գերեզմանատան իր ընտանեկան դամբարանին մէջ:

Հանգուցեալին համար կատարուեցաւ Ազգային Յուղարկաւորութիւն:

Թող Տէրը լուսաւորէ Հանգուցեալի հոգին, յաւիտենական երանութեան մէջ:

**ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ**
**ԳԱՀԻՐԷ**

## ՄԱՀԱԶԴ

Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնը խոր ցաւով կը գուժէ գաղութիս անդամներէն, նուիրատու՝

**ԵԴՈՒԱՐԴ ԹԱՇՃԵԱՆ**

մահը, իր բնակարանին մէջ:

Չորեքշաբթի, 22 Դեկտեմբեր 1999-ի յետ միջօրէին տեղի ունեցաւ ազգային յուղարկաւորութիւն: Թաղման արարողութիւնը կատարեց Աղեքսանդրիոյ Հովիւ Տէր Գրիգոր Քհնյ. Մուրատեան, որմէ յետոյ հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան չիրիմին մէջ:

Յուղարկաւորութեան ներկայ էին Ազգային Իշխանութեան անդամները: Ծաղկեպսակներ ղրկուած էին Ազգային Իշխանութեան եւ Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Հոգաբարձութեան կողմէ:

Հողը թեթեւ իր հոգնաբեկ ոսկորներուն:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԱՂԵՔՍ. ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**





## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Եգիպտոսի Արաբական Հանրապետութիւնում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ 2000թ. Յունուարի 15-ից Ռուսաստանի Դաշնութեան տարածքով տարանցելու համար օտարերկրեայ քաղաքացիներից պահանջուելու է տարանցիկ վիզա:

**ԵԳԻՊՏՈՍՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**



دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax: (202) 4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1418 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ՅՈՒՆՈՒԱՐ 2000 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. — ٢٠٠٠ عدد رقم ١٤١٨ — الخميس ٢٧ يناير


## ՀԱՅՐԵՆԻՔԸ ԿԸ ՍԿՍԻ ՏՈՒՆԷՆ

*Վերջերս, Հայաստանի ազգային հեռուստացոյցի կայանի «Զինուժ» յայտագիրէն դիտեցինք դպրոցական փոքրիկներու տպաւորութիւնները հայկական բանակի մասին նկարչութեամբ դրսեւորուած. երախաներ, իրենց մանկական տպաւորութիւնները թուղթին յանձնելով նկարած են իրենց դիտանկիւնէն հայոց բանակը, զինուորներն ու հայրենիքի պաշտպանները: Մանկական հարազատութեամբ նկարուած այս նախնական փորձերու մէջ կային պարզունակութիւն, սիրոյ անկեղծ արտայայտութիւն եւ բարի փափաքներու արտացոլում. եւ ահա մանուկ մը նկարած է հայկական բանակը Արարատ լերան ստորոտին եռագոյն դրօշի ծածանումով: Փոքրիկը պատասխանելով լրագրողի հարցումին նկատել տուաւ, որ ինք կը ցանկայ տեսնել հայկական բանակը Արարատը ազատագրելու պահուն: Ահա, ազգային դաստիարակութեան մէկ ցայտուն արտայայտութիւն մը բոլոր հայ մանուկներուն (եւ ինչու չէ մեծերուն) համար օրինակելի, ուսանելի:*

*Այս տեսնելով ակամայ յիշեցի մէկ դասապահ, երբ Հայաստանի աշխարհագրութեան պահուն 6րդ դասարանի աշակերտի մը երբ հարց տուի, թէ հայոց սրբազան լեռը ո՞րն է, ան զարմացաւ հարցումիս համար, եւ երբ կողմնորոշելու միտումով աւելցուցի թէ Արարատը մեզի համար ի՞նչ կը խորհրդանշէ, ան դարձեալ պիշ աչքերով հայեացքը անքթիթ սեւեռեց վրաս՝ պատասխանը չիմանալու ինքնամատնումով: Անշուշտ ինք չամչցաւ, մնաց շշմած, ես ալ զարմացայ, մնացի հիասթափ: Մեր երկխօսութիւնը ձախողած էր...:*

*Այս երկու պերճախօս օրինակները ցոյց կու տան հսկայական տարբերութիւնը հայրենական եւ սփիւռքեան դաստիարակութեան, այստեղ հարցը ոչ դպրոցներու զանազանութիւնն է եւ ոչ ալ ուսուցիչներու անտարբերութիւնը. վէրքը կը գտնուի փոքր տարիքէն ջամբուող դաստիարակութեան, մանուկին տան մէջ տեսածին ու լսածին, մանկական առաջին դպրոցին, որ տունն է անկասկած, երախան կը կազմաւորուի մի գուցէ չծնած, իսկ դաստիարակութեան հարցը կը դրուի առաջին օրէն, որովհետեւ երկրորդ օրը ուշ է արդէն: Երախան տան մէջ ինչ որ տեսաւ ու լսեց, անոնք կը մնան անջնջելի անոր յիշողութենէն ցմահ, մինչեւ վերջին օրը կեանքին: Հետեւաբար, մեղաւոր չզգացի որպէս ուսուցիչ, բայց մեղաւոր զգացի որպէս սփիւռքահայ, որ ունիմ ճակատագրակից ազգակիցներ, ծնողներ, որոնք դեռ եւս իրենց որդիներուն չեն պատուիրած, որ Արարատը մեր նուիրական լեռն է, ազգին խորհրդանիշը, նոյնինքն ազգը, որ իր յարատեւութիւնը ապաւինած է այդ լերան՝ Արարատին:*

*Դարձեալ Հայաստանի ազգային հեռուստացոյցը ունի «Գաւիթ» խորագրով յայտագիր մը, ուր գրող եւ հրապարակախօս Բակուր Կարապետեան հարցազրոյց կ'ունենայ ազգային անուանի գործիչներու հետ. անոր ետին կայ լոզունգներու շարք մը, որոնցմէ կ'ըսէ. «Ամէն հայի տուն մի փոքրիկ Հայաստան». ուրեմն, պայման չէ, որ մարդ ապրի իր հողին վրայ հայրենաշունչ մթնոլորտ սնուցանելու համար իր զաւակներուն, հողը անփոխարինելի է, այո, բայց հայութեան աւելի մեծ հատուածը կ'ապրի հողէն դուրս. ուրեմն ինչ որ տեղ պէտք է ստեղծել արհեստական եւ շինծու գոյավիճակ մը, որ հողէն դուրս ապրելով հանդերձ չանջատուինք հողէն, չօտարանանք անկէ, Արարատին նկարը տեսնելով չկարծենք թէ ան Ալպեան կամ Հիմալայեան լեռներն են:*

*Հայրենասիրութիւնը ընդոծին յատկանիշ մը չէ, բնատուր ձիրք կամ խառնուածքի արդիւնք չէ, այլ՝ ան կը կազմաւորուի, կ'ամրանայ եւ կը դառնայ նկարագրի դիմագիծ միայն դաստիարակութեամբ, մանաւանդ տան մէջ յարատեւ պնդումով, շեշտադրումով եւ ինչու չէ խստապահանջութեամբ: Այն անձը, որ իր աչքերը բացած պահէն տեսած է տան պատին վրայ Արարատի, Էջմիածնի ու Գառնիի, Գեղարդի լուսանկարները, այն անձը, որ ականջը նոր լսելու ունակ ունկնդրած է Սայաթ-Նովա, Ռ. Մաթեւոսեան եւ Նունէ Եսայեան այն անձը, որ իր տան մէջ «լողացած» է հայերէն գիրքերով եւ հայ մամուլով, կամ՝ հեռուստացոյցով դիտած հայկական կայաններ ու յայտագիրներ, վստահաբար իր կեանքի ընթացքին չի կրնար հեռանալ իր արմատներէն, չի կրնար ուրանալ իր հայաբոյր դաստիարակութիւնը, չի կրնար անտարբեր մնալ Հայաստանի ու հայութեան տագնապներուն նկատմամբ: Իսկ ի՞նչ սպասել անոնցմէ, որոնք իրենց տան մէջ կը լսեն թրքերէն երգեր, հեռատեսիլէն կը դիտեն արաբական պորտապարեր, օղիի շուրջ պար կը բռնեն յունական երաժշտութեան տակ եւ իրենց իտէալը կը մնայ խոյս տալ ԱՄՆ կամ այլ ափունք. ի՞նչ սպասել այն տան զաւակներէն, որոնք իրենց կեանքին մէջ չեն լսած Արարատին մասին, չեն լսած պատարագ եւ «Անոյշ» օփերա, չեն գիտեր Էջմիածին ու Օշական: Ցաւ է, ցաւ է իրօք, որ տուներ գտնուին, որոնց պատերուն կախուած չըլլայ մեր սրբազան լեռը անմահական:*

*Երբ զրկուած ենք արեւահամ հողին ջերմութիւնը ըմբոշխնելէ, երբ ակամայ հեռու ենք Սեւանէն ու Մռաւէն, երբ կամքէ անկախ պատճառներով ամէն առաւօտ հնարաւորութիւն չունինք տեսնելու Արարատը, գէթ մեր տան մէջ փորձենք ստեղծել փոքրիկ Հայաստան: Մեր տուները մենք է որ պիտի կահաւորենք, զարդարենք եւ գեղեցկացնենք եւ ինչո՞ւ զայն չվերածենք փոքրիկ Հայաստանի, որուն պատերէն մինչեւ յետին անկիւնը բուրէ Հայաստան. այս պարագայի՞ն ալ կայ թրքական միջամտութիւն կամ ազերիական սպառնալիք:*

*Ի՜նչ տպաւորիչ եւ դաստիարակիչ խօսք է.- ամէն տուն փոքրիկ Հայաստան. ի՜նչ նուիրական պատգամ է այս, որուն անսալ կը նշանակէ վա՛ռ պահել յիշատակը հայոց բոլոր նահատակներուն. աւելին, կը նշանակէ նոր սերունդը անուղղակի կերպով ուղղել դէպի հայրենիք ու հայրենասիրութիւն: Եթէ ամէն տուն իսկապէս փոքրիկ Հայաստանի վերածուի, իրօք;*

➪ 2

## ՌՈՒՍԱՍՏԱՆ ՊԱՏՐԱՍՏ Է ԴԱՌՆԱԼ ՀԱՅԱՍՏԱՆ-ԱՏՐՊԷՅՃԱՆ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԵԱՆ ԵՐԱՇԽԱՒՈՐԸ

Երկուշաբթի, Յունուար 24-ի առաւօտեան Մոսկուա ժամանեց ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեան՝ մասնակցելու համար Անկախ Պետութիւններու Համագործակցութեան (ԱՊՀ) անդամ երկիրներու ղեկավարներու գագաթի ժողովին: Նոյն օրը կայացաւ Ռուսաստանի նախագահի պաշտօնակատար Վլատիմիր Փութինի, Ռ. Քոչարեանի եւ Ատրպէյճանի նախագահ Հէյտար Ալիեւի հանդիպումը:

Այն կարծիքը յայտնելով, որ Լեռնային Ղարաբաղի խնդիրի շուրջ Հայաստանի եւ Ատրպէյճանի երկխօսութիւնը կը յանգեցնէ դրական



*Երեք նախագահներու հանդիպումը Մոսկուայի մէջ: Ձախէն աջ՝ Ալիեւ, Փութին եւ Քոչարեան*

արդիւնքներու, Ռուսաստանի ղեկավարը ընդգծած է, որ Ռուսաստան պատրաստ է դառնալ Երեւանի եւ Պաքուի միջեւ ձեռք ձգուած որեւէ համաձայնութեան երաշխաւոր:

Ըստ ԻԹԱՐ-ԹԱՍՍ-ի, նոյն տեսակէտը յայտնած են Հայաստանի եւ Ատրպէյճանի նախագահներ Ռոպերթ Քոչարեանի եւ Հէյտար Ալիեւ:

Հայաստանի եւ Ատրպէյճանի նախագահներու միջեւ հանդիպման աւարտին Ռուսաստանի նախագահի մամուլի ծառայութիւնը տարածեց յայտարարութիւն մը, ուր ըսուած է. «Այսօրուայ հանդիպումը բարձր մակարդակով հայ-ատրպէյճանական երկխօսութեան շարունակութիւնն էր, որն սկսուել է 1999 թ. Ապրիլին Մոսկուայում ԱՊՀ գագաթնաժողովի անցկացման շրջանում: Ատրպէյճանի եւ Հայաստանի ղեկավարների

➪ 4

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԵՒ ԳԱՐԵԳԻՆ Բ. ԿԱԹՈՂԻԿՈՍ ԺԱՄԱՆԵՑԻՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ



*Ձախէն՝ Պոլսոյ Պատրիարք Մեսրոպ Արք. Մութաֆեան, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետը, Հ.Հ. նախագահ Ռոպերթ Քոչարեան, Պաղեստինի ազգային իշխանութեան նախագահ Եասէր Արաֆաթ՝ Երուսաղէմի Հայոց Պատրիարք Թորգոմ Արք. Մանուկեան:*

*Երուսաղէմի Հայոց Պատրիարք Թորգոմ Արք. Մանուկեանի Հրաւէրով, Յունուար 17-ին Սրբավայրեր ժամանեց Հայաստանի Հանրապետութեան նախագահ Ռոպերթ Քոչարեան՝ մասնակցելու համար Քրիստոսի ծննդեան 2000-ամեակի հանդիսութեան, որ ըստ հին տոմարի, Հայոց Պատրիարքարանը կը նշէ Յունուար 18-ի երեկոյեան:*

*Երեքշաբթի Յունուար 18-ին, Պաղեստինի ազգային իշխանութեան նախագահ Եասէր Արաֆաթ՝ Բեթհեղէմի մէջ ընդունեց Հայաստանի Հանրապետութեան նախագահն ու պատուիրակութեան անդամները: Կարճատեւ զրոյցի աւարտին Արաֆաթ Հայաստանի նախագահին յանձնեց յիշատակի մետալ մը:*

*Այս այցելութեան շրջագիծէն ներս ունեցաւ նաեւ աշխատանքային հանդիպումներ Իսրայէլի վարչապետ Եհուտ Պարաքի եւ Իսրայէլի նախագահ Էյզար Ուայզմընի հետ:*

*Նոյն նպատակով, օր մը առաջ Երուսաղէմ ժամանեց նաեւ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետը:*

*Նորին Սրբութիւնը, որ ինքնաշարժով Յորդանանէն Երուսաղէմ առաջնորդուած էր Թորգոմ Պատրիարք Մանուկեանի կողմէ, դիմաւորուեցաւ Պոլսոյ Պատրիարք Մեսրոպ Արք. Մութաֆեանի, եպիսկոպոսներու, Միաբան Հայրերու, Պաղեստինի եւ Իսրայէլի պետական ներկայա-*

➪ 2

## ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ԴԷՊՔԵՐՈՒՆ ՀԱՐՑՈՎ ԿՐՆԱՆ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԻԼ ՊԵՏԱԿԱՆ ԱՅԼ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ ԵՒՍ

*Վերջերս Հայաստանի Հանրապետութեան զինուորական դատախազ Գագիկ Ջհանգիրեան մամլոյ ասուլիսի մը ընթացքին ներկայացուց Հոկտեմբեր 27-ի դէպքերու հետ կապուած նախաքննութեան ընթացքը եւ արդիւնքները:*

*Դատախազը շեշտեց, որ քննչական խումբը կ'աշխատի բացառապէս օրէնքի շրջագիծէն ներս: Ան յայտնեց, որ ոճրագործութեան չարժառիթներու վերաբերեալ 10-է աւելի վարկածներէն մի քանին արդէն իսկ ժխտուած են:*

*Զինուորական դատախազի նախնական գնահատականով, Հոկտեմբեր 27-ին փորձ կատարուած է գաւթելու իշխանութիւնը: Նախապէս որոշուած է ահաբեկչութիւնը կազմակերպել Հոկտեմբեր 13-ին, որը ինչ-ինչ պատճառներով չէ իրականացուած:*

*Զինուորական դատախազի խօսքերով, կը քննարկուի նաեւ կատարուած արարքի ճիշդ որակման խնդիրը եւ գուցէ, նախաքննութեան աւարտական փուլին ճշգրտուի մեղադրեալներուն առաջադրուած մեղադրանքները եւ որակման մէջ որոշ փոփոխութիւններ կատարուի:*

*Ինչ կը վերաբերի ձերբակալութիւններուն, Դատախազ Ջհանգիրեան յայտնեց, որ մանաւանդ Ազգային Հեռատեսիլի փոխտնօրէն Յարութիւն Յարութիւնեանի շուրջ, լրատուական աղմուկ հանելը աւելորդ է եւ չի նպաստեր գործին: Ան չբացառեց, որ յառաջիկայ օրերուն տեղի ունենան նոր ձերբակալութիւններ, այդ շարքին նաեւ «մէկ-երկու պետական պաշտօնեաներ»:*

*Դատախազը յայտնեց, որ Նաիրի Յունանեան, որ «զղջացել է կատարածի համար», թիւ մէկ մեկուսարանէն տեղափոխուած է Ազգային Անվտանգութեան մեկուսարան՝ մարտավարական նկատառումներով:*

## ՀԱՆԴԻՊՈՒՄ

Անցեալ Հինգշաբթի գիշեր առիթը ունեցանք հանդիպում մը ունենալու «Տիգրան Չուհաճեան Հետազօտական Կեդրոն»ի տնօրէն, դերասան, բեմադրիչ Ժիրայր Բաբազեանի հետ:

Ան Փարիզէն գալով Եգիպտոս, կը շարունակէ զբաղիլ Տիգրան Չուհաճեանի «Արշակ Բ.» օփերայի ձեռագրին վրայ, մշակելով թատերագիտական բաժինը:

Ինչպէս նախապէս անդրադարձած էինք, սոյն գործին համար մեծ աշխատանք կը տանի Գահիրէի մէջ երաժշտագէտ Հայկ Աւագեան, յատկապէս երաժշտական բնագիրները վերականգնելու գծով: Հետեւաբար անոնք միասնաբար ձեռնարկելով վերականգման այս գործին, կը տեղեկանանք թէ, մօտ ատենէն պիտի հրատարակուի

➪ 3

**ՖՐԱՆՍԱ**

## ՀՀ ԴԵՍՊԱՆ ԷՏՈՒԱՐՏ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ

### ՀԱՄԱՏԵՂՈՒԹԵԱՆ ԿԱՐԳՈՎ ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԱԾ Է ՆԱԵՒ ԻՍՐԱՅԷԼԻ ՄԷՋ

*ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանի Յունուար 11-ի հրամանագրով Ֆրանսայի Հանրապետութեան մէջ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Էտուարտ Նալպանտեան, համատեղութեան կարգով, արտակարգ եւ լիազօր դեսպան նշանակուած է նաեւ Իսրայէլի պետութեան մէջ (նստավայրը՝ Փարիզ):*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՀՐԱԺԱՐԵԼՈՒ ՆՊԱՏԱԿ ՉՈՒՆԻ

*Վերջին օրերուն Հայաստանի քաղաքական շրջանակներուն մօտ դարձեալ սկսած է արծարծուիլ Հանրապետութեան նախագահի հրաժարականի եւ արտահերթ ընտրութիւններ կատարելու հարցը: Սակայն, նախագահ Քոչարեան մերժեց իր հրաժարականի մասին եղած կոչերը ու իր մամլոյ խօսնակ՝ Վահէ Գաբրիէլեան եկաւ յայտարարելու թէ, «Այս պահուն լուրջ պատճառներ չկան նախագահի հրաժարականի եւ կամ նոր ընտրութիւններ կատարելու համար: Նախագահը կը կատարէ սահմանադրութեամբ իրեն տրուած բոլոր պարտաւորութիւնները եւ նպատակ չունի հրաժարելու»:*

*Միւս կողմէ Հայաստանեան մամուլին մէջ երեւցող լուրերու համաձայն, արտահերթ նախագահական ընտրութիւններ կայանալու պարագային, կառավարական շրջանակներու թեկնածուն պիտի դառնայ Մեծն Բրիտանիոյ մօտ Հայաստանի արտակարգ եւ լիազօր դեսպան ու նախկին վարչապետ Արմէն Սարգսեան: Ըստ որոշ տեղեկութիւններու, Վարչապետ Արամ Սարգսեան վերջերս Լոնտոն կատարած այցելութեան ընթացքին, այս նպատակով խորհրդակցած է դեսպան Սարգսեանի հետ: Հանդիպումին ներկայ եղած են «Երկրապահ» Կամաւորական Միութեան մի քանի ղեկավարներ եւ նոյն աղբիւրներու համաձայն, դեսպան Արմէն Սարգսեան նոյնիսկ տրուած է իր նախնական համաձայնութիւնը:*

## ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆ ԱՌԱՋԱՐԿՈՒՄ Է ՆԱԽԱԳԱՀԱԿԱՆ ՆՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Յունուարի 19-ին ԱԺՄ գրասենեակում հրաւիրուած մամուլի ասուլիսի ժամանակ այդ կուսակցութեան նախագահ Վազգէն Մանուկեանը Հայաստանի վիճակի երեք բնութագրական մեկնաբանութիւն արեց. օրէցօր վատթարացող տնտեսական կացութիւն եւ ժողովրդի համար անելանելի դրութիւն, անիշխանութիւն, որի պայմաններում մարդկանց որոշակի խմբեր վերջին պատառն են փախցնում երկրից եւ նախագահի քաղաքական յենարանի բացակայութիւն:*

*Ըստ Վազգէն Մանուկեանի, նշուած պատճառներով Հայաստանը հասել է կործանման եզրին, մարդիկ հեռանում են երկրից եւ այլն: Իրավիճակը շտկելու մի քանի առաջարկներ են անում քաղաքական ուժերը, ինչպէս՝ Սահմանադրութեան փոփոխում, ԱԺ նոր ընտրութիւններ, նախագահի հրաժարական:*

**ԹՈՒՐՔԻԱ**

## ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ ԱՅՑԵԼԵՑ ԿԱՐՍ

*2000թ. Յունուարի 17-20-ը ՀՀ Շիրակի մարզի պատուիրակութիւնը պատասխան այցով մեկնել էր Թուրքիայի Կարսի մարզ:*

*Ինչպէս ԱՐՄԷՆՓՐԵՍԻՆ յայտնեցին Արտաքին Գործոց նախարարութեան հասարակայնութեան հետ յարաբերութիւնների վարչութիւնից, պատուիրակութիւնը ղեկավարում էր Շիրակի փոխմարզպետ Սէյրան Պետրոսեանը: Պատուիրակութեան կազմում էին Գիւմրիի քաղաքապետ Վարդան Ղուկասեանը, ՀՀ ԱԳՆ Մերձաւոր եւ Միջին Արեւելքի վարչութեան պետ Գրիգոր Առաքելեանը, ՀՀ ԱԳՆ Թուրքիայի բաժնի վարիչ Արսէն Աւագեանը, ՀՀ կառավարութեան տարածքային կառավարման եւ տեղական ինքնակառավարման վարչութեան պետի տեղակալ Կարէն Քոչարեանը, Շիրակի մարզպետի խորհրդական Վոլոդիա Առուշանեանը:*

*Պատուիրակութիւնը հանդիպումներ է ունեցել Կարսի նահանգապետ Նեվզաթ Թուրանի, Կարսի քաղաքապետ Նաիֆ Ալիպէյօղլուի, Կովկաս համալսարանի ռեկտոր Նէճաթի Քայայի, ինչպէս նաեւ Կարսի մարզի գործարար շրջանակների հետ: Այցի հիմնական նպատակն էր կարգաւորել եւ ակտիւացնել Շիրակ-Կարս միջ-մարզային համագործակցութիւնը:*

*Յունուարի 19-ին Կարս եւ Գիւմրի քաղաքները պաշտօնապէս ճանաչուել են «եղբայր» քաղաքներ: Կարսի քաղաքապետ Նաիֆ Ալիբեյօղլուն տեղեկացրել է, որ Կարսի նահանգի մեճլիսը վաւերացրել է 1999 թուականի Սեպտեմբերի 8-ին Գիւմրիում ստորագրուած Կարս եւ Գիւմրի քաղաքների միջեւ համագործակցութեան վերաբերեալ 10 կէտից բաղկացած յուշագիրը: Յունուարի 19-ին Կարսի եւ Գիւմրիի քաղաքապետերը ստորագրել են եւս մէկ արձանագրութիւն, որի համաձայն միջմարզային համագործակցութեան կարգաւորման եւ ակտիւացման նպատակով ստեղծուել է կոորդինացիոն կենտրոն, որը հայկական կողմից ղեկավարելու է Շիրակի մարզպետի խորհրդական Վոլոդիա Առուշանեանը, իսկ թուրքական կողմից՝ Կարսի Պորսայի նախագահ Իսմէթ Ջելիքն ու գործարար Ալիճան Ալիպէյօղլուն: Նոյն յուշագրի համաձայն, մէկ ամսից տեղի կ'ունենայ Կարս, Իգտիր, Արտուին, Արտահան, էրզրում քաղաքապետերի եւ գործարար շրջանակների այցը Շիրակի մարզ:*

*Կարսի եւ Գիւմրիի քաղաքապետերի միջեւ համաձայնութիւն է ձեռք բերուել, որ մինչեւ սահմանի բացումը Շիրակի մարզի եւ Կարսի նահանգի միջեւ սահմանամերձ առեւտուրը կ'ընթանայ թուրք-վրացական սահմանակէտերի միջոցով:*

*Հայկական պատուիրակութիւնն այցելել է Կարսում գտնուող հայկական պատմական յուշարձանները, ինչպէս նաեւ՝ ուղեւորուել Անի:*

## ՊՐ. ԺԻՐԱՅՐ ՊԱԼԱԵԱՆ ԱՐԿԱԾԻ Կ'ԵՆԹԱՐԿՈՒԻ

Անկէ մօտ երկու շաբաթ առաջ խումբ մը հայ երիտասարդներ, տօնական արձակուրդի առիթով Շարմ Էլ Շէյխ ճամբորդած էին քանի մը օրուան համար: Սակայն դժբախտաբար վերադարձի ճամբուն վրայ՝ Ռաս Սէտրի շրջակայքը, ինքնաշարժը կը տապալի: Մէջը գտնուող չորս երիտասարդներն ալ կը ցնցուին բնականաբար, սակայն անոնցմէ ամենէն աւելի կը վնասուի մեր շրջանակի լաւագոյն երիտասարդներէն, Հ.Մ.Մ.-ական՝ Պր. Ժիրայր Պալաեան, որ Միաց. Նահանգներէն գալով, Գահիրէ ժամանած էր համալսարանական կիսամեայ արձակուրդը ծնողքին հետ անցընելու:

Ան Սուէզի հիւանդանոցը կը փոխադրուի, ուր անմիջական միջցառման մը կ'ենթարկուի, եւ ապա քանի մը ժամ ետք, զինք կը փոխադրեն Հելիոպոլսոյ «Էլ Հայա» հիւանդանոցը: Հոն Պր. Ժիրայր կը վերագտնէ իր առողջութիւնը սակայն մասնագէտ բժիշկը տեսնելով որ փորին միջնամաշկը պատռած է, քանի մը օր ետք կը ստիպուի ստոծանիի վիրաբուժական գործողութեան ենթարկել: Բարեբախտաբար գործողութիւնը լաւապէս կը յաջողի եւ Պր. Ժ. Պալաեան անցեալ Շաբաթ օր իր բնակարանը վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ այժմ:

Խմբագրութեանս կը մնայ «անցած ըլլայ» ըսել իրեն եւ իր ծնողաց, շաբաթաթերթիս տնօրէն՝ Պր. Մարտիկ Պալաեանի եւ իր տիկնոջ՝ Սոնայի, մաղթելով մեր սիրելի Ժիրայրին շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում, որպէսզի ան կարողանայ Պոսթոն վերադառնալ, իր ուսումը շարունակելու:

Ա.

## ՆՇՈՒԵՑ ՊԱՔՈՒԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՋԱՐԴԵՐԻ 10-ԱՄԵԱԿԸ

*Յունուարի 18-ին մի քանի հարիւր փախստականներ, ԱԺ պատգամաւորներ, կուսակցութիւնների, Հայաստանում ԼՂՀ մշտական ներկայացուցչութեան դէմքերը, ՀՀ նախագահի աշխատակազմի ղեկավար Սերժ Սարգսեանը, տարածքային կառավարման նախարար Խոսրով Յարութիւնեանը, փախստականների վարչութեան պետ Գագիկ Եգանեանը, պաշտօնատար այլ անձինք Ծիծեռնակաբերդում յարգանքի տուրք մատուցեցին Պաքուի ջարդերում զոհուածների յիշատակին:*

*10 տարի առաջ Ատրպէյճանի մայրաքաղաքում մէկ շաբաթ շարունակւում էին հայերի ջարդերը: 150 հայ սպաննուեց, Պաքուի մօտ 200 հազար հայ բնակիչ բռնագաղթեց, ապաստանեց Հայաստանում եւ այլ երկրներում:*

*Ծիծեռնակաբերդի բարձունքում, զոհերի յիշատակը յաւերժացնող խաչքարի մօտ պատարագ մատուցեց Սիոն վարդապետ Ադամեանը: Հաւաքուածներին խօսք ուղղեց գրող, հրապարակախօս Զօրի Բալայեանը: Նա յիշեցրեց, որ նոյն օրերին Նախիջեւանում կորցրել ենք հինաւուրց Ջնաբերդ գիւղը: Միայն այդ գիւղում 65 հայ է զոհուել: Յիշատակելով Ատրպէյճանի կազմում միւս հայաբնակ բնակավայրերում, շրջաններում կատարուած ջարդերը, նա ասաց. «Պաքու 90-ը՝ Հայաստան, հայութիւն, հայ աշխարհ հասկացողութիւն է: Ես համոզուած եմ, որ պատմութիւնը ոչ մի բան չի մոռանում եւ թոյլ չի տայ, որ մենք մոռանանք: Պատմութիւնը մեզ համար վերացական հասկացութիւն չէ, այլ գործուն զէնք, եւ այդ զէնքը պէտք է միշտ մեզ հետ լինի»:*

*Ոճրագործութիւնների կազմակերպիչների համար Զօրի* 3

**ԱՍՈՒԱՆ**

## ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾ ԱՐՄԷՆ ԿՐՊՈՅԵԱՆ ԵԳԻՊՏՈՍԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ԱՍՈՒԱՆԻ 5-ՐԴ ՍԻՄՓՈԶԻՈՄԻՆ

«Էլ Ահրամ» օրաթերթէն կը տեղեկանանք, որ յառաջիկայ 1 Փետրուար 2000-էն սկսեալ եւ երկու ամիսներու տեւողութեամբ, Ասուանի մէջ տեղի կ'ունենայ տեղւոյն անուան քանդակագործութեան միջազգային 5-րդ Սիմփոզիոմը, կազմակերպութեամբ Եգիպտոսի մշակոյթի նախարարութեան եւ Ասուանի կառավարչութեան:

Սիմփոզիոմին այս տարուան աշխատանքներուն կը մասնակցին, Եգիպտոսի կողքին՝ ինը երկիրներէ ժամանած քանդակագործ արուեստագէտներ: Միջազգային չափանիշով հանրածանօթ արուեստագէտներ Գերմանիայէն, Զուիցերիայէն, Ֆրանսայէն, Դանիայէն, Մեքսիքայէն, Ռումանիայէն, Ճափոնէն, Չեխիայէն եւ Յորդանանէն կը մասնակցին Ասուանի 5-րդ քանդակագործութեան Սիմփոզիոմին:

Առ այդ, հաճոյքով կը տեղեկանանք, թէ սիմփոզիոմին այս տարուան մասնակից եգիպտական ներկայացուցչական եռանդամ կազմին մաս կը կազմէ Եգիպտահայ երիտասարդ արուեստագէտ քանդակագործ Արմէն Կրպոյեանը:

Նորանոր յաջողութիւններ կը մաղթենք մեր սիրելի արուեստագէտին:

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԵՒ ԳԱՐԵԳԻՆ Բ. ԿԱԹՈՂԻԿՈՍ ԺԱՄԱՆԵՑԻՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ

1



*Յորդանանի թագաւոր Ապտուլլահ շքանշան կը յանձնէ Վեհափառ Հայրապետին*

*ցուցիչներուն եւ միւս յարանուանութիւններու ներկայացուցիչներուն կողմէ: Աղն ու հացը օրհնելէ ետք, Վեհափառ Հայրապետին տրուեցաւ Գրիգոր Շղթայակիր Պատրիարքի նուիրական շուրջառը: Ապա Հայ սկաուտներու եւ ժառանգաւորաց վարժարանի սաներու երկար թափօրը, ուխտաւորներու եւ տեղացի հայերու խուռներամ բազմութեան մէջէն դժուարաւ առաջնորդեց Հայոց Հայրապետը դէպի Սրբոց Յակոբեանց Աթոռանիստ Մայր Եկեղեցին: Նորին Սրբութիւնը, առընթերութեամբ Երուսաղէմի եւ Պոլսոյ Պատրիարքներուն, հրաշափառի արարողութեամբ մուտք գործեց եկեղեցին, Սուրբ Յակոբ Գլխադիր Առաքեալի գերեզմանը եւ իր ուխտը կատարելէ ետք, նուիրապետական աթոռներու գահակալները բարձրացան աւագ խորան:*

*Թորգոմ Պատրիարքի «բարի գալստեան» խօսքերէն ետք, Վեհափառ Հայրապետը կարդաց իր ողջոյնի ուղերձը: Ապա սկսաւ աջահամբոյր, որ տեւեց մօտաւորապէս երկու ժամ: Սփիւռքահայեր եւ զանազան երկիրներէ եկած աւելի քան 600 հայ ուխտաւորներ մի առ մի մօտեցան Վեհափառ Հայրապետի սուրբ աջն առնելու:*

*Երեկոյեան, վանքի սեղանատան մէջ միաբանական ընթրիք սարքուեցաւ: Պատուոյ սեղանին վրայ նստած էին Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետը, Երուսաղէմի Պատրիարքը, Պոլսոյ Պատրիարքը, Կիլիկիոյ Կաթողիկոսի ներկայացուցիչ Գերշ. Տ. Սահակ Արքեպիսկոպոս Այվազեան եւ Սուրբ Աթոռի Լուսարարապետ Գերշ. Տ. Նուրհան Եպիսկոպոս Մանուկեան: Բաժակաճառեր խօսեցան Թորգոմ Պատրիարք, Մեսրոպ Պատրիարք եւ Գարեգին Բ. Կաթողիկոս:*

*Նախքան Երուսաղէմ ժամանելը, Վեհափառ Հայրապետը այցելեց նաեւ Յորդանան, ուր Յորդանանի Ապտուլլահ Թագաւորին կողմէ իրեն շնորհուեցաւ երկրի բարձրագոյն շքանշանը:*

*Վեհափառ Հայրապետը Պատարագ մատուցեց Ամմանի Հայոց Եկեղեցւոյ մէջ եւ հանդիպում ունեցաւ ամմանահայ գաղութի ներկայացուցիչներուն հետ:*

*Յունուար 14-ին, Գարեգին Բ. ուխտագնացութիւն կատարեց դէպի տէրունական սրբավայրեր:*

## ՀԱՅՐԵՆԻՔԸ ԿԸ ՍԿՍԻ ՏՈՒՆԷՆ

1

*կանխարգիլած կ'ըլլանք ամէն տեսակի ուծացում եւ ազգային նահանջ: Զգլանանք մեր ազգային տարրական պարտականութենէն՝ մեր տան պատերուն տեղադրելով Հայաստան փոխադրող լուսապատկերներ:*

*Ամէն հայու տուն Հայաստանի կրնայ վերածուիլ, եթէ ամէն ծնողք նախանձախնդիր այդ յոյժ էական խնդիրով: Այլապէս ի՞նչպէս նոր սերունդը պիտի կապուի ու առնչուի իր հողին, հեռաւոր ու կարօտեալ հայրենիքին: Այդ պարագային դժուար պիտի չըլլար հայ աշակերտին բացատրել, թէ Արարատը մեր սրբազան լեռն է, մեր ազգային խտէալն է:*

*Իրարու կրնանք նուիրել Արարատի լուսանկարը, որպէսզի ամէն տուն քայլ մը աւելի հայանայ:*

*Հայրենիքը կը սկսի տունէն, տունը փոքր հայրենիք է, իսկ մեր հայրենիքը Հայաստանն է: Հայաստանը թող ըլլայ իւրաքանչիւրին տան մէջ, որպէսզի օր մը գալիք սերունդները փափաքին ըլլալ իրենց մեծ տան մէջ՝ Հայաստանի մէջ:*

*Այս կէտէն չէ՞ որ կը սկսի ազգային դաստիարակութիւնը: Իսկ ազգային դաստիարակութեան առաջին ուսուցիչը ծնողքը չէ՞ միթէ:*

**ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

# ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆՆ ՈՒ

## Ռոպերթ Ամիրխանեանի Բացառիկ Համերգը

Աւանդութիւն դարձած սոյն երիտասարդական Փառատօնը, որ ամէն տարի կը կայանայ Ս. Մննդեան օրը, այս տարի տեղի ունեցաւ Հինգշաբթի 6 Յունվ. 2000-ի երեկոյեան, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան հիմնադրութեան 80-ամեակի արժանավայել հանդիսութեամբ, «Պըրքտանեան» հանդիսասրահին մէջ, հովանաւորութեամբ եգիպտոսի Հայոց Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի, նախագահութեամբ Տէր եւ Տիկ. Անդրանիկ Մեսրոպեանի ու մասնակցութեամբ եգիպտահայ վարժարաններու աշակերտութեանց եւ Միութիւններու երիտասարդաց յանձնախումբերուն: Ներկայ էին արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան եւ իր ազնիւ Տիկինը, համայնքիս ներկայացուցչական դէմքեր եւ հոծ բազմութիւն մը: Ձեռնարկին Հայաստանէն յատկապէս հրաւիրուած էին բազմատաղանդ երաժշտագէտ, Քոմբոզիթէօրներու Միութեան նախագահ Ռոպերթ Ամիրխանեան եւ Հայրենի հանրածանօթ մեներգչուհի Շուշան Պետրոսեան:

Յայտագրի առաջին մասը սկսաւ Վ. Թէքէեան Երիտ. Յանձնախումբի ողջոյնի կուռ խօսքով՝ Նաթալի Ասլանեանի կողմէ: Ապա Հ.Գ.Մ.-ի եւ Կոկանեան Սրահի Երիտասարդացի անդամներէն՝ Քրիսթին Թատրոս, Անի Պօղոսեան եւ Լեւոն Աւագեան, եռրորդութիւն մը կազմած, հասկացողութեամբ եւ ներդաշնակութեամբ արտասանեցին երաժշտախառն երկու քերթուածներ Պարոյր Սեւակի հայրենաշունչ «Մտորումներ»էն, ընկերակցութեամբ Տ. Մանսուրեանի երաժշտութեան: Հաճելի էր ունկնդրել Նուպարեան Ազգ. վրժ.ի կողմէ՝ Թալին Յակոբեանի մեներգը, դաշնակի նուագակցութեամբ՝ Իրինա Զալեանի, որ զգացումով երգեց, արժանանալով ներկաներուն գնահատանքին: Տիգրան Երկաթ Ուսանողաց մարմնի անունով, հեզաճկուն մենապարով մը խանդավառեց ներկաները Քրիսթին Մանուկեան: Գալուստեան Ազգ. վրժ.ի աշակերտութեան կողմէ յաւ առոգանութեամբ եւ ապրումով ասմունքեց Անճելինա Գազանճեան, Ս. Կապուտիկեանի գլուխ-գործոցներէն՝ «Խօսք իմ որդուն»ը: Ապա բեմ բարձրացաւ Յասմիկ Հալաճեան եւ ոգեւորութեամբ երգեց երկու հայկական երգեր, դաշնակի նուագակցութեամբ Կարի Պօհճալեանի: Անոնք նախ ներկայացուցին Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէր Մշակ. Երիտ. Մարմինը, ապա երկրորդ երգով՝ «Յուսաբեր»ի Մշակ. Ընկ.եան «Մաղկաստան»ը:

Մեներգին յաջորդեց Նուպարեան վրժ.ի ներկայացուցած դաշնամուրային գեղեցիկ նուագածութիւնը: Արփինէ եւ Տարթեւիկ Շապոյեան քոյրերը քառաձեռն զուգանուագածութեամբ առինքնեցին հանդիսականները: «Զանգեզուր» պարախումբը իր մասնակցութիւնը բերաւ Աղեքսանդրիայէն երկու կատակ պարերով: Նախ պարեցին «Շալախօ»ն համարձակութեամբ եւ ինքնավստահ քայլերով Գառին Պասմաճեան եւ Այգ Գալայճեան, ապա «Բօյքա»ն՝ իր երգիծական սրամտութիւններով կատարեցին Ալին Գալայճեան եւ Քրիսթին Մանուկեան: Երկու պարերը կ'ընդմիջուէր Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգ. վրժ.ի հայագիտական նիւթերու ուսուցիչ, սուրիահայ Աւետիս Տիպանի սրինգի ինքնատիպ կատարումը, որ արժանացաւ ներկաներուն ջերմ գնահատանքին:



Ռոպերթ Ամիրխանեան

Հայ Գեղ. Միութեան ժրաջան ատենապետ Պր. Գրիգոր Մարգարեան շնորհաւորական եւ շնորհակալական խօսքերով, բեմ հրաւիրեց օրուայ բանախօսին, Աղեքսանդրիոյ ազնիւ ազգայիններէն՝ Տիկին Մարի - Ալին Պէնօհանեանի, իր պատգամը տալու հայ երիտասարդութեան: Ան իր շահեկան խօսքին մէջ անդրադառնալէ ետք յոյսի եւ հաւատքի մասին, շեշտը դրաւ Հայաստանի Քրիստոնէութեան 1700-ամեակին վրայ: Խօսելով ազգապահպանման անհրաժեշտութեան, Տիկին Պէնօհանեան ընդգծեց, թէ պէտք է նկատի ունենանք երեք հիմնական ազդակներ՝ եկեղեցին, դպրոցը եւ հայկական ակումբները, հայը հայ պահելու համար սփիւռքի մէջ, ինչ որ պիտի նպաստէ հայապահպանման գործին: Շնորհալի բանախօսուհին արտայայտուելէ ետք հայրենիքի հզօրացման շուրջ, կարգ մը առաջարկներ ներկայացուց հայու պատկանելիութիւնը ամրապնդելու մասին

Կարճ դադարէ մը ետք, սկսաւ յայտագրի երկրորդ բաժինը, որ ամբողջութեամբ յատկացուած էր հայրենի հիւրերու ելոյթին:

Իրապէս բացառիկ համերգ մըն էր, որ կատարեց Ռոպերթ Ամիրխանեան, մասնակցութեամբ հայրենի սիրուած երգչուհի Շուշան Պետրոսեանի: Ամիրխանեան բլլալով հեղինակը բազմաթիւ արդի երգերու երաժշտութեանց, մեզի ներկայացուց տարբեր ժանրեր ժամանակակից ընկալութեամբ, պանծացնելով հայ երգարուեստը: Ան նուագեց, երգեց եւ իր նուագակցութիւնը բերաւ Շուշանի կատարումներուն : Տիրապետելով դաշնամուրին, ան արժանացաւ ներկաներուն որոտընդոստ ծափահարութեանց:

Ապա Շ. Պետրոսեան բեմ գալով, իր ձայնին ջերմութեամբ գերեց ներկայ ունկնդիրները: Շնորհալի երգչուհին ինքնավստահութեամբ, խոր ապրումով եւ մանաւանդ հիանալի մեկնաբանութեամբ կ'երգէր: Ան զգացումով կը գեղգեղէր շարք մը ընտիր հայրենի երգեր, հրահրելով մեր հայրենակարօտ սրտերը, որոնց մեծամասնութիւնը յօրինած է Ամիրխանեան:

Արդարեւ հանդիսականները խորապէս ոգեւորուած ու տպաւորուած կը մեկնէին սրահէն:

Մեր անկեղծ գոհունակութիւնը կը յայտնենք յարգելի հիւրերուն եւ Փառատօնի կազմակերպիչներուն ու բոլոր անոնց որոնք իրենց մասնակցութիւնը բերին սոյն յաջող Յոբելինական հանդիսութեան:

**Ա. Մ.**

---

**ՊՈ - ԱՐԱՔՍ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ**

# ՎԵՆԵՏԻԿԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ԱՄԱՌՆԱՅԻՆ ԽՏԱՑԵԱԼ ԴԱՍԸՆԹԱՑՔԸ ԿԸ ԲՈԼՈՐԷ ՏԱՍՆՀԻՆԳ ՏԱՐԻ

**(1986 - 2000)**

Տասնհինգ տարիներ առաջ հիմը դրուեցաւ Վենետիկի Կա' Ֆոսկարի Պետական Համալսարանին մէջ Հայ Լեզուի եւ մշակոյթի ամառնային խտացեալ դասընթացքին, որ ամէն տարի կրկնուելով Օգոստոս ամիսին, առանց ընդմիջումի, յառաջիկայ Օգոստոսին կը բոլորէ 15-ամեակը: Ծրագրուած է մասնաւոր տօնախմբութեամբ մը ոգեկոչել այս բարեբաստիկ տարեդարձը նոյնինքն դասընթացքին օրերուն եւ յատկապէս 11-13 Օգոստոս: Կը նախատեսուին ակադեմական եւ յարակից հանդիսութիւններ: Կը խորհինք որ նման ոգեկոչում մը պատեհ եւ հաճելի առիթը պիտի ընծայէ շատերու՝ վերհանդիպելու եւ իրար վերագտնելու վենետիկեան նոյն կախարդիչ մթնոլորտին մէջ: Մեծապէս ողջունելի պիտի բլլայ ներկայութիւնը դասընթացքի մասնակցած նախկին սաներու, ուսուցչական եւ դասախօսական կազմին մաս կազմած գործակիցներու, բարերարներու, քաջալերողներու, բարեկամներու եւ համակիրներու: Մասնակցութեան բոլոր ծախսերը կը վերաբերին մասնակցողներուն: Կազմակերպութիւնը պիտի ջանայ ապահովել հանրային կամ մասնաւոր կառոյցներու մօտ կեցութեան եւ ապրուստի առաւել նպաստաւոր պայմաններ: Այս նկատառմամբ յանձնարարելի են՝ ըստ կարելւոյն՝ կանխօրօք կատարուած դիմումներն ու արձանագրութիւնները, կարենալ այդ պայմանները ապահովելու համար: Յաջորդաբար պիտի տրուին մանրամասնութիւններ ծրագրի եւ դիմումի ու արձանագրութեան ձեւակերպումներու մասին:

**ԴԻՒԱՆ ՊՈ-ԱՐԱՔՍ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ**

---

# ՀԱՆԴԻՊՈՒՄ

**1**

Գահիրէի մէջ, Հ.Բ.Ը.Միութեան մեկենասութեամբ:

Մտերմիկ մեր զրոյցը ընդհանուր առմամբ կը կեդրոնանար սոյն շահեկան ժառանգութեան աշխատանքին շուրջ: Իսկ երբ հարցուցինք, թէ ի՞նչ են վերջին լուրերը թատերական կեանքէն ներս, տաղանդաւոր արուեստագէտը յայտնեց, թէ վերջերս ձեռնարկած է Յ. Պարոնեանի՝ «Արեւելեան ատամնաբոյժը» կատակերգութեան բեմադրութեան գործին, ֆրանսերէն լեզուով: Ան յարեց թէ ֆրանսացի դերասանները գմայլանքով եւ մեծ ոգեւորութեամբ կը կատարեն իրենց հերթական փորձերը, որ մօտերս պիտի ներկայացուի Փարիզի ծանօթ մէկ բեմի մը վրայ:

Սիրելի հիւրը բլլալով եգիպտահայ, մօտէն հետաքրքրուեցաւ համայնքային կեանքով եւ ապա նիւթին առանցքը առաւ Հայրենիքի այսօրուայ կացութիւնը:

Բարի գալուստ եւ կեցութիւն կը մաղթենք մեր սիրելի բարեկամ Ժիրայր Բաբազեանին, որ պիտի մեկնի յառաջիկայ Երկուշաբթի 31 Յունուարին:

**2** **ՆՇՈՒԵՑ ՊԱՔՈՒԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՋԱՐԴԵՐԻ 10-ԱՄԵԱԿԸ**

Բայլեանը միայն մի փրկութիւն է տեսնում՝ պայքարանք եւ գդջում: Իսկ մենք՝«մեր գործունէութեամբ, մեր ժողովրդով ու պետութեամբ պէտք է ամէն ինչ անենք, որպէսզի տեղի ունենայ այդ պայքարանքը»:

---

# ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Կիրակի 16 Յունուար 2000, կ.ե. ժամը 6-ին, Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ, ի ներկայութեան հոծ թիւով հրաւիրեալներու, տեղի ունեցաւ պսակադրութիւնը աղեքսանդրահայութեան արժանաւոր երիտասարդներէն՝

## ՊՐ. ԱՐԹՕ ԹՕՍՈՒՆԵԱՆԻ
## ընդ
## ՕՐ. ԼԻՒՍԻ ՃՌՃՌԵԱՆԻ

խաչեղբայրութեամբ՝ փեսին կրտսեր եղբօր Պր. Կարօ Թօսունեանի:

Գեղեցկօրէն զարդարուած եկեղեցիին մէջ, արարողութեանց նախագահեց եգիպտահայոց բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան: Ձեռնադրութիւնը կատարեց Աղեքսանդրիոյ հոգեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեան: Հարսանեկան երգեցողութիւնները կատարուեցան «Ս. Գրիգոր Լուսաւորիչ» երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ Պր. Նշան Վարդեանի եւ երգեհոնահարութեամբ Տիկ. Ջուարթ Գալայճեանի, որոնց աւարտին Սրբազան Հայրը շնորհաւորեց նորապսակ ամոլը եւ հայրական իր օրհնութիւններուն ընկերացուց իր յորդորները:



Գիշերը, մեծ թիւով ազգականներու եւ բարեկամներու տեղի ունեցաւ ճոխ խրախճանք - հիւրասիրութիւն մը Աղեքսանդրիոյ «RAMADA RENAISSANCE» ծովեզերեայ պանդոկի «QUAIET BEY» շքեղ սրահին մէջ:

Մինչ ընթրեաց ճոխ սեղաններու շուրջ բոլորուած հրաւիրեալներուն կը սպասարկուէր խմիչքներ ու հարսնեւորները երջանկութեան կենացներ կը պարպէին, միւս կողմէ D.J.-ի առաջնորդութեամբ կը նուագուէր ընտիր պարեղանակներ: Եւ ահա ճերմակ մուխերու ընդմէջէն, հարսն ու փեսան բացումը կը կատարէին պարահարդակին: Ապա հայ թէ օտար այլազան երգերը ներկաներուն ոտքի հանեց շուրջպարի, աւելի ջերմացնելով մթնոլորտը:

Համադամ ընթրիքի սպասարկութեան յաջորդեց հսկայ կարկանդակը կիսելու արարողութիւնը շրջապատուած ջահակիրներով եւ շամփանիայի հիւրասիրութեամբ զայն բաժին ինկաւ բոլորին: Խրախճանքը շարունակուեցաւ մինչեւ առաւօտեան ժամերը, ուր հարսնեւորները կը մեկնէին սրահէն ջերմագին մաղթանքներ ընելով ամուսնացեալ զոյգին եւ անոնց հարազատներուն:

Սիրելի փեսան որդին է Վահրամ եւ Անի Թօսունեաններուն: Ողբ. Վահրամ աղեքսանդրահայութեան նուիրեալ անդամներէն էր. ազգային գործիչ, Թեմական Ժողովի նախկին անդամ, Քաղաքական Ժողովի ատենապետ եւ Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Նուպար մարզարանի ատենապետ մինչեւ իր մահը՝ 1987 տարին: Պր. Արթօն իր հայեցի ուսումը ստացած է Պօղոսեան Ազգ. վրժ.ին մէջ ապա յաճախած «Վիքթորիա գոլէճ» եւ շրջանաւարտելով, ստացած է երկրորդական վկայական: Իր համալսարանական ուսումը ստացած է «ARAB ACADEMY FOR MARITIME SCIENCES»՝ «պիզնէս»ի ճիւղը: Այժմ ան սեփականատէրերէն է «CECIL» կօշկավաճառատուներուն:

Իսկ շնորհալի հարսը Լիւսին՝ դուստրն է աղեքսանդրահայութեան սիրուած ու յարգուած ազգայիններէն՝ Տէր եւ Տիկ. Դանիէլ եւ Մայտա Ճռճռեաններուն: Ան իր հայեցի դաստիարակութիւնը ստացած է Պօղոսեան վարժարանին մէջ իսկ երկրորդական ուսումը՝ «Ինկլիշ կըրլզ գոլէճ»էն ներս: Ապա համալսարանական ուսումը ստացած է Աղեքսանդրիոյ համալսարանի Կերպարուեստի (Ֆնուն էլ կամիլա) բաժինը, աւարտելով բեմայարդարման ճիւղը: Այժմ ան կը պաշտօնավարէ Աւստրիոյ օդանաւային ընկերութեան մէջ:

Այս բարեբաստիկ առիթով, խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորապսակ ամոլը, երջանիկ կեանքի մաղթանքներով եւ իրենց ծնողաց՝ Տէր եւ Տիկ. Պարգեւ եւ Անի Սարգիսեաններուն եւ Տէր եւ Տիկին Դանիէլ եւ Մայտա Ճռճռեաններուն. նաեւ մեծ մայրերուն, Տիկիններ՝ Ալիս Ճամճեանի, Աղաւնի Ճռճռեանի եւ Լիւսի Պալաեանի ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր հարազատներուն:

---

## «ՋԱՀԱԿԻՐ» ՇԱԲԱԹԱԹԵՐԹԸ ՆՈՒԷՐ ՁԵՐ ՍԻՐԵԼԻՆԵՐՈՒՆ

Այն ազգայինները, որոնք կը փափաքին Նոր Տարուան առթիւ «Ջահակիր» նուիրել Հայաստանի կամ արտասահմանի իրենց ազգականներուն եւ բարեկամներուն, կրնան հաղորդակցիլ թերթիս վարչութեան (հեռ. 4530327) ամէն օր կ. ա. ժամը 10էն 5 (ի բաց առեալ Ուրբաթ օրերէն): Իսկ Աղքսանդրիոյ մէջ, ընկ. Վրէժ Սէֆէրեանի:

Տարեկան բաժանորդագրութեան սակն է 40 եգ. ոսկի (օդային փոստով):

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ՊՕՂՈՍ ՕՐԱՆՃԵԱՆ**

ընդ

**ՕՐ. ՇԱՔԷ ԱՍԱՏՈՒՐԵԱՆԻ**

ՆԻՒ ԵՈՐՔ - ԳԱՀԻՐԷ 8 Յունուար 2000

*Այս բարեբաստիկ առիթով խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորապսակ ամոլը, իրենց ծնողները՝ Տիկին Թագուհի Օրանճեանն ու Տիկին Աննա Ասատուրեանը, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր հարազատները, մաղթելով հարսին ու փեսին անամպ եւ երջանիկ կեանք:*

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ՎԻԳԷՆ ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ**

ընդ

**ՕՐ. ՑԱՍՄԻԿ ՀԱՄԱՄՃԵԱՆԻ**

ՀԱԼԷՊ 23 Յունուար 2000

*Այս ուրախ առիթով «Ջահակիր» ջերմօրէն կը շնորհաւորէ նորապսակ ամոլը, անոնց ծնողաց՝ Տէր եւ Տիկին Կարապետ Փիլիպպոսեանի եւ Տէր եւ Տիկին Պօղոս Համամճեանի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր հարազատներուն, մաղթելով հարսին ու փեսին արեւշատութիւն եւ անամպ կեանք:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այսու կու գամ իմ խորին շնորհակալութիւններս յայտնել Եգիպտահայոց բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի, Գահիրէի հոգեւոր հովիւ Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեանի, Հայկական Ընթերցասրահի վարչութեան, Գահիրէի Հ.Բ.Ը. Միութեան վարչութեան, Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան, Նուպարեան եւ Մերձանեան վարժարաններու ուսուցիչ-ուսուցչուհիներուն եւ պաշտօնեաներուն, Նուպարեան Ազգ. վարժարանի Տիկնանց Խնամակալութեան, «Այծեմնիկ» Հանգստեան Տան վարչութեան, Գահիրէի Հ.Մ.Ը.Մ.-Նուպար Մարզարանի վարչութեան, «Արեւ» օրաթերթի եւ «Ջահակիր» շաբաթաթերթի խմբագրութեանց, մասնագէտ բժիշկ Նասէր Րասմիի, որուն շնորհիւ յաջողեցաւ վիրաբուժական գործողութիւնս եւ կարողացայ վերագտնել առողջութիւնս, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք անկեղծօրէն հետաքրքրուեցան եւ անձամբ, ծաղկեփունջով կամ բացիկ ղրկելով, հեռաձայնով, հեռագրով եւ նուիրատուութիւններ ընելով, ապաքինում մաղթեցին ինծի, արկածի ենթարկուելուս առիթով:*

*Շնորհակալութիւն եւ քաջառողջութիւն կը մաղթեմ բոլորին:*

**ԺԻՐԱՅՐ ՊԱԼԱԵԱՆ**

## ՌՈՒՍԱՍՏԱՆ ՊԱՏՐԱՍՏ Է ԴԱՌՆԱԼ ՀԱՅԱՍՏԱՆ-ԱՏՐՊԷՅՃԱՆ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԵԱՆ ԵՐԱՇԽԱՒՈՐԸ

1 ⇨

անմիջական շփումները ապացուցեցին իրենց բարձր արդիւնաւէտութիւնը: Արդէն յաջողուել է շատ բանի հասնել: Հակամարտութեան կողմերի միջեւ աճում է փոխվստահութիւնը, կատարւում է ռազմագերիների փոխանակում, ամրապնդւում է հրադադարի ռեժիմը, Ատրպէյճանի եւ Հայաստանի արտաքին քաղաքական եւ ռազմական գերատեսչութիւնների ղեկավարների կանոնաւոր շփումներ են սկսուել: Իսկ գլխաւորն այն է, որ երկու երկրների ղեկավարները հետեւողականօրէն ձգտում են Լեռնային Ղարաբաղի հանգոյցի փոխզիջումային լուծման:

ԱՊՀ անդամ երկիրներու գագաթի ժողովը տեղի ունեցաւ Յունուար 25-ին: Հանդիպումի աւարտին տեղի ունեցած մամլոյ ասուլիսի մը ընթացքին մասնակից ղեկավարներէն շատեր հանդէս եկան Համագործակցութեան նկատմամբ քննադատական դիտողութիւններով:

Մասնաւորապէս, Հայաստանի նախագահ Ռոպերթ Քոչարեան այն կարծիքը յայտնեց, որ գագաթի ժողովի ընթացքին տեղի ունեցած բանավէճերը ցոյց տուին, որ Համագործակցութիւնը պէտք է աւելի արդիւնաւէտ աշխատի այնպիսի ուղղութիւններով, ինչպիսիք են անվտանգութեան ապահովումն ու պայքարը ահաբեկչութեան դէմ, ինչպէս նաեւ ԱՊՀ անդամ երկիրներու տնտեսական ինտեգրացման իրականացումը:

Յունուար 25-ի երեկոյեան Քրեմլինի մէջ տեղի ունեցաւ Ռուսաստանի նախագահի պաշտօնակատար Վլատիմիր Փութինի հանդիպումը Հայաստանի նախագահ Ռ. Քոչարեանի հետ: Այս հանդիպման ժամանակ քննարկուեցան երկկողմ տնտեսական համագործակցութեան հարցերը:

Հայաստանի նախագահի գլխաւորած պատուիրակութեան կազմին մէջ էին վարչապետ Արամ Սարգսեան, արտաքին գործոց նախարար Վարդան Օսկանեան, պաշտպանութեան նախարար Վաղարշակ Յարութիւնեան, գիտանտեսութեան նախարար Գագիկ Շահպազեան եւ պաշտօնատար այլ անձինք:

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ Աղեքսանդրիոյ մեր սիրելի ընկերներէն եւ Հ.Մ.-Ը.Մ.-Նուպարի ատենապետ ընկեր Տոքթ. Կարպիս եւ Տիկ. Մարի Թօսունեաններ անցեալ երկուշաբթի 24 Յունվ. 2000-ին, բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Սերճ:

Այս ուրախ առիթով «Ջահակիր» իր ջերմ խնդակցութիւնները կը յայտնէ նորածին մանկան ծնողքին, մեծ ծնողաց՝ Տիկին Շաքէ Թօսունեանին եւ Տէր եւ Տիկ. Աբրահամ Աբգարեաններուն, ինչպէս նաեւ բոլոր հարազատներուն, արեւշատ եւ երջանիկ կեանք մաղթելով նորածինին:

## «ՋԱՀԱԿԻՐ» ԻՆ

Պր. Ժիրայր Պալաեանի պատահած արկածէն ազատած ըլլալուն ուրախ առթիւ, չուտափոյթ ապաքինման մաղթանքներով կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկ. Եդուարդ Դաւիթեան | 50 |
| Տէր եւ Տիկ. Պարգեւ Սարգիսեան | 50 |
| Ընկեր Վրէժ Սէֆէրեան | 50 |

Պր. Արթօ Թօսունեան ընդ Օր. Լիւսի Ճօճոեանի ամուսնութեան ուրախ առթիւ, վասն խնդակցութեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկ. Հայկ եւ Սոնա Մանուկեաններ (Գանատայէն) | 50 |
| Տիկին Արմինէ Աւագեան եւ որդին Պր. Հայկ | 25 |

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ընկեր Տոքթ. եւ Տիկին Մարի Թօսունեաններ առջինեկ մանչ զաւակով մը բախտաւորուելուն՝ Սերճի ծննդեան ուրախ առթիւ, ընկերներ Պետրոս եւ Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հ.Մ.Ը.Մ. Նուպար (Աղեքս.) | 15 |
| «Ջահակիր»ին | 15 |

Իրենց սիրեցեալներուն՝ Ողբ.ք Յովհաննէս եւ Նոյեմզար Գիպարեաններու, Երուանդ եւ Բերրոնիա Ճէզվէճեաններու ու Կարապետ Ճոճոեանի, անոնց քաղցր յիշատակներուն, Տէր եւ Տիկին Սարգիս Գիպարեան (Պոսթըն, Մ.Ն.), կը նուիրեն.

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |



## ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Միաց. Նահանգներէն՝ Խաժակ Պալըքճանի կազմած գիրքը **«ՀԱՄԱՌՕՏ ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՍՏՈՒԳԱԲԱՆԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆ»**-ը՝ Ամերիկեան Հետազօտական Ուսմունք-Համադրոյթ, ի մասին հաւատքի, լեզուաբանութեան եւ արմենագիտութեան, **«A BRIEF COMPARATIVE ETYMOLOGICAL DICTIONARY»**: Անձնական հրատարակութիւն, 165 էջ՝ Մերիլէնտ, Միացեալ Նահանգներ:

-Շնորհակալութեամբ ստացած ենք հալէպահայ ծանօթ գրող Թորոս Թորանեանի գործերէն՝

ա)«**ԹՈՂ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԽՕՍԻ**» 182 էջ՝ Հալէպ, 1998:

բ)«**100-ԱՄԵԱՅ ԱՊՐՈՂ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ՝ ԱԼԵՔ ԳԸԼԸՃԵԱՆ**» 80 էջ՝ Հալէպ, 1999:

գ)«**ԿԵԱՆՔԻ ԿԵՌՄԱՆՆԵՐՈՎ**» (պատուածքներու ժողովածու) 115 էջ՝ Հալէպ, 1999:

Բոլոր գիրքերն ալ հրատարակութիւնն են Հալէպի «ԿԻԼԻԿԻԱ» տպագրատան:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Տիար Յովակիմ Սիրքէճեան եւ դուստրը՝ Օր. Ալիս Սիրքէճեան (Գահիրէ), Փրոֆ. Փիթըր եւ Արմինէ Անսուրեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Ստեփան եւ Անի Շանլեան եւ զաւակունք (Գանատա), Տիար Երուանդ Սիրքէճեան եւ զաւակունք՝ Նաթալի եւ Մելանի Սիրքէճեան, Տէր եւ Տիկին Առլէն եւ Ալիս Իշխանեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Հարի Օհնիկեան եւ զաւակունք, Տիկին Մէյ Օհնիկեան եւ զաւակունք (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Համբարձում Համբարձումեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Անդրանիկ Միրզայեան եւ զաւակունք (Աւստրալիա), ինչպէս նաեւ Անսուրեան, Շանլեան եւ Իշխանեան ընտանիքները ու համայն սգակիր պարագաները, այսու կը ծանուցանեն, թէ յառաջիկայ Կիրակի 30 Յունուար 2000-ի առաւօտեան ժամը 10.30-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ, յաւարտ Ս. Պատարագի, Հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրելի կողակցին, մօր, մեծմօր, մեծ մեծմօր, քրոջ, մօրաքրոջ եւ ազգականին,*

**ՈՂԲ. ԱՐԱՔՍԻ ՍԻՐՔԷՃԵԱՆԻ**

**(ԾՆԵԱԼ ՊՈՒՐՍԱԼԵԱՆ)**

*մահուան քառասունքի լրման առթիւ:*

*Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Գահիրէի Ազգային Իշխանութիւնս կը ծանուցանէ թէ Կիրակի 6 Փետրուար 2000-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի Թեմական Ժողովներու նախկին անդամ եւ Քաղաքական Գործադիր Ժողովներու նախկին Ատենապետին, Ս. Ներսէս Շնորհալի չքանչանի չքանչանակիր յաւէտ ողբացեալ՝

**ԲԻՒԶԱՆԴ ԲՐՈՒՏԵԱՆԻ**

հոգւոյն ի հանգիստ, անոր մահուան քառասունքի լրման առթիւ:

**ԳԱՀԻՐԷ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ**

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը, տնօրինութեամբ եւ կարգադրութեամբ Գահիրէի եկեղեցւոյ Հոգաբարձութեան, կը ծանուցանէ թէ Կիրակի 6 Փետրուար 2000-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի եկեղեցւոյս «ՇՆՈՐՀԱԼԻ» Երգչախումբի բազմամեայ եւ վաստակաշատ Մեներգչուհի Ողբացեալ՝

**ԶԱՊԷԼ ՀԱՅՐԱՊԵՏ ՌՇՏՈՒՆԻԻ**

**(ԾՆԵԱԼ ՊԱՐՈՆԵԱՆ)**

հոգւոյն ի հանգիստ, անոր մահուան Բ. տարելիցին առթիւ:

**ԳԱՀԻՐԷ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ**

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՊՐ. ՀԱՅԿԱԶ ՍՐԱՊ ՍԱՐԳԻՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԵՐԱՐ

Աղեքսանդրիոյ Իպրահիմիյէի թաղամասին մէջ կ'ապրին Տէր եւ Տիկ. Հայկազ որդի Սրապի եւ իր Տիկինը Եսթեր Սարգիսեանները: Մանկութեան ժամանակ բռնագաղթի եւ որբութեան ամէն տեսակ չարչարանքներ կրելէ ետք, յարատեւ աշխատանքով եւ խնայողաբար տնտեսելով, կարողացած են չորս յարկանի սեփական շէնք մը կառուցանել:

Տարիքի յառաջացմամբ, այս պատուական զոյգը, տասնամեակներու ընթացքին իրենց ամբողջ խնայողութիւնը, ինչպէս նաեւ շէնքը յանձնեցին Աղեքսանդրիոյ Ազգային Առաջնորդարանին, որպէսզի նկատառման արժանի գումարի եկամուտը օգտագործուի յօգուտ Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ պայծառութեան եւ Պօղոսեան Ազգային վարժարանին, ի մխիթարութիւն Տէր եւ Տիկին Հայկազ եւ Եսթեր Սարգիսեաններու հայրենակիցներուն:

Պատմական Հայաստանի Կարին քաղաքին մէջ ծնած այս ընտիր հայորդին, Հայկազ Սրապի Սարգիսեանը եւ իր շնորհալի կինը հռչակուած են ազգային բարերարներ:

**ԴԻՒԱՆ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ-ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Գահիրէի Քաղաքական Ժողովը, գործադրելով «Վ. Զագրճեան», Հայերէն եւ Հայագիտական նիւթերու ուսուցչաց ֆոնտին յատուկ կանոնագրութեան տրամադրութիւնները, որոշեց 1999 Յունուար-Յունիս վեցամսեայ շրջանին համար, Գալուստեան, Նուպարեան եւ Պօղոսեան վարժարաններէն ներս այս նիւթերը դասաւանդող ուսուցիչ-ուսուցչուհիներուն Եգ. ոսկի 4878 քաջալերական յատկացում կատարել Երկուշաբթի 17 Յունուար 2000-էն սկսեալ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Առաջնորդարաններուն միջոցաւ:*

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**



دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

# ԵՂԵՌՆԻ ՎԵՐԱՊՐՈՂՆԵՐԸ 3 ՄԻԼԻԱՌ ՏՈԼԱՐԻ ԴԱՏ ԿԸ ԲԱՆԱՆ

*1915-ի Եղեռնի վերապրողներ 3 միլիառ տոլարի դատ կը բանան Նիւ Եորք «Life»-ի ապահովագրական ընկերութեան դէմ: Եղեռնէն 84 տարիներ ետք, Մարթին Մարութեան, որ 84 տարեկան է, դատը բացած է ստանալու համար այն գումարները որոնք անարդարօրէն պահուած էին իրմէ: Դատը դաշնակցային դատարանի մօտ է, յանուն այն բոլոր ջարդուածներուն, որոնց վերապրողները երբեք չեն հատուցուած: (Մարթին Մարութեան ընդդէմ «New York Life Insurance Company» թիւ CV-99-12073):*

*20-րդ դարու սկիզբին, սոյն ապահովագրական ընկերութիւնը իր գործունէութիւնը տարածեց Օսմանեան Կայսրութեան սահմաններէն ներս: Հայերը որոնք Թուրքիոյ մէջ կ'ապրէին, ապահովագրուեցան:*

*1914-ի աւարտին, ընկերութիւնը կը գանձէր 10,000-ի չափ Հայերու ծախուած «Policy»-ներ: 1915-ին, Թրքական կառավարութիւնը կը կազմակերպէր 1,5 միլիոն Հայերու սպանդը: Ջոհուածներու մէջ, ապահովագրուածներ ալ կային: Ընկերութիւնը երբեք չվճարեց հատուցում վերապրողներուն:*

*Մարութեանի հօրեղբայրը 1910-ին գնեց 3000 ֆրանսական ֆրանքի համազօր ապահովագրութիւն: Մարութեան ընտանիքը 75 տարիներէ ի վեր կը հետապնդեն սոյն դատը, առանց հատուցում ստանալու:*

*Մարութեանի դատը կը հետապնդուի Կլէնտէյլ բնակող փաստաբան Վարդգէս Եղիայեանի կողմէ, որ 1970-էն ի վեր կ'աշխատի Եղեռնի հետ կապուած դատական հարցերով: Ան այս գործը հիմնած է դեսպան Մորկընթաուի վկայութեան հիման վրայ, ըստ որուն Թալէաթ Փաշա կը հաստատէր թէ բոլոր Հայերը ջարդուած են եւ վերապրողներ չունին:*

*Ապահովագրական ընկերութիւնը երբեք իր խոստումները չյարգեց, այն գումարներու շուրջ որոնք հասան 3 միլիառ տոլարի:*

ՀԱՅԱՍՏԱՆ

# ԱՐՄԱՆ ԿԻՐԱԿՈՍԵԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿԱԾ ՆՈՐ ՀԱՏՈՐԸ

*Հայաստանի Հանրապետութեան Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի պատմութեան ինստիտուտի որոշումով հրատարակուած է պատմագէտ ու Յունաստանի մօտ Հայաստանի Հանրապետութեան նախկին արտակարգ եւ լիազօր դեսպան Արման Կիրակոսեանի հեղինակութեամբ «Բրիտանական Դիւանագիտութիւնը եւ Արեւմտահայութեան Խնդիրը» խորագրով 510 էջերէ բաղկացած հատորը: Գիրքը կ'անդրադառնայ 19րդ դարու 30-ական թուականներէն մինչեւ 1914 թուականի Առաջին Համաշխարհային Պատերազմի սկիզբի պատմութեան զարգացումներուն:*

*Ինչպէս կը նշուի հատորի սկիզբը, սոյն աշխատութեան մէջ՝ Երեւանի, Մոսկուայի, Լոնտոնի եւ Աթէնքի արխիւներու գրադարաններու մէջ պահպանուող նորայայտ եւ առաջին անգամ շրջանառութեան մէջ դրուող Անգլիայի դիւանագիտական վաւերագրերու, գիտական եւ յուշագրային գրականութեան, Անգլիայի եւ Միացեալ Նահանգներու ժամանակի պարբերականներու նիւթերու հիման վրայ կը վերլուծուին Անգլիայի քաղաքականութեան ձեւաւորման ու զարգացման հիմնական ուղղութիւնները՝ Օսմանեան Կայսրութեան, իր ազգային փոքրամասութիւններու, մասնաւորապէս արեւմտահայութեան հանդէպ անգլիական դիւանագիտութեան գործունէութիւնը, դերն ու նշանակութիւնը Հայկական Հարցի արծարծման տարբեր փուլերու մէջ:*

*Անգլիայի քաղաքականութիւնը հարցի հանդէպ կը քննուի միջազգային յարաբերութիւններու զարգացման, Օսմանեան Կայսրութեան ներքին ու արտաքին քաղաքականութեան, արեւմտահայութեան իրավիճակի եւ ազատագրական շարժման ընդհանուր ֆոնի վրայ:*

*Այս աշխատանքը նախատեսուած է պատմաբաններու, դիւանագէտներու եւ ընթերցող շրջանակներու համար:*

*Հեղինակը այս գործի համար օգտագործած է արխիւային բազմաթիւ նիւթեր, որոնց շարքին՝ 243 հրապարակուած փաստաթղթեր, 40 պարբերականներ, ծանօթագրութիւններ, օրագրեր, յուշագրութիւններ, կենսագրութիւններ, մենագրութիւններ, գրքեր, յօդուածներ:*

*Հատորի տպաքանակը 1.000 օրինակ է:*

# ՀՀ ՏՕՆԵՐՈՒ ԵՒ ՅԻՇԱՏԱԿՄԱՆ ՕՐԵՐԸ՝ ՄԱՅԻՍ 1-Ը ՎԵՐԱԿԱՆԳՆԵԼՈՒ ԱՌԱՋԱՐԿ

Փետրուարի 4-ին տեղի ունեցաւ Ազգային Ժողովի պետական-իրաւական հարցերի յանձնաժողովի նիստ, որը վարում էր յանձնաժողովի նախագահ Վիկտոր Դալլաքեանը:

«Հայաստանի Հանրապետութեան տօների եւ յիշատակման օրերի մասին» ՀՀ օրէնքում փոփոխութիւնների առաջարկ էր ներկայացրել ՀԿԿ խմբակցութիւնը, ըստ որի տօների շարքում պէտք է յիշատակուեն Մարտի 8-ը՝ որպէս Կանանց միջազգային օր, Մայիսի 1-ը՝ որպէս Աշխատաւորների համերաշխութեան օր, եւ Նոյեմբերի 29-ը՝ որպէս երկրորդ հանրապետութեան օր: Յանձնաժողովի մի շարք անդամներ օրինագծի հեղինակներին առաջարկել են փաստաթղթից հանել միայն Նոյեմբերի 29-ին վերաբերող դրոյթը: Նշենք, որ Ապրիլի 7-ի վերաբերեալ, որը մայրութեան եւ գեղեցկութեան օրն է, որեւէ առարկութիւն չի եղել:

↳ 4

# ԳԱՌՆԻԿ ԻՍԱԳՈՒԼԵԱՆԸ ՉԻ ԶԱՐՄԱՆԱՅ, ԵԹԷ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 27-Ի ԱՌՆՉՈՒԹԵԱՄԲ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՆ ՇԱՏ ԲԱՐՁՐԱՍՏԻՃԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐ

Ներկայիս ներքաղաքական ճգնաժամի արմատները պէտք է փնտռել 1990 թուականից ձեւաւորուած իրավիճակում, երբ հասարակութիւնը բաժանուած է երկու մասի՝ քաղաքական ընտրախաւի փակ համակարգ, որը տնօրինում է երկիրը եւ ժողովուրդ, որից իրականում ոչինչ կախուած չէ, գտնում է «Ազգային անվտանգութիւն» կուսակցութեան համանախագահ Գառնիկ Իսագուլեանը:

Գ.Իսագուլեանը նշեց նաեւ, թէ Հոկտեմբերի 27-ի դէպքերին անմիջական առնչութիւն ունեցող անձանց շրջանակը շատ աւելի լայն է, քան փորձ է արւում ներկայացնել հասարակութեանը, եւ ինքը ամենեւին չի զարմանայ, եթէ այդ գործով ձերբակալուեն շատ բարձրաստիճան պաշտօնեաներ եւ ազդեցիկ կուսակցութիւնների ներկայացուցիչներ:

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՊԱՐՏՔԸ 876 ՄԻԼԻՈՆ ՏՈԼԱՐ

Անցնող տարուայ ընթացքին Հայաստանի արտաքին պարտքը աճած է 13 տոկոս, հասնելով 876 միլիոն տոլարի, կը հաղորդէ «Ազատութիւն» ռատիոկայանը: Ըստ նախատեսութիւններու, այդ գումարը մինչեւ այս տարուայ աւարտը պիտի հասնի 938 միլիոն տոլարի:

Հայաստանի կառավարութիւնը պարտքերու տոկոսներուն համար այս տարի պիտի ծախսէ 78 միլիոն տոլար, որ կը կազմէ 2000 թուականի պետութեան ընդհանուր մուտքի մէկ հինգերորդը:

Վարչապետ Արամ Սարգսեան կ'ակնկալէ միջազգային կազմակերպութիւններու միջոցաւ այս տարի ձեռք ձգել յաւելեալ 120 միլիոն տոլարի վարկ, որու 85 միլիոնը պիտի գայ Միջազգային Դրամատունէն:

Այլ տեղեկութիւններու համաձայն, Յունուար ամսուայ ընթացքին պետական գանձ մուտք գործած գումարները կազմած են նախատեսուածի միայն մէկ չորրորդը:

## 20 ՀԱԶԱՐ ՇԻՇ ՀԱՅԿԱԿԱՆ ՔՈՆԵԱԿ Կ'ԱՐՏԱՀԱՆՈՒԻ ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ

«Great Ararat Company» ընկերութիւնը պատուէր է ստացել ԱՄՆ-ից 20 հազար շիշ հայկական սովորական եւ տեսակաւոր քոնեակ կ'ուղարկուի Լոս Անճելըս: 0,75 լիտր տարողութեամբ յատուկ շշեր պատրաստւում են Պուլկարիայում, իսկ պիտակները՝ Իսրայէլում: Երեք տարի առաջ մենք սկսեցինք զրոյից, իսկ այժմ ամսական արտադրում ենք մօտ 200 հազար շիշ զանազան քոնեակներ, -ԱՐՄԷՆՓՐԵՍԻ թղթակցին ասաց գործարանի տնօրէն Սամուէլ Գոռոյեանը:

Վերջերս ընկերութիւնը մեծ յաղթանակ տօնեց Ռուսաստանում կայացած միջազգային մրցոյթում նրա արտադրանքն արժանացաւ ինը ոսկէ մետալի: Իսկ տեսակաւոր «Տիգրան Մեծ» քոնեակին շնորհուեց «Մեծ մրցանակ»: Այստեղ քոնեակներն արտադրւում են դասական եղանակով, հնեցուած, ընտիր սպիրտից՝ Հայաստանի եւ Ռուսաստանի վաստակաւոր գինեգործ Ռոբերդ Ազարեանի բաղադրատոմսերով:

## ՍՓԻՒՌՔԱՀԱՅ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՈՒ ՎԵՐԱՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐԸ ՊԻՏԻ ՎԵՐՍԿՍԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Փետրուար 8-ին, Հայաստանի Կրթութեան եւ Գիտութեան նախարարութեան Սփիւռքի բաժնի պետ Եուրի Նաւոյեան մամուլին յայտարարեց, որ տասը տարուան ընդմիջումէ ետք, այս տարի Երեւանի մէջ պիտի վերսկսին սփիւռքահայ ուսուցիչներու վերապատրաստութեան դասընթացքները: Նաւոյեան ըսաւ, որ ի տարբերութիւն խորհրդային ժամանակաշրջանի նոյն ծրագրէն, դասընթացքները պիտի կատարուին նախակրթարանի, միջնակարգի եւ երկրորդական վարժարաններու ուսուցիչներու մակարդակով: Դասընթացքները պիտի կատարուին ամառը, եւ իւրաքանչիւր խումբ Հայաստան պիտի մնայ մէկ ամիս: Դասերը պիտի վարեն Հայաստանէն եւ Սփիւռքէն հրաւիրուած մասնագէտներ, իսկ կազմակերպչական հարցերով

↳ 4

ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ

# ԿԸ ՄԻԱՒՈՐՈՒԵ՞Ն «ԱՐՑԱԽԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՎԵԹԵՐԱՆՆԵՐԸ» ԵՒ ԵՐԿՐԱՊԱՀԸ

*Արցախի Պատերազմի Վեթերանների Միութեան նախաձեռնող խումբը տարածել է յայտարարութիւն, որում ասուած է,*

*«Սիրելի հայրենակիցներ*

*Այս վերջին օրերին Արցախեան Պատերազմի Վեթերանների «Երկրապահ» միութեան մի խումբ անդամներ բանակցութիւններ էին վարում մեզ հետ՝ գոյութիւն ունեցող երկու հասարակական կազմակերպութիւնների հիման վրայ մէկ ընդհանուր կազմակերպութիւն ստեղծելու առաջարկով: Յունուարի 29-ին յայտարարութեամբ հանդէս եկաւ Սամուէլ Բաբայեանը, որը կոչ է անում պատերազմի վեթերանների երկու միութիւնների պատասխանատուներին եւ անդամներին միաւորուելու մէկ կազմակերպութեան մէջ:*

*Մենք ուզում ենք մէկ անգամ եւս յիշեցնել, որ մեր կազմակերպութիւնը ի հակակշիռ «Երկրապահ»-ի չի ստեղծուել, եւ պառակտումը, եթէ այդպիսին իրօք կայ, մեզնից չի գալիս: Մենք վստահ էինք, որ «Երկրապահ»-ի շատ անդամներ անդամագրուելու են մեր կազմակերպութեանը, որովհետեւ ճշմարտութիւնը պահանջում է ասել, որ «Երկրապահ» միութիւնը վատ է կատարել իր առաքելութիւնը: Այդպէս էլ եղաւ, եւ այսօր, տարածքային ժողովներից յետոյ, մեր շարքերում կայ մօտ 7 հազար մարդ, ու այդ թիւը, վստահ ենք, աւելի է աճելու:*

*Մենք չահագրգռուած ենք, որպէսզի երկրում տիրի կայունութիւն, բոլորս լինենք միասնական. համախմբուենք ԼՂՀ իշխանութիւնների շուրջը եւ միասին չէնացնենք Արցախը, կերտենք նրա լուսաւոր ապագան: Այդ ուղղութեամբ արուած ցանկացած առաջարկ ընդունում ենք սիրով: Մեր կազմակերպութեան դռները բաց են բոլորի առջեւ»:*

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ՄԻՋԵՒ

*Երէկ երկօրեայ պաշտօնական այցով Հայաստան ժամանեց Ռուսաստանի Դաշնութեան Անվտանգութեան խորհրդի քարտուղար Սերգէյ Իվանովը: ՀՀ նախագահի նստավայրում կայացաւ նրա հանդիպումը նախագահի աշխատակազմի ղեկավար, ՀՀ նախագահին կից Անվտանգութեան ազգային խորհրդի քարտուղար Սերժ Սարգսեանի հետ, որից յետոյ կողմերի միջեւ ստորագրուեց համագործակցութեան մասին արձանագրութիւն: Ստորագրման արարողութեանը ներկայ էին*



Վաղարշակ Յարութիւնեան



Հայկ Յարութիւնեան

*ՀՀ պաշտպանութեան նախարար Վաղարշակ Յարութիւնեանը, ներքին գործերի նախարար Հայկ Յարութիւնեանը, արտգործնախարար Վարդան Օսկանեանը, Հայաստանում ՌԴ արտակարգ եւ լիազօր դեսպան Անատոլի Դրիւկովը, պաշտօնատար այլ անձինք:*

*Փաստաթղթի ստորագրումից յետոյ կայացած ճեպազրոյցում Ռուսաստանի Անվտանգութեան խորհրդի քարտուղարը նշեց, որ համաձայնագիրը նախատեսում է համագործակցութիւն այն բոլոր հարցերով, ինչով զբաղւում են երկու երկրների անվտանգութեան խորհուրդները՝ յատուկ ծառայութիւնների աշխատանքի համակարգում, պաշտպանութիւն, այդ թւում նաեւ՝ առողջապահական, բնապահպանական, երկրի տնտեսական անվտանգութիւն:*

# ՄԵԾ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆ ՏՐՈՒԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԻՐԱՒԱՊԱՀ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ՀԱՄԱՏԵՂ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ

Նախագահ Ռոպերթ Քոչարեանը Փետրուարի 3-ին ընդունեց ՌԴ ներքին գործերի նախարար Վլադիմիր Ռուշայլոյի գլխաւորած պատուիրակութեանը, որը Հայաստան է ժամանել երկու երկրների իրաւապահ գերատեսչութիւնների համատեղ կոլեգիայի նիստին մասնակցելու եւ համագործակցութեան վերաբերեալ փաստաթղթեր ստորագրելու նպատակով:

Մեծ նշանակութիւն տալով Հայաստանի եւ Ռուսաստանի իրաւապահ մարմինների համատեղ աշխատանքին, հանրապետութեան Նախագահը վստահութիւն է յայտնել, որ միասնական ջանքերի շնորհիւ յանցաւորութեան դէմ պայքարը շատ աւելի արդիւնաւէտ կը դառնայ:

# ՎԱՐՉԱՊԵՏԸ ԸՆԴՈՒՆԵՑ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՆՔԻ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ

*Փետրուարի 1-ին վարչապետ Արամ Սարգսեանն ընդունեց Համաշխարհային պանքի պատուիրակութեանը՝ Հայաստանում Համաշխարհային պանքի ներկայացուցիչ Օուէյս Սաստաթի գլխաւորութեամբ:*

*Ինչպէս ԱՐՄԷՆՓՐԵՍԻՆ յայտնեցին ՀՀ կառավարութեան տեղեկատուութեան եւ հասարակայնութեան հետ կապերի վարչութիւնից, քննարկուել են կառուցուածքային բարեփոխումների չորրորդ վարկի տրամադրմանն առնչուող խնդիրներ:*

*ՀՊ-ի ներկայացուցիչները նշել են, որ վարկային միջոցները պէտք է նպատակաուղղուեն տնտեսութեան խթանմանը, մասնաւորապէս՝ նոր աշխատատեղերի ստեղծմանը, մասնաւոր հատուածի զարգացմանը, ծառայութիւնների մատուցման որակի բարձրացմանը եւ սոցիալական բարեփոխումներին: Կարեւորուել է մասնաւորեցման գործընթացի արդիւնաւէտութեան բարձրացումը, օտարերկրեայ ներդրումների եւ արտահանման ծաւալների մեծացումը եւ գործարարութեան համար նպաստաւոր պայմանների ապահովումը: Քննարկուել են նաեւ ոռոգման համակարգի բարեփոխումներին առնչուող խնդիրներ:*

*Վարչապետ Արամ Սարգսեանը, կարեւորելով համագործակցութիւնը միջազգային ֆինանսական ինստիտուտների հետ, նշել է, որ ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը հնարաւոր է միայն նոր աշխատատեղերի ստեղծմամբ եւ վերարտադրութիւն կազմակերպելու միջոցով:*

# ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ՅԱՐՈՒԹԻՒՆ Ա. ՄՈՎՍԷՍԵԱՆ**
**ԸՆԴ**
**ՕՐ. ՍԻՒԶԱՆ Վ. ԹԱՆԻՈՒՍԻ**

Գահիրէ — Կիրակի 30 Յունուար 2000

*Այս ուրախ առիթով խմբագրութիւնս իր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնէ նորապսակ ամոլին, իրենց ծնողաց՝ Տիկին Լիւսի Մովսէսեանի եւ Տէր եւ Տիկին Ուիլիէմ Թանիուսի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր հարազատներուն, մաղթելով հարսն ու փեսին անամպ եւ երջանիկ կեանք:*

# ՄԱՐԶԱԿԱՆ

## ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԱՒԱԳՈՅՆ ՖՈՒԹՊՈԼԻՍՏԸ

Հայաստանի մարզական մեկնաբանները, հիմնուելով կատարուած հարցախոյզերու եւ մարզական նիշերու վրայ, 1999 տարուան լաւագոյն ֆութպոլի մարզիկի տիտղոսը շնորհեցին Երեւանի «Արարատ» խումբի դարպասապահ Յարութիւն Աբրահամեանին:

Այս տիտղոսին կը յաւակնէին Երեւանի «Ցէմէնթ»ի պաշտպան՝ Ռոմիկ Խաչատուրեան եւ Կիւմրիի «Շիրակ»ի միջնապահ Արթիւր Պետրոսեան: Սակայն Յարութիւն Աբրահամեանի ստացած կէտերը շատ աւելի էին միւս թեկնածուներէն:

## Որո՞նք Են Ամէնէն Հարուստ Թէնիսիստները

Թէնիսի միջազգային ֆետերասիոնը հրապարակեց ամէնէն շատ դրամական մրցանակներ նուաճած թէնիսիստներու ցանկերը, Դեկտեմբեր 1999ի դրութեամբ:

**ԱՅՐԵՐ**

1- Անտրէ Աղասի - 4.269.265 տոլար
2- Փիթ Սամփրաս - 2.816.406 „
3- Եվկէնի Քաֆէլնիքով - 2.360.498 „

**ԿԻՆԵՐ**

1- Մարթինա Հինկս - 3.291.780 տոլար
2- Լինտսէյ Տեւընպորթ - 2.734.205 „
3- Վէնուս Ուիլիամս - 2.605.102 „



Անտրէ Աղասի

## 2002 Թուականի Ֆութպոլի Աշխարհի Առաջնութեան Հայաստանի Խմբակի Օրացոյցը

Փետրուարի 7-8-ը Վարշավայում տեղի ունեցաւ 2002 Թուականի ֆութպոլի աշխարհի առաջնութեան 5-րդ ընտրական ենթախմբում ընդգրկուած թիմերի ազգային ֆետերացիաների ներկայացուցիչների հանդիպումը:

Հանդիպմանը քննարկուեց ենթախմբի խաղերի օրացոյցը, եւ քանի որ չյաջողուեց գալ ընդհանուր համաձայնութեան, ՖԻՖԱ-ն որոշեց այս կազմել ըստ գործակիցների ցուցակի:

Ինչպէս յայտնի է, այս ենթախմբում հանդէս է գալու նաեւ Հայաստանի հաւաքականը: Ենթախմբի օրացոյցը հետեւեալն է.

**2000 Թ.**

**2-3 Սեպտեմբեր**
1. Նորվեկիա-Հայաստան
2. Պելառուս- Ուելս
3. Ուքրաինա- Լեհաստան

**7-8 Հոկտեմբեր**
1. Հայաստան-Ուքրաինա
2. Ուելս- Նորվեկիա
3. Լեհաստան- Պելառուս

**10-11 Հոկտեմբեր**
1. Պելառուս-Հայաստան
2. Նորվեկիա- Ուքրաինա
3. Լեհաստան- Ուելս

**2001Թ.**

**24-25 Մարտ**
1. Հայաստան- Ուելս
2. Նորվեկիա- Լեհաստան
3. Ուքրաինա- Պելառուս

**27-28 Մարտ**
1. Լեհաստան-Հայաստան
2. Ուելս- Ուքրաինա
3. Պելառուս-Նորվեկիա

**2-3 Յունիս**
1. Հայաստան-Պելառուս
2. Ուքրաինա- Նորվեկիա
3. Ուելս- Լեհաստան

**5-6 Յունիս**
1. Հայաստան- Լեհաստան
2. Նորվեկիա- Պելառուս
3. Ուքրաինա- Ուելս

**1-2 Սեպտեմբեր**
1. Ուելս-Հայաստան
2. Լեհաստան-Նորվեկիա
3. Պելառուս-Ուքրաինա

**4-5 Սեպտեմբեր**
1. Ուքրաինա-Հայաստան
2. Նորվեկիա- Լեհաստան
3. Պելառուս- Լեհաստան

**6-7 Հոկտեմբեր**
1. Հայաստան-Նորվեկիա
2. Լեհաստան-Ուքրաինա
3. Ուելս- Պելառուս

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրեցեալ Ողբ. Արաքսի Սիրքէճեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Սիրքէճեան ընտանիք կը նուիրէ.

| | |
|---|---|
| Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| «Այծեմնիկ» Հանգստեան Տան | 100 |
| Նիրր Իսթ Հայկական Ակումբին | 100 |
| Հայ Աղքատախնամին | 100 |
| Ս. Պօղոս - Պետրոս Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Ս. Թերէզա Կաթողիկէ Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

Ողբ. Արաքսի Սիրքէճեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Տէր եւ Տիկին Վրէժ Նաճարեան (Ուաշինկթըն) կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| «Այծեմնիկ» Հանգստեան Տան | 100 |
| Նիրր Իսթ Հայկական Ակումբին | 100 |
| «Յուսաբեր»ին | 25 |
| «Արեւ»ին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

Ողբ. Արաքսի Սիրքէճեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Տէր եւ Տիկ. Կարպիս Նիկողոսեան (Աւստրալիա) կը նուիրեն.

| | |
|---|---|
| «Այծեմնիկ» Հանգստեան Տան | 20 |
| Նիրր Իսթ Հայկական Ակումբին | 20 |
| «Յուսաբեր»ին | 20 |
| «Արեւ»ին | 20 |
| «Ջահակիր»ին | 20 |

(Ստանալ Գահիրէի Ազգ. Առաջնորդարանէն)

## Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍ.)

Պր. Արթօ Թօսունեանի ընդ Օր. Լիւսի Ճոճոեանի ամուսնութեան ուրախ առթիւ կը նուիրեն.

Տիկին Սոնա Գուլթնույեան եւ Տիկին Սիլվա Մանճլրքեան — 50

**ՎԵՐԱՊԱՀՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆՆԵՐ**

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ**

Ապրիլի 9, 2000 Թուական
(Ի ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ ՆԱԽԱՊԷՍ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԱԾ ԱՊՐԻԼԻ 2-Ի)
*ԲՈԼՈՐ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ ԽՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ ԵՒ ՉԽԱՇԱՁԵՒԵԼ*

***

**ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ**

Կիրակի 16 Ապրիլ 2000

***

**ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ**

Կիրակի 30 Ապրիլ 2000
Կիրակի 7 Մայիս 2000
*Կը խնդրուի նկատի ունենալ*

## ՀՀ ՏՕՆԵՐՈՒ ԵՒ ՅԻՇԱՏԱԿՄԱՆ ՕՐԵՐԸ՝ ՄԱՅԻՍ 1-Ը ՎԵՐԱԿԱՆԳՆԵԼՈՒ ԱՌԱՋԱՐԿ

**2**

Պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել ՀԿԿ խմբակցութիւնում հարցը քննարկելուց անմիջապէս յետոյ փաստաթուղթը նորից ներկայացնել քննարկման, որից յետոյ յանձնաժողովը կ'ընդունի համապատասխան որոշում:

Վերոյիշեալ օրէնքում լրացում կատարելու առաջարկով հանդէս է եկել նաեւ յանձնաժողովի նախագահ Վիկտոր Դալլաքեանը: Ըստ նրա, Դեկտեմբերի 7-ը պէտք է ճանաչուի որպէս ոչ աշխատանքային օր: Այս հարցն ընդգրկուել է եռօրեայ նիստերի օրակարգի նախագծում:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տիար Յովակիմ Սիրքէճեան եւ դուստրը՝ Օր. Ալիս Սիրքէճեան (Գահիրէ), Փիթըր եւ Արմինէ Անսուրեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Ստեփան եւ Անի Շանլեան եւ զաւակունք (Գանատա), Տիար Երուանդ Սիրքէճեան եւ զաւակունք՝ Նաթալի եւ Մելանի Սիրքէճեան, Տէր եւ Տիկին Աոլէն եւ Ալիս Իշխանեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Հարի Օհնիկեան եւ զաւակունք, Տիկին Մէյ Օհնիկեան եւ զաւակունք (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Համբարձում Համբարձումեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Անդրանիկ Միրզայեան եւ զաւակունք (Աւստրալիա), ինչպէս նաեւ Անսուրեան, Շանլեան եւ Իշխանեան ընտանիքները եւ համայն սգակիր պարագաները, այսու կու գան իրենց խորին շնորհակալութիւնը յայտնել եգիպտահայ թեմի բարեխնամ Առաջնորդ, Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանին, սարկաւագաց դասին, մշակութային միութիւններու վարչութեանց եւ բոլոր անոնց, որոնք անձամբ, հեռագրով, նամակով, ծաղկեպսակ ուղարկելով եւ կամ բարեսիրական եւ այլ հաստատութեանց նուիրատուութիւններ կատարելով, ցաւակցութիւն յայտնեցին՝ իրենց սիրելի կողակցին, մօր, մեծմօր, մեծ մեծմօր, քրոջ, մօրաքրոջ եւ ազգականին՝

**ՈՂԲ. ԱՐԱՔՍԻ ՍԻՐՔԷՃԵԱՆԻ**
**(ԾՆԵԱԼ ՊՈՒՐՍԱԼԵԱՆ)**

մահուան առիթով:

# Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

## ՍԱԹԵՆԻԿ ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի վարչութիւնը հաճոյքն ունի, Սաթենիկ Չագըր Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագրին բոլոր մասնակիցներուն տեղեկացնելու, թէ Ուրբաթ 18 Փետրուար 2000-էն սկսեալ բժշկական ծախքերու փաստաթուղթերը կրնան ներկայացնել Հ.Բ.Ը.Մ.ի հետեւեալ կեդրոններուն:

**Գահիրէ** - 15, Էմատ Էլ Տին փողոց, Ա-յարկ, Երկուշաբթիէն-Շաբաթ (բացի Ուրբաթ օրերէն) առաւօտեան ժամը 10.00-էն ժամը 2.00:

**Հելիոպոլիս** - 26, Մուրատ Բէկ փողոց, Ուրբաթ կ.վ. ժամը 6.00-էն ժամը 8.00:

Իսկ փաստաթուղթերու քննութիւնը իր ընթացքը ստանալէն յետոյ, կարելի է համապատասխան փոխգիրերը ստանալ նոյն կեդրոններէն, նշեալ օրերուն եւ ժամերուն:

**ԳԱՀԻՐԷԻ Հ.Բ.Ը.Մ.-ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ԵՐԿՐԱՊԱՀՆԵՐԸ ԿԸ ՅԱՅՏԱՐԱՐԵՆ «ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ ԳԾՈՎ ԿԱՐԵԼԻ ՉԷ ԱՆՏԵՍԵԼ ՄԵՐ ԿԱՐԾԻՔԸ»

### ՄԵՂՐԻՆ ԼԱՉԻՆՈՎ ՓՈԽԱՆԱԿԵԼԸ ԱՆԸՆԴՈՒՆԵԼԻ Է

**1**

*թիզ հողի համար թափուել է հայ զինուորի արիւնը»,-այս կապակցութեամբ յայտարարեց Երկրապահներու վարչութեան նախագահ Մանուէլ Գրիգորեան:*

*Միւս կողմէ, Ազգային Ժողովի պատգամաւոր Գրիգոր Յարութիւնեան, Խորհրդարանէն ներս յայտնեց, որ Մեղրիի տարածաշրջանի փոխանակման մասին խօսակցութիւնները խուճապ յառաջացուցած են Մեղրիի բնակչութեան շրջանէն ներս: «Պահանջում ենք պաշտօնապէս հերքել Հայաստանի հարաւային դարպասի փոխանակման մասին աւէկօսները: Մեր հողը պաշտպանուել է արեամբ եւ երբեք ոչ մէկի չի զիջուի», ըսուած է Մեղրիի ենթամարզի բնակչութեան կողմէ հրապարակուած յայտարարութեան մը մէջ:*

*Այս հարցը մեկնաբանելու խնդրանքով Արմէնփրեսի թղթակիցը դիմած է ՀՀ նախագահի մամուլի քարտուղար Վահէ Գաբրիէլեանին, որ հակիրճ պատասխան մը տալով ըսած է.- «Հակամարտութեան կարգաւորման որեւէ կոնկրետ տարբերակ չի քննարկուել»:*

## ՍՓԻՒՌՔԱՀԱՅ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՈՒ ՎԵՐԱՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐԸ ՊԻՏԻ ՎԵՐՍԿՍԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

**2**

պիտի զբաղի Հայաստանի Մանկավարժական հիմնարկէն «Սփիւռք» կեդրոնը, ղեկավարութեամբ՝ Սուրէն Դանիէլեանի:

Ծրագրի նիւթական ծախսերը հոգալու համար դիմում կատարուած է «Հայաստան» Հիմնադրամի Հոգաբարձուներու Խորհուրդին: Ծրագիրը կը վերաբերի «դասական» Սփիւռքին, իսկ ԱՊՀի երկիրներէ եկած ուսուցիչներով պիտի զբաղի Կրթական բարեփոխումներու կեդրոնը, քանի որ նշեալ երկիրներու հայկական վարժարաններու ծրագիրը կը համապատասխանէ Հայաստանի դպրոցներու ծրագրին:

Այս լուրը պակումն է այն ճիգերուն, զորս երկար ատենէ ի վեր կը վատնէր գրականագէտ ու Բանասիրական Գիտութիւններու Տոքթոր Փրոֆ. Սուրէն Դանիէլեան:

Սուրէն Դանիէլեան վերջերս ստանձնած էր Սփիւռքահայ ուսուցիչներ պատրաստելու կեդրոնի պատասխանատուութիւնը: Այժմ այդ աշխատանքը կ'ամբողջանայ պետութեան լայն հովանաւորութեամբ:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax: (202) 4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1420 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՓԵՏՐՈՒԱՐ 2000 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٤٢٠ — الخميس ٢٤ فبراير ٢٠٠٠


# ՄԵՂՐԻՆ ՔԱՒՈՒԹԵԱՆ ՆՈՒԽԱ՞Զ

*Ամբողջ Կովկասի քաղաքական անորոշութիւնը դեռ կը շարունակուի: Խորհրդային Միութեան կազմալուծումէն ետք կրկին վառօդի տակառի մը վերածած է շրջանը եւ այն կը յիշեցնէ 20-րդ դարու սկիզբի վտանգաւոր մթնոլորտը: Յատկապէս Անդրկովկասը՝ Թուրքիոյ համար որպէս տնտեսական-ռազմագիտական տարածք ու դիրք նաեւ դարպաս դէպի Միջին Ասիա կը շարունակէ մնալ թիրախ կամ ապագայի յենման կէտ: Միեւնոյն ընդարձակ տարածքները դարերէ ի վեր եղած են ռուսական կայսրութիւններու տիրոյթները: Ռուսական մշակոյթը իր տարբեր երեւներով, բացի կրօնականէն, տակաւին իշխող է կովկասեան լեռներէն մինչեւ Միջին Ասիոյ հեռաւոր ծայրամասերը: Վերջին տասնամեակի ընթացքին Թուրքիոյ շահերը, իր հետ ունենալով Արեւմուտեանը՝ շրջանէն ներս կը բախին ռուսական շահերուն հետ: Ահա այսպիսի պայմաններու մէջ քաղաքական խմորումները պայթուցիկ վիճակներու կը հասնին:*

*Կովկասի բարդ իրավիճակը մեզ կը մտահոգէ երկու պատճառներով: Նախ՝ Հայաստան գտնուելով տուեալ աշխարհագրական տարածքին մէջ, էապէս պիտի ազդուի քաղաքական ցնցումներէն կամ՝ մասնաւորապէս հաւանական վինեալ բախումներէն, որոնց միջեւ ալ տեղի ունենան ընդհանրումները: Իսկ երկրորդ, որ աւելի կարեւորն է, Հայաստան ինք ուղղակի մասնակից է տարածաշրջանի վէճերուն, հետեւաբար վտանգի տարողութիւնը առաւել եւս մեծ է: Ղարաբաղի հիմնահարցը իր՝ Հայաստանի հարցն է, որը տակաւին կը մնայ անլոյծ եւ երկրի իշխանութիւնները պարտադրանքի ու պարտաւորութեան մը տակ են: Արդիւնքի հասնելու համար բանակցութիւններ եւ կանայան սակարկութիւններ տեղի կ'ունենան վարագոյրներու ետին: Անցնող մի քանի ամիսներու ընթացքին, առիթն ունեցանք գրելու եւ հնարաւոր վերլուծութիւնները կատարելու տարուող գաղտնի բանակցութիւններու, ինչպէս նաեւ հրապարակուած պաշտօնական դիրքորոշումներու մասին:*

*Ստորեւ մեկնաբանութիւններ՝ ղարաբաղեան բանակցութիւններու ընթացքին քուլիսներէն դուրս սպրդած նոր «արտահոսքի» հետ առնչուող հարցի մը շուրջ:*

*Ըստ վերոյիշեալ «արտահոսք»ին, կամ առ այժմ անպաշտօն տեղեկութիւններու համաձայն, Հայաստան-Ատրպէյճան բանակցութիւններու ժամանակ սեղանի վրայ կրկին դրուած է շրջանի քարտէզը, որպէսզի «վերաձեւումի» ենթարկուին վիճելի տարածքները: Ղարաբաղեան բանակցութիւններու ընթացքին, ինչպէս ծանօթ է բոլորիս, հայկական կողմը կը պահանջէր երկու կարեւոր բան՝ առաջինը՝ Ղարաբաղը ինքնիշխան՝ անկախ տարածք մը ըլլալու պահանջքն էր: Երկրորդ՝ որպէսզի անոր (Ղարաբաղի) անվտանգութիւնը ապահովուի Լաչինի անցքը անհրաժեշտ է, որ մնայ հայկական կողմի հսկողութեան կամ ուղղակի գերիշխանութեան տակ: Ղարաբաղեան ճակատներուն վրայ ընդունուած հայանպաստ վինադուլէն ետք, կողմերը կայուն խաղաղութիւն ունենալու մը բանակցութիւններու ընթացքին, Ատրպէյճան, ինչպէս նաեւ իր հովանաւորները կը շարունակեն մերժել հայութեան պահանջները:*

*Բայց ո՞րն է գաղտնի բանակցութիւններէն սպրդած այս «հոսք»ի էութիւնը:*

*Որքան ալ զարմանալի թուայ, վերջին ամիսներուն կատարուած բանակցութիւններու ընթացքին խնդրոյ առարկայ սկսած է դառնալ Հայաստանի Հանրապետութեան Մեղրիի շրջանը:*

*Թշնամիին կողմէ առաջարկուող Մեղրիի տարբերակը վտանգաւոր կրկնութիւնն է հայադրոշմ հպարտ Զանգեզուրի՝ Հայաստանի հարաւի նկատմամբ Ատրպէյճանի ունեցած սնամէջ յաւակնութիւններուն: Ղարաբաղեան շարժման առաջին ամիսներուն իսկ, Ատրպէյճանի այդ տարիներու փութկոտ ու բութ ղեկավարները, որպէս հակազդեցութիւն հայկական արդար պահանջատիրութեան՝ հրապարակեցին Զանգեզուրը «ատըրպէյճանական տարածք» ճանչնալու կոչը:*

*Բայց ի՞նչու Մեղրիի շրջանը խնդրոյ առարկայ կը դառնայ: Ատրպէյճանական կողմը բանակցութիւններու ընթացքին ի՞նչու Ղարաբաղի իր «իրաւունքներէն» վիջումներ կատարելու համար փոխանակութիւն կը պահանջէ եւ այն ալ հայկական Մեղրին: Իսկ նախատեսուող ատրպէյճանական վիջումը դեռ բուն Ղարաբաղի հետ առնչութիւն չունի, խօսքը Լաչինի անցքին մասին է: Ղարաբաղի կարգավիճակին հետ առնչուող ավերիական «վիջումը» այն է, ինչ արդէն շատո՜նց գիտենք՝ մշակոյթ... եւ այլն:*

*Նախ յայտնենք, թէ Մեղրիի շրջանը ե՛ւ հին՝ պատմական ժամանակներու մէջ ե՛ւ վերջին հարիւրամեակի ընթացքին ամբողջութեամբ եղած է հայկական՝ Հայաստանի անբաժան մէկ մասնիկը: Խորհրդային Միութեան շրջանին բնակչութեան շուրջ 75 առ հարիւրը հայեր էին, յետոյ՝ ռուսեր, ուքրանացիներ, պելոռուսներ եւ փոքր թիւով ազերիներ: Իսկ ներկայիս Մեղրին շուրջ 95 տոկոսով հայ բնակիչներէ կը բաղկանայ: Շրջանի տարածութիւնը 664 քառակուսի քիլոմեթր է, իսկ բնակչութեան թիւը՝ 13,405: Մեղրին պատմական հեռու անցեալէն անընդմէջ մաս կազմած է հայկական հզօր թագաւորութիւններուն: Քրիստոսէ առաջ 6-րդ դարուն, նոյն Մեղրին ընդգրկուած էր հայկական միաժամանակ*

3

ՖՐԱՆՍԱ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱՁԵՒԸ ՄԵՐԺՈՒԵՑԱՒ ՖՐԱՆՍԱՅԻ ԾԵՐԱԿՈՅՏԻՆ ԿՈՂՄԷ

## Տէմիրէլ Շնորհակալութեան Նամակ Ուղղեց Շիրակին Թուրք Մամուլը Մէկ Կողմէ Գոհունակութիւն Կը Յայտնէ, Միւս Կողմէ Կրակ Կը Ժայթքէ Ամերիկայի Նախագահութեան Թեկնածու Ճորճ Պուշ Կրտսերի Դէմ

*Ֆրանսայի Ծերակոյտի Դիւանը երէկ 6ի դէմ 14 քուէներով մերժեց հայկական ցեղասպանութեան բանաձեւ կոչուած բանաձեւը առնել Ծերակոյտի օրակարգին վրայ:*

*Ասիկա անակնկալ մը չէ: Արդէն յայտնի էր որ Ֆրանսա պիտի չուզէր այսքան պատասխանատու քայլ մը առնել եւ Թուրքիան վշտացնել: Ծերակոյտի Դիւանը բանաձեւը մերժեց զանազան պատճառաբանութիւններով: Նախ դիտել տրուեցաւ որ այսպիսի բանաձեւի մը քննարկումն ու վաւերացումը պիտի կացինահարէր այն հաշտարար աշխատանքը, որ կը տարուէր Կովկասի մէջ հաշտութիւն մը գոյացնելու ուղղութեամբ:*

3

# «ՈՐԵՒԷ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ՊԷՏՔ Է ԱՐԺԱՆԱՆԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՀԱՒԱՆՈՒԹԵԱՆ»

## ԿԸ ՅԱՅՏԱՐԱՐԷ ՔՈՉԱՐԵԱՆ

Ղարաբաղեան հարցի լուծման շուրջ վերջին օրերուն շրջանառութեան մէջ դրուած՝ տարածքներու փոխանակման (Մեղրի-Լաչին) տարբերակը եւ այն ենթադրութիւնները, որ Քոչարեան-Ալիեւ գաղտնի բանակցութիւններու ընթացքին այդ հարցի շուրջ համաձայնութիւններ կը մշակուին, կը շարունակէ մտահոգել Հայաստանի քաղաքական շրջանակները:

Այս կապակցութեամբ Հայաստանի Հանրապետութեան նախագահը Փետրուար 11-ին Ազգային Հեռատեսիլէն սփռուած հարցազրոյցի մը ընթացքին պարզաբանումներ տուաւ հարցին շուրջ:

Նախագահը յայտնած է, որ այդ հարցի վերաբերեալ հետաքրքրութեան եւ վերջերս շրջանառութեան մէջ դրուած զանազան լուրերու պատճառով, որոշած է հանդէս գալ եւ որոշակի պարզաբանումներ ներկայացնել

2

# ՀՀ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐ ՀԱՅԿ ՆԻԿՈՂՈՍԵԱՆԻ ԱՅՑԸ ԵԳԻՊՏՈՍ

Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան առողջապահութեան եւ բնակչութեան նախարար Իսմայիլ Սալլամի հրաւէրով ս/թ Փետրուարի 16-20-ը պաշտօնական այցով Եգիպտոսում էր գտնւում ՀՀ առողջապահութեան նախարար Հայկ Նիկողոսեանը:

Այցելութեան առաջին օրը կայացաւ ՀՀ առողջապահութեան նախարարի հանդիպումը ԵԱՀ առողջապահութեան եւ բնակչութեան նախարարի հետ: Հանդիպման ընթացքում նախարարներն անդրադարձան երկու երկրների միջեւ առողջապահութեան ասպարէզում համագործակցութեան ներկայ վիճակին: Երկուստեք գոհունակութեամբ նշուեց, որ երկու նախարարութիւնների միջեւ հաստատուած են գործնական կապեր եւ առողջապահութեան ոլորտում հայ - եգիպտական համագործակցութեան զարգացման համար որոշակի հիմք եւ նախադրեալներ ստեղծուած, յատկապէս լաւ հեռանկարներ կան դեղագործութեան, առողջապահութեան ղեկավարման եւ փորձի փոխանակման ասպարէզներում:



*ՀՀ առողջապահութեան նախարար Հայկ Նիկողոսեան*

Այնուհետեւ քննարկուեցին Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ

2

# ՀՈԳԵՊԱՐԱՐ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՃԻՒՆՆԵՐԸ ՅԱՆՁՆՈՒԵՑԱՆ ՄԱՅՐ ՀՈՂԻՆ

*Կիրակի, 20 Փետրուարին, հանդիսաւոր արարողութիւններով, ազգային անզուգական հերոս Անդրանիկի աճիւնները յանձնուեցան Հայաստանի մայր հողին:*

*Առաւօտուն, Էջմիածնի տաճարին մէջ, տպաւորիչ արարողութեամբ, պատարագ մատուցուեցաւ զօրավարին աճիւնները պարունակող դագաղին շուրջ, որ զետեղուած էր դասուն մէջ:*

*Արարողութեան կը նախագահէր Ամենայն Հայոց Կաթողիկոսը: Ներկայ էին նաեւ Հայաստանի եւ Ղարաբաղի նախագահներն ու Պաշտպանութեան Նախարարները, Խորհրդարանի Նախագահը, Վարչապետը, Արտաքին նախարարը եւ բազմաթիւ բարձրաստիճան դէմքեր: Ծովածաւալ բազմութիւն մը եկեղեցիէն ներս թէ դուրս կը հետեւէր արարողութեան, որուն ընթացքին կ'երգուէին Անդրանիկին ձօնուած հայրենասիրական եւ յեղափոխական երգեր:*

*Կուռ ու ազդաչունչ դամբանական մը կարդաց Գարեգին Բ. Կաթողիկոսը: Վեհափառ նշեց զօրավար Անդրանիկին հայրենասիրական գործունէութեան հիմնական կողմերը, յիշեց, թէ ան ինչպէս ապաստան գտած էր Ֆրանսա, ուր անցուցած էր իր կեանքին մնացեալ օրերը, միշտ սրտին*

2

# Յովհաննէս - Պօղոս Բ. Պապը Այսօր Եգիպտոս Կը Ժամանէ

*Այսօր՝ Հինգշաբթի 24 Փետրուարին, իր անդրանիկ այցելութիւնը տալով, Եգիպտոս կը հասնի Վատիկանի Նորին Սրբութիւն Յովհաննէս Պօղոս Բ. Պապը, հրաւէրով՝ նախագահ Հոսնի Մուպարաքի:*



*Եռօրեայ պաշտօնական իր այցելութեան, Նորին Սրբութիւնը տեսակցութիւն մը պիտի ունենայ Եգիպտոսի նախագահին հետ, որուն ընթացքին անոնք պիտի քննարկեն երկու երկիրներու յարաբերութիւնները, Միջին Արեւելեան դատի, յատկապէս՝ Երուսաղէմի արդար լուծումի հարցին մասին, ինչպէս նաեւ շրջանի խաղաղութեան գործընթացի շուրջ:*

2

# ԽԱՌՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՊԻՏԻ ԿԱԶՄՈՒԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

*Նորանկախ Հայաստանի պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով, միացեալ կառավարութիւն պիտի կազմուի: Անցեալ Կիրակի օր, երկրին գլխաւոր կուսակցութիւնները եւ վարչապետ Սարգսեան համաձայնեցան հիմնական փոփոխութեան մը ենթարկել դահլիճը, ապահովելով զանազան հոսանքներու մասնակցութիւնը:*

*Խորհրդարանի «Կայունութիւն» պլոքին ղեկավարը՝ Վարդան Այվազեան Երկուշաբթի օր մամուլին յայտնեց, թէ Ազգային Ժողովէն ներս ներկայացուած բոլոր կուսակցութիւնները նախարարական աթոռներ պիտի ունենան: «Կուսակցութիւններուն առաջարկուեցաւ նախարարական աթոռներ ունենալ», ըսաւ Այվազեան: Յառաջիկայ քանի մը օրերու ընթացքին, այդ կուսակցութեանց ղեկավարները իրենց թեկնածուները պիտի ներկայացնեն վարչապետին ու շատ չանցած, փոփոխութեան ենթարկուած կառավարութիւն մը պաշտօնի պիտի կոչուի, աւելցուց ան:*

*Յիշենք թէ ներկայ կառավարութիւնը կը գտնուի «Միասնութիւն» պլոքի հակակշռին տակ:*

*Շաբաթ օր, վարչապետ Սարգսեան եւ ութ քաղաքական խմբակներու ներկայացուցիչներ համաձայնութիւն գոյացուցին՝ միասնաբար դիմակայելու երկրին առջեւ ծառացող հարցերը: Անոնք խօս-*

3

# ՌԱՄԿԱՎԱՐ - ԱԶԱՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՆԵՐՔԻՆ ՀԱՇՏՈՒԹԻՒՆ ԳՈՅԱՑՈՒՑ

*Ռամկավար Ազատական Կուսակցութեան երկու հատուածներու ներկայացուցիչները, անցեալ չաբաթավերջին, Փետրուար 11-13, բանակցութիւններ վարած են Փարիզի մէջ՝ վերջ տալու համար 1995ի Ընդհանուր Պատգամաւորական Ժողովէն ի վեր «կուսակցութեան ծոցին մէջ յառաջացած պառակտումին ու բաժանումին»:*

*Հայկաշէն Ուզունեանի եւ Յակոբ Գասարճեանի գլխաւորութեամբ տեղի ունեցած այս հանդիպումին մասնակցած են երկու կողմերու պատուիրակութիւնները՝ հետեւեալ կազմով.*

*Ա.- Յակոբ Գասարճեան, Գրիգոր Ատանալեան, Փանիկ Քէշիշեան, Յակոբ Վարդիվառեան, Գէորգ Քէշիշեան, Արտաւազդ Մելիքսէթեան եւ Մայք Խարապեան:*

*Բ.- Հայկաշէն Ուզունեան, Երուանդ Ազատեան, Վարդան Ուզունեան եւ Յակոբ Աւետիքեան:*

*Եռօրեայ հանդիպումներէ ետք, ժողովականներուն կողմէ ստորագրուած է չորս էջերէ բաղկացած համաձայնագիր, որուն հիման վրայ վերջ կը տրուի կուսակցութեան երկփեղկումին:*

*Այս առիթով, Ռամկավար Ազատական Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը հրատարակութեան տուաւ պաշտօնական հաղորդագրութիւն մը:*

## «ՈՐԵՒԷ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ՊԷՏՔ Է ԱՐԺԱՆԱՆԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՀԱՒԱՆՈՒԹԵԱՆ» ԿԸ ՅԱՅՏԱՐԱՐԷ ՔՈՉԱՐԵԱՆ

1

հաւանութեան: Քոչարեան դարձեալ կրկնած է, որ եթէ երկու նախագահները համաձայնութեան գան որեւէ տարբերակի շուրջը, որուն իր համաձայնութիւնը տայ նաեւ Լեռնային Ղարաբաղը, ապա այն պէտք է քննարկուի իշխանութեան բոլոր ճիւղերու կողմէ եւ արժանանայ ժողովրդի հաւանութեան:

Նախագահ Քոչարեան կրկնեց աւելցնելով, որ տարածքներու փոխանակման հարց սեղանի վրայ եկած է, սակայն ինք մերժած է նման առաջարկներ:

Միւս կողմէ, ատրպէյճանական աղբիւրներ կը հաղորդեն, որ Քոչարեանի եւ Ալիեւի հանդիպումներու ժամանակ իսկապէս կը քննարկուին տարածքային փոխանակման կարելիութիւնները: Սակայն այդ չի վերաբերիր Լաչին-Մեղրիին, որովհետեւ «Մեղրիով կ՚անցնի Հայաստանը իր ռազմավարական գործընկեր Իրանին կապող միակ մայրուղին» կը շեշտեն անոնք, ու կը յայտնեն որ, կը քննարկուին հայերու կողմէ գրաւուած հարաւային տարածքները, Նախիջեւանի Ինքնավար Հանրապետութեան Հայաստանին յարող շրջաններուն հետ փոխանակելու տարբերակը:

## ՀՀ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐ ՀԱՅԿ ՆԻԿՈՂՈՍԵԱՆԻ ԱՅՑԸ ԵԳԻՊՏՈՍ

1

առողջապահութեան ոլորտում փոխշահաւէտ համագործակցութեան զարգացման ծրագրերը:

Երկու նախարարների հանդիպումից յետոյ նախարարութեան նիստերի դահլիճում կայացաւ ընդլայնուած հանդիպում Եգիպտոսի առողջապահութեան ոլորտի պատասխանատուների, առաջատար հիւանդանոցների եւ դեղագործական ընկերութիւնների տնօրէնների հետ: Նախարարները նշեցին, որ դեռեւս 1997թ. Հայաստանը եւ Եգիպտոսը ստորագրել են առողջապահութեան ոլորտում համագործակցութեան համաձայնագիր: Տեղի են ունեցել փոխ-այցելութիւններ, քննարկուել համագործակցութեան ծրագրեր: Երեւանում կայացել է եգիպտական դեղագործական ցուցահանդէս, որին մասնակցել են աւելի քան 20 դեղագործական ընկերութիւնների 40 ներկայացուցիչներ: 60 եգիպտական դեղանիւթեր արդէն գրանցուել եւ վաճառքի իրաւունք են ստացել Հայաստանում: Ուսումնասիրման ընթացքում է Երեւանում վակցինների արտադրութեան համատեղ ձեռնարկութիւն հիմնելու ծրագիրը: Կողմերը յստակցնում են այն հիւանդանոցների եւ առողջապահական կենտրոնների ցանկը, որոնք ցանկութիւն ունեն ուղիղ կապ հաստատել միմեանց հետ: Նախատեսւում է մասնագէտների փոխանակում եւ գատրերի վերապատրաստում:

Այցելութեան օրերին ՀՀ առողջապահութեան նախարարը այցելեց Եգիպտոսի մի շարք առողջապահական կենտրոններ եւ հիւանդանոցներ, «էբիքօ» (EIPICO) եւ «Աքաբի» (ACAPI) դեղագործական ընկերութիւններ, «Այն էլ-Շամս» համալսարանի բժշկական ֆակուլտետ, վակցինների արտադրութեան ձեռնարկութիւն, հանդիպումներ ունեցաւ ղեկարութեան եւ մասնագէտների հետ:

Հանդիպումների ընթացքում քննարկուեցին համագործակցութեան զարգացման հնարաւորութիւնները, ձեռք բերուեցին մի շարք պայմանաւորուածութիւններ:

Այցելութեան ընթացքում ՀՀ առողջապահութեան նախարարին ուղեկցում էր Եգիպտոսում ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Ս. Մանասարեանը:

## ՀՈԳԵՊԱՐԱՐ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՃԻՒՆՆԵՐԸ ՅԱՆՁՆՈՒԵՑԱՆ ՄԱՅՐ ՀՈՂԻՆ

1

*մէջ զգալով իր երկրին կարօտը: Վեհափառ գոհունակութիւն յայտնեց, որ վերջապէս իրականացած է զօրավարին կտակը եւ անոր աճիւնները, երկար տասնամակներու սպասումէն ետք, փոխադրուած են մայր հող:*

*Հոգեհանգստեան արարողութեան աւարտին, վեց վեղարաւոր հայրեր դագաղը ուսամբարձ դուրս հանեցին տաճարէն եւ ուղարկեցին դէպի Երեւան, Եռաբլուր:*

*Յուղարկաւորութեան թափորը հանդիսաւոր արարողութեամբ հասաւ Եռաբլուր, ուր զօրավարին աճիւններուն համար տեղ բացուած էր նահատակեալ վարչապետ Վազգէն Սարգսեանի շիրիմին կողքին: Հակառակ որ առատ ձիւն կը տեղար, ժողովուրդի հոծ բազմութիւն մը հոս եւս հետեւեցաւ արարողութեան:*

*Զօրավար Անդրանիկի մասին դամբանական կարդաց նախագահ Քոչարեան, ըսելով, թէ Անդրանիկին ամբողջ կեանքը կը ցոլանէ իր ժողովուրդին կեանքն ու գործը:*

*Զօրավարին մասին իրենց սրտի խօսքը արտասանեցին նաեւ Գրողներու Միութեան նախագահ Հրանդ Մաթեւոսեան եւ այլ արուեստագէտներ, որոնք վեր առին Անդրանիկի գործունէութիւնը նշեցին, որ Սպարապետին վերադարձը խորհրդանշական իմաստ ունի:*

*Անդրանիկի աճիւնները հողին յանձնուեցան հրացաններու յաղթանակ խորհրդանշող շկահիւններուն ներքեւ: Ծովածաւալ բազմութիւնը բուռ առ բուռ հողով ծածկեց ազգային հերոսին դագաղը:*

## ՈՒՍԱՇԻՆԿԹԸՆ

### ԳԼԻՆԹԸՆԻ ՎԱՐՉԱԿԱՐԳԸ Կ՚ՈՒԶԷ ՆՈՒԱԶԵՑՆԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ

«Հայկական Համագումարի» Ուաշինկթընի գրասենեակը կը հաղորդէ որ, Երեքշաբթի Փետրուար 15-ին, Միացեալ Նահանգներու պետական քարտուղար Մատլէն Օլպրայթ, Ծերակոյտի արտաքին յարաբերութեանց յանձնախումբին առջեւ վկայութիւն տալով յայտնեց, որ յառաջիկայ տարուայ պիւտճէին մէջ պիտի կրճատուի նախկին Խորհրդային հանրապետութիւններուն տրուող օժանդակութիւնը որուն մէջ կ՚իյնայ նաեւ Հայաստանի օժանդակութիւնը:

Օլպրայթ դարձեալ կոչ ըրաւ վերցնելու Ատրպէյճանի դէմ դրուած օժանդակութեան արգելքը «որպէսզի արագանայ Պաքու-Ճէյհան կազմուղի կառուցումը» ինչպէս յայտնեց Օլպրայթ:

2001 տարուայ համար առաջարկուող պիւտճէին մէջ Հայաստանի օժանդակութիւնը 102,4 միլիոնէն պակսած է 75 միլիոնի:

Գլինթընի վարչակարգը բացառութիւն կատարած է միայն Ատրպէյճանին, որուն տրուող օժանդակութիւնը 24,6 մլն. տոլարի յաւելում մը արձանագրած է:

## ՏԻԹՐՈՅԹ

### «ԿՈԿՈՐԴՆԵՐՈՒ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ»

*Ամերիկեան Տիթրոյթ քաղաքի հազարաւոր կաթոլիկ քաղաքացիներ անցեալ Փետրուար 4-ին, նշեցին «կոկորդներու օրհնութեան» օրը, որ մաս կը կազմէ կաթոլիկ եկեղեցւոյ կրօնական աւանդական տօներուն: Տօնը նուիրուած է Հայ եպիսկոպոս Սուրբ Փլէյզին, որ 316 թուականին սպաննուեցաւ հռոմէացիներու ձեռքով:*

*Ըստ աւանդութեան, Հայ եպիսկոպոսը իր ոգեկան կարողութիւններով կը բուժէր բազմաթիւ հիւանդութիւններ: Իր մահուընէ քանի մը ժամ առաջ, ան բուժած էր մանուկի մը, որ կը տառապէր կոկորդի ցաւերով ու հազով: Այդ օրէն ի վեր կաթոլիկ հաւատացեալները կը նշեն «Կոկորդներու օրհնութեան» օրը եւ աղօթքներով կը փառաբանեն Հայազգի սուրբին: Կրօնական միջոցառման ներկայ էին հաշմանդամներ եւ այլ հիւանդութիւններ ունեցող անկարներ:*

### Յովհաննէս - Պօղոս Բ. Պապը Այսօր Եգիպտոս Կը Ժամանէ

1

*Առ այդ Նորին Սրբութիւնը իր օրհնութիւնները պիտի տայ զանազան սրբավայրերու մէջ, նաեւ վաղը՝ Ուրբաթ առաւօտ, Գահիրէի փակ Սթատին մէջ պատարագ պիտի մատուցանէ 15.000 հաւատացեալներու ներկայութեան: Նշենք թէ Գահիրէի Հայ Կաթողիկէ համայնքի Ս. Աստուածածին եկեղեցւոյ երգչախումբը եւս իր մասնակցութիւնը պիտի բերէ սոյն արարողութեան:*

*Նոյն երեկոյեան, ժամը 5.30-ին, Ան իր օրհնութիւնները պիտի տայ նաեւ Նասր էլ Սիթիի Կաթողիկէ Պատրիարքարանին մէջ: Իսկ Շաբաթ առաւօտեան Նորին Սրբութիւնը պիտի այցելէ Սէնթ Գաթրին:*

*Իր կեցութեան շրջանին Ամենապատիւ Պապը հանդիպումներ պիտի ունենայ բարձր կրօնաւորներու հետ:*

*Այս առթիւ, երէկ Լիբանանէն Եգիպտոս ժամանեց Կաթողիկէ Հայոց նորընտիր Կաթողիկոս - Պատրիարք Ներսէս Պետրոս ԺԹ. Թարմունի, մաս կազմելու Պապին մատուցանելիք պատարագներուն:*

## ԼԻԲԱՆԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԸ ԳՈՀ Է ԴԷՊԻ ԼԻԲԱՆԱՆ ԿԱՏԱՐԱԾ ԻՐ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԷՆ

### Լիբանանի Եւ Հայաստանի Նախագահները Իրարու Հետ Հայերէն Խօսեցան

Հայաստանի Նախագահ Ռոպերթ Քոչարեան աշխատանքային եւ արարողակարգային բեղուն օրեր ունեցաւ Լիբանան իր այցելութեան ընթացքին:

17 Փետրուարին, Նախագահի ներկայութեան, Հայաստանի եւ Լիբանանի Գործարարներու Միութիւնները գործակցութեան համաձայնագիր մը կնքեցին, որմէ ետք Ռոպերթ Քոչարեան, ընկերակցութեամբ Լիբանանի Պաշտպանութեան Նախարարին ու բարձրաստիճան սպաներու, ծաղկեպսակ զետեղեց Անծանօթ Զինուորի յուշարձանին առջեւ:

Այս արարողութենէն ետք, Քոչարեան ուղղուեցաւ Լիբանանի Պետական համալսարանի քաղաքական գիտութեանց եւ իրաւաբանութեան հիմնարկը, ուր յատուկ հանդիսութեան մը ընթացքին, իրեն շնորհուեցաւ Պատուակալ Տոքթորայի տիտղոս:

Կէսօրին, Քոչարեան այցելեց Լիբանանի Խորհրդարան, ուր գլուխ գլխի տեսակցութիւն մը ունեցաւ Խորհրդարանի Նախագահ Նէպիհ Պըրրիի հետ:

Նախագահ Քոչարեան այցելեց Էշրէֆիէ թաղամասը գտնուող Հայ Կաթողիկէ Պատրիարքարան, ապա՝ Հայ Աւետարանական Համայնքապետարան:

Այս հանդիպումներէն ետք, Նախագահը ուղղուեցաւ Հայաստանի դեսպանատուն, ուր տեսակցութիւն մը ունեցաւ Հայ Յեղափոխական Դաշնակցութեան, Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան եւ Ռ.Ա. Կուսակցութեան ղեկավարներուն հետ:

Այնուհետեւ, ուղղուեցաւ Կիլիկիոյ Կաթողիկոսարան, Անթիլիաս, ուր դիմաւորուեցաւ Կաթողիկոս Արամ Ա. Վեհափառ Հայրապետի եւ ժողովուրդի հոծ բազմութեան մը կողմէ: Վեհարանին մէջ կայացած ընդունելութեան ընթացքին, Արամ Ա. Վեհափառ Հայրապետը Նախագահ Քոչարեանը պատուեց Կիլիկիոյ կաթողիկոսութեան «Ս. Կարգի Մեծ Խաչ» շքանշանով:

Աւելի վերջ, Կաթողիկոսարանի «Կիլիկիա» թանգարանի սրահին մէջ, Նախագահ Քոչարեան բացումը կատարեց Հայաստանի Պետական Պատկերասրահէն բերուած գեղանկարներու ցուցահանդէսին:

Յիշեցնենք որ նախընթաց օր, Լիբանանի Նախագահ Էմիլ Լահուտի հետ տեսակցութենէն ետք, զոյգ Նախագահները զիրար պատուեցին յաջորդաբար Յատուկ Ծառայութիւններու եւ «Ս. Մեսրոպ Մաշտոց» բարձրագոյն կարգի շքանշաններով: Տեղին է նշել, թէ Նախագահները իրարու հետ հայերէն խօսեցան, տրուած ըլլալով, որ Լիբանանի Նախագահին մայրն ու տիկինը հայուհիներ են:

Հայաստանի Նախագահ Ռոպերթ Քոչարեան դէպի Լիբանան կատարած իր այցելութեան վերջին օրը, մասնակցեցաւ համայնքային հաւաքոյթի մը, որ սարքուեցաւ Պէյրութի ԻՒՆԷՍՔՕի 1500 հոգինոց սրահին մէջ: Նախագահ Քոչարեան արժանացաւ աննախադէպ խուռներամ եւ խանդավառ ընդունելութեան: Արդարեւ, առաւօտեան կանուխ ժամերէն սկսեալ նշեալ սրահի շրջափակը կը յորդէր հայերով: Անոնք, երբ Նախագահն ու ընկերակիցները հետիոտն կը մօտենային դէպի ԻՒՆԷՍՔՕի սրահը, փողոցը արտակարգօրէն խանդավառ ցոյցեր ըրին Քոչարեանի ի նպաստ: Նախագահը երկար խօսեցաւ Հայաստանի տնտեսութեան, Սփիւռքի դերակատարութեան, Լեռնային Ղարաբաղի հարցին եւ այլն., հարցերու մասին, իսկ յետոյ պատասխանեց սրահէն իրեն ուղղեալ հարցումներուն: Համայնքային այս հաւաքոյթին ներկայ էին Լիբանանի մէջ գործող հեռատեսիլի բոլոր կայաններու եւ թերթերու լրագրողները: Նախագահ Քոչարեան իրապաշտօրէն բնութագրեց Հայաստանի տնտեսական ծանր կացութիւնը եւ ընդգծեց Սփիւռքի մասնակցութեան կարեւորութիւնը:

Ան ըսաւ, որ Միջին Արեւելքի հարցի լուծման գործընթացը կը շարունակուի եւ Կովկաս եւս պէտք է հետեւի հակամարտութիւնները լուծելու միջազգային հոլովոյթին: Նախագահը միջոց մը անդրադարձաւ նաեւ «հայկական ցեղասպանութեան հարց»ին, եւ յայտնեց թէ Հայաստանի իշխանութիւնները կը շարունակեն կարեւորութիւն ընծայել այս հարցին եւ մտադիր են այդ հարցով զբաղիլ պետական միջոցներով եւ ՄԱԿի ծիրէն ներս:

Համայնքային այս հաւաքոյթէն ետք, Նախագահը տեսակցութիւն մը ունեցաւ Վարչապետ Սէլիմ Հըսի հետ, այնուհետեւ կէսօրէ ետք, մեկնեցաւ օդակայան, ուր իրեն պաշտօնական ողջերթ մաղթելու եկած էին նախագահ Էմիլ Լահուտ, Խորհրդարանի նախագահ Նէպիհ Պըրրի, Վարչապետ Սէլիմ Հըս եւ բազմաթիւ նախարարներ ու երեսփոխաններ:

## 10-ԱՄԵԱԿ Ռ.Կ.Բ.Մ.-Ի

# ԱՐԴԱՐ ԳՆԱՀԱՏԱՆՔ ՀԱՆՐԱՆՈՒԷՐ ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ



Պր. Սարգիս Նաճարեան

Նշանակալից հանդիսութիւն մըն էր Լիբանանի Հ.Կ.Բ.Մ.ի Բժշկական-Ընկերային Ծառայութեան Կեդրոնի պաշտօնական ճանաչման տասնամեակին նշումը, որ տեղի ունեցաւ Կիրակի, 26 Դեկտեմբեր 1999-ի երեկոյեան, Սահակեան-Լ. Մկրտիչեան Գոլէճի «Արմէն եւ Բերսաբէ Ճէրէճեան Հանդիսասրահ»ին մէջ, հովանաւորութեամբ Լիբանանի Հայոց Թեմի Առաջնորդ Գերպ. Տ. Գեղամ Ծ.Վրդ. Խաչերեանի եւ նախագահութեամբ Հ.Կ.Բ.Մ.ի Լիբանանի Շրջանային Վարչութեան: Ինչպէս նկատել տուաւ իր խօսքին մէջ Կեդրոնին վարիչը, Պր. Սարգիս Նաճարեան, ձեռնարկը իրականութեան մէջ առիթ մըն էր գնահատելու աշխատանքը բոլոր անոնց որոնք նպաստած են Կեդրոնի հիմնադրութեան, մասնաւորաբար Կեդրոնի հին ու նոր բժշկական անձնակազմին, որուն վիճակուած է առանցքային դերակատարութիւն Դարմանատուներու եւ Ընկերային ծառայութեան կեդրոններու աշխատանքին մէջ:

Լիբանանի եւ Հայաստանի քայլերգներու ունկնդրութենէն ետք ներկաները հաճոյքով ունկնդրեցին անզուգական ասմունքող Տիկին Անի Եփրեմեանը, որ իրեն յատուկ շնորհալիութեամբ ու գերազանց առոգանութեամբ մեկնաբանեց Վահան Թէքէեանի «Հայու Հոգին»՝ բանաստեղծին պատգամով, ոգեւորելով ունկնդիրները:

Այնուհետեւ խօսք առնելով Հ.Կ.Բ.Մ.ի Լիբանանի Շրջանային Վարչութեան ատենապետ Պր. Փարամազ Տօնիկեան նշեց որ Բժշկական-Ընկերային Ծառայութեան Կեդրոնի պաշտօնական ճանաչման

4

# ՄԵՂՐԻՆ ՔԱՒՈՒԹԵԱՆ ՆՈՒԽԱ՞Զ

*պետութեան մէջ: Իսկ Քրիստոսէ առաջ 189-էն մինչեւ առաջին դարու սկիզբը ան գտնուած է Արտաշէսեաններու, ապա հայ Արշակունիներու թագաւորութեան տիրոյթներէն ներս, որպէս Սիւնիքի՝ նախարարական տոհմի տիրոյթ: Մեղրին նաեւ ծննդավայրն է անմահանուն յեղափոխական Փարամազի: Փարամազ 1915-ի Յունիս 15-ին Պոլսոյ մէջ կախաղան բարձրացաւ իր քսան ընկերներուն հետ:*

*Իսկ ի՞նչու թշնամին այսօր կրկին իր հայեացքը ուղղած է դէպի Մեղրի:*




*Եթէ տուեալ շրջանի քարտէսը մեր աչքին առջեւ ունենանք, կը պարզուի պատկեր մը, որուն վերաձեւաւորումը Ատրպէյճանի համար շատ աւելի նպաստաւոր է, քան այսպէս կոչուած «ղարաբաղեան զիջումները»: Մեղրիի շրջանը Հայաստանի ծայր հարաւն ըլլալով սահմանակից է Իրանին: Հետեւաբար ան դէպի Իրան ելքի հայկական անփոխարինելի դարպասն է: Ղարաբաղեան բուռն հակամարտութիւններու եւ ծանօթ շրջափակման ընթացքին, Իրանի Իսլամական Հանրապետութիւնը դարձաւ Հայաստանի անսակարկ օգնող երկիրը: Առանց այդ օգնութեան պատերազմի մէջ գտնուող հայկական նորանկախ հանրապետութիւնն ու Ղարաբաղը շատ աւելի ծանր եւ անելանելի դրութեան պիտի մատնուէին: Բոլոր երեւոյթները ցոյց կուտան, թէ նման օգնութիւններ, յետագայ ճգնաժամերուն եւս Հայաստան կրնայ ստանալ Իրանէն, եթէ անհրաժեշտութիւնը զգացուի: Մեղրիի «չէզոքացումով» Ատրպէյճան ցանկութիւն ունի Իրանը կտրել՝ անջատել Հայաստանէն եւ այդ միջոցով ալ հիմնովին վերջ տալ Հայաստան-Իրան սահմանային ուղղակի կապերուն եւ համագործակցութեան: Շրջանային քարտէսի վրայ շատ յստակ կարելի է տեսնել նաեւ հետեւեալ պատկերը՝ Նախիջեւանը (այսպէս կոչուած Նախիջեւանի Ինքնավար Հանրապետութիւնը, որ ներկայիս ամբողջութեամբ հայաթափուած է) անջատուած կը մնայ Ատրպէյճանի հանրապետութենէն, այսինքն սահման չունի անոր հետ: Հետեւաբար այս վերջինիս ղեկավարներն ու Նախիջեւանի ազերի բնակչութիւնը կ'աշխատին որեւէ կերպ «Ինքնավար Հանրապետութիւնը» միացնել, կցել բուն Ատրպէյճանին: Զանգեզուրը ընդհանրապէս, իսկ այսօր Զանգեզուր խորհրդանշող Մեղրին սեփականացնելը ազերիական ախորժակներուն յագեցում կուտայ՝ կ'իրականացնէ վաղեմի երազ...:*

*Յիշեալ երազը հիմնովին խանգարողն ու արգելակողը կը շարունակէ մնալ հայկական սեպը: Այս սեպի ուժն ու տարողութիւնը աւելի ծաւալուն է, որուն մասին դեռ պիտի խօսինք: Զանգեզուրի տարածքը, այս պարագային Մեղրիի շրջանը անխորտակ միջնաբերդ է Ատրպէյճանի հանրապետութեան ու Նախիջեւանի միջեւ՝ երկուքը իրարմէ հեռու պահող լեռնապար: Եթէ Մեղրին կոհաբերուի, Հայաստանի հարաւ արեւմուտքին գտնուող Նախիջեւանն ու հարաւ արեւելքէն տարածուող Ատրպէյճանը կը միանան եւ օձի նման կը գալարուին հարաւային Հայաստանի պարանոցին, որմէ ետք արդէն խիկապէս կ'իրականանայ թրքութեան երազը: Բանակցութիւններու ընթացքին հող ու տարածք փոխանակելու ազերիական խորամանկութիւնը շատ աւելի հեռուները կ'երթայ, քան սոսկ Նախիջեւանի կցումը: Եւ կրկին ուշադիր նայուածքով մը քարտէսին վրայ՝ պարզ կարելի է նկատել նաեւ Թուրքիոյ եւ Ատրպէյճանի միջեւ սահմանի մը գոյառումը՝ ինքնաբերաբար, եթէ Ատրպէյճանն ու Նախիջեւան կցուին: Դեռ քսաներորդ դարու սկիզբներուն, թուրքական դիւանագիտութիւնը քաղաքական հեռատեսութիւն ունենալով, իր հարեւաններուն պարտադրած էր բիրտ կամքը, որուն հետեւանքով ալ 12 քիլոմեթրանոց, թէեւ կարճ, բայց շատ կարեւոր պորտալար մը գոյացած էր Նախիջեւանի եւ Թուրքիոյ միջեւ:*

*Եթէ ղարաբաղեան բանակցութիւններու ժամանակ հայկական կողմը վիջի կամ պարզապէս պարտուի, այդ պորտալարը կրնայ ճակատագրական դեր խաղալ թրքութեան յաջողութեան եւ յաղթանակին: Իսկ այս վերջիններուն հետեւանքները կարծուածէն աւելի ողբերգական կը դառնայ մեզ՝ հայերուս համար: Թուրքական արդի հանրապետութեան երազանքն է նաեւ ամէն կերպ հասնիլ Միջին Ասիա՝ թրքալեզու ցեղերը միաւորելու եւ անոնց վրայ առնուազն տնտեսական, քաղաքական ու մշակութային իշխանութիւն հաստատելու:*

*Այսպիսի ծաւալողական նկրտումներ խիստ մտահոգիչ են, կարմանալի չթուայ, նաեւ հյօր Չինաստանի համար: Հասնելով մինչեւ Միջին Ասիա, այսինքն Չինաստանի սահմանները, Թուրքիա մութ հաշիւներով կրնայ վտանգաւոր խլրտումներ ստեղծել Չինաստանի թրքալեզու ժողովուրդներու մօտ: Հետեւաբար Մեղրին իր դիրքով բարձր քաղաքականութեան (haute politics) մէջ եւս իր տեղն ունի: Ահա ո՞ւր կը կայանայ քարտէսի վրայ աննշան, փոքրիկ Մեղրիի կարեւորութիւնը: Ուրեմն պատահական չէ նաեւ՝ հայկական բանակին սպառապինման համար տրուող չինական օգնութիւնները:*

*Հայաստանի ներկայացուցիչները ղարաբաղեան բանակցութիւններու ընթացքին ճակատագրական վիջումներու մասին մտածելու իրաւունք չունին: Հայոց փրկութիւնը վստահելի դաշնակիցներ ունենալու եւ ռազմական ու բարոյական հզօրութեան մէջ է: Յայտնութիւն մը ըրած չենք ըլլար եթէ ըսենք թէ ո՛ւժն է խօսողը: Պիտի չտարուինք խոստումներէն, ու չսարսափինք սպառնալիքներէն: Մեր նենգ հակառակորդները ներկայիս կ'աշխատին ե՛ւ խոստումներ շռայլել ե՛ւ ականահարել հայուն քաղաքական, ու բարոյական արժէքները: Ծանր էր Հոկտեմբեր 27-ին տրուած հարուածը: Այս դժուար օրերուն, որքա՜ն կզալի են Վազգէն Սարգսեանի եւ Կարէն Դեմիրճեանի բացակայութիւնները...: Բարեբախտաբար տակաւին արթուն է հայոց բանակը:*

**ՄԱՆՈՒԷԼ ԱԴԱՄԵԱՆ**

# «ՀԱՅՐԵՆԻՔԻ ՏԷՐ ԵՒ ՊԱՇՏՊԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ...»

Արեւմտեան Հայաստանի Շապին - Գարահիսար բերդաքաղաքում, խաղաղ արհեստաւորի ընտանիքում ծնուած պատանին դեռ վաղ հասակից տեսաւ ու զգաց թրքական խուժանի բռնութիւնները եւ Մաշտոցեան սուրբ տառերն ու հիւսնի գործիքը ստիպուած փոխեց ֆիտայու զէնքով: Եւ ինչպէ՞ս չփոխէր, երբ հինաւուրց Հայաստանի հողն ու ժողովուրդը ենթարկւում էին թրքական նուաճողների աւերուածութիւններին ու կոտորածներին: Անտանելի էր հայերի վիճակը իրենց պապենական հողում: «Տիարպէքիրում, Էրզրումում, Սվազում, Տրապիզոնում եւ նոյնիսկ Կ. Պոլսում, գրել է ֆրանսացի դիւանագէտ ժիւլ Կամբոնը,- տեղական քրիստոնեաները ապրում էին մշտական սարսափի մէջ...»:

Հայկական Հարցը վաճառքի հանած տէրութիւնները հնազոյն ու քաղաքակիրթ մի ժողովրդի բախտը դարձրել էին միջազգային դիւանագիտութեան յարատեւող հարցերից: Հայ ժողովրդի լաւագոյն զաւակները իրենց դառը փորձով ըմբռնեցին այդ եւ իրենց կեանքի խորհուրդը դարձրին սուրը՝ կտրիճի ձեռքին, արիւնն ու կրակը՝ թշնամու վրայ: Հնչեց Ռաֆայէլ Պատկանեանի կոչը.

**Եղբայրք Հայեր, առէք խոփը, տուէք դարբնին կռելու,**
**Կռել – կոփել սուր ու սուսեր՝ Հայաստանը փրկելու:**

Նոյն ոգով հնչեց մեծ տէրութիւնների՝ 1878 թուականի Պերլինի համաժողովի արդիւնքներից յուսախաբուած Խրիմեան Հայրիկի խորհուրդը՝ «Հայաստանցիներ, այսուհետեւ սիրեցէ՛ք երկաթը, ձեր փրկութիւնը երկաթով կը լինի, այն պատուական երկաթով, որ Զէյթունի լեռներէն կը ելնէ»:

**Մի՛ վախենար, հանգիստ կեցիր, բաջի ջան,**
**Կանանց երբեք ձեռք տալու չէ, վրէժխնդիր քաջ ֆիտան:**

Այսպիսին էին ֆիտայիները, որոնցից շատերը իրենց նպատակին համար հերոսաբար զոհուեցին: Նրանցից շատերի յիշատակին իր գողտրիկ երգերն է նուիրել մեծ բանաստեղծ Աւետիք Իսահակեանը:

Հայդուկապետ Անդրանիկի անունը երկար փայլեց հայկական երկնակամարում: 20րդ դարի սկզբից, նա Հայ ժողովրդի ազատագրական պայքարի ամենամեծ աստղն էր:

Անդրանիկի անունն առանձնապէս հռչակուել է 1901 թուականի Նոյեմբերին՝ Առաքելոց վանքի դիւցազնական կռիւներին, երբ մի քանի տասնեակ հայ ֆիտայիներ դիմակայեցին թրքական մօտ հազար հրոսակների եւ գրեթէ առանց կորուստների ճեղքեցին թշնամու շրջափակումը: Անդրանիկի զինակից, անուանի գրող Վահան Թոթովենցը Առաքելոց վանքի դիւցազնամարտը բնութագրել է որպէս հայոց դիւցազնի «Փառքի եւ պսակի անմահ տաճարը»: Անդրանիկն ասել է. «Եթէ Հայ ժողովուրդը կ'ուզէ ինձ պատիւ մը ընել, ես իմ արձանս չեմ ուզեր, փառաւոր թաղում չեմ ուզեր. թող Հայ ժողովուրդը կանգնեցնի աւերակ դարձած Առաքելոց վանքը եւ այնտեղ՝ հիմնէ փոքրիկ ուսումնարան մը հայ մանուկներու համար, այ՛ս է իմ ամբողջ բաղձանքս եւ բարոյական պահանջս Հայ ժողովրդէն»:

1906 թուականին, ժընեւում Անդրանիկը հրատարակեց իր «Մարտական Հրահանգները», որում վերլուծում է ֆիտայական - պարտիզանական կռուի ռազմավարութիւնը:



Գիրքն Անդրանիկն սկսում է Ձօնով՝ «Սերոբի, Վազգէնի, Ապրոյի, Թաթուլի, Պետոյի, Հրայրի, Գուրգէնի, Վահանի, Թորգոմի, Վաղարշակի եւ բոլոր այն անմոռաց հայդուկ ընկերների յիշատակին, որոնք իրենց կեանք ու մահու պայքարով հարթեցին ժողովրդի ազատագրութեան դժուարին ուղին եւ իրենց պայքարի փորձը հաղորդեցին յաջորդ սերունդներին»:

Անդրանիկի ռազմական տաղանդը, մարտավարական արուեստը, խիզախութիւնը, հոգատար վերաբերմունքը զինուորների, գաղթականների եւ աշխատաւորների նկատմամբ դրսեւորուեցին թէ՛ նրա պայքարի հայդուկային շրջանում, եւ թէ՛ Պալքանեան առաջին պատերազմի ժամանակ (1912 - 1913), ե՛ւ Առաջին Համաշխարհային Պատերազմում: Նա որպէս հայկական կամաւորական առաջին ջոկատի հրամանատար, ղեկավարում է մօտ 20 ռազմական գործողութիւն՝ Տիլմանի, Պիթլիսի եւ այլ ճակատամարտերում, արժանանում մարտական բազմաթիւ շքանշանների: 1918 թուականի Յունուարին Անդրանիկը ստանում է ժեներալ-մայորի կոչում:

Անդրանիկը հանդէս է եկել որպէս ժողովուրդների բարեկամութեան ջատագով: 1917ի Դեկտեմբերից, Թիֆլիսում լոյս տեսնող «Հայաստան» թերթի էջերից դիմում է բոլոր ազգերի մարդասէր ներկայացուցիչներին՝ բռնակալ կառավարութեան դէմ պայքարելու կոչով:

Անդրանիկն ասում էր. «Մեծ դժբախտութիւն է, որ Հայ ժողովուրդը ընդհարման մէջ է քիւրտի հետ: Ամէն միջոց պէտք է գործադրել մօտիկացնելու քիւրտը մեզի»:

Անդրկովկասում ստեղծուած բարդ իրադրութեան հետեւանքով հալածուելով բազմաթիւ թշնամիներից՝ Անդրանիկը ստիպուած է լինում 1918ի Ապրիլին թողնել Հայաստանը եւ անցնել արտասահման:

Մեծ հայդուկապետը վախճանւում է 1927ի Օգոստոսի 30ին Ֆրեզնոյում, որտեղից նրա դիակը տեղափոխւում է Փարիզ եւ հանդիսաւոր արարողութեամբ թաղւում Փեր Լաշեզի գերեզմանոցում:

Հայ ժողովուրդը սրբութեամբ է պահում Անդրանիկի յիշատակը, նրա անունով են կոչւում փողոցներ, Երեւանի մեթրոյի կայարաններից մէկը: Հերոսին նուիրուած բազմաթիւ յուշարձաններ կան Երեւանում, Կիւմրիում եւ հանրապետութեան բազմաթիւ այլ վայրերում: Նրա մասին հրատարակուած են փաստաթղթերի ժողովածուներ, մենագրութիւններ: Երեւանում եռանդուն գործունէութիւն է ծաւալել «Զօրավար Անդրանիկ Հայոց Համազգային Միութիւնը»:

**ԳԷՈՐԳ ՂԱՐԻՊՋԱՆԵԱՆ**
**Ակադեմիկոս**

## ԽԱՌԸ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՊԻՏԻ ԿԱԶՄՈՒԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

*տացան գլուխ հանել հասարակաց մօտեցում եւ ծրագիր՝ Հայաստանը դուրս բերելու համար յետխորհրդային տնտեսական տագնապէն:*

*Այվազեանի համաձայն, կուսակցութիւններր նաեւ համաձայն եղած են նախարարութիւններու թիւր 24էն 17ի իջեցնելու՝ վարչապետ Սարգսեանի ծրագրին:*

*Միասնութեան ղեկավարներէն մէկը՝ Անդրանիկ Մարգարեան վստահեցուց, թէ այս համաձայնութիւնր Քոչարեանի դէմ ուղղուած չէ: Ըստ Սահմանադրութեան, խորհրդարան ներկայանալէ առաջ, կառավարական որեւէ փոփոխութիւն պէտք է արժանանայ նախագահին հաւանութեան:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱՁԵՒԸ ՄԵՐԺՈՒԵՑԱՒ ՖՐԱՆՍԱՅԻ ԾԵՐԱԿՈՅՏԻՆ ԿՈՂՄԷ...

*Դիտել տրուեցաւ նաեւ որ Ֆրանսայի Սահմանադրութիւնր Ծերակոյտին յիազօրութիւն չէ տուած պատմական վճիռներ արձակելու: Քուէարկութենէն վերջ Դիւանի նախագահութեան կողմէ հրատարակուած հաղորդագրութեան մը մէջ ըսուեցաւ որ պատմութեան մեկնաբանութիւնր պէտք է թողուի պատմաբաններուն:*

*Մերժումի այս լուրր երէկ իրիկուն Թուրքիոյ բոլոր կայաններէն հաղորդուեցաւ գոհունակութեամբ: Հանրապետութեան Նախագահ Տէմիրէլ երէկ շնորհակալութեան նամակ մր յղեց Ֆրանսայի Նախագահ Ժագ Շիրակին, որ մեծ դեր մր խաղաց բանաձեւին մերժումին մէջ: Նախագահր շնորհակալութիւն յայտնեց ցուցաբերուած ուշադրութեան համար եւ ըսաւ որ Թուրքիոյ ու Ֆրանսայի միջեւ ամենաբարձր մակարդակի վրայ ընթացող յարաբերութիւններու փայլել արդիւնք մըն է այս մէկր:*

*Այսօր Թուրք մամուլր շատ լայն տեղ տուած է Ծերակոյտի Դիւանի մերժումի լուրին: Այս լուրին զուգահեռ կերպով կր հրատարակուին նաեւ Ամերիկայի նախագահութեան թեկնածու, Թէքսասի Կուսակալ Ճորճ Պուշի հայանպաստ արտայայտութիւններր, որոնք երկու օրէ ի վեր կր գրաղեցնեն Թուրք հանրային կարծիքր: Մամուլր արձագանգ կր հանդիսանայ այն լուրին, ըստ որու թեկնածու Պուշ նամակ մր գրկած է Ամերիկայի հայկական լոպիի երկու յառաջադէմ դէմքեր՝ Էտկար Յակոբեանին ու Վազգէն Սեդրակեանին եւ այդ նամակին մէջ յայտնած է թէ հայ ժողովուրդր այն առաջին ժողովուրդն է որ այս դարասկիզբին ցեղասպանութեան ենթարկուած է: «Քսաներորդ դարր այնուհետեւ սպանդներով ու ցեղասպանութիւններով լեցուեցաւ: Գիտակից ամէն մարդ այս բոլորէն օգտակար դասեր պէտք է քաղէ: Եթէ ես Նախագահ ընտրուիմ, ամէն ինչ պիտի ընեմ, որպէսզի մեր երկիրր ճանչնայ հայկական ցեղասպանութիւնր: Իմ պաշտօնավարութեանս շրջանին պիտի շարունակուի Հայաստանի կատարուած օժանդակութիւնր, որ պիտի նպաստէ Հայաստան - Ատրպէյճան հակամարտութեան լուծման»:*

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԻՒՆ ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Հինգշաբթի 2 Մարտ 2000, երեկոյեան ժամը 9-ին
**«ԹԷՔԷԵԱՆ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ**

**ՈԳԵԿՈՉՈՒՄ**

**ՎԱՐԴԱՆԱՆՑ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ**

Հովանաւորութեամբ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏԱՀԱՅՈՑ

Ելոյթ Կ'ունենայ
Օրուան Բանախօս
**ՊՐ. ԱՒԵՏԻՍ ՏԻՊԱՆ**
Յատկապէս հրաւիրուած Աղեքսանդրիայէն

**ՕՐՈՒԱՆ ՊԱՏՇԱՃ ՅԱՅՏԱԳԻՐ**

Հայկական քէշկէկի եւ աղանդներու սպասարկութիւն
Սիրալիր հրաւէր բոլորին

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Արթօ եւ Լիւսի Թօսունեաններ, ննկայիւս կու գան իրենց խորին շնորհակալութիւնները յայտնել իրենց պսակադրութեան եկեղեցական արարողութեան նախագահող Թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանին, ձեռնտուութիւնը կատարող Աղեքսանդրիոյ հագեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեանին, Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ «Ս. Գրիգոր Լուսաւորիչ» երգչախումբին, երգչախումբին ղեկավարող Պր. Նշան Վարդեանին, երգեհոնահար Տիկին Զուարթ Գալայճեանին, բոլոր ներկաներուն, նաեւ անոնց, որոնք հեռագրով, նուէրով, ծաղկեկողով դրկելով եւ զանազան միութիւններու նուիրատուութիւններ կատարելով, շնորհաւորեցին իրենց ամուսնութիւնը:



## ԾՆՈՒՆԴ

*Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Գէորգ եւ Մարօ Մազլըմեաններ Աղեքսանդրիոյ մէջ, 2 Փետրուար 2000-ին, բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Երուանդ:*

*Այս ուրախ առթիւ մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նորածին մանկան ծնողները, ինչպէս նաեւ մեծ ծնողներր՝ Տիկին Լուսին Մազլըմեանն ու Տիկին Ալիս Մազլումեանը, մաղթելով նորածինին երջանիկ եւ առողջ կեանք:*

***

*Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Քեռի Մխտիկեաններ վերջերս բախտաւորուած են երկրորդ զաւակով մը, զոր անուանակոչած են Եար:*

*Այս բարեբաստիկ առիթով մեր խնդակցութիւնները կը յայտնենք նորածինին ծնողներուն, մեծ ծնողներուն՝ Տէր եւ Տիկ. Պետրոս Մխտիկեաններուն ու Տիկին Զարուհի Արթինեանի, մաղթելով նորածին մանկան արեւշատ եւ երկար կեանք:*

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրելի մօր՝ Տիկ. Անահիտ Թումայեանցի հիւանդանոցէն դուրս ելլելուն առթիւ, Տէր եւ Տիկ. Կարօ եւ Արաքսի Թումայեանց Տէր եւ Տիկ. Սարգիս եւ Ատրինէ Արթինեան Աստուծոյ գոհութիւն տալով, կ'ընեն հետեւեալ նուիրատուութիւնները.

| | |
|---|---|
| Ս. Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Այծեմնիկ Հանգստեան Տան | 100 |
| Հայ Աղքատախնամ Ընկերակցութեան | 100 |
| Հայ Կարիքի Խաչին | 100 |
| Նուպարեան Ազգ. Վարժ.ին | 100 |
| Գալուստեան » » | 100 |
| Պօղոսեան » » | 100 |
| Հ.Մ.Ը.Մ. Արարատին | 100 |
| Հ.Մ.Ը.Մ. Նուպարին | 100 |
| Հ.Մ.Ը.Մ. Կամք Աղեքս.ին | 100 |
| Սէն Թէրէզին | 100 |
| Հ.Մ.Ը.Մ. Նուպար Աղեքս.ին | 100 |
| Յուսաբեր Մշակ. Միութեան | 100 |
| Յուսաբեր Վեթերաններու Ֆոնտին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

*Ընկեր Տոքթ. Կարպիս եւ Տիկին Մարի Թօսունեաններ իրենց առջինեկ մանչ զաւակին՝ Սերճի ծննդեան ուրախ առթիւ կը նուիրեն.*

| | |
|---|---|
| *Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին (Աղեքս.)* | *50* |
| *«Տիգրան Երկաթ»ին* | *50* |
| *«Ջահակիր»ին* | *50* |

## ԱՐԴԱՐ ԳՆԱՀԱՏԱՆՔ ՀԱՆՐԱՆՈՒԷՐ ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ

2

տասնամեակը կը զուգադիպի Հ.Կ.Բ.Մ.ի երեսնամեակին եւ Ամավերջի ու Սբ. Ծննդեան տօնական օրերուն, «ինչ որ ուժ, կարողութիւն եւ առողջութիւն կը շնորհէ մարդ էակին»: Ան գնահատեց բժիշկներուն ծառայութիւնը՝ «մեր ժողովուրդի մարմնով տկար, հիւանդ ու չքաւոր անձերուն, այն խորունկ գիտակցութեամբ որ առողջ միտք կը պահուի առողջ մարմնի մէջ», ինչպէս նաեւ երկրորդ եւ երրորդ դարմանատուներու բացումը Ռաուտա - Էհլանի եւ Սին Էլ Ֆիլի մէջ, «աւելի օգտակար հանդիսանալու համար մեր ժողովուրդին եւ լիբանանցի մեր արաբ եղբայրներուն առանց երեւէ խտրութեան»:

Ներկաներուն համար յայտնութիւն մը եղաւ երիտասարդ դաշնակահար Կարօ Աւեսեանին ելոյթը: Արուեստագէտը յայտնուեցաւ նաեւ իբրեւ շնորհալի երաժշտահան նուագելով իր մէկ յօրինումը՝ որ արդիական ոճն ու կշռոյթը դասականին միախառնող հաճելի երաժշտական ստեղծագործութիւն մըն էր:

Մտածեցինք տասնամեակին առիթով յատուկ յուշատախտակներով գնահատել բոլոր այն բժիշկները որոնք ծառայած են եւ կը ծառայեն Հ.Կ.Բ.Մ.ի Դարմանատան մէջ: Զուգեցինք դասակարգել այս ծառայութիւնը, ըսաւ Պր. Սարգիս Նաճարեան հրաւիրելէ առաջ Գերպ. Տ. Գեղամ Ծ.Վ. Խաչերեանը, որպէսզի անձամբ յանձնէ գնահատականները բժիշկներուն եւ այն հաղուագիւտ անձնաւորութիւններուն, որոնք առաւել կամ նուազ ներդրում ունին Դարմանատան գործունէութեան մէջ: Ապա ձեռամբ Առաջնորդ Հայր Սուրբին իրենց գնահատագրերը ստացան բոլորը:

Հուսկ խօսք առաւ Գերպ. Տ. Գեղամ Ծ.Վ. Խաչերեան, իր պատգամով եզրափակելու համար հանդիսութիւնը: Իր հոգեկան գոհունակութիւնը յայտնելէ ետք անոր համար որ իրեն առիթ տրուեցաւ սեղմելու ձեռքեր, որոնք ցաւը թեթեւցուցած են չքաւորներու, Հայր Սուրբը բարեդէպ զուգադիպութիւն մը տեսաւ այսպիսի հանդիսութեան մը կայացումին մէջ Սբ. Ծննդեան Տօնի նախօրեակին՝ Մարդեղութեան Խորհուրդի նշման այս օրերուն: Հայր Սուրբը բարձր գնահատեց ծառայութիւնն ու ծառայողները ընդգծելով որ կաթիլ - կաթիլ մատուցուած ծառայութիւնը կրնայ փրկչարար գործ կատարել:

Առաջնորդ Հայր Սուրբը բարձր գնահատեց այս ձեռնարկը, զոր հովանաւորել ու գնահատագրերը անձամբ յանձնել հաճոյքով ընդունած է ցոյց տալու համար ծառայութեան կարեւորութիւնը մեր ժողովուրդին համար եւ քաջալերելու ծառայելու ոգին:

Հանդիսութեան յաջորդեց չքեղ ընդունելութիւն մը որուն հրաւիրուած էին բոլոր ներկաները:

**ԹՂԹԱԿԻՑ**

## ՄԱՀԱԶԴ

Խոր վիշտով տեղեկացանք, թէ Փետրուար 14-ին, Աղեքսանդրիոյ մէջ յանկարծամահ եղած է Ռուսաստանի Դաշնութեան Աղեքսանդրիոյ Մշակոյթի կեդրոնի երկարամեայ տնօրէնը՝

### ՏԻԱՐ ՌՈՊԵՐԹ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ



Հանգուցեալին մարմինը փոխադրուած է Մոսկուա, ապա հոնկէ Հայաստանի Հանրապետութիւն, ուր ամփոփուած է իր ընտանեկան դամբարանին մէջ:

Եգիպտոսի մէջ իր պաշտօնավարութեան շրջանին, հանգուցեալը սատար հանդիսացած է Հայաստանի եւ եգիպտահայ մշակութային համագործակցութեան: Խորհրդային շրջանին ան վարած է կուսակցական եւ պետական պատասխանատու պաշտօններ: Շրջան մը նախագահն էր Հայաստանի արտասահմանեան երկիրներու հետ Մշակութային կապի կոմիտէին «ԱՕՔՍ»-ի: Այնուհետեւ 1991-ին փոխադրուած Եգիպտոս, վարելու Ռուսական Մշակութային կեդրոնի տնօրէնութիւնը եւ միաժամանակ Ռուսաստանի Դաշնութեան Աղեքսանդրիոյ փոխ հիւպատոսի պաշտօնը եւ վերակազմակերպելով մշակոյթի կեդրոնը, զայն դարձուցած է բարձր մակարդակի մշակոյթի տունի մը:

Իր բարի, իմաստուն եւ մեծ հայրենասէրի յիշատակը երկար տարիներ վառ պիտի մնայ եգիպտահայութեան եւ մասնաւորաբար աղեքսանդրահայութեան սրտին մէջ:

*Այս փխուր առթիւ «Ջահակիր» եւ իր շրջանակը իրենց խորազգած ցաւակցութիւնները կը յայտնեն հանգուցեալին անմխիթար կնոջ՝ Ինայի, զաւակներուն՝ Գայանէի եւ Անդրանիկի, սրտաբեկ մօր, փեսային, հարսին, քոյրերուն եւ ազակիր բոլոր պարագաներուն:*

## ՏԽՐՈՒՆԻ

*Տէր եւ Տիկին Էտուար (Համբարձում) Պօյաճեան եւ զաւակը՝ Յակոբ, Տէր եւ Տիկին Հայկ Պօյաճեան եւ զաւակները՝ Հրայր եւ Կարօ (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Էտուար Քիւփելեան եւ զաւակը՝ Պերճ, Տէր եւ Տիկին Վազգէն Բրուտեան եւ զաւակները՝ Թալին եւ Արմէն (Պրագա), Տէր եւ Տիկին Ծորճ Զէրտէլեան, ինչպէս նաեւ Շմմէմսեան, Քիւփէլեան, Աւետիսեան, Աբոյեան, Կոճամանեան, Դաուհիտ, Աղաճանեան, Բրուտեան, Սագայեան, Ալպայա, Արսլանեան, Նալեան ընտանիքները կը ծանուցանեն մահը իրենց շատ սիրելի մօր, մեծմօր, մեծ մեծմօր, խնամիին, կեսրոջ եւ ազգականին, հանգուցեալ՝*

### ԱՐԱՔՍԻ ՊՕՅԱՃԵԱՆԻ

*որ հանգեաւ ի Տէր Հինգշաբթի, 17 Փետրուար 2000-ին, երկարատեւ հիւանդութենէ ետք: Յուղարկաւորութեան արարողութիւնը տեղի ունեցաւ յաջորդ օրը Ուրբաթ, 18 Փետրուարի կէսօրին, Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատան Ամենայն Սրբոց մատրան մէջ եւ հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ իր ընտանեկան դամբարանին մէջ:*

*Այս փխուր առթիւ խմբագրութիւնս իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին ազակիր բոլոր պարագաներուն:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 2 Մարտ 2000-ին, **ՏՕՆ Է ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՆԱՆՑ ԶՕՐԱՎԱՐԱՑՆ ՄԵՐՈՑ ԵՐԵՍՈՒՆ ԵՒ ՎԵՑ ՎԿԱՅԻՑՆ, ՈՐՔ ԿԱՏԱՐԵՑԱՆ Ի ՄԵԾԻ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ:**

Նոյն օրը Տօն է նաեւ անուանակոչութեան

**Ն. Ս. Օ. Տ. Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ.**
**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ**

Այս առթիւ Հինգշաբթի, 2 Մարտ 2000-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Ս. Պատարագը պիտի մատուցանէ եւ քարոզէ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ

**Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

Ի ժամ Ս. Պատարագի «Հայր Մեր»-էն առաջ պիտի կատարուի Հայրապետական Մաղթանք:

Եկեղեցական արարողութիւններուն պիտի մասնակցին Ազգային Վարժարաններու աշակերտները եւ Ս. Խորանէն պիտի կատարուին ընթերցումներ:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին
Սկիզբ Ս. Պատարագի - - 9.45-ին

Ժողովուրդի երթ ու դարձը դիւրացնելու համար տրամադրուած է յատուկ օթօպիւսի սպասարկութիւն:

Հելիոպոլսոյ Սաֆիրի կայարանէն առաւօտեան ժամը 8.25-ին
Նուպարեան Ազգային Վարժարանէն - - 8.30-ին
Սինեմա Նորմանտիի առջեւէն - - 8.40-ին
Սինեմա Ռօքսիի առջեւէն - - 8.45-ին

Կը հրաւիրենք մեր հաւատացեալ ժողովուրդը ներկայ գտնուելու կրօնական սոյն հանդիսութիւններուն փառաւորելու համար Սրբոց Վարդանանց պանծալի յիշատակը:

**Ե. Գ. Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

ՄՈՆԹՐԷԱԼ

# ԶՄՄԱՌՈՒ ՀԱՅ ՎԱՆՔԻՆ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 250-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

«Դուն Արծիւեան բոյն մ'ես կանգուն լուսածոր
Ուր կը կերտուի աղօթքի մարդը վաղուան...»
ՄԻՔԱՅԷԼ Ծ. Վ. ՄՈՄՃԵԱՆ

Ի յուր, Լիբանանի մէջ Զմմառու Հայ վանքին հիմնադրութեան 250-րդ տարեդարձին առթիւ մեծ խանդավառութեամբ կատարուող ձեռնարկներուն, մոնրէալաբնակ բարեկամներն եւս չէին կրնար անմասն մնալ:

Փութով, վանքին նախկին սաներն ու Հայ Կաթողիկէ Միութիւնը միասնաբար կեանքի կը կոչէին յատուկ յանձնախումբ մը, որ կը լծուէր աշխատանքի արժանավայել տօնակատարութեամբ մեծարելու սփիւռք ամենահին հայ վանքն ու անոր վաստակը:

Եւ ահա, վանքին 250 տարիները խորհրդանշող նոյնքան գումարի մը նուիրատուութեամբ 42 ազնիւ անձեր, կը պատասխանէին սիրայօժար իրենց եղած կոչին իբրեւ կնքահայրեր:

Խնամուած ճաշկերոյթ-տօնակատարութիւն մը հովանաւորութեամբ Նարեկայ Տիրամօր Գերյ. ժողովրդապետ Տ. Գէորգ Ծ. վրդ. Զապարեանի, յաջողութեամբ տեղի կ'ունենար Շաբաթ 29 Յունուար 2000-ի երեկոյեան ժամը 8.30-ին, յատկապէս զարդարուած, ընտրանի ներկաներով լի Իփէկեան սրահին մէջ:

Բեմը ունէր աննախընթաց երեւոյթ: Աջ ու ահեակ զետեղուած՝ վանքի եւ ցաւագին Տիրամօր բարձրադիր, հսկայածաւալ նկարները հիացում կ'առթէին բոլորին: Իսկ պատերու վրայ մեծատառ կը կարդացուէր Վ. Թէքէեանէն եւ Հ. Քաջարենցէն պատգամներ:

«Եկեղեցին հայկական ծննդավայրն է հոգւոյս»

«Մասունք մ'ես դուն Հայաստանի զոր վարեր է մըրրիկն այստեղ»

Իսկ յատուկ անկիւն մը յատկացուած էր վարդապետներու եւ նորընծաներու կեանքէն զանազան դրուագներ ներկայացնող խմբանկարներու եւ տարեդարձի յուշանուէրներու:

Հանդիսավար Անի Էվերեկլեանի կողմէ սկիզբ կ'առնէր հանդիսութիւնը: Ան կը յայտարարէր ...«-Այս դարաւոր վանքը իբր ուխտավայր, սրբավայր ցայն ճանչցողներուն սրտին մէջ անմոռանալի յիշատակներ դրոշմած, հրապուրած եւ դիւթած է սերունդներ ամբողջ, ըլլան հայ, ըլլան օտար»:

Ապա հերթաբար, յետ սեղաններու օրհնութեան, կը գործադրուէր օրուան յայտագիրը:

Կը հրաւիրուէր վանքին 250-րդ տարեդարձի ընդհանուր հանդիսութեանց գլխաւոր համադրիչը՝ դոկտ. Ժօրժ Մուխթար, որ իր հայերէն եւ ֆրանսերէն խօսքով վանքին հակիրճ պատմութենէն սկսեալ կատար կատարուած ու կատաբուելիք տօնակատարութիւններու մասին իր զեկոյցը եւ ականատեսի վկայութեամբ կը նկարագրէր այնտեղ պատահած հրդեհին գործած աւերները եւ շնորհակալութիւն կը յայտնէր հայ եւ օտար նուիրատուներուն:

Կը ցուցադրուէր 250-րդ ամեակի առթիւ յատկապէս մեծ խնամքով պատրաստուած 1749-էն սկսեալ վանքին պատմութիւնը ներկայացնող մանրամասնեալ տեսերիզ մը, որուն ի տես շատեր յուզումով կը վերապրէին իրենց քաղցր յիշատակներուն մէջ:

Այժմ թանգարանի վերածուած առաջին կաթողիկոսներու կամարակապ խուցերը, մատենադարանը, թանգարանն ու զանազան մասունքներու յոյժ տպաւորիչ, հետաքրքրական շարքը ցուցադրող սոյն ժապաւէնի մեկնաբանութիւնը հայերէնով եւ ֆրանսերէնով յաջողութեամբ կը կատարէր Պրն. Համբարձում Անտոնեան:

Գնահատանքով կ'ունկնդրուէր գեղարուեստական բաժնի մաս կազմող ելոյթը՝ Միրնա եւ Թալինա Գարամանուկեաններու: Անոնք դաշնակի եւ ջութակի վրայ կը մատուցանէին NOCTURE. Գ. Եղիազարեան, PLAGHIERA, DANSE ESPAGNOLE- P. SARASATE-ի գործերը:

Վանքի նախկին սաներու կողմէ կուռ բանախօսութեամբ մը կը ներկայանար Յարութիւն Էվերեկլեան: Ժամանակին՝ աշխարհի Օսմանեան Իշխանութեան տիրապետած երկիրներուն եւ Լիբանանի մասին ակնարկելէ ետք ան կ'ըսէր «Քրիստոնեաներու երկիր կոչուած Լիբանանին մէջ Զմմառու վանքը եւ Արծիւեան Միաբանութիւնը իրարու հետ նոյնացած ինչպէս տաճարն ու հաւատացեալները՝ «եկեղեցի» բառին մէջ, հանդիսացան անկիւնաքարը Աբրահամ-Պետրոս Ա. Արծիւեան կաթողիկոսի հիմնած, Տանն Կիլիկիոյ Հայ Կաթողիկէ վերանորոգ Աթոռին»:

Ապա կը թուէր վանքին առանձնայատկութիւնն ու ծառայութիւնները իբրեւ հաւատքի փարոս հայկական ազատ երդիկ օտար ափերու վրայ: Կը պատմէր յուզիչ դրուագներ զանազան առիթներու պատահած, լի անհամար տագնապլից շրջաններով: Հուսկ կ'եզրակացնէր, - բայց Զմմառու վանքը կանգուն կը մնա՜յ եւ պիտի մնայ՝ «Մասունք Հայաստանի եւ համակ լոյս»:

Ընդհանուր խանդավառութեան մէջ հուսկ բանքը կը կատարէր Գերյ. Տ. Գէորգ Ծ. վրդ. Զապարեան: Ան շնորհակալական եւ երախտագիտական արտայայտութիւններով ողջունելէ ետք ներկաներն ու կազմակերպիչները կը մաղթէր որ հայ կաթողիկէ համայնքները ուր որ ալ գտնուած ըլլան, յանձն առնեն առ ի երախտագիտութիւն իրենց տրիտուրը տալ Արծիւեան Միաբանութեան, հայ ժողովուրդի ազգային, մշակութային եւ հոգեւոր բարգաւաճման համար լիբանանեան այեհեր լեռներուն վրայ թառած այդ անառիկ, սրբազան մենաստանին, որ Մխիթարեան Հայրերու զոյգ ուխտերուն, Անարատ Յղութեան Հայ Քոյրերու Միաբանութեան եւ թեմական բոլոր մեր կղերին հետ մէկտեղ, կը տքնի ի փառս Աստուծոյ, ի պայծառութիւն Ս. եկեղեցւոյ եւ յօգուտ հայ ազգին:

Կը յաջորդէ, Զմմառու վանքին 250-ամեակը յաւերժացնող վանքի եւ Տիրամօր պատկերը ներկայացնող արծաթեայ նրբակերտ «մետալ»ներու տուչութիւնը 42 կնքահայրերու, որոնք մի առ մի բեմ կը հրաւիրուին, ժողովրդապետ հօր ձեռքէն ընդունելու իրենց պարգեւը ու միատեղ խմբանկարուելու:

Հուսկ Զմմառու Հայ վանքը ներկայացնող չքեղ կարկանդակներու վրայ զետեղուած մոմավառութեան արարողութեամբ վերջ կը գտնէ երեկոն:

Ներկաներ կը մեկնին անմոռանալի պահեր ապրած ըլլալու յիշատակով եւ հոգեկան բաւարարութեամբ:

ԴԱՒԻԹ Յ. ԷՎԵՐԵԿԼԵԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆ

## 2000-ից ԱՒԵԼԻ ԵՐԵԽԱՆԵՐ ՀՈՎԱՆԱՒՈՐՆԵՐ ՈՒՆԵՆ ՍՓԻՒՌՔՈՒՄ

Հայ աւետարանչական եկեղեցու Հայաստանի ներկայացուցիչ վերապատուելի Ռընէ Լեւոնեանը, ԱՐՄԷՆՓՐԵՍԻ թղթակցին ասաց որ իրենց խնամակալութեան տակ են մօտ 2000 երեխաներ: Բացի նրանց յատկացուող նիւթական օգնութիւնից, հովանաւորները նաեւ նամակագրական կապ են հաստատել խնամարկեալ ընտանիքների հետ: Երեխաների հովանաւորութիւնը շարունակւում է մինչեւ 16 տարին լրանալը. նրանց յատկացւում են սնունդ, հագուստ, գրենական պիտոյքներ, անհրաժեշտութեան դէպքում հովանաւորները հոգում են նաեւ նրանց բուժման կարիքները:

## «ՆՄԱՆ ՈՃՈՎ ԿԱՐԵԼԻ ՉԷ ԽՕՍԻԼ ԵՐԿՐԻ ՆԱԽԱԳԱՀԻՆ ՀԵՏ» ՔՈՉԱՐԵԱՆ ՄԵՐԺԵՑ «ՄԻԱՍՆՈՒԹԻՒՆ ԴԱՇԻՆՔ»Ի ՊԱՀԱՆՋՔՆԵՐԸ

1 ➩ ասուլիսի հեռարձակումը եղած է:

Երկու փաստաբանները իրենց ասուլիսի ընթացքին քննադատած էին դատախազութեան գործունէութիւնը ու յայտարարած, թէ Հայաստան օրէնքէ դուրս երկիր է եւ նախաքննութիւնը կը գտնուի փակուղիի առջեւ:

«Միասնութիւն» դաշինքի կողմէ յաջորդ օր հրապարակուած յայտարարութեան մէջ մասնաւորաբար ըսուած էր.- «Վերջին օրերին միտումնաւոր կրկին սրւում է յարուածութիւնը Հոկտեմբերի 27-ի ողբերգական իրադարձութիւնների քննութեան շուրջ: Որոշ լրատուամիջոցներ ակնյայտ տեղակատուական ճնշում են գործադրում նախաքննութիւնը վարող քննչական խմբի եւ նրա ղեկավարի նկատմամբ, ձգտում են ապակողմնորոշել հասարակական կարծիքն ու զոհուածների հարազատներին:

«Միասնութիւն» դաշինքը կոչ է անում բոլոր քաղաքական ուժերին, մասսայական լրատուութեան միջոցներին չփորձել խոչընդոտել քննչական խմբի օրինական գործունէութիւնը» ըսուած է դաշինքի յայտարարութեան մէջ:

«Միասնութիւն» դաշինքի պահանջները առաւել ծանրակշիռ նկատուեցան մանաւանդ որ, մամլոյ ասուլիսին ներկայ էր նաեւ վարչապետ Արամ Սարգսեան: «Որպէս վարչապետ եւ տուժող կողմ ուզում եմ ասել, որ մեր եւ Դեմիրճեանների ընտանիքը լիովին վստահում է քննչական խմբին»,- ըսաւ վարչապետը ու աւելցուց, որ զոհերու հարազատներուն անհրաժեշտ է իմանալ իսկական թշնամին եւ ոճրագործութեան յանձնարարութիւնը տուողը:

Հայաստանի Ժողովրդական կուսակցութեան խորհուրդի նախագահ Ստեփան Դեմիրճեան նոյնպէս յայտնեց, որ կը վստահի նախաքննութեան մարմնին եւ անթոյլատրելի կը նկատէ քննչական խումբի աշխատանքները խոչընդոտելը:

### ՆԱԽԱԳԱՀԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Ի պատասխան «Միասնութիւն» դաշինքի յայտարարութեան ու ներկայացուած պահանջքներուն, նախագահ Ռոպերթ Քոչարեան, Մարտ 6-ին Ազգային Հեռուստատեսութեան տրուած յատուկ հարցազրոյցի ընթացքին յայտարարեց.- «Իհարկէ, զարմանք առաջացրեց այդ յայտարարութիւնը ե՛ւ ոճով, ե՛ւ բովանդակութեամբ: Զարմանալի է, որ քաղաքական ուժը, որը կազմում է ԱԺ մեծամասնութիւն, ընդունակ է նման կարգի յայտարարութիւն անել, նման ոճով խօսել երկրի նախագահի հետ, որն ընտրուած է ժողովրդի կողմից: Եւ նման կարգի հարց բարձրացնել ընդհանրապէս»:

ՆԿԱՐՉԱԿԱՆ

## ՀԱՅՐԵՆԻ ՆԿԱՐՁՈՒՀԻ ՍԵԴԱ ԲԵՔԱՐԵԱՆԻ ԵՐԱՆԳԱՒՈՐՈՒՄՆԵՐԸ ԿԸ ՊԱՅԾԱՌԱՑՆԵՆ ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀԸ

Նախքան ներկայ գտնուիլը այս ցուցահանդէսին՝ ուղարկուած հրաւէրին ներփակուած կենսագրութենէն կը տեղեկանանք, որ Սեդա Բեքարեան ծնած է Երեւան 1953-ին: 1978-ին, աւարտելէ ետք Երեւանի Գեղարուեստա-թատերական հնստիտուտը, իր հօր Փրոֆ. Արա Բեքարեանի դասընթացքը, ան իր մասնակցութիւնը բերած է տարբեր ցուցահանդէսներու: Ապա անհատական շարք մը ցուցահանդէսներ տուած է զանազան երկիրներու մէջ, ինչպէս՝ Երեւան, ԱՄՆ, Քուէյթ, Զուիցերիա, Գերմանիա. եւ հետեւաբար իր ստեղծագործութիւնները տեղ գրաւած են աշխարհի շատ մը երկիրներու թանգարաններուն մէջ՝ Նորվեկիա, Շուէտ, Պուլկարիա, ԱՄՆ, Գանատա, Ֆրանսա եւ Լեհաստան:

Այս բոլորի կողքին շնորհալի արուեստագիտուհին ունի պատմուածքներ գրելու խրայատուկ ոճ, որ հրատարակուած են անոնցմէ երկու գիրք՝ «Այս է կեանքը» եւ «Գալիս եմ քեզ մօտ» գործերը:

Այս տեղեկութիւններով լիցքաւորուած, անհամբեր կը սպասէինք ներկայ գտնուելու կայանալիք նկարչական ցուցահանդէսին, Կոկանեան Սրահէն ներս:

Ահա՝ Շաբաթ 19 Փետրուարի երեկոյեան, ներկայ են ժապաւէնը կտրելու հովանաւոր Առաջնորդ Սրբազան Հայրը, ցուցահանդէսին նախագահող՝ Տէր եւ Տիկին Անդրանիկ Մեսրոպեաններ, նոյնինքն՝ Հայրենի արուեստագիտուհին, զանազան Միութեանց պատասխանատուներ, համայնքի արուեստագէտներէն քանի մը դէմքեր, մամուլի ներկայացուցիչներ եւ արուեստասէր ընտրանի հասարակութիւն մը:



Հայրենի արուեստագիտուհի՝ Սեդա Բեքարեան, թերթիս խմբագիր՝ Պր. Աւետիս Մովսէսեանի հետ զրոյցի ընթացքին

Բացման արարողութենէն ետք, ներս կը մտնենք ցուցասրահէն եւ մեր առջեւ կը հանդիպինք պայծառ երանգաւորումներով յեցուն արժէքաւոր գործեր:

Հպանցիկ անկարկ մը նետելով, հոն կը նշմարենք ոճի միասնութեամբ ներկայացուած, չորս տեսակ թեմաներ:

Որքա՜ն տպաւորիչ էին հայկական բուրմունք ունեցող այն կտաւները, որոնց մէջ աղջնակ մը նստած իր տան պատուհանին՝ կը դիտէ կեանքը, սիրահարի մը խոյանքով...: Առիթէն օգտուելով հարց կու տանք նկարչուհիին, որ կլորադէմ, հայու աչերով, ժպտունօրէն կը պատասխանէ. «Այս գործերուն մէջ պատուհանը, ինքը՝ կեանքի պատուհանն է, որմէ կը դիտենք աշխարհը» :

Իրատես այս արտայայտութեան ի պատասխան կը հարցնեմ երկրորդ թեմայի մասին. «Ինչո՞ւ նոյն փարթամ կնոջ դիմանկարը արտացոլած էք տարբեր երանգաւորումներով»: «Գոյներու տարբերութեամբ, փորձած եմ յայտնել անոր ներաշխարհը»: Եւ իրապէս ան յաջողած էր գոյներու ներդաշնակութեամբ, բնորոշել նոյն տիկնոջ խօսուն դէմքը երեք արտայայտութիւններով:

Վստահաբար անուանի նկարչուհիին յաջողութեան գաղտնիքներէն մին պէտք է նկատել այն, որ նոյն բնոյթը ունեցող նկարը, կը տեսնենք քանի մը տարբերակներով եւ վրձինի հարուածի զանազան երանգաւորումներով, ինչ որ կը դրսեւորուի այլ բացայայտում եւ սլացք ունեցող գործեր:

Երրորդ թեման էր՝ անվիճելի սէրը դէպի բնութիւնը: «Անպայման ազդուած ըլլամ իր հօր տաղանդէն», կը յարէ ան: Մերթ կրքոտ եւ մերթ պայծառ գոյներով նկարուած, ծառերը, երկինքը, ծաղիկներն ու դաշտերը, որոնք կը նոյնանային առինքնող գեղեցիկ բնանկարներով:



Բարեհամբոյր նկարագրի տէր այս գեղանկարիչը, նոյն հեզութեամբ կ'արտայայտուի իր չորրորդ թեմայի՝ եզակի այն գործերուն մասին, որ հետաքրքրութիւն եւ նիւթ ծառայած է իրեն. «Այս հտպիտները, այն ծաղրածուներն են, որոնք իրենց առօրեայ ներքին տագնապներով բեռնաւորուած, կը ծպտուին իրենց կեանքին մէջ, որպէսզի կարողանան խնդուք պատճառել ուրիշներուն», կը շեշտէ ան: Իրաւամբ, նոյն ծաղրածուն ներկայ էր այդ գիշեր, տարբեր պատկերներով: Կը դիտես դէմքը, ծպտուածքն ու կեցուածքը եւ ինքնիրենդ կ'ըսես. «Այս նկարները գծող վստահաբար խառնուածքով յաւատես եւ խոհուն անձ մըն է»: Հաւանաբար իր գրած պատմուածքներն ալ պիտի ըլլան իր նկարներուն նման խորհրդաւոր եւ իմաստալից:

Թէեւ Տիկին Սեդայի գործերը ընդհանրապէս կը պատկանին «վայրենապաշտութիւն» դպրոցի ոճին, սակայն իր ցուցադրած 20 ինքնատիպ ստեղծագործութիւնները կը վկայեն, թէ հայրենի նկարչուհին որքա՜ն նրբազգած եւ ճաշակաւոր արուեստագէտ մըն է:

Մենք ալ մեր կարգին կը շնորհաւորենք համակրելի նկարչուհին, մաղթելով նորանոր յաջողութիւններ եւ առաւել վերելք, իր սիրած արուեստներուն մէջ:

Նոյնպէս գնահատելով Կոկանեան Սրահի ցուցահանդէսի գծով տարած բծախնդիր աշխատանքը, կը շնորհաւորենք իր հիմնադրութեան յիսնամեայ բեղուն գործունէութիւնը:

Ա. Մ.

ԳԱՀԻՐԷ

# ՈԳԵԿՈՉՈՒՄ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ

*Հինգշաբթի 2 Մարտ 2000-ի երեկոյեան, Հայ Գեղ. Միութեան «Թէքէեան Սրահ»ին մէջ, այս տարի եւս նշուեցաւ Վարդանանցի տօնը, յաւերժացնելու համար Աւարայրի ճակատամարտի հերոսներուն անմար յիշատակը, հովանաւորութեամբ Թեմիս բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի եւ կազմակերպութեամբ Հ.Գ.Մ.-ի, Կոկանեան Սրահի եւ Հայկական Ընթերցասրահի վարչութիւններու միասնականութեամբ:*

*Ի ներկայութեան համայնքի ներկայացուցչական դէմքերու, մշակութային միութիւններու նախագահներու, ատենապետներու, վարչականներու եւ հայրենասէր ընտրանի հասարակութեան մը, սկսաւ երոյթը աւանդական հայկական քէշկէկի եւ աղանդներու սպասարկութեամբ:*

*Գեղարուեստական կոկիկ յայտագրի բացման խօսքը կատարեց Հ.Գ.Մ.-ի ատենապետ՝ Պր. Գրիգոր Մարգարեան եւ պատշաճ ներածականով մը անդրադառնալէ ետք Վարդանանց ոգիի նշանակութեան, բեմ հրաւիրեց օրուան հանդիսավար՝ Նաթալի Ասլանեանը: Հետեւաբար, առաջին առթիւ հրաւիրուեցաւ փոքրիկն Ալիսիկ Մագլումեան, որ համարձակօրէն արտասանեց Վարդանանցի նուիրուած հայրենաշունչ երգերէն՝ «Հայ ալրինք եղբարք»ը: Սոյն նշանակալից քերթուածը որ յաճախ ունկնդրած ենք որպէս երգ, հաճելի էր իմանալ այս անգամ որպէս ոտանաւոր, թերեւս որովհետեւ համակրելի ասմունքողը սահուն եւ յստակ առոգանութեամբ ներկայացուց մեզի: Ասմունքին յաջորդեց Թալին Արթինեանի խնամուած ինքնագիր ուղերձը, որ արժանացաւ ներկաներու ծափահարութեանց: Ապա Քրիսթին Թատրոս հասկացողութեամբ կարդաց 1968-ին «Արեւ» օրաթերթի բովանդակալից խմբագրականէն մաս մը: Խոր տպաւորութիւն թողեց Եղիշէի գրած Վարդանանց հերոսամարտի պատմութենէն հատուածի մը ընթերցումը, որ ըմռնումով կատարեց, մեր բեմերուն ծանօթ ասմունքող՝ Անի Պօղոսեան:*



Պր. Աւետիս Տիպան

*Վարդանանց խորհուրդի պատգամը փոխանցելու հրաւիրուած էր Աղեքսանդրիայէն, Պր. Աւետիս Տիպան: Ան՝ որ Հալէպէն գալով, հայագիտական նիւթերու ուսուցիչ է այժմ Պօղոսեան Ազգ. Վարժարանին մէջ, իր համապարփակ նիւթով կարողացաւ հրահրել հանդիսականներուն ազգային ոգին: Յարգելի բանախօսը համառօտ ակնարկ մը կատարելէ ետք ճակատամարտի զարգացման շուրջ, մատնանշեց թէ Վարդանանք բացառիկ արժէք կը ներկայացնեն հայ ազգին համար, տրուած ըլլալով որ, անոնք կը զօրացնեն մեր հաւատքն ու հայու ազատագրական ոգին: Ապա անդրադառնալով հայ ժողովուրդի անընկճելի կորովին՝ կեդրոնացաւ Սարդարապատի եւ Արցախի նուաճումներուն եւ հերոսութիւններուն վրայ: Գալով նոր սերունդի օտարացման կենսական հարցին, ան ուշադրութեան հրաւիրեց անոնց հայերէն չկարդալը: Հայ երիտասարդութիւնը, ըսաւ ան,- ինթըրնէթով հետաքրքրուած է միայն. «Ուրեմն եթէ կ'ուզենք որ հայ մատղաշ սերունդը չուծանայ, պէտք է քաջալերենք հայերէն կարդալ՝ հայ թերթն ու գիրքը կարդալ», եզրակացուց Պր. Տիպան:*

*Սոյն չահեկան բանախօսութիւնը մեծապէս գնահատուեցաւ ներկայ հասարակութեան կողմէ բուռն ծափողջոյններով:*

*Տօնակատարութեան աւարտին, փակման խօսքով երոյթ ունեցաւ Առաջնորդ Սրբազան Հայրը: Ան ընդգծեց, թէ Վարդանանքի մասին պէտք չէ անտարբեր ըլլանք, որովհետեւ ան կրօնքի եւ հայրենիքի պաշտպանութեան չմաշուող տօնն է. այն տօներէն՝ որոնք ինքզինքնին կը նորոգեն ամէն տարի: Սրբազան Հայրը պարզաբանելով, ըսաւ թէ՝ «Վարդանանց օրը մեզի համար այսօր ազգային հպարտութեան փառատօն մըն է, որքան ատեն որ հայ ազգը կառչած պիտի մնայ իր հաւատքին ու հողին»: Ապա պահպանիչով փակեց հանդիսութիւնը:*

*Մշակութային եւ հայրենասիրական տաքուկ մթնոլորտի մը ընծայման մէջ, ներկաները մեկնեցան գոհունակութեամբ:*

**Ա. Մ.**

# ԱՒԱՐԱՅՐՈՒՄ

*Ոտքի ելաւ աշխարհն Հայոց՝ հայրենեաց սուրբ սիրով լի,*
*Տէր ու մանուկ, ոգին ամբողջ Հայաստանեայց աշխարհի,*
*Ոտքի ելաւ եկեղեցին՝ խաչն իր կրծքին գերդ վահան,*
*Շուրթին՝ աղօթք, սրտում՝ ցասում, ձեռքին՝ սուրբ յաղթական...:*

*Ամպերի պէս երկու հսկայ բանակները յեռնացան,*
*Տղմուտ գետի զոյգ ափերին ծաղիկները դալկացան,*
*Շռնդացին ահեղագոչ գրահները երկուստեք,*
*Ու չողացին Աւարայրում հազարաւոր նետ ու տէգ...:*

*Կռւում էին քաջերն Հայոց՝ ա'յնպէս հուժկու, մոլեգին,*
*Որ զարկերից նրանց հզօր՝ սարն էր թնդում ահագին.*
*Զարկում էին մերթ ընկնում՝ մռնչիւնով ահարկու,*
*Խլում էին մահն իրարից՝ կեանք պարգեւում մէկ-մէկու...:*

*Ոտքի ելան բոլորը մէկ՝ հովիւ, ռամիկ ու ռանչպար,*
*Վրէժով էր լցուել Հայոց երկրում ամէն թուփ ու քար.*
*Ոտքի ելան տիկնայքն Հայոց՝ ցասման բոցով հրդեհուած,*
*Գերահզօր պարսիկ զօրքի ու փղերի դէմ արբած...:*

*Եւ այն օրից երկիրն Հայոց ծնեց Վարդան ու Արտակ,*
*Որոնց կեանքով ոգի առաւ երկիրը մեր բովանդակ.*
*Ու տե'ս այսօր հողագնդի ամէն ծայրում հայր կայ,*
*Հայր երկրի սրտում անգամ ունի արեւն իր անմահ...:*

*Աւարայրից ծնուեց օրն այս՝ կեանքով ազատ մէկընդմիշտ,*
*Որ ծաղկի է փոխուել Հայոց երկում ամէն վէրք ու վիշտ.*
*Ցնծա' երկիր, ցնծա' յաւերժ դու յաղթական, աննկուն,*
*Զի այսօր էլ ունես քեզ հետ քաջ Վարդաններ դիւցազուն...:*

**ՎԱԶԱԿԱՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ**

# ՎԱՐԴԱՆԱՆՔ

## Հպանցիկ Ակնարկ Մը Վարդանանց Հերոսամարտի Պատմութեան Վրայ

*449 թուականին Յազկերտէն հրամանագիր ուղարկուած է Հայաստան որմով հայ նախարարներէն ու հոգեւորականներէն կը պահանջէ, որ հրաժարին քրիստոնէութենէն եւ ընդունին զրադաշտական կրօնքը:*

*Հոգեւորականները եւ նախարարները Հայոց Յովսէփ Կաթողիկոսի գլխաւորութեամբ Արտաշատի մէջ ժողով մը գումարած են Յազկերտի նամակը քննելէ յետոյ: Ապա նամակով մը պարսից թագաւորին յայտնած են, թէ պատրաստ են մեռնելու, սակայն կրօնափոխ չըլլալ:*

*Այս նամակը շատ կը զայրացնէ Յազկերտը եւ կը կարգադրէ, որ հայ նախարարները երթան Տիզբոն եւ բացատրութիւն տան իրենց տուած պատասխանին համար:*

*Մարզպան Վասակ Սիւնի եւ Սպարապետ Վարդան Մամիկոնեան քանի մը նախարարներու հետ կ'երթան Պարսկաստան: Երբ կը հասնին Տիզբոն, Յազկերտը բոլորը կը բանտարկէ եւ կ'ըսէ, որ եթէ կրօնափոխ չըլլան, բոլորը սպանել կու տայ եւ Հայաստանը քարուքանդ կ'ընէ:*

*Բանտարուած նախարարները երկար խորհրդակցելէ յետոյ, կ'որոշեն առերես իրենց կրօնքը փոխել, ինչ որ վրդովում կ'առաջացնէ ժողովուրդի եւ հոգեւորականութեան մէջ:*

*Երբ անոնք կը հասնին Հայաստանի սահմանամերձ Անգղ գիւղը, մոգերը կը փորձեն գիւղի եկեղեցին ատրուշանի վերածել. բորբոքած գիւղացիները քաջ եւ հայրենասէր քահանայ Ղեւոնդ Երէցի գլխաւորութեամբ կը յարձակին 700 մոգերու վրայ եւ կը սպաննեն զանոնք, իսկ ողջերը կը փախչին երկրէն:*

*Այնուհետեւ կը պատահին այլ դէպքեր եւ հայերը իմանալով, որ պատերազմ կ'ըլլայ, կը սկսին յուրջ պատրաստութիւններ տեսնել մեծ պատերազմի համար:*

*Այդ ընթացքին քանի մը իշխաններ Վասակ Սիւնիի գլխաւորութեամբ դէմ կը դնեն պատերազմի որոշման եւ կը դաւաճանեն հայերուն ու կ'անցնին թշնամիին կողմը:*

*Հայրենասէր նախարարները չեն յուսահատիր Վասակի դաւաճանութենէն եւ հայկական զօրքերու ու ժողովրդական ուժերու մեծ բանակ մը կազմելով քաջ եւ հայրենասէր Սպարապետ Վարդան Մամիկոնեանի ղեկավարութեամբ կը պատրաստուին պատերազմի:*

*Անգղ գիւղի դէպքէն յետոյ, Յազկերտ կը հրաժարի բանակները առաջնորդել դէպի Հայաստանի սահմանները: 451 թուականին կռիւը տեղի կ'ունենայ Աւարայրի դաշտին վրայ՝ Տղմուտ գետի ափին:*

*Կռիւէն գիշեր մը առաջ Ս. Պատարագ կը մատուցուի, Սպարապետ Վարդան Մամիկոնեան եւ Ղեւոնդ Երէց ոգեւորիչ խօսքերով կը բացատրեն, թէ այդ պատերազմը որքան կարեւորէ եւ եթէ չկռուին, բոլորը կը մեռնին կամ ալ կրօնափոխ դառնալով ու մոռնալով իրենց լեզուն ամբողջապէս կը կորսնցնեն հայրենիքը:*

*Լուսաբացին կը սկսի պատերազմը: Դաւաճան Վասակ Սիւնի իր զօրքերով կ'անցնի թշնամիին կողմը: Վարդան Զօրավար ատիկա տեսնելով բուռ մը քաջերով գետը կ'անցնի եւ ուղղակի կը յարձակի թշնամիի զօրքերուն վրայ եւ մեծ քաջագործութիւններ կը կատարէ, բայց դժբախտաբար կռուի ամենատաք ժամանակ նետահարուելով քաջաբար կ'իյնայ եւ կը նահատակուի: Աւարայրի կռուի ատեն քաջ սպարապետ Վարդանի հետ նահատակուած են նաեւ 1036 հայ քաջեր, բայց թշնամիի զօրքերու կորուստը շատ աւելի մեծ եղած է: Կռիւը կը տեւէ օր մը:*

*Հայկական զօրքերը ետ կը քաշուին առանց յաջողութեան, բայց թշնամիի բանակն ալ յատուկ յաղթանակ ձեռք չի բերեր:*



*Աւարայրի ճակատամարտէն յետոյ հայոց զօրքերը ետ քաշուելով, թշնամիի զօրքերը կը քաշեն երկրէն ներս եւ առանձին խումբերով քանի մը տարիներ շարունակ մեծ ջարդ կուտան անոնց, այնպէս որ Յազկերտ ստիպուած կ'ըլլայ իր զօրքերը ետ քաշել Հայաստանէն եւ երբ կը համոզուի, որ զէնքի ուժով կարող չէ հայերուն պարտադրել կրօնափոխ դարձնելու իր որոշումը, կը ճանչնայ հայ ժողովուրդին իրաւունքները 484 թուին:*

*Հայերը Աւարայրի ճակատամարտէն եւ իրենցմէ յետոյ փաստեցին, որ որեւէ ուժ կարող չէ անոնցմէ խլել կրօնքը լեզուն եւ հայրենիքի անկախութեան գաղափարը, որոնց շնորհիւ Աւարայրի ճակատամարտի եւ Վարդանանց ոգին կանգուն են մինչեւ այսօր եւ կանգուն կը մնան, քանի որ կայ հայ ժողովուրդը:*

*Փառք եւ պատիւ քաջն Վարդան Մամիկոնեանի եւ անոր հետ նահատակուած բոլոր հերոսներուն:*

### ԻՆՉՈ՞Ի ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԸ ԿԸ ՆՇՈՒԻ ՓԵՏՐՈՒԱՐԻՆ

*Ինչո՞ւ Վարդանանց տօնը կը նշուի Փետրուարին, հակառակ որ տեղի ունեցած է Մայիս ամսուն:*

*Վարդանանց տօնին կը նախորդէ տօն մը՝ Ղեւոնդեան քահանաներու յիշատակը: Բուն Բարեկենդանի նախորդ շաբաթուայ Երեքշաբթին Ղեւոնդեան քահանաներու յիշատակի օրն է, իսկ Հինգշաբթին՝ Վարդանանց: Յովսէփ Կաթողիկոս, Սահակ Եպիսկոպոս, Ղեւոնդ Երէց եւ այլ քահանաներ միշտ գտնուելով ժողովուրդին հետ, կը քաջալերեն մարդիկ, ուժ տալով, խրատելով սուրբ գիրքի պատգամներով:*

*Ղեւոնդեան քահանաները նահատակուեցան ճակատամարտէն յետոյ, իրենց արիւնը խառնելով Սուրբ Վարդանանց արեան: Այսօր ալ Ղեւոնդի ճառէն շատ բան ունինք սորուելու: Պիտի աշխատինք սրբութեամբ պահել այն հոգեւոր բարձրութիւնները, որոնք կտակած են մեզ Ղեւոնդեանները, մեր հայրերը եւ չթաւալինք երկրի ճղճիմ ճահիճներուն մէջ:*

*Վարդանանք զօրք հաւաքելով, դուրս եկան մարտի ընդդէմ խաւարի չար ուժերուն: Աւարայրի դաշտին հայոց ուժը միայն այն 60.000 զինեալները չէին, այլ ամբողջ ժողովուրդը միաբանուած մէկի՝ Քրիստոսի շուրջ: Թէ՛ Ղեւոնդեանները թէ՛ Վարդանանք նահատակուեցան՝ իրենց մահով մահուան յաղթելով: Այս է իմացեալ մահը, որ անմահութիւն է: Հիմա արդէն կարող ենք հասկնալ, թէ ինչու մեր հայրերը այդ կարգով դասաւորէր են օրերը:*

*Մեծ Պահքի շրջանն ալ Աւարայր մըն է ընդդէմ չարի, խաւարի: Ահա այս խորհուրդով ալ եկեղեցին իմաստուն ձեւով կարգաւորած է տօներու այս հերթականութիւնը մինչեւ պահքի սկիզբը, մեզ խրատելով Վարդանանց օրինակով, Ղեւոնդեաններու նուիրումով:*

(Կրճատումներով) **«ԺԱՄԱՆԱԿ»**

## Նայիրի Յունանեանին Առաջադրուել է Հայրենիքին Դաւաճանութեան Մեղադրանք

1

*ժամանակաւոր կառավարութեան ղեկավար: Յունանեանն իր ձեռքի տակ ունեցել է այն բոլոր օրէքները, որոնք պէտք է ընդունէր ԱԺ-ը:*

*Ոճրագործութիւնից յետոյ, մի քանի ժամ Յունանեանը եւ իր խումբը յստակօրէն սպասել են ինչ-որ օժանդակութեան. փախչելու փորձ իսկ չեն արել, թէեւ առաջին րոպէներին այդ հնարաւորութիւնը ունէին, իսկ յանձնուելու միտումը նրանց մօտ դրսեւորուել է միայն սպասումները չարդարանալուց յետոյ: Եւ վերջապէս, Կարէն Դեմիրճեանի ծրագրուած սպանութիւնը նոյնպէս փկայում է, որ դա իշխանութիւնը գաւթելու ծրագիր էր, քանի որ Ն. Յունանեանի մեղադրանքների՝ «անարդար ընտրութիւնների, վերջին տասը տարիների թալանի» հետ Կ. Դեմիրճեանը կապ չունէր, -ասաց զինդատախազը եւ աւելացրեց, որ համալիր դատաբժշկական փորձաքննութեամբ հիմնաւորուել է, որ Յունանեանն առողջ է, որեւէ հիւանդութեամբ չի տառապում, աֆէկտի վիճակում չի գտնուել:*

*Նա քրէական գործի նախաքննութեան ընթացքը գնահատեց ճիշտ. ասաց, որ ամէն ինչ պիտի արուի, որ մինչեւ մեղադրեալներին կալանքի տակ պահելու օրէնքով սահմանուած ժամկէտի աւարտը (մինչեւ մէկ տարի) գործի նախաքննութիւնն աւարտուի եւ ուղարկուի դատարան:*

*Ըստ նրա, Ն. Յունանեանը 1998 թ. Դեկտեմբերից գտնուել է Ազգային Անվտանգութեան նախարարութեան տեսադաշտում՝ ուսումնասիրուել է հաւաքագրման, որպէս գործակալի թեկնածու տարածաշրջանի երկրներից մէկի յատուկ ծառայութիւնների դէմ աշխատելու նպատակով (չի նշուեց, թէ որ երկրի): 1999թ. գարնանը տեղեկութիւն է ստացուել Ն. Յունանեանի վերաբերեալ, սակայն պաշտօնեաներից մէկի անփութութեան պատճառով այն անտեսուել է:*

*Դա վերաբերել է Ն. Յունանեանի կողմից ազգային կուսակցութիւն ստեղծելու փաստին:*

*Այժմ, ասաց զինդատախազը, քննարկւում է այդ պաշտօնեայի արարքում պաշտօնական անփութութեան, հանցակազմի առկայութեան խնդիրը: Ըստ Գ. Ջհանգիրեանի, եթէ այդ փաստը ժամանակին ուշադրութեան արժանանար, ապա այս ոճրագործութիւնը կարող էր եւ չլինել:*

*Պրն. Ջհանգիրեանը նշեց, որ ներկայումս նախաքննութիւնը գտնւում է մեղադրանքների ծաւալի ճշգրտման փուլում, այն հաւանաբար կը շարունակուի եւս մի քանի ամիս: Զինդատախազն այսօրուայ ասուլիսում էլ չբացառեց նոր ձերբակալութիւնների հնարաւորութիւնը:*

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1422 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 30 ՄԱՐՏ 2000 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. | عدد رقم ١٤٢٢ — الخميس ٣٠ مارس ٢٠٠٠


## ՀԱՅԱՍՏԱՆ՝ ՌՈՒՍԱԿԱՆ ԱՐԵՒԵԼՈՒՄԻ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՃՆՇՈՒՄԻՆ ՄԻՋԵՒ

Հայ ժողովուրդի ռուսամէտ քաղաքական արեւելումը պատմութեան ընթացքին դրսեւորուած է բազմաթիւ փաստերով՝ գործնական դիրքորոշումներով: Հայ գրականութեան մէջ Խաչատուր Աբովեանով նուիրագործուած ռուսամէտ արեւելումը արմատաւորուած է հայրենասէր գրողի կողմէ սերունդներու փոխանցուած հետեւեալ նախադասութեամբ՝ «օրհնուի էն սհաթը (ժամը), որ ռուսի ոտքը մտաւ Հայաստան»: Այս կարճ ու պարզ նախադասութեամբ Աբովեան ձեւակերպած էր արեւելում մը, որուն հետամուտ եղաւ Հայ ժողովուրդը բազմաթիւ տասնամեակներու ընթացքին: Հայութեան ռուսամէտ քաղաքականութեան ձեւաւորումը կամ բանաձեւումը Խաչատուր Աբովեանով չի սահմանափակուիր: Իսրայէլ Օրին, Յովսէփ Էմին եւ այլ հայրենասէր գրողներ հետամուտ էին վերոյիշեալ քաղաքականութեան: Հայութեան ռուսամէտ քաղաքականութիւնը առաւել եւս հիմնաւորուեցաւ եւ գործնական դարձաւ Ռուսաստանի եւ Պարսկաստանի միջեւ կնքուած Թիւրքմենչայի պայմանագրով: Այդ պայմանագրով Արեւելեան Հայաստանը կը մտնէր Ռուսական կայսրութեան կազմէն ներս, որմէ յետոյ Հայ ժողովուրդին համար կը ստեղծուէր համեմատաբար տանելի կեանք մը, առանց անտեսելու անշուշտ պարբերաբար զգալի դարձող վերոյիշեալ կայսրութեան յարուցած դժուարութիւնները, մինչեւ իսկ դաժանութիւնները: Յիշենք հայ եկեղեցական կալուածներու գրաւումը, Հայ ժողովուրդի ազգային իրաւունքներու սահմանափակումը, ազատութիւններու կաշկանդումները, հայ մտաւորականութեան եւ քաղաքական գործիչներուն դէմ եղող հալածանքները եւ այլն: Այդ դժուարութիւնները, յամենայնդէպս աւելի տանելի էին քան այլ կայսրութիւններու իրականացուցած հակահայ հալածանքները: եւ վերջապէս, Ռուսական կայսրութեան կազմին մէջ գտնուող Արեւելեան Հայաստանը տոկաց պատմութեան փորձութիւններուն: Այսօր կորսուած է Արեւմտեան Հայաստանը, մինչ Արեւելեանը իր գոյութիւնը կը շարունակէ:

Խորհրդային Միութեան կազմալուծումէն եւ Հայաստանի անկախացումէն անմիջապէս ետք, երկրի նոր իշխանութիւնները ոչ միայն խանդավառ չէին աւանդական ռուսական արեւելումով, նաեւ հակառուս տրամադրութիւնները անվերահսկելի կերպով կը կարգանային: Փակուեցան գրեթէ բոլոր ռուսական դպրոցները. մամուլը անբարեացակամ վերաբերմունք ցոյց կու տար Հիւսիսի Արջին կամ աւելի ճիշդը՝ «հիւսիսի քեռիին» նկատմամբ: Իսկ այդ անկայուն ու խառնակ օրերուն Հայաստան եւ Հայ ժողովուրդը անհաւասար կռիւ կը մղէին Ղարաբաղի մէջ: Հակառուս տրամադրութիւնները՝ մեր իշխանութիւնները աստիճանաբար կը փոխադրէին դէպի երկրի քաղաքական, մշակութային եւ տնտեսական ոլորտները, որուն հետեւանքը եղաւ այն, որ ղարաբաղեան ճակատներուն վրայ նահանջներ արձանագրուեցան, ուր հայկական կողմը ունեցաւ զգալի կորուստներ: Եւ եթէ նոր իշխանաւորները չսթափէին, Ղարաբաղի պատերազմը աղէտալի վախճան մը պիտի ունենար հաւանաբար: Վերջապէս Հայաստանի մէջ ռուսամէտ քաղաքականութիւնը կրկին մտաւ աւանդական հունին մէջ, որմէ ետք վերոյիշեալ պատերազմի մարտերու ընթացքին մեծ յաջողութիւններ եղան եւ հաստատուեցաւ այնպիսի կինադուլ, որը թշնամիին պարտութեան հաւասար էր: Թէեւ հիմնահարցը վերջնական լուծում չէ գտած տակաւին, սակայն հայկական կողմը շատ աւելի զօրաւոր դիրքերու վրայ կը գտնուի:

Չէչէնիոյ մէջ սկսած հակառուս բացայայտ դիրքորոշումներն ու չէչէններու մղած պատերազմը կեդրոնական կառավարութեան դէմ՝ այլ խօսքով ռուսերու դէմ ամբողջ Կովկասի մէջ նոր եւ վտանգաւոր պայմաններ ստեղծեցին: Ռուսական պաշտօնական կարծիքն այն է, որ չէչէններու հակառուս գործողութիւնները կամ ահաբեկչութիւնները, կը հրահրեն, կը զինեն ու կը ֆինանսաւորեն միջազգային իսլամական ծայրեղական (արմատական) շրջանակները:

Ուշադրութեան արժանի է Ղարաբաղի հիմնահարցին լուծման հետ կապուած դժուարութիւնները: Այս պարագան, շատ աւելի մտածել պէտք է տայ հայութիւնը, քան այսպէս կոչուած չէչէնական վտանգը: Արեւմուտքը՝ ղարաբաղեան հարցը լուծելու ի՛ր տարբերակը ունի: Այդ տարբերակը ամբողջութեամբ՝ մանրամասներով պարզ ու յստակ չէ, սակայն ըստ Հայաստանի արտաքին գործոց նախարար Վարդան Օսկանեանի ԵԱՀԿի համդկումով «ո՛չ մէկ կողմ հարիւր տոկոսով իր ուզածը պիտի ստանայ»: Այս հաստատումը անուղղակիօրէն ցոյց կու տայ, հայկական կողմը կրնայ «շատ բան ստանալ», սակայն Ղարաբաղը Ատրպէյճանի կազմին պահելու «վերին» որոշումը քննութեան առարկայ չի կրնար ըլլալ:

Ղարաբաղի հիմնահարցը լուծելու այս դժուար օրերուն, հայութիւնը արդեօ՞ք իր աւանդական ռուսամէտ կողմնորոշումը վերատեսութեան ենթարկելով, թեքուելով դէպի Արեւմուտք յաջողութիւններու կրնայ հասնիլ, նկատի ունենալով, նաեւ որ այնուամենայնիւ Ռուսաստան որոշ պայմաններու բերումով չ'ուզեր ամբողջովին լքել Ատրպէյճանը: Իսկ արեւմտեան կողմնորոշումը

➪ 2

**ԱՐՑԱԽ**

## ԱՐԿԱԴԻ ՂՈՒԿԱՍԵԱՆԻ ԴԷՄ ԿԱՏԱՐՈՒԱԾ ՄԱՀԱՓՈՐՁԻ ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՀԻՆԳ ԱՀԱԲԵԿԻՉՆԵՐԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ

### Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Յայտարարութիւնը

ԵՐԵՒԱՆ, 23 ՄԱՐՏ: «1999թ. Հոկտեմբերի 27-ի չարանենգ հարուածից ամբողջապէս ուշքի չեկած հայ ժողովրդի կռնակին հասցուեց մի նոր հարուած՝ գրոհի ենթարկուեց Արկադի Ղուկասեանը», ասուած է Սոցիալ-Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան կեդրոնական վարչութեան յայտարարութեան մէջ, որն ստորագրել է վարչութեան ատենապետ Եղիշէ Յակոբեանը:

Յայտարարութեամբ, խստագոյնս դատապարտելով այդ չարանենգ ահաբեկչութիւնը, յոյս է յայտնւում, որ Արցախի իրավապահ մարմինները կը յայտնաբերեն ահաբեկիչներին ու կազմակերպիչներին, իսկ «Արցախի հերոս ժողովուրդը չի ընկճուի այս նենգ հարուածից. կը համախմբուի ինչպէս բռունցք եւ նոր յոյսով ու հաւատով կը կառուցի հայ ժողովրդի լաւագոյն զաւակների կեանքի ու արեան գնով ձեռք բերուած ազատ ու անկախ հայրենիքը»:

Անցեալ օր, Ղարաբաղի դատախազութիւնը հաղորդագրութիւն մը հրապարակեց Նախագահ Արկադի Ղուկասեանի դէմ կատարուած մահափորձի կապակցութեամբ որ տեղի էր ունենում ամսոյս 22-ին, կազմուած քննչական խումբի հետախուզական գործողութիւններու մասին: Հաղորդագրութեան մէջ կ'ըսուի հետեւեալը.


Արկադի Ղուկասեան

«Լեռնային Ղարաբաղի Նախագահ Արկադի Ղուկասեանի դէմ կատարուած մահափորձի կապակցութեամբ կազմուած քննչական խումբի կողմէ իրականացած ձեռնարկներու շնորհիւ երեւան հանուած եւ ձերբակալուած են յանցագործութեան անմիջական կատարողները: Վերջինները խոստովանած են իրենց մեղքը եւ մանրամասն վկայութիւններ տուած են յանցագործութիւնը կազմակերպելու գործի ընթացքին իրենց ունեցած դերի եւ մասնակցութեան աստիճանի մասին: Բացի վկայութիւններէ, ձեռք ձգուած են կարգ մը այլ փաստեր, որոնք առարկելիօրէն կ'ապացուցեն անոնց կողմէ այս յանցագործութեան կատարումը:

### ՈՐՈ՞ՆՔ ԵՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԻՆԳ ԱՀԱԲԵԿԻՉՆԵՐԸ

*1.-Սասուն Աղաճանեան - Ծնած է 1967-ին: Ձերբակալութենէն առաջ, Սամուէլ Պապայեանին թիկնապահներուն պետն էր:*

*2.-Դաւիթ Գուլեան - Ծնած է 1969-ին: Ձերբակալութենէն առաջ, Սամուէլ Պապայեանին թիկնապահն էր:*

*3.-Էրիկ Փարամազեան - Ծնած է 1974-ին: «Ճուբիթըր» ընկերակցութեան մէջ կը գործէր, իբրեւ մաքարոնիի եւ փուռի բաժանմունքի գլխաւոր: Սամուէլ Պապայեանի աներձագն է:*

*4.- Լեւոն Միրզոյեան- Ծնած է 1968-ին: Անգործ:*

*5.-Վարուժան Մելքումեան - Ծնած է 1973-ին: Ձերբակալութենէն առաջ, Սամուէլ Պապայ-*

➪ 3

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲԱՆԱԿԷՆ ՆԵՐՍ ԿԱՏԱՐՈՒԱԾ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ ԵՏՔ ՆԵՐԻՇԽԱՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԿԸ ՍՏԱՆԱՅ ՆՈՐ ԲՆՈՅԹ

*Նախագահ Ռոպերթ Քոչարեանի Մարտ 14-ի Հրամանագրերը ըստ երեւոյթին անակնկալի մատնած են - Վարչապետ Արամ Սարգսեանն ու պաշտպանութեան նախարար Վաղարշակ Յարութիւնեանը: Նման կարեւոր փոփոխութիւններ, առանց քննարկելու Ազգային Անվտանգութեան Խորհուրդէն ներս եւ կամ՝ նախապէս խորհրդակցելու վարչապետին ու պաշտպանութեան նախարարին հետ պատճառ դարձաւ անոնց դժգոհութեան:. Քաղաքական մեկնաբաններու կարծիքով Երկրապահ Կամաւորականներու Միութեան ղեկավարներէն Մանուէլ Գրիգորեանի եւ Սէյրան Սարոյեանի պաշտօններու բարձրացումով, Քոչարեան կը յուսայ ապահովել Երկրապահներու ամբողջական հաւատարմութիւնը իր հանդէպ:*

*Այս նշանակումները նաեւ տարակարծութիւններ յառաջացուցած են Երկրապահներու եւ «Միասնութիւն» Դաշինքի միջեւ, նկատելով որ Երկրապահ Կամաւորականներու Միութեան վարչութեան նախագահ Մանուէլ Գրիգորեան ինք եւս չէ իմացուցած վարչապետին՝ իր հաւանական նշանակումի մասին: Այս զարգացումներուն պատճառաւ Մարտ 17-ին, Երկրապահներու ղեկավարներէն Ալպերթ Բազէեան հրաժարական ներկայացուց Երեւանի քաղաքապետի իր պաշտօնէն: Սակայն, տեղի ունեցած բազմակողմանի միջամտութիւններէն ետք, Բազէեան ետ առաւ իր հրաժարականը:. Դարձեալ Մարտ 17-ին, Նախագահ Ռոպերթ Քոչարեան հանդիպում ունեցաւ Ազգային Ժողովէն ներս ներկայացուած պատգամաւորական խմբակցութիւններու եւ խումբերու ղեկավարներուն հետ:*

➪ 4

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԵԿԵՂԵՑԻՆ ՅՈՒՇԱԳԻՐ ՍՏՈՐԱԳՐԵՑԻՆ

ՍԲ.. ԷՋՄԻԱԾԻՆ, 17 ՄԱՐՏ: Մեր պետութիւնն ու եկեղեցին միասնաբար են կերտելու նոր Հայաստանը, քանզի այժմեանից կարեւորւում են Հայոց պետականութեան հետագայ զարգացման եւ ամրապնդման գործում Հայաստանեայց Առաքելական Եկեղեցու անուրանալի դերակատարութիւնն ու նշանակութիւնը: Եկեղեցին բացառիկ եւ առանձնայատուկ դեր ունի հայ ժողովրդի պատմական ճակատագրում եւ արդի հայ հասարակութեան կեանքում:. Հաշուի առնելով այս եւ այլ հանգամանքներ, ինչպէս, օրինակ, պետութեան եւ եկեղեցու փոխյարաբերութիւնների բնոյթի հետագայ պարզորոշումը, Մարտի 17-ին Մայր Աթոռ Սբ. Էջմիածնի վեհարանի ճեմասրահում Հայաստանի կառավարութիւնը եւ Հայաստանեայց Առաքելական Սուրբ Եկեղեցին՝ Գարեգին Բ. Ամենայն Հայոց կաթողիկոսի, ՀՀ վարչապետ Արամ Սարգսեանի, ՀՀ Սահմանադրական դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեանի ներկայութեամբ, մտադրութիւնների յուշագիր ստորագրեցին:. Յուշագիրն ստորագրեցին ՀՀ կառավարութեան կողմից՝ վարչապետի գլխաւոր խորհրդական, կառավարութեան աշխատակազմի ղեկավար Շահէն Գարամանուկեանը, վարչապետի խորհրդական, կառավարութեանն առընթեր կրօնի գործերի պետական խորհրդի նախագահի պաշտօնակատար Լեւոն Մկրտչեանը, Հայաստանեայց Առաքելական Սուրբ Եկեղեցու կողմից՝ Արարատեան Հայրապետական թեմի առաջնորդական փոխանորդ Նաւասարդ Եպիսկոպոս Կճոյեանը, Երեւանի պետական համալսարանի աստուածաբանութեան ֆակուլտետի դեկան Շահէ Արքեպիսկոպոս Աճէմեանը:

Ստորագրուած փաստաթղթի հիման վրայ նախապատրաստուելու է համաձայնագիր, որի նախագիծը կազմելու համար ստեղծուելու են աշխատանքային խմբեր: Այն պատրաստ կը լինի տարեվերջին:

➪ 2

## ՀՀ Նախագահ Ռ. Քոչարեան Վրաստան Ժամանեց

ԹԲԻԼԻՍԻ, 28 ՄԱՐՏԻ: Հայաստանի Հանրապետութեան նախագահ Ռոպերթ Քոչարեան այսօր երկօրեայ պաշտօնական այցով ժամանեց Վրաստան:

Այցի շրջանակներում Հայաստանի եւ Վրաստանի կառավարութիւնների միջեւ ստորագրուելու է փաստաթղթերի փաթեթ:

Ռոպերթ Քոչարեանը Էդուարդ Շեւարդնաձէին կը պարգեւատրի Մեսրոպ Մաշտոցի շքանշանով, Վրաստանի նախագահը հայ գործընկերոջը կը յանձնի պատուոյ շքանշան (Օրդէն Չեստի):

Վրաստանի նախագահ Էդուարդ Շեւարդնաձէն եւ Հայաստանի նախագահ Ռոպերթ Քոչարեանը գոհունակութիւն յայտնեցին կէսօրին Թբիլիսիում կայացած բանակցութիւնների արդիւնքների առթիւ:

Ռոպերտ Քոչարեանն ընդգծել է, որ երկու երկրների յարաբերու-

➪ 3

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԵԿԵՂԵՑԻՆ ՅՈՒՇԱԳԻՐ ՍՏՈՐԱԳՐԵՑԻՆ

1 ➩



*Ձախէն՝ Նաւասարդ Եպս. Կճոյեան, վարչապետ Արամ Սարգսեան, Գարեգին Բ. Կաթողիկոս եւ Գագիկ Յարութիւնեան*

Յուշագրի ստորագրումը ողջունեց Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց կաթողիկոսը: Նա ասաց.- Եկեղեցու եւ պետութեան միջեւ կնքուող այս համաձայնագրով փաստում է, որ եկեղեցին եւ պետութիւնը միասնաբար, ջանքերի համադրումով պիտի լծուեն մեր հայրենիքի շինութեան, մեր եկեղեցու վերածնման, մեր ժողովրդի երջանիկ կեանքի նուիրական մեծ գործին: Այս առիթով ես ուզում եմ իմ գնահատանքի եւ օրհնութեան խօսքն ուղղել բոլոր այն անձանց, որոնք իրենց աշխատանքով իրականացրել են փաստաթղթի ծնունդը: Նաեւ իմ շնորհակալութիւնն եմ ուզում ուղղել մեր հայրենի իշխանութիւններին՝ եկեղեցու հանդէպ բարեացակամ վերաբերմունքի եւ պատրաստակամութեան համար:

Արարողութեան աւարտից յետոյ ստորագրող կողմերը մամուլի ասուլիսում պատասխանեցին լրագրողներին հետաքրքրող հարցերին:

## ՀԱՅԱՍՏԱՆ՝ ՌՈՒՍԱԿԱՆ ԱՐԵՒԵԼՈՒՄԻ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՃՆՇՈՒՄԻՆ ՄԻՋԵՒ

1 ➩

իր մէջ ունի տնտեսական կարեւոր հեռանկարներ՝ օգնութիւններու եւ ներդրումներու խայծը: Սակայն, պատերազմի առաջին շրջանին, աւանդական ռուսամէտ քաղաքականութենէն, շեղումը, ինչպէս արդէն նշեցինք, աղէտալի հետեւանքներ ունեցաւ հայկական կողմին համար:

Այս օրերուն, արեւմտամէտ քաղաքականութիւնը հայկական դիւանագիտութեան ոլորտէն ներս չ'անտեսուիր, թէեւ երեւոյթը դեռ չի նշանակեր ռուսական կողմնորոշումին հրաժեշտ տալ: Ակնյայտ է, որ ներկայիս նախագահ Ռ. Քոչարեան, իր արտաքին գործոց նախարարին եւ միւս խորհրդականներուն հետ համագործակցաբար կ'աշխատի միջին ուղի մը ընտրել ռուսական արեւելումի եւ Արեւմուտքի աստիճանաբար զօրացող ազդեցութեան միջեւ: Թէ այդ *միջին* ուղին որքանով յաջողութիւն պիտի գտնէ ժամանակը ցոյց կու տայ: Սակայն ներկայիս մէկ բան պարզ է, որ Հայաստան երկու ծանօթ ուժերու միջեւ հանգիստ ու հեզասահ կեանք չունի: Տնտեսական դժուարութիւնները, քաղաքական անորոշութիւնը, երկրի անապահով եւ անկայուն վիճակը, այդ ցոյց կու տան: Ղարաբաղեան հարցը, Արեւմուտքի ցանկութեամբ, արագ լուծում պէտք է ստանայ: Սակայն առկայ փաստն այն է, որ ապաուող լուծումը կ'ուշանայ: Եւ այդ ուշացումին զուգահեռ կը բարդանայ Հայաստանի քաղաքական ներքին կացութիւնը: Երկրի գլխաւոր դատախազի ու վինուորական երկու կարեւոր դէմքերու սպանութիւնները, Հոկտեմբեր 27ին իրագործուած Ազգային Ժողովի նախճիրը, ներկայի ներքաղաքական լարուած եւ վտանգաւոր իրավիճակը այլ գործօններու զուգահեռ ուղղակի կամ անուղղակիօրէն, առնչութիւն կրնան ունենալ Հայաստանի մէջ կիրարկուող ռուսական արեւելումի եւ արեւմտեան ազդեցութեան տարածման ու ասոնց առաջացուցած հակասութիւններուն նաեւ ճնշումներուն հետ:

Արեւմուտքը չէչէն ըմբոստներու պարտութեամբ սկսած է արդէն մտահոգուիլ: Մտահոգութիւնը անշուշտ ոչ անպայման չէչէններու կրած տառապանքներն են, այլ՝ Ռուսաստանը աստիճանաբար տկարացնելու քաղաքականութեան կրած դժուարութիւնները: Եթէ ռուսերը կարողացան վերջնականապէս ընկճել չէչէնական ըմբոստութիւնը, իրենց ազդեցութիւնը պիտի զօրացնեն Անդրկովկասէն ներս, որմէ ետք Ղարաբաղի հարցին լուծումը տրամաբանական է, որ Ռուսաստանը բաւարարող տարբերակով մը բանաձեւուի եւ հաստատուի: Վերջապէս, Կովկասի մէջ որքան ռուս-արեւմտեան մրցակցութիւնը սրուի, Հայաստանի ներքաղաքական անկայուն իրավիճակը պիտի շարունակուի եւ խորանայ: Ռուսաստան երբեք պիտի չուզէ կորսնցնել դաշնակից մը, որը գրեթէ անփոխարինելի դեր ունի հարաւի մէջ: Հայաստանի կորուստով, պիտի վտանգուի Անդրկովկասը ամբողջութեամբ, իսկ Միջին Ճակատագիրը Ռուսաստանի համար պիտի մնայ անորոշ: Արեւմուտքի համար եւս Հայաստան աշխարհաքաղաքական կարեւոր նշանակութիւն ունի: Այնքան ատեն, որ Ղարաբաղի հարցը չլուծուի, Թուրքիոյ եւ Հայաստանի միջեւ դիւանագիտական կապեր չհաստատուին ու շրջափակումը չվերացուի արեւմտեան շահերը այդ շրջանէն ներս կարգանալու կարելիութիւններ չեն ունենար: Առանց Հայաստանի մասնակցութեան Պաքու-Ճեյհան քարիւղի խողովակաշարի ծրագիրը յաջողելու յոյսեր գրեթէ չունի:

Հայաստանի աշխարհագրական դիրքը ներկայ պայմաններու մէջ կարեւոր է եւ այդ դիրքը հայկական դիւանագիտութիւնը կ'աշխատի դրամագլուխի վերածել: Սակայն, նման պայմաններու տակ երկիրը քաղաքական մրցակցութեան ասպարէզ է, որուն հետեւանքները ոչ միայն վտանգաւոր են, այլ՝ շատ վտանգաւոր...: Իսկ երկու ուժերու միջեւ հաւասարակշռութիւն պահելը միշտ չէ, որ կը յաջողի: Գուցէ աւելի լաւ է ուղեկից մնալ աւանդականին եւ փորձուածին, փորձանքներու ծանրագոյնին չենթարկուելու համար:

**ՄԱՆՈՒԷԼ ԱԴԱՄԵԱՆ**

## ՅԱՌԱՋԻԿԱՅ ՄԱՅԻՍԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՐՇԱՒԱԽՈՒՄԲԸ ԲԱՐՁՐԱՆԱԼՈՒ Է ԱՐԱՐԱՏ ԼԵՌԸ

*Նախապէս կայացած Համաձայնութեան Հիման վրայ 2000 Թուականի Մայիսի 24-ից 28-ի ընթացքում մի արշաւախումբ բարձրանալու է Արարատ Լեռը եւ ուր տեղադրելու է եռագոյնը եւ ՄԱԿ-ի դրօշը:*

*Յիշեալ արշաւախումբին մաս են կազմելու 33 Հայ եւ օտարազգի պատմաբաններ, գիտնականներ, լեռնագնացներ ու նկարահանողներ, առաջնորդութեամբ քրիստոնեայ, իսլամ, Հրեայ եւ պուտտայական Հոգեւոր ներկայացուցիչների:*

*Այս ուխտագնացութիւնը Հովանաւորելու է Թուրքիայի Հայոց Պատրիարք Գեր. Մեսրոպ Արք. Մութաֆեանը:*

## ՓՈՔՐ ԱՂՐԸ (ԱՐԱՐԱՏ) ԼԵՌԸ 1932-ԻՆ ԱՌՆՈՒԵՑԱՒ ԹՈՒՐՔԻՈՅ ՍԱՀՄԱՆՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Աղրը Լեռան (Արարատի) վրայ լեռնագնացութեան վերջին արկածէն վերջ թուրք մամուլի մէջ կը հրատարակուին յօդուածներ Աղրը Լեռան մասին: «Ճումհուրիյէթ»ի մէջ ալ վերջերս հրատարակուած է յօդուած մը, ուր կը խօսուի բոլոր այն լեռնագնացներուն մասին որոնք ցարդ կրցած են մագլցիլ մինչեւ Աղրըի կատարը: Յօդուածագիրը կը յիշեցնէ որ Աղրըի հիւսիսային ճակատը շատ ցից ու դժուար մագլցելի է եւ լեռնագնացները միշտ հարաւային կողմէն է որ կրցած են մագլցիլ մինչեւ կատար:

Յօդուածագիրը Աղրըի պատմութեան մասին կ'ընէ նաեւ խորհրդածութիւն մը, որ հետաքրքրական է: Ճշդելէ ետք թէ այս փառապանծ լեռը ունի երկու կատարներ, Մեծն Աղրըն ու Փոքրիկ Աղրըն (հայկական բացատրութեամբ Մեծ եւ Փոքր Մասիսներ), կը գրէ նոյնութեամբ.

«Փոքրիկ Աղրըն, որ 3896 մեթր բարձրութիւն ունէր, մինչեւ 1932 մեր սահմաններուն մէջ չէր գտնուէր: Այդ շրջանին ան կը մնար Իրանի սահմաններուն մէջ: Բայց ատիկա պատճառ կը դառնար, որ փախստական անսանձահարելի շարժումներ կատարուէին: Այն ատեն Աթաթիւրք, իր քաղաքական տաղանդը ի գործ դնելով, Իրանի հետ յաջողցուց սահմանային փոփոխութիւն մը եւ Փոքր Աղրըն առաւ մեր սահմաններէն ներս: Այս դէպքը, որ մեզմէ շատերուն անծանօթ է, պատմաբաններու կողմէ կը նկատուի Մուսթաֆա Քէմալի երկրորդ Հաթայի յաղթանակ մը»

## ՌՈՒՄԲԻ ՊԱՅԹՈՒՄ ԱՐԺԱՆԹԻՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԴՊՐՈՑԷՆ ՆԵՐՍ

*Մոնթեվիտէոյի մէջ գործող «Ռատիօ Արմենիայի» աշխատակից Տիէկօ Քարամանուկեան կը Հաղորդէ, որ Մարտի 17-ին Արժանթինի Պալերմօ Թաղամասին մէջ գտնուող Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ Վարժարանին մէջ, ոչ շատ մեծ տարողութեամբ ռումբ մը պայթեցաւ, փշրելով դպրոցին ու շրջակայ շէնքերուն բոլոր ապակիները:. Բարեբախտաբար մարդկային զոհեր ու վիրաւորներ չկան:. Արժանթինի ներքին գործոց նախարար* ➩ 4

## Երկու Հայեր Իրանի Խորհրդարանին Երեսփոխան Ընտրուած

*Իրանի Իսլամական Հանրապետութեան կայացած խորհրդարանական ընտրութիւններուն, իրանահայեր մեծ թիւով դէպի քուէատուփ դիմեցին, ընտրելու համար Հայ Համայնքի երկու խորհրդարանական ներկայացուցիչները: Հիւսիսային շրջանին մէջ յաղթանակը տարաւ Տոքթ. Լեւոն Դաւթեան, իսկ Հարաւային շրջանէն ընտրուեցաւ Ժորժիկ Աբրահամեան:*

*Իրենց պաշտօնավարութեան շրջանը աւարտած երեսփոխաններ՝ Վարդան Վարդանեան եւ Արտաւազդ Բաղումեան, միացեալ յայտարարութեամբ մը իրենց շնորհաւորութիւնները փոխանցեցին նորընտիր երեսփոխաններուն:*

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## «ՄԱՍԻՍ» ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 20-ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

*Ս.Դ.Հ.Կ.ի Կեդրոնի եւ Արեւմտեան Ամերիկայի Շրջանի Վարիչ Մարմիններու անցեալի եւ ներկայի եւ 350-էն աւելի հիւրերու, Շաբաթ, Մարտ 18-ի, երեկոյեան ժամը 8:30էն սկսեալ, Կլէնտէյլի «Royal Palace»ի գեղատեսիլ սրահէն ներս, տեղի ունեցաւ Ս.Դ.Հ.Կ.ի Արեւմտեան Ամերիկայի օրկան, «Մասիս» շաբաթաթերթի 20-ամեայ տարեդարձին նուիրուած ճաշկերոյթ-պարահանդէսը, որ խանդավառ մթնոլորտով եւ լրջութեամբ կրնայ եզակի նկատուիլ գաղութային մեր տարեգրութեանց մէջ:*

*Ծաղիկներով զարդարուած սեղանները կը գրաւէին հիւրերու կողմէ, «Continentals» նուագախումբի հաճելի եղանակներու ընկերակցութեամբ. ճաշէն ետք, տեղի ունեցաւ պաշտօնական հակիրճ եւ բովանդակալից յայտագիր մը, որուն ընթացքին ելոյթներ ունեցան թերթի խմբագիր՝ Տոքթ. Յարութիւն Սաղրեան, Գեր. Վաչէ Սրբազան, Գլխաւոր Հիւպատոս Արմէն Մելքոնեան, Պրն. Կրէկ Միսաքեան, «Քաջ Նազար»ի խմբագիր Յովհաննէս Բալայեան, որոնք բոլորն ալ արտայայտուեցան «Մասիս»ի բովանդակութեան, գաղութային ներկայութեան, եւ կատարած դերին մասին: Ապա սկսաւ զուտ խրախճանային մասը, ծանօթ ու սիրուած երգիչ Յովիկ Գրիգորեանի եւ «Continentals» նուագախումբի կատարողութեամբ:*

*Յայտագրի երկրորդ եւ հանդիսաւոր մասը կը կազմէր 20 մոմերու մոմավառութիւն մը, 20 կնքահայրերու ներկայութեամբ, որոնցմէ իւրաքանչիւրը պիտի վառէր մոմ մը, «Մասիս»ի 20 ամեակը* ➩ 4

**ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ**

## ԱՅԱԼՐՋՈՒԹԵԱՆ ԿՈՉ՝ ՀԱՅԵՐԷՆԻ ՈՒՂՂԱԳՐՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Հայկական կեանքի մէջ աննախընթաց երեւոյթ էր Սեպտեմբեր 1999-ին Երեւանի մէջ տեղի ունեցող Հայաստան - Սփիւռք Խորհրդաժողովը, որ նպատակ ունէր հայրենիքի եւ Սփիւռքի ներկայացուցիչներու միջոցաւ միասնաբար քննարկել մեր ժողովուրդին համար համազգային կարեւորութիւն ունեցող խնդիրները եւ ապագայի համար միասնական ծրագիրներ մշակել «Մէկ ազգ, մէկ մշակոյթ» նշանաբանով:*

*Նպատակը սքանչելի էր: Անցեր էին այլեւս այն տարիները, երբ Հայաստանի իշխանութիւնները, օտար ճնշումներու տակ, կը յայտարարէին՝ «Հայաստան համայն հայութեան հայրենիքը չէ՛»: Պետական օրէնքով (տեկրետով) 1922ին կը փոխէին նաեւ հայ լեզուի Մեսրոպեան դասական ուղղագրութիւնը, անոր տեղ պարտադրելով սովետական շինծու գրելաձեւը, որ ոչ միայն ահաւոր անջրպետ մը կը բանար Հայաստանի եւ Սփիւռքի հայութեան միջեւ, այլ նաեւ Հայաստանի ժողովուրդը կը կտրէր իր լեզուի արմատներէն, իր 16 դարու մատենագրութենէն, անգիտակ դարձնելով զայն գրաբարի: Մինչդեռ Սեպտեմբեր 1999ին, անկախութեան պայմաններու մէջ, Հայաստան իր զաւակները կը հրաւիրէր մէկտեղուելու «Մէկ ազգ, մէկ հայրենիք, մէկ մշակոյթ» բնաբանին շուրջ եւ միասնաբար վերացնելու բոլոր այն խոչընդոտները, որոնք անջրպետ բացած էին Հայաստանի եւ Սփիւռքի հայերուն միջեւ:*

*Ուրեմն, Խորհրդաժողովի Մշակոյթի բաժնին եւ Գրողներու Տան մէջ գումարուած նիստերուն պահանջուեցաւ պետականօրէն չեղեալ յայտարարել 1922ի Կառավարական ապազգային որոշումը՝ հայերէնի ուղղագրութեան վերաբերեալ: Մեծ տպաւորութիւն գործեց մանաւանդ, Մաշտոց, Հայ Լեզուի Պաշտպանութեան Միութեանս պատրաստած հանրաքուէն, զոր ստորագրած էին Սփիւռքահայ 80է աւելի Կազմակերպութիւններ, պահանջելով վերադարձնալ Դասական ուղղագրութեան:*

*Միասնութեան համատարած բաղձանքի մը մէջ կայացած խորհրդաժողովէն մեծ խանդավառութեամբ վերադարձան մասնակցողները, յուսադրուած թէ վերջապէս մէկ ազգ պիտի դառնանք:*

*Այսօր սակայն կը տեղեկանանք թէ սովետական գրելաձեւի տեւականացման կողմնակից որոշ տիտղոսաւոր գիտնականներ, տոքթոր փրոֆէսէօրներ, ազգի միասնականութեան գեր-նպատակը անտեսելով կը շարունակեն հաստատ մնալ իրենց կեցուածքին մէջ: Իսկ իրենց երիտասարդ տաք-գլուխ հետեւորդները դիմած են նոյնիսկ շատ տգեղ արարքի մը, յարձակելով եւ ոչնչացնելով գրողներու Միութեան համակարգիչներու սալիկները (տիսքէթները), որոնց վրայ Հայաստանի Գրողներու Միութեան «Նոր Դար» ամսաթերթի յետ-Սեպտեմբերեան համարի նիւթերն էին շարուած: «Նոր Դար» ամսագիրը կ'որոշէր ամէն մէկ թիւի մէջ բաժին մը յատկացնել դասական միասնական ուղղագրութեան: Ահա, այս որոշումն է որ պատճառ դարձած է այդ վանտալական վարմունքին: «Նոր Դար»ի խմբագրութիւնը ստիպուած եղած է նախ նորոգել տալ համակարգիչները եւ յետոյ կրկին շարել բոլոր նիւթերը: Այս պատճառաւ ալ ամսագիրը երեք ամիսէ ի վեր լոյս չէ տեսած:*

*Նոյն տիտղոսաւոր գիտնականները երկու տարի առաջ արդէն Հայաստանի իշխանութիւններուն յղուած Կոչով մը կը պահանջէին որ Սահմանադրութեան 12րդ յօդուածը («Հայաստանի Հանրապետութեան պետական լեզուն հայերէնն է») փոփոխութեան ենթարկուի եւ վերածուի հետեւեալին՝ «Հայաստանի Հանրապետութեան պետական լեզուն արդի գրական արեւելահայերէնն է՝ արդի ուղղագրութեամբ»: Սա, խեղանդամել ու մահուան դատապարտել է հայ լեզուն եւ հայ ժողովուրդը:*

*Կ'ուզենք յիշեցնել յիշեալ գիտնականներուն, որ ազգի մը լեզուն եւ ուղղագրութիւնը կը պատկանին ամբողջ ազգին, այլ ո՛չ թէ խմբակցութեան մը: Կ'ուզենք յիշեցնել նաեւ թէ ո՛չ մէկ գիտնական աւելի հանճարեղ է, որքան եղած է Մեսրոպ Մաշտոց, որ ո՛չ մէկ տիտղոս ունէր: Սակայն իր ստեղծած գիրերով է որ յաղթահարեցինք ամէն տեսակի արհաւիրքներ եւ 16 դար մնացինք միասնական: Միայն վերջին 78 տարիներուն է որ արհեստականօրէն ստեղծուեցաւ բաժանում:*

*Ներկայիս կոչ կ'ուղղենք Սփիւռքահայութեան, բոլոր այն կազմակերպութիւններուն եւ մտաւորականներուն, որոնք ստորագրած էին մեր հանրագրութիւնը, աչալուրջ կերպով հետեւելու դէպքերու ընթացքին, նաեւ Մամուլի մէջ տպագրուած յօդուածներով ու բաց-նամակներով իրենց ձայնը հասցնելու Հայաստանի նախագահին, Ազգային Ժողովի նախագահին, վարչապետին եւ նախարարներուն, պահանջելով 1922ի տեկրետին ջնջումը եւ Սահմանադրութեան 12րդ յօդուածին անխախտ պահպանումը: Քանզի մեր լեզուի եւ ուղղագրութեան փրկութիւնը կախեալ է մեր լեզուի պետական կարգավիճակէն: Պետական որոշումով ստեղծուած բաժանումը պէտք է վերանայ դարձեա՛լ պետական որոշումով եւ ստեղծուի միասնականութիւն՝ ազգի բոլոր հատուածներուն միջեւ:*

**Փարիզ, 3 Մարտ 2000**

**ՄԱՇՏՈՑ,**

**ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ**

# ՆՈՐ ԲԱՌԵՐ ԴՐՈՇՄՈՒԱԾ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԷՋԵՐՈՒՆ

Կասկած չի յարուցեր այն իրողութիւնը, թէ Վազգէն Սարգսեանի անունը պայծառ տառերով արձանագրուած պիտի մնայ մեր նորագոյն պատմութեան մէջ: Մինչ նախկին մարտական արի գործիչն ու հայրենասէր վարչապետը իր նահատակութեամբ մնայուն տեղ կ'ապահովէր հայ ազատամարտի պանթէոնին մէջ եւ անմնացորդ զոհաբերութեամբ կը նուաճէր իր արժանի պատուանդանը. ան նաեւ իր հետ մեր պատմութեան մէջ կը ներմուծէր երկու նոր բառեր, երկու խորիմաստ ու նուիրական յղացքներ, որոնք բառ-անուն ըլլալէ աւելի հայ ազգային գաղափարախօսութեան իմաստասիրական արտայայտութիւններն են ու հայ պայքարի ըմբռնումները մնալու դատապարտուած:

Վազգէն Սարգսեանի անուան հետ են կապուած *«Երկրապահ»* եւ *«Մահապարտ»* բառերը, որոնք հայոց լեզուին մէջ շրջանառութեան մէջ դրուեցան վերջին տարիներուն շնորհիւ նահատակ Սպարապետին: Անոնք բառեր չեն լոկ, կամ պարզապէս կրկնուող անուններ: Անոնց ընդմէջէն կ'արտացոլայ արցախեան ազատամարտը ու անոր յաղթական աւարտը: Երկրապահը այն նուիրեալ ու անձնուրաց անհատն է, որ զէնը ի ձեռին պարտաւոր է պաշտպանել իր երկրին սահմանները, պարտաւոր է լքել անձնական ու ընտանեկան ամէն հաճոյք



ու նախասիրութիւն եւ նետուիլ պայքարի յորձանուտին մէջ՝ միշտ քայլելով մահուան սեւ ճակատագրին հետ զուգահեռ կերպով: Երկրապահը կամաւոր կերպով հայրենի երկիրը պահող ու պահպանող տարրն է, որ մինչեւ արեան վերջին կաթիլը պէտք է մարտնչի եւ իր ժողովուրդին պարգեւէ յաղթանակի հրճուանքը: Վ. Սարգսեան իր եռանդով ու ողջ նուիրումով կազմաւորելէ եւ կազմակերպելէ ետք սոյն կամաւորական ջոկատները՝ զանոնք օժտելով «Երկրապահ» անունով, զայն դարձուց քաղաքական - գաղափարական կազմակերպութիւն մարտական ու ռազմական դիմագիծով, որ չուտով հայրենի քաղաքական խճանկարէն ներս դարձաւ աչքառու ներկայութիւն:

«Երկրապահ»ները այն «խենթ»երն են, որոնց կը վստահին խեղօքները, այն կամաւորներն են՝ որոնց ներկայութեամբ մարդիկ իրենց հայրենիքին մէջ կը զգան ապահով եւ իրենց տան երդիքին տակ անվտանգ: Ուրեմն՝ երկրապահ կամաւորները եթէ մէկ կողմէ ոսոխին տուին արժանի հակահարուած, ապա միւս կողմէ իրենց հայրենակիցներուն ընծայեցին խաղաղութիւն եւ անամպ երկինք:

Հայոց պատմութեան եւ հայերէն լեզուի բառարաններուն մէջ Վ. Սարգսեանի մտայղացմամբ ու նախաձեռնութեամբ «Երկրապահ»ը դարձաւ հոմանիշ կամաւոր մարտիկի, որ երկիրը կը պահէ վտանգի ու ցանկացած ոտնձգութեան պարագային:

Արցախեան մարտերու թէժ պահերուն, (1990-1993), երբ ազերի խաժամուժը կը մերձենար Արցախի խորքերը եւ լուրջ վտանգ կորսնցնելու պատերազմը, Վ. Սարգսեան կեանքի կոչեց նոր յղացք մը, մահապարտ անունով՝ որ կը նշանակէ պատրաստ ըլլալ մահուան եւ ուղղուիլ այն տարածքները, ուր մահը սովորական է ու անխուսափելի. մահապարտներու կոչը ահազանգ մըն էր իւրաքանչիւր սրտցաւ հայու, որուն կ'առաջնորդէր հոն՝ ուր կեանքն ու մահը միախառնուած են, հոն՝ ուր մահուամբ կարելի է ձեռք ձգել յաղթանակ ու ապահովութիւն. սրատես ու իրատես ղեկավարը չուտով հասկցաւ, որ ոսոխին յայնածիր ներխուժումը կարելի է սանձել մահապարտներու միջոցաւ, որոնք պիտի խոյանան զուպարին ամենավտանգաւոր մասերը, պիտի մահը տապալեն՝ որպէսզի այլոց կեանք ու երջանկութիւն պարգեւեն: Մահապարտը, փաստօրէն բառէ աւելի ճակատագիր է ու յետ-մահու կեանք ապահովող մարտակոչ, որուն հրաւէրին ընդառաջեցին բազմաթիւ մարտիկներ, զէնքի ու խրամատի ռազմիկներ:

Կեանքի ու պատմութեան պայմանները ծնունդ կու տան ինչպէս դէմքերու եւ դէպքերու, այդպէս ալ բառերու եւ անուններու: 19րդ դարու վերջաւորութեան հայ ազատագրական պայքարը իր ծոցէն երկնեց հայդուկն ու ֆետային, ապա՝ կամաւորն ու աշխարհազօրայինը, նաեւ երկնեց Փարամազն ու Հրայր Դժոխքը, իսկ ահա, արցախեան զուպարը հայոց երկնակամարին պարգեւեց Վ. Սարգսեան, ինչպէս նաեւ երկրապահ ու մահապարտ բառերը. առանց այդ բառերուն թերի կը մնայ հայ նորագոյն պատմութեան լիիրաւ ըմբռնումը եւ արցախեան յաղթանակի գաղտնիքին ընկալումը:

Վերոնշեալ բառերը՝ երկրապահն ու մահապարտը պատմութեան էջերուն դրոշմուեցան արեամբ եւ նահատակներու գնով. դրոշմուեցան, որպէսզի սերունդներուն համար ըլլան ներշնչման խորհրդանիշներ ու փարոսներ եւ անոնք իմանան թէ ինչո՞ւ եւ ի՞նչպէս կը կերտուին նուաճումներն ու յաղթութեան կոթողները: Արդարեւ, ամէն յաղթանակ իր մէջ կը պարփակէ մահապարտի թէ երկրապահի անուան յիշատակը. իւրաքանչիւր մահապարտ թէ երկրապահ իր մէջ կ'ամփոփէ նոյնինքն պատմութիւնը եւ հայրենի հողին սուրբ գաղափարականը:

Ինչքան ալ ժամանակը թաւալի եւ պատմութեան հոլովոյթը արձանագրէ հանգրուաններ, մահապարտն ու երկրապահը պիտի մնան յիշատակելի եւ անմոռաց անուններ: Իսկ անոնց ստեղծիչին ու կազմակերպիչին անունը՝ Վ. Սարգսեան պիտի դառնայ հոմանիշ այդ անուններու բովանդակութեան եւ գաղափարախօսութեան:

Մենք ժամանակակիցներն ենք ու վկաները մահապարտներու եւ երկրապահներու սերունդին. արժեւորենք զանոնք յանուն պատմութեան ճշմարտութեան:

**ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

# ՄԱՅՐՈՒԹԻՒՆԸ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՇՆՈՐՔ ՄԸՆ Է

*«Առաքինի կինը ո՞վ կրնայ գտնել...: Վայելչութիւնը սուտ է, ու գեղեցկութիւնը՝ ունայն, սակայն Տէրոջմէ վախցող կինը պիտի գովուի» - Առակ. ԼԱ 10, 30:*

Եթէ ընտանիքը աշխարհի կարեւորագոյն հաստատութիւնն է, մայրն ալ անոր ամենէն անհրաժեշտ անդամն է: Երեւակայեցէ՛ք տուն մը՝ որ գեղեցիկ է պալատի պէս, կահաւորուած է ամենէն սուղ կահկարասիներով, որուն մէջ կան առողջ եւ յաջողակ հայր, առոյգ ու գեղեցիկ զաւակներ՝ երիտասարդ կամ անչափահաս, բայց կը բացակայի մայրը...: Չէ՞ք խորհիր թէ այդ տունը՝ հրապուրիչ ընտանիքէ մը աւելի՝ անհամ բնակարանի մը տպաւորութիւնը կը ձգէ առանց մօր: Ինչպէս պալատը՝ առանց սիրոյ եւ ազատութեան՝ կը դառնայ բանտ, նոյնպէս ալ տունը՝ առանց մօր սիրոյն ու ձեռքերուն՝ կը վերածուի կէս որբանոցի...:

Մէկը իրաւամբ ըսած է. «Մա՛յր, երբ չկաս դուն, ա՛լ չկայ տուն...»: Ես անձական փորձառութեանս մէջէն կը հաստատեմ այս ահաւոր ճշմարտութեան իրողութիւնը: Հինէն ի վեր ու երկար ատեն՝ մեր ընտանիքը ապրած է գիւղական շատ համեստ բնակարանի մը մէջ: Ան կը բաղկանար երկու սենեակէ՝ քարէ ու փայտէ շինուած, մէկը մառան էր, իսկ միւսը կը գործածուէր իբր ննջասենեակ եւ հիւրանոց: Անոր տակ կային կովերուն ախոռն ու յարդանոցը, քովն ալ՝ հաւնոցը: Հաւանաբար անօթի օրեր չենք ունեցած, սակայն տարինե՛ր շարունակ ապրած եւ գոհացած ենք հօրս շատ չնչին աշխատավարձով, կամ օրուան հացով: Բայց կրնամ անվարան ըսել թէ մենք աշխարհի ամենէն ուրախ ընտանիքներէն մէկն էինք - հայր, մայր, երկու քոյր ու երկու եղբայր: Անշուշտ այս ուրախութիւնը կը պարտէինք նախ Աստուծոյ, ապա՝ մօրս: Ան հազիւ հայերէն գրերը կը ճանչնար, գրել - կարդալ չէր գիտեր: Բայց միշտ լռութեամբ մեզի համար կ'աղօթէր, գիշեր - ցերեկ մեզի համար կը զոհուէր: Մեզի համար կանուխէն մեռաւ, եւ անմիջապէս մեր տունը ո՛չ միայն իր հրապոյրը, այլ քանի մը տարի ետք՝ իր գոյութիւնն ալ կորսնցուց...: Մեր գիւղական բնակարանը փլաւ, իսկ ես կը հաւատամ թէ ան կանգուն պիտի մնար տակաւին՝ եթէ մայրս ողջ ըլլար...:

Յովհաննէս Շիրազ իրաւամբ ըսած է. «Մեր տան աղբիւրն է մայրս, մեր հացն ու ջուրն է մայրս, մեր օրօրոցն է մայրս, մեր տան ամրոցն է մայրս, մեր տան ճրագն է մայրս, մեր արեգակն է մայրս, մեր հէրն ու մէրն է մայրս, աշխարհի ու սէրն է մայրս»: Արդարեւ, Աստուծոյ սէրէն ետք՝ ո՛չ մէկ սէր այնքան մեծ է, որքան մօր սէրը: Սակայն պէտք չէ կուռքի վերածել մայրերը, ո՛չ ալ իրենց սէրը, որովհետեւ անոնք կատարեալ արարածներ չեն, հողէ շինուած են: Բայց զիրենք յարգելու կամ սիրելու համար անոնք կատարեալ ըլլալու պէտք չունին: Միայն յանցանք չունեցողը իրաւունք ունի չներելու. միայն կատարեալ եղողը իրաւունք ունի կատարելութիւն ակնկալելու:

Բայց ի՞նչ է արդեօք գաղտնիքը մօր անզուգական սիրոյն եւ իր այս անփոխարինելի արժէքին: Ես կը հաւատամ թէ ան կը գտնուի Աստուծո՛յ մէջ. աւելի շիտակը՝ Աստուծոյ այն սիրո՛յն մէջ, որ Իր էութիւնն իսկ ըլլալով անձէ աւելի բաշխուած է մայրերուն: Ինծի այնպէս կը թուի թէ երբ Աստուած Ադամի կողին մէկ ոսկորէն շինեց կինը՝ Եւան, որ ըլլայ մայր, այդ ոսկորով ալ սէր փոխանցեց իրեն, որպէսզի մայրերը մի՛շտ քիչ մը աւելի սիրեն իրենց զաւակները՝ քան հայրերը: Հոս աստուածային խտրականութեան պզտիկ հարց մը կայ, որուն համար հայրերը բնա՛ւ պէտք չէ նեղուին:

Այլ խօսքով, մայրութիւնը Աստուծմէ տրուած շնորհք մըն է: Կ'ըսուի թէ՝ անգլերէն լեզուին մէջ ամենէն քաղցր չորս բառերն են՝ երկինք, տուն, սէր եւ մայր: Բայց ասոնք բոլորն ալ կախեալ են եւ իրենց ծագումը կ'առնեն Աստուծմէ: Մայրական սէր գոյութիւն չունի՝ առանց Աստուծոյ սիրոյն: Եւ դեռ՝ կարելի է այդ սէրը կորսնցնել եւ անոր առնչուող բոլոր առաքինութիւններէն զրկուիլ, եթէ մայրեր շարունակ Տէրոջ հետ հաղորդակցութեան մէջ չըլլան՝ աղօթքով, աղաչանքով, պաշտամունքով եւ Աստուածաշունչի սերտողութիւնով ու ընթերցումով. եթէ կեանքին երկրորդական իրողութիւնները - նիւթ, վայելչութիւն, հաճոյք կամ գեղեցկութիւն - աւելի կարեւոր նկատեն իրենց կամ զաւակներուն համար, քան հիմնական արժէքները, ինչպէս՝ առաքինութիւն, պարկեշտութիւն, զոհունակութիւն, աղօթք, ծառայութիւն, Յիսուս, Սուրբ Հոգին, Աստուծոյ Խօսքն ու թագաւորութիւնը:

Առակաց գրքին հեղինակը կը հաւատայ որ այսպիսի առաքինութիւններով օժտուած կիները կամ մայրերը հազուագիւտ են, եւ հարց կու տայ, «Առաքինի կինը ո՞վ կրնայ գտնել...»: Ան որ շեշտը կը դնէ արտաքինին վրայ -«վայելչութիւն», «գեղեցկութիւն», կը հետապնդէ- առաքինի կամ իմաստուն չէ, որովհետեւ ասոնք «սուտ» են եւ «ունայն»: «Սակայն Տէրոջմէ վախցող կինը պիտի գովուի». որովհետեւ Աստուծոյ հետ հաղորդակցութեան մէջ ըլլալով՝ տիրացած կ'ըլլայ դժուարութիւններու ատեն իր ընտանիքը հաստատ, սիրով ու խաղաղ պահելու գաղտնիքին:

Շնորհակալութիւն Աստուծոյ՝ մայրութեան շնորհքին ու բոլոր մայրերուն համար: Նմանապէս շնորհակալութիւն մեր մայրերուն՝ իրենց անգերազանցելի եւ անփոխարինելի սիրոյն համար:

**(Թորոնթօ)** **ՎԵՐ. ԵՍԱՅԻ ՍԱՐՄԱՋԵԱՆ**

# Ռուս-Հայկական Ռազմական Հրամանատարա-Շտապային Զօրավարժութիւններ Սկսան

*ԵՐԵՎԱՆ, 28 ՄԱՐՏԻ: Այսօր Հայաստանում սկսուեցին ռուս-հայկական հրամանատարա-շտապային զօրավարժութիւններ: Ինչպէս ԻԹԱՌ-ԹԱՍՍ-ի թղթակցին յայտնել են Ռուսաստանի պաշտպանութեան նախարարութիւնում, զօրավարժութիւններին մասնակցում են Անդրկովկասում ռուսաստանեան զօրախմբի 102-րդ ռազմական պազայի եւ Հայաստանի զինուած ուժերի 5-րդ կորպուսի զօրամասերը:*

*Ռուսաստանեան կողմից զօրավարժութիւնները ղեկավարում է Անդրկովկասում ռուսաստանեան զօրախմբի հրամանատար ժեներալ-լեյտենանտ Վլադիմիր Անդրիեւը:*

*Զօրավարժութիւնները կը տեւեն մինչեւ վաղը՝ Մարտի 31-ը:*

# ԻՄ ՄԱՅՐԸ

Մայրս ազնիւ, բարեսէր,
Գիշեր - ցերեկ կ'աղօթէր,
Որ Հայրն Աստուած մեր ազգին՝
Ափ մը հող տար քանկագին:

Բայց աղօթքն իր սրտագին
Դեռ չհասած երկինքին,
Եկաւ Ապրիլ. ցաւ. աւար.
Մնաց երազն անկատար:

Յետոյ դժոխք, երկունք, լոյս,
Նաեւ արեւ իմ հոգւոյս,
Ուրկէ ծնած՝ այսօր, ես՝
Կ'երգեմ անքախտ մօրս պէս:

Որպէսզի իմ լեզուն,
Իր պարտէզով դալարուն,
- Ինչպէս Աշխարհն Հայաստան,
Ծաղկի, ապրի յաւիտեան:

**ԾԱՏՈՒՐ ՊԷՐՊԷՐԵԱՆ**

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀԱՍՏԱՏՈՒՄ Է «ՄԷԿ ՉԻՆԱՍՏԱՆԻ» ՃԱՆԱՉՄԱՆ ԻՐ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

ԵՐԵՒԱՆ, 20 ՄԱՐՏ: Մարտի 20-ին արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանն ընդունել է Հայաստանում Չինաստանի Ժողովրդային Հա արտակարգ եւ լիազօր դեսպան Չժու Չժաօ Շունին:

Ինչպէս ԱՐՄԷՆՓՐԵՍԻՆ յայտնեցին արտաքին գործոց նախարարութեան հասարակայնութեան հետ յարաբերութիւնների վարչութիւնից, դեսպանը արտգործնախարար Օսկանեանին տեղեկացրել է Թայուանում անցած ընտրութիւնների մասին՝ յայտնելով Չինաստանի ղեկավարութեան՝ կղզում ծաւալուող վերջին իրադարձութիւնների առիթով վրդովմունքը եւ չին ժողովրդին պետական սահմաններով բաժանելու փորձերին բոլոր միջոցներով դիմադրելու նրա հաստատակամութիւնը:

Զրոյցի ընթացքում նախարար Օսկանեանը ընդգծել է, որ Հայաստանի կառավարութիւնը վերստին հաստատում է ՉԺՀ տարածքային ամբողջականութեան ու «մէկ Չինաստանի» ճանաչման իր դիրքորոշումը:

Հանդիպման ընթացքում քննարկուել են նաեւ հայ-չինական երկկողմ յարաբերութիւնները: Նշելով Հայաստանի արտաքին քաղաքականութեան մէջ ասիական ուղղութեան աճող կարեւորութիւնը՝ նախարար Օսկանեանը շեշտել է Չինաստանի հետ համագործակցութեան առանձնայատուկ նշանակութիւնը, որը երկու երկրների միջեւ դիւանագիտական յարաբերութիւնների հաստատումից ի վեր մեծ, կայուն ու յարաճուն զարգացում է ստանում:

# ՀՀ Նախագահ Ռ. Քոչարեան Վրաստան Ժամանեց

1 ⇨

թիւնները զարգանում են «յիրաւի եղբայրական եւ բարեկամական մթնոլորտում»: Հայաստանի նախագահը Վրաստանի ղեկավարութեանը շնորհակալութիւն է յայտնել հայ մեծաթիւ գաղթօջախի նկատմամբ ցուցաբերուող ուշադիր վերաբերմունքի համար: Նա հաւաստել է Վրաստանի հետ այսուհետեւ էլ փոխշահաւէտ համագործակցութիւնը զարգացնելու պատրաստակամութիւնը:



# ՈՐՈ՞ՆՔ ԵՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԻՆԳ ԱՀԱԲԵԿԻՉՆԵՐԸ

1 ⇨

*եանին թիկնապահն էր: Նախքան մահափորձը, համաձայնութիւն գոյացած է վերոյիշեալներուն միջեւ ու ամէն մէկուն յատուկ առաքելութիւն տրուած է եւ անոնք գործադրած են այդ:*

*Դատախազի ամբաստանագրին մէջ չ'ըսուիր, թէ անոնք այդ գործը կատարած են Սամուէլ Պապայեանի հրահանգով: Յայտնի չէ նաեւ թէ դատախազը արդէն քրէական գործ բացա՞ծ է թէ ոչ նախկին հրամանատարին նկատմամբ: Կ'ըսուի միայն, թէ խուզարկութեան ընթացքին, մեծ քանակութեամբ զէնք եւ ռազմանիւթ գտնուած է Պապայեանի տան մէջ:*

**ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ ԴԺԳՈՀ ԵՐԵՒԱՆԷՆ**

*Ղարաբաղէն կը հաղորդուի, թէ Ստեփանակերտի ժողովուրդը, իր մտահոգութիւններով ծանրաբեռն, գրեթէ անտարբեր է Ղուկասեանի դէմ գործուած մահափորձին նկատմամբ: Միայն թէ, ամէն ոք տպաւորուած է Հայաստանի կուսակցութիւններուն այն ելոյթներէն, թէ զօրավար Սամուէլ Պապայեան կապ չունի այս արարքին հետ:*

*Միւս կողմէ Վարչապետ Անուշաւան Դանիէլեան, ընդառաջելով քաղաքային համայնքի աւագանիի առաջարկին, նոյն օրը ստորագրեց հրամանագիր մը, ըստ որու Ստեփանակերտի քաղաքապետ՝ Կարէն Պապայեանի լիազօրութիւնները առժամաբար դադարեցման կ'ենթարկուին: Նոյն որոշումով, փոխ-քաղաքապետ Աշոտ Սահակեան Ստեփանակերտի քաղաքապետի պաշտօնակատար նշանակուեցաւ:*

# ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը սիրով տեղեկացնում է, որ ս/թ Ապրիլի 9-ին, Կիրակի ժամը 18.00-ից մինչեւ 22.00 դեսպանութեան պարտէզում կայանալու է տարեկան բարեգործական պազար:

Պազարում ներկայացուած կը լինեն Հայաստանից բերուած հայ վարպետների ձեռքի աշխատանքներ՝ գեղեցիկ գորգեր եւ կարպետներ, փայտէ նրբագեղ զարդեր եւ զարդատուփեր, ժամանակակից հայ նկարիչների ստեղծագործութիւններ եւ գեղարուեստի այլ գործեր:

Ինչպէս նախորդ տարիներին, կը խաղարկուի վիճակախաղ:

Մուտքի եւ վիճակախաղի տոմսեր կարելի է ձեռք բերել նախապէս՝ դեսպանութիւնում եւ հայկական ակումբներում ու դպրոցներում կամ պազարի օրը՝ տեղում:

Լրացուցիչ տեղեկութիւնների համար զանգահարել ՀՀ դեսպանութիւն 342-41-57, 342-41-59:

**ԵԳԻՊՏՈՍՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

## ԱՐԺԱՆԹԻՆԱՀԱՅ «ՆՈՐ ՍԵՒԱՆ» ԵՐԿԱՄՍԱԹԵՐԹԸ

*Վերջերս Պուէնոս Այրէսի մէջ լոյս տեսած է «Նոր Սեւան» երկամսաթերթը: Ութը էջ, հայերէն սպաներէն լեզուներով:*

*«Նոր Սեւան» պաշտօնաթերթն է Արժանթինահայ Մշակութային Միութեան կազմակերպութեան, որուն գլխաւոր նպատակներէն է հայապահպանումը, գաղութին մէջ հայկական մշակութային կեանքին զարգացումը: Թերթին նպատակներէն մին է նաեւ արժանթինահայութիւնը տեղեակ պահել Հայաստանի կեանքին վերաբերեալ խնդիրներուն:*

*Խմբագրական մարմնին մաս կը կազմեն՝ Քարլոս Ակայա, Մարիանո Պոնիայեան, Գրիգոր Իշխանեան, Ատրիան Լոմյոմճեան, Կապրիէլ Սիվինեան Կրէկորիօ Երնազեան:*

*«Ջահակիր»ի խմբագրութիւնը կ'ողջունէ սփիւռքահայ այս երկամսաթերթը եւ կը մաղթէ անոր յաջողութիւն եւ բարի երթ:*

## ՌՈՒՄԲԻ ՊԱՅԹՈՒՄ ԱՐԺԱՆԹԻՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԴՊՐՈՑԷՆ ՆԵՐՍ

*2 Ֆետերիքօ Ստորանի դատապարտեց արարքը ու յայտնեց իր մտահոգութիւնը:*

*Նոյն օրը Արժանթինի մէջ պաշտօնապէս կը նշուէր Իսրայէլի դեսպանութեան դէմ կատարուած ահաբեկչական գործողութեան 8 ամեակը որուն զոհ դարձած էին 29 հոգի: Հայկական դպրոցի մէջ պայթած ռումբը միակը չէր: Նոյն տարողութեամբ ռումբ մը պայթեցաւ նաեւ «Ճոն Քեննետի» պետական դպրոցին մէջ: Միեւնոյն ժամանակ սպառնալիքներ ստացան շարք մը պետական հիմնարկութիւններ եւ կրթական կեդրոններ: Ներքին Գործոց նախարար Ստորանին աւելցուց որ շատ հաւանական է թէ արարքներու կազմակերպիչները ուզեցին պարզապէս ուշադրութիւն գրաւել եւ նպատակ չունէին ոչ ոքի սպաննելու: . Հարցազրոյց ունենալով «Ռատիօ Արմենիայի» հետ, Արժանթինի Առաջնորդ Գիսակ Արք. Մուրատեան, որ կը բնակի ճիշդ դպրոցի կողքին, ըսաւ.- «Իսկապէս այսօր ժամը 7-ին ցատկեր ենք անկողինէն այս պայթիւնը լսելով», սակայն «յետոյ պարզուեցաւ որ հնչեղութիւնը աւելի մեծ էր քան աւերուածութիւնները»:*

*Շաբաթ Մարտ 18-ին, Ներքին Գործոց Նախարարը ընդունեց Հայաստանի Հանրապետութեան դեսպան Արա Այվազեանի եւ Առաջնորդ Գիսակ Արք. Մուրատեանի գլխաւորած հայկական պատուիրակութիւն մը: Նախարար Ստորանի ըսաւ թէ ամէն ինչ պիտի ընէ՝ երաշխաւորելու որ հայ կառոյցները շարունակեն իրենց բնականոն աշխատանքը:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲԱՆԱԿԷՆ ՆԵՐՍ ԿԱՏԱՐՈՒԱԾ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ ԵՏՔ ՆԵՐԻՇԽԱՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԿԸ ՍՏԱՆԱՅ ՆՈՐ ԲՆՈՅԹ

*1 Պաշտօնական տեղեկատուութեան համաձայն, նախագահը ու խորհրդարանականները մտահոգութիւն յայտնած են տնտեսական վիճակին կապակցութեամբ:. Սակայն, այլ տեղեկութիւններու համաձայն նախագահ Քոչարեան հանդիպման ընթացքին քննադատած է վարչապետ Արամ Սարգսեանի գործունէութիւնը: Քոչարեան դժգոհութիւն յայտնած է կառավարութեան տնտեսական քաղաքականութեան վերաբերեալ, յատկապէս անընդունելի գտնելով աշխատավարձերու վճարումներու ուշացումը: Քոչարեան աւելցուցած է, որ կառավարութեան վերակազմութեան ժամանակ կարգ մը նախարարներ նշանակուած են հակառակ իր կամքին:*

*Քաղաքական մեկնաբաններու կարծիքով, երկրէն ներս տիրող խիստ վատ պայմաններուն ամբողջ պատասխանատուութիւնը վարչապետի վրայ կեդրոնացնելով, Քոչարեան կը պատրաստուի լուծելու կառավարութիւնը եւ նշանակելու իրեն համախոհ կառավարութիւն մը: Միւս կողմէ, Քոչարեանամէտ մամուլէն ներս վերջին օրերուն սկսան հրապարակուիլ լուրեր, ըստ որոնց նախագահի հրամանագիրերուն պատճառաւ վարչապետ Արամ Սարգսեան հրաժարական տալու ցանկութիւն ունի: Սակայն կառավարութեան տեղեկատուութեան վարչութեան պետ Արթուր Ղարագոզեան այդ լուրերը նկատեց կեղծ ու յայտնեց որ անոնք չեն համապատասխաներ իրականութեան: Իր կարգին Ազգային Ժողովի եւ Հանրապետական կուսակցութեան փոխնախագահ Տիգրան Թորոսեան յայտնեց, որ այդ լուրերը տարածողները կը հետապնդեն որոշ նպատակներ:*

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Հայկ եւ Մարգրիտ Ասատուրեաններ, Չորեքշաբթի 15 Մարտ 2000-ին, բախտաւորուած են երկրորդ զաւակով մը, զոր անուանակոչած են Քրիս:

Այս բարեբաստիկ առիթով մեր ջերմ խնդակցութիւնները կը յայտնենք նորածինին ծնողքին, մեծ ծնողներուն՝ Տիկին Աննա Ասատուրեանի ու Տէր եւ Տիկին Վարուժան Թահթապրունեաններուն, մաղթելով նորածին մանկան արեւշատ, երջանիկ եւ երկար կեանք:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

*Տէր եւ Տիկ. Գէորգ Գավուքճեան եւ զաւակունք, Տոքթ. եւ Տիկին Արմէն Գավուքճեան եւ դուստրերը, Գավուքճեան ընտանիքի համայն ննջեցեալներու հոգւոյն, ինչպէս նաեւ իրենց մեծ հօր եւ մեծ մօր՝ Ողբ. Գրիգոր եւ Վերժին Միննէթեաններու հոգւոյն եւ իրենց քաղցր յիշատակին կը նուիրեն.*

| | |
|---|---|
| *Հ.Մ.Ը.Մ. «Կամք»ին* | *100* |
| *«Յառաջդիմասէր»ին* | *100* |
| *«Յուսաբեր»ին* | *100* |
| *«Արեւ»ին* | *50* |
| *«Ջահակիր»ին* | *50* |
| *Ս. Պօղոս Պետրոս Եկեղեցւոյ (Աղեքս.)* | *50* |
| *Պօղոսեան Ազգ. Վարժարանի* | *50* |
| *Աղեքս. Հայ Բարեսիրաց Մարմին* | *50* |
| *Աղեքս. Վեթերաններու Ֆոնտին* | *50* |
| *Հայ Կարիքի Խաչի* | *50* |
| *Այծեմնիկ Հանգստեան Տան* | *50* |
| *Հ.Մ.Ը.Մ. «Արարատ»ին* | *50* |
| *Հ.Մ.Ը.Մ. Նուպարին (Գահիրէ)* | *50* |
| *Հ.Մ.Ը.Մ. Նուպարին (Աղեքս.)* | *50* |
| *«Ս. Թէրէզա» Ակումբին* | *50* |
| *«Նիրը Իսթ» Ակումբին* | *50* |
| *«Տիգրան Երկաթ»ին* | *50* |

(Ստանալ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի Ազգ. Առաջնորդարաններէն)

## ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

**ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ**
ԿԻՐԱԿԻ, 14 ՄԱՅԻՍ 2000,
ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8-ԻՆ
«ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ» ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
*ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ ԵՒ ՉԽԱՉԱՉԵՒԵԼ*

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ**

## «ՄԱՍԻՍ» ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 20-ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

*2 խորհրդանշող: Ապա երեկոն շարունակուեցաւ մինչեւ առաւօտեան փոքր ժամերը:*

*Իրապէս յաջող եւ արդիւնաւոր ձեռնարկ մը, որուն համար շնորհաւորելի են կազմակերպիչները, «Մասիս»ի խմբագրութիւնը, գաղափարական շրջանակը եւ համակիրները:*

*ԹՂԹԱԿԻՑ*

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք ղրկել « M. BALAYAN »ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

## ՀԱՅ ԲԱՐԵՍԻՐԱԿԱՆ ՄԱՐՄԻՆ - ԱՂԵՔՍ.

**ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ**
**ԱՒԱՆԴԱԿԱՆ ՃԱՇԿԵՐՈՅԹ**

Հովանաւորութեամբ՝
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Բարեխնամ Առաջնորդ Հայոց Եգիպտոսի

Նախագահութեամբ՝
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՄԿՐՏԻՉ ԽԱՆՃԵԱՆԻ**
Ատենապետ Աղեքսանդրիոյ Քաղաքական Ժողովի

Կիրակի 16 Ապրիլ 2000-ին կ.վ. ժամը 1:15-ին

TIKKA GRILL

Ճաշասրահին մէջ

**ՀՐԱՒԷՐ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅ**
**«ՈՂՋՈՅՆ ՀԱՅՐԵՆՔ»**

Կիրակի. 16 Ապրիլ 2000-ին Կ.Ե. ժամը 7-ին
Հովանաւորութեամբ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայ Թեմի

Նախագահութեամբ
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ**
Ատենապետ Պատուարժան Քաղաքական Ժողովի

Խմբավարութեամբ
**ԴՈՑԵՆՏ ԴԱՒԻԹ ԶԱԼԵԱՆԻ**

Դաշնակի Նուագակցութեամբ
**ԻՐԻՆԱ ԶԱԼԵԱՆԻ**

*Սիրելի հրաւէր բոլորին*

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿԵԴՐՈՆԻ ՁԵՌՆԱՐԿ**

ՀԻՆԳՇ., 4 ՄԱՅԻՍ 2000
**ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ ԵՒ ՉԽԱՉԱՉԵՒԵԼ**

*ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ*

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**

Կիրակի 28 Մայիս 2000

Կը խնդրուի նկատի ունենալ ու չխաչաձեւել

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Թատերական գործունէութեան երկար ընդհատումէն վերջ, քաղաքական ժողովը հաճոյքով կը տեղեկացնէ գաղութիս անդամներուն, վերոյիշեալ գործունէութեան վերսկսման ծրագրի մասին, գեղարուեստական ղեկավարութեամբ բեմադրիչ Հայրապետ Կարապետեանի:*

*Ուստի, կ'ակնկալուի թատերասէր ազգայիններուն աշխոյժ աջակցութիւնը, մասնակցելով թատերական սոյն գործունէութեան յանձնախմբային՝ «վարչական» կամ թատերախմբային՝ «դերասանական» աշխատանքներուն:*

*Փափաքողներէն կը խնդրուի անձամբ ներկայանալ Ազգային Առաջնորդարան կամ հեռաձայնել թիւ 4947542:*

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ներկայիս կը ծանուցանենք մեր յարգոյ հասարակութեան, թէ ըստ ընկալեալ սովորութեան, Եկեղեցւոյ Պատուարժան Հոգաբարձութեան անդամները սկսած են 2000 տարուան Իւղագինի նուիրահաւաքութեան:

Կը խնդրենք մեր սիրելի եւ բարեպաշտ ժողովուրդը որ բարեհաճի կատարել իր նուիրական պարտականութիւնը, ի պայծառութիւն մեր եկեղեցւոյ եւ ի փառս Աստուծոյ:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Եգիպտոսում ՀՀ դեսպանութեան եւ անձամբ իմ անունից խորին շնորհակալութիւն եմ յայտնում եգիպտահայ համայնքի բոլոր այն միութիւններին եւ անհատ անձանց, ովքեր իրենց նպաստը բերեցին ս/թ Ապրիլի 9-ին Հայաստանի Հանրապետութեան դեսպանութեան պարտէզում կայացած բարեգործական պազարի կազմակերպչական աշխատանքներին եւ բարեյաջող կայացմանը:

Շնորհակալութիւն բոլոր նրանց, ում գործադրած ջանքերի, նուիրատուութիւնների եւ աջակցութեան շնորհիւ, դեսպանութեան պազարը բարի համբաւ եւ լայն տարածում է ձեռք բերել:

Դեսպանութիւն - համայնք եւ ընդհանրապէս Հայաստան թՍփիւռք միասնական, համախմբուած եւ նպատակաուղղուած ջանքերը մեր բոլոր յաջողութիւնների գրաւականն են:

Լաւագոյն բարեմաղթանքներով՝

**ՍԵՐԿԷՅ ՄԱՆԱՍԱՐԵԱՆ**
**Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան**

**ՀԱՅԱՍՏԱՆ**

**ՎԱԶԳԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆ.**

## «ԵՍ ՀԱՄԱՁԱՅՆ ԵՄ ԵՒ՛ ՆԱԽԱԳԱՀԻ ՀԱԺԱՐԱԿԱՆԻՆ, ԵՒ՛ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ԼՈՒԾԱՐՄԱՆԸ»

*«Հայաստանը շարունակում է նոյն ճանապարհով դէպի անդունդը գլորուել: Այսպէս բնութագրեց ԱԺՄ նախագահ Վազգէն Մանուկեանը Հայաստանի ներքին իրավիճակը Մամուլի ազգային ակումբում հրաւիրած մամլոյ ասուլիսում: Ընդհանրապէս նրա խօսքում փոքր-ինչ յոռետեսութիւն էր զգացւում, մանաւանդ՝ արտագաղթի թէմային անդրադառնալիս:*

*Ան նշեց, որ առաջիկայում քաղաքական փոփոխութիւններ կարող են տեղի ունենալ՝ նկատի ունենալով մասնաւորապէս խորհրդարանի լուծարման հաւանականութիւնը: «Եթէ անկեղծ ասեմ, ես կ'ուզէի եւ՛ խորհրդարանի լուծարումը, եւ՛ նախագահի ու կառավարութեան հրաժարականները, սակայն դրանք տեխնոլոգիական լուծումներ չունեն», ասաց նա: Ոչ-դրական գնահատականի արժանացաւ նաեւ ՀՀ վարչապետը (ոչ իբրեւ անհատ), որի մասին Վ. Մանուկեանն ասաց, թէ երկիրն այս վիճակից դուրս բերելու համար «չունի անհրաժեշտ փորձ ու գիտելիքներ»:*

**ԱՏՐՊԷՅՃԱՆ**

## Հ. ԱԼԻԵՒԸ ՀԱՅԵՐԻՆ ՄԵՂԱԴՐԵԼ Է ԵՐԿՈՒ ՄԻԼԻՈՆ ԱՏՐՊԷՅՃԱՆՑԻՆԵՐԻ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

*ՊԱՔՈՒ.-: Ընթացիկ դարում մօտ երկու միլիոն ատրպէյճանցիներ են իրենց վրայ զգացել ինչպէս ցարական, այնպէս էլ կոմունիստական Ռուսաստանի հովանաւորութեամբ հայ ազգայնականների սանձազերծած ցեղասպանութեան հետեւանքները: Ըստ Փրայմ Նիւզ գործակալութեան հաղորդման, այսպիսի հետեւութիւն է բովանդակում ատրպէյճանական ժողովրդին եւ համաշխարհային հասարակայնութեանը նախագահ Հէյտար Ալիեւի դիմումը՝ նուիրուած ատրպէյճանական ժողովրդի ցեղասպանութեան օրուան, որը նշւում է Մարտի 31-ին: Դիմումի տեքստը տարածուել է նախագահի աշխատակազմի մամուլի կենտրոնի կողմից:*

*Դատապարտելով ռուսական կայսրութեան գաւթողական քաղաքականութիւնը, որն ընթացիկ դարում չորս անգամ բախումներ է հրահրել կովկասեան երկու՝ ատրպէյճանական եւ հայ ժողովուրդների միջեւ, Հէյտար Ալիեւը նշել է, որ խորհրդային ժամանակներում էլ էր նման քաղաքականութիւնը խրախուսւում:*

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

**Եգիպտահայ Վարժարաններու Աշակերտներու Համաշխարհային Հաւաքին Հասոյթը Պիտի Յատկացուի Հայաստանի Կրթական Նպատակներու**

Եգիպտահայ Վարժարաններու Աշակերտներու Համաշխարհային Հաւաքին Կազմակերպիչ Մարմինը հաճոյքն ունի յայտարարելու, թէ Մոնրէալի մէջ 29 Յուլիսէն 1 Օգոստոս 1999-ին տեղի ունեցած Հաւաքին նիւթական հաշուեկշիռը կը ցոլացնէ այն աննախընթաց յաջողութիւնը, զոր արձանագրեց այս Հաւաքը:

Կատարուած բոլոր ձեռնարկներէն գոյացած զուտ հասոյթը կը հանդիսանայ 130,946 Գան. Տոլար (մօտ 86,000 Ամեր. Տոլար), որ ինչպէս սկիզբէն յայտարարուած էր, ամբողջութեամբ պիտի տրամադրուի Հայաստանի մէջ կրթական ծրագիրներու իրագործման: Այդ ուղղութեամբ որոշ նախնական ուսումնասիրութիւններ կատարուած են, ընտրելու ամենայարմար ծրագրերը եւ ամենաարդիւնաւոր ու ապահով միջոցները որպէսզի այդ գումարը ծառայէ իր նպատակին: Այս աշխատանքը կը տարուի միջազգային բարձր վարկ եւ փորձառութիւն ունեցող հաստատութիւններու հետ:

Այս առթիւ Հաւաքի Կազմակերպիչ Մարմինը անգամ մը եւս սրտագին շնորհակալութիւնները կը յայտնէ Հաւաքին 1500 մասնակցողներուն եւ բոլոր անոնց, որոնք անձնուիրաբար օժանդակեցին Եգիպտահայ Վարժարաններու Աշակերտներու Համաշխարհային Հաւաքին մեծ յաջողութեան:

**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԱՒԱՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ ՄԱՐՄԻՆ**

**ԳԱՐԵԳԻՆ Բ.**

## «ԼԻՆԵՆՔ ՄՇՏԱՊԷՍ ՀԱՒԱՏԱՐԻՄ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԻԿԻՆ»

*Ապրիլի 4-ին Մայր Աթոռ Սբ. Էջմիածնում Հայոց Հայրապետ Խրիմեան Հայրիկի շիրիմի առջեւ Ն.Ս.Օ.Ս.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոսի բարձր նախագահութեամբ տեղի ունեցաւ հոգեհանգստեան արարողութիւն՝ ի յիշատակ Հայոց 125-րդ Կաթողիկոսի ծննդեան 180-րդ տարեդարձի:*

*«Արդարեւ, Խրիմեան Հայրիկը մեր ժողովրդի այն զաւակներից է, որը որքան հեռանում է մեզանից, այնքան ընկալելի է դառնում նրա մեծութիւնը: Մեծ հայրենասէր, նուիրեալ հայրենեաց, մեծագոյն ուսուցիչ Խրիմեան Հայրիկի ոգին այս ծանր ժամանակներում համահունչ է ապրելու, յարատեւելու, հայրենիքը զօրացնելու պահանջներին: Լինենք մշտապէս հաւատարիմ Հայոց Հայրիկին, նրա զգացումներին եւ նրա ապրումներին՝ դէպի Հայրենին Հայոց, դէպի մեր ժողովուրդը»,- ասաց Վեհափառ Հայրապետը:*

## «ՆԱԻՐԻՏԸ» ՍԿՍԱԾ Է ԴԱՐՁԵԱԼ ՔԱՈՒՉՈՒԿ ԱՐՏԱԴՐԵԼ

ՀՀ վարչապետ Արամ Սարգսեանն այցելեց «Նաիրիտ» գիտաարտադրական միաւորում պետական փակ բաժնետիրական ընկերութիւն, որը, տեւական պարապուրդից յետոյ, ներկայումս աշխատում է իր հզօրութեան 10 տոկոսի չափով եւ 2-3 օրից կը տայ քաուչուկի առաջին արտադրանքը: Այն կ'առաքուի Ռուսաստան եւ Ուկրաինա:

Վարչապետը, ծանօթացաւ ձեռնարկութեան խնդիրներին, որոնք բազմաթիւ են՝ 10 տարի կապիտալ նորոգումներ չեն եղել, բաւական մեծ պարտքեր են կուտակուել էներգետիկ համակարգին, կենսաթոշակային ֆոնտին, պետպիւտճէին: Ձեռնարկութեան 3100 աշխատողները արդէն 11-18 ամիս աշխատավարձ չեն ստանում. այդ պարտքը կազմում է 300 մլն դրամ:

Չպէտք է մոռանալ, որ «Նաիրիտը» իր տեսակի մէջ եզակի է ոչ միայն տարածաշրջանում, այլեւ աշխարհում: Քաուչուկի հետ մէկտեղ այստեղ ստացւում է նաեւ քլոր՝ կարեւոր բաղկացուցիչը քիմիական այլ նիւթերի:

**ԼԻԲԱՆԱՆ**

## ՀԱՅԵՐԷՆԸ ԻԲՐԵՒ ԵՐԿՐՈՐԴ ԼԵԶՈՒ ՊԻՏԻ ՈՐԴԵԳՐՈՒԻ ԼԻԲԱՆԱՆԻ ԿՐԹԱԿԱՆ ԾՐԱԳՐԻՆ ՄԷՋ

Լիբանանի Կրթութեան նախարար Մոհամմէտ Եուսէֆ Պայտուն, անցեալ շաբաթ ընդունեց այցելութիւնը Լիբանանի Ազգային Առաջնորդարանի Ուսումնական Խորհուրդի պատուիրակութեան, որուն մաս կը կազմէին երեսփոխան Աբրահամ Տէտէեան եւ Տիգրան Ճինպաշեան:

Հանդիպումի ընթացքին, պատուիրակութիւնը նախարար Պայտունին փոխանցեց հայկական երեսփոխանական պլոքին յուշագիրը, որ կ'առաջարկէ հայերէնը ներառնել Լիբանանի կրթական ծրագրին մէջ, իբրեւ երկրորդ օտար լեզու: Նախարար Պայտուն իր համամտութիւնը յայտնեց առաջարկին, գնահատելով այն մեծ նպաստը, զոր լիբանանահայութիւնը կը բերէ Լիբանանի մշակութային կեանքին: Նախարարը յայտնեց, որ կառավարութիւնը մօտ օրէն գործնական քայլեր պիտի առնէ:

Այս կարգին բարեփոխումներ պիտի իրականանան կրթական ծրագրի թիւ 10227 օրինագծին մէջ, որմէ ետք հայերէնը պիտի դառնայ երկրորդ օտար լեզու, զոր կրնան որդեգրել կրթական բոլոր հաստատութիւնները: Այս գծով որոշուեցաւ, որ հայերէն լեզուի մասնագէտներ, գործակցաբար Կրթական Հետազօտութեանց Կեդրոնին հետ, պատրաստեն գործնական ծրագիր մը, որ իբրեւ փորձառական շրջան պիտի կիրարկուի պետական երկու վարժարաններու մէջ, իսկ մասնաւոր դպրոցներուն պիտի տրուի ազատութիւնը զայն կիրարկելու

Քննարկուեցաւ նաեւ հայ ուսուցիչները գործի լծելու անհրաժեշտութեան հարցը, կրթական այս ծրագիրը կիրարկելու ընթացքին:

**ՖՐԱՆՍԱ**

## ՓԱՐԻԶԻ ՀՆՉԱԿԵԱՆ ՇՐՋԱՆԱԿԸ Կ'ՕԺՏՈՒԻ ՆՈՐ ԿԵԴՐՈՆՈՎ

*Շաբաթ, 11 Մարտ 2000ին, ՀՄՄ-Ֆրանս եւ ԿԱՅԾ-Նոր Սերունդ Մշակութային Միութիւնները միասնաբար եւ օժանդակութեամբ Տիկնանց ՄԱՐՕ մասնաճիւղին, կազմակերպեցին Ճաշկերոյթ-Պարահանդէս մը, Իսի Լէ Մուլինօ քաղաքի (Փարիզեան շրջան), Palais des Arts et des Congres PACIի մէջ, ի նպաստ ակումբի ֆոնտին:*



Ձախէն աջ՝ Կարօ Շիմշիրեան, Ժիրայր Կիրակոսեան, Եղիա Եղիազարեան, Տարօն Եպս. Ճէրէճեան եւ Ժիրայր Կարապետեան

*Պարահանդէսը հովանաւորուած էր Լոնտոնէն Տէր եւ Տիկին ընկեր Եղիա Եղիազարեանի կողմէ, որ Ֆրանսայի շրջանի ակումբի ֆոնտի աչխոյժ եւ ձեռնբաց նուիրատու անդամներէն մին է: Օրուայ նախագահութիւնը ստանձնած էր Փարիզահայ հանրածանօթ ազգասէր Պրն. Ժիրայր Կարապետեանը:*

*Հայաստանի Հանրապետութեան Փարիզի դեսպանատան ներկայացուցիչի եւ անոր տիկնոջ Տէր եւ Տիկին Աղաբէկեանի կողքին միութեան հիւրերն էին նաեւ Իսի Լէ Մուլինոյի Երեսփոխան-Քաղաքապետ, հանրածանօթ հայասէր Պրն. Անտրէ Սանդինի, Իսի Լէ Մուլինոյի քաղաքապետի խորհրդական եւ Հայկական հարցերու պատասխանատու Տիկին Նիկոլ Եսայեան: Մարսիլիայէն մասնաւորաբար ժամանած էր Հայրապետական փոխանորդի տեղակալ Սրբազան Հայր Տարօն Եպս. Ճէրէճեան, իր մասնակցութիւնը բերելու այս ձեռնարկին: Ներկայ էին նաեւ Եւրոպայի բոնցքամարտի ախոյեան եւ ՀՄՄ-Ֆրանսի նախագահ Տէր եւ Տիկին Ժագ Հայրապետեան: Ամերիկեան Միացեալ Նահանգներէն, Լոս Անճելըսէն մասնաւորի ժամանած էին Տէր եւ Տիկին Ընկեր Ժիրայր Կիրակոսեան: Փարիզեան շրջանի Իսի Լէ Մուլինօ քաղաքի հոգեւոր հովիւ Հայր Միւռոն Վրդ. Գրվրգեան: Ազգասէր եւ համակիր Տէր եւ Տիկին Ընկեր Վահէ Սիւտճեան, ինչպէս նաեւ ժրաջան Ընկեր, Նիս քաղաքէն Ժիրայր Փոլատեան: Օրիորդ Լենա Մելքոնեանի բացման եւ բարի գալուստի խօսքէն ետք, բեմ հրաւիրուեցաւ Տիկին Մարօ Ղազարեան, որ արտայայտուեցաւ հայերէնով: Ան իր խօսքին մէջ յիշեցուց ներկաներուն թէ ժամանակը հասած է եւ այլեւս ետդարձ չկայ: Ակումբը հոն է եւ մեզ կը սպասէ: Խոստացաւ հանգանակութեան արշաւով մը դիմել գաղութին:*

*Տիկին Ժագլին Տուզեան արտայայտուեցաւ ֆրանսերէնով: Ան անդրադարձաւ մի քանի ժամեր առաջ տեղի ունեցած ցոյցին եւ անընդունելի նկատեց Ֆրանսական Ծերակոյտին որդեգրած քաղաքականութիւնը: Ան իր խօսքին մէջ աւելցուց թէ հայ գաղութի ուժը կրնայ արդիւնաւէտ ըլլալ մի միայն երբ ան կազմակերպուած է, ակումբները կը ծառայեն այս նպատակին:*

*Պրն. Անտրէ Սանդինի, Երեսփոխան-Քաղաքապետը իր խօսքին մէջ անգամ մը եւս զգուշացուց հայերը, Թուրքիոյ վարած քաղաքականութենէն եւ ցաւ յայտնեց Ծերակոյտի անհեռատեսութեան նկատմամբ:*

*Հանրածանօթ աստղ, հայ երգի ջատագով երգչուհի Նունէ Եսայեան, որ ՀՄՄ-Ֆրանսի հրաւէրով մասնաւոր ժամանած էր Հայաստանէն, իր խումբով հրամցուց հայկական ու ազգային ոճով մեր սրտին ու պատմութեան մօտիկ երգեր: Այս երգերը իրենց արմատները կը գտնէին մեր հողին, մեր լեզուին ու մեր պատմութեան մէջէն: Արդիական գործիքներով սարքաւորումը, մազաչափ մը գանոնք չէր այլափոխած:*

*400է աւելի ներկաներ, որոնց մէջ էին միութենականներ, գաղափարականներ եւ համակիրներ, քաջալերուած երեկոյի ընթացքին հնչած ելոյթներէն եւ վստահութեամբ լեցուած միութեան հանդէպ՝ տեսնելով ժրաջան աշխատանքը եւ կազմակերպչական յաջողութիւնը ու ձեռնարկին որակն ու մանաւանդ նպատակը, առանց տատամսելու արտայայտուեցան եւ ներկայացուցին իրենց օժանդակութիւնը, իրենց նիւթական սրտաբուխ նուիրատուութիւնը, Ակումբի Ֆոնտին, որպէսզի միութիւնը ունենայ իր երդիքը, ինչպէս բսաւ Սրբազան Հայրը:*

*Տեղին է յիշել Ընկ. Եղիա Եղիազարեանի 100.000 **ՖՖ**, Ընկեր Ժիրայր Կարապետեանի 10.000 **ՖՖ**, Տէր եւ Տիկին Վահէ Սիւտճեանի 5.000 **ՖՖ** եւ Լոս Անճելըսէն Տէր Եւ Տիկին Ընկ. Սեդրակ Աճէմեանի 1000 տոլարի նուիրատուութիւնները եւ այլն:*

*Ուրախութեամբ կը յայտնենք, որ ակումբի գնման համաձայնագիրը ստորագրուած է արդէն: Ներքին նորոգութիւններով եւ սարքաւորումներով ան պիտի արժէ 100.00 ամերիկեան տոլար: Միութիւնը կը դիմէ ամէն անձնաւորութեան որ կը հաւատայ հայապահպանման կարեւորութեան, նոր սերունդներու դաստիարակութեան որպէսզի սատարեն այս աշխատանքին:*

*ՍԴՀԿի Ֆրանսայի Վարիչ Մարմնի առաջարկով, եւ անդամական խորհրդակցութեամբ որոշուեցաւ 2000 թուականին բացուող այս նոր ակումբը օծել 85 տարիներ առաջ, 1915ին կախաղան բարձրացած Հնչակեան Քսաններու անունով:*

**ԹՂԹԱԿԻՑ**

# ՄԵԾ ՊԱՀՔԻ ՔՆՆՈՒԹԻՒՆԸ

Մեծ Պահքը հոգեւոր մարզանքի շրջան մըն է, որ մեզ կը պատրաստէ լաւագոյն կերպով հասկնալու եւ տօնելու մեր Տէրոջ փառաւոր Յարութիւնը: Առանց այս նախապատրաստութեան եւ անձնաքննութեան ժամանակահատուածին՝ ի՞նչպէս հնարաւոր պիտի ըլլայ մասնակցիլ Ծաղկազարդի Կիրակիին ժողովրդական ուրախութեան, Աւագ Հինգշաբթիի մտերմիկ ընթրիքին, Աւագ Ուրբաթ Խաչելութեան տառապանքին եւ Յարութեան պանծալի յաղթանակին...:

Մեծ Պահքի քառասուն օրերը հիմնուած են անապատի մէջ մեր Տէրոջ ծոմապահութեան ժամանակին վրայ, որմէ անմիջապէս ետք ան սկսաւ քարոզել եւ հրաշքներ կատարել: Ուրեմն հոգեւոր զօրութիւն ձգելու ժամանակ մըն է Մեծ Պահքը, միջոց մըն է՝ թէ՛ հոգեւորապէս եւ թէ՛ մարմնաւորապէս գտնուելու եւ Տէրը դիմաւորելու:



Վերջին անգամ ե՞րբ հոգեւորապէս մենք մեզ քննեցինք: Բնականաբար սովորութիւն ունինք կանոնաւորաբար մեր առողջութիւնը քննութենէ անցընելու, մասնաւորաբար՝ մեր աչքերուն տեսողութիւնը, կամ ինքնաշարժ վարելու կարողութիւնը: Կարգ մը ինքնաշխատ սարքեր ամիսը անգամ մը փորձարկըւելու են, ստուգելու համար թէ չիտակ կը բանի՛ն: Նոյնպէս քննութենէ անցընելու ենք մենք մեզ՝ Պօղոս Առաքեալի հրահանգին համաձայն. *«Փորձեցէ՛ք ձեր անձերը թէ հաւատքի մէ՛ջ էք. քննեցէ՛ք ձեր անձերը»* – Բ. Կորն. ԺԳ. 5:

Հոգեւոր անձնաքննութեան ընթացքին, չորս կարեւոր կէտեր նկատի առնուելու են.–

1) *Պէտք է գիտակից հաւատք ունենանք:* Ան հաստատուելու է Աստուծոյ խօսքին վրայ, եւ անկէ սնանելով զօրանալու ենք տարիներու ընթացքին, ինչպէս մանուկ մը անպայման կը մեծնայ: Եկեղեցին՝ իր իսկական իմաստով՝ հաւատացեալներու ընկերակցութիւն մըն է, հոգեւոր մարմին մը՝ որուն գլուխը Քրիստոս է: Որպէսզի իր ճիշդ պաշտօնը կատարէ, չիտակ որոշումներ առնէ ու քաղաքականութիւն վարէ, եկեղեցին կը կարօտի հոգեւորապէս զարգացած անդամներու: Ուստի անոնցմէ իւրաքանչիւրը շարունակ կարդալու է Աստուածաշունչը:

2) *Անձի մը բարեպաշտական կեանքը լաւ նշան մըն է իր հոգեւոր վիճակին:* Արդեօք կ'աղօթե՞ս, երկնաւոր Հօրդ հետ խօսելով հանգստութիւն կը գտնե՞ս, թէ ոչ զուրկ ես աղօթքի կեանքէն: Անկեղծ աղօթքի միջոցաւ է որ Աստուծոյ Ս. Հոգին կը խօսի մեզի եւ կ'առաջնորդէ մեզ մեր ամէնօրեայ կեանքին մէջ: Աղօթքը անձնական կապ մը կը հաստատէ մեր եւ Աստուծոյ միջեւ: Պէտք է ըմբռնենք թէ Յիսուս աշխարհ չեկաւ կրօնք մը բերելու, այլ՝ յարաբերութիւն մը ստեղծելու երկնաւոր Հօր եւ իր արարածներուն միջեւ: Մի՛ աղօթեր միայն երբ դժուարութեան մէջ ես, կամ օգնութեան պէտք ունիս: Հապա ամէ՛ն օր հաղորդակցութեան մէջ մտիր քու Արարչիդ հետ, եւ շնորհակալ եղիր այն բոլոր բարիքներուն համար՝ զորս անընդհատ կը վայելես: Դուն ստեղծուած ես զինք փառաբանելու համար՝ քու շրթունքներովդ ու կեանքովդ:

3) *Ի՞նչպէս է ընտանեկան ու եկեղեցական կեանքդ:* Ասիկա հաւատքի փորձաքար մըն է: Մարդիկ քու քրիստոնէութեանդ իրազեկ կը դառնան՝ երբ տեսնեն թէ ի՛նչ դիրք կը բռնես անձամբ եւ ընտանեօք: Կիրակի առաւօտ՝ եկեղեցին զաւակներդ պահելու սպասարկութի՞ւն մը կը համարես, թէ անկեղծօրէն կը վայելես հաւատացեալներու հետ միասնաբար զԱստուած պաշտելու առիթը: Եկեղեցին եւ ընտանիքը իրարու պէտք ունին: Քրիստոնէական հասկացողութեամբ՝ ընտանեկան բջիջը փոքր եկեղեցի մըն է, անոր մէկ ճիւղը: Հայրը՝ իբր ընտանիքին գլուխը՝ կերպով մը անոր քահանան է. իրեն պաշտօն տրուած է զաւակները Աստուծոյ առաջնորդել՝ մօր օգնութեամբ: Այր եւ կին պարտաւոր են ընտանիքի անդամներուն քրիստոնէական դաստիարակութիւն հայթայթել: Զօրաւոր ընտանիքներ՝ զօրաւոր եւ առողջ եկեղեցիներ կ'արտադրեն, հետեւաբար՝ առոյգ ու կենսուրախ ընկերութիւն մը:

4) *Գործնական քրիստոնէական ծառայութիւն:* Մեր բարի գործերը միջոց մը չեն՝ երկինք երթալու համար: Ինչ որ Քրիստոս կատարեց մեր յաւիտենական փրկութեան համար՝ երբեք չի վճարուիր որեւէ կերպով: Յաւիտենական կեանքը՝ Աստուծմէ մեզի տրուած ձրի պարգեւ մըն է: Հետեւաբար ուրիշներու հանդէպ մեր բռնած դիրքը կ'արտայայտէ մեր երախտագիտութիւնը, եւ կը ցուցնէ թէ ո՛ր աստիճան կը սիրենք զԱստուած: Յակոբոս Առաքեալ իր Թուղթին մէջ կը գրէ. *«Ի՞նչ օգուտ է, եղբայրներս, եթէ մէկը ըսէ թէ հաւատք ունի, ու գործ չունենայ. միթէ հաւատքը կրնա՞յ փրկել զանիկա»*: Ուրիշ խօսքով՝ մեր հաւատքը պէտք է վկայենք մեր գործերուն միջոցաւ:

Ուրեմն ուշադրութի՛ւն դարձնենք Պօղոս Առաքեալի խրատին, եւ քննե՛նք մենք մեզ՝ վերոյիշեալ չորս կարեւոր կէտերը նկատի առնելով: Փորձարկե՛նք մեր անձերը, որպէսզի երբ Աստուծոյ հաշիւ տանք Դատաստանի օրը՝ չամչնանք, եւ ինք ալ ամօթ չզգայ՝ մեզ իր զաւակները կոչելով:

(*Ֆրեզնօ*) Գրեց՝ *ԵՂԻԱ ՔՀՆՅ. ՀԱՅՐԱՊԵՏԵԱՆ*

*«ԲԱՆԲԵՐ»* (*Իսի-Լէ-Մուլինօ*) Հայացուց՝ *ՄԱՅՏԱ ՇՆՈՐՀՕՔԵԱՆ*

# ՈՒՐ ՀԱՅ՝ ՀՈՆ ԿԱՅ

*Վերի պարրական յորդորը երբեք այնքան փխուր արդարանն չէ սըրեղծած, որքան վերջերս՝ Հայաստանէն կսարտող միտոհղիչ արգածափրին կապակցութեամբ: Կայ սակայն աւելի՛ միտոհղիչը:*

*Արդարեւ, ըստ Հայաստանի Հանրապետութեան առըմթեր գործող արտագաղթի եւ գաղթականներու վարչութեան պետին՝ Գագիկ Եզանեանի, 88-99 թուականներուն, Հայաստանէն գաղթած 800,000 քաղաքացիներու 60%-էն աւելին 20-44 տարեկան տղամարդիկ են: Նոյն ատեն, գացողները, կրթական մակարդակով զգալիօրէն կը գերազանցեն Հայաստանի միջին չափանիշերը:*

*Նոյն աղբիւրին տուեալներով, 80-ական թուականներուն, Հայաստանի մէջ կը գրանցուէր տարեկան 80.000 ծնունդ: Իսկ հիմա՝ միայն 36,000:*

*Այսօր, Ռուսաստան եւ Միացեալ Նահանգներ ապրող հայերու թիւը միասնաբար աւելի շատ է, քան Հայաստանի մէջ ապրողներուն թիւը:*

ԵԳԻՊՏՈՍ

# ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՅՈՒՇԱՀԱՆԴԷՍ ՊԱՏԳԱՄԱԽՕՍ՝ ԴՈԿՏ. ՓՐՈՖ. ՎԱՀԱԳՆ ՏԱՏՐԵԱՆ

*Այս տարի արդէն Ապրիլեան Եղեռնի 85-րդ տարելիցն է:*

*Ոչ միայն որեւէ տեսակի հատուցում կատարուած չէ բռնագաղթէն, ցեղասպանութեան եղեռնէն հրաշքով ազատածներուն կամ անոնց յետնորդներուն, այլ ցեղասպանութիւն գործադրողները ցարդ չեն ընդունիր եղեռն գործադրած ըլլալնին եւ կը ջանան ծածկել զայն:*

*Արդ, Յուշահանդէսի Կազմակերպչական աշխատանքներէն առաջ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնները բանակցեցան Հայկական Եղեռնի եւ ցեղասպանութեան անուանի, համաշխարհային հռչակ ունեցող, եւ ակադեմական Դոկտ.-Փրոֆ. Վահագն Տատրեանի հետ ի Միացեալ Նահանգներ, եւ հրաւիրեցին որ 85-ամեակի առիթով Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ բանախօսէ:*



*Դոկտ. - Փրոֆ. Վահագն Տատրեան*

*Փրոֆ. Վահագն Տատրեան հաճութիւն յայտած ըլլալով այն մասին թէ 28 Ապրիլին կը ժամնէ Գահիրէ, բանախօսելու համար նախ Աղեքսանդրիոյ մէջ Ապրիլ 29-ին ապա Գահիրէի մէջ 30-ին, այսու կը ներկայացնենք ամփոփ իր կենսագրականը եւ իր տեսակին մէջ ծանրակշիռ իր ուսումնասիրութիւններն ու հրատարակած պատկառելի հատորներուն անունները:*

*Կ'ակնկալուի որ թէ Գահիրէի եւ թէ Աղեքսանդրիոյ մէջ մեծ թիւով մեր ժողովուրդի զաւակները ներկայ գտնուին:*

***

*Իր բարձրագոյն ուսումը ստացած է Եւրոպա, Պերլինի Համալսարանին մէջ ուսանելով մաթեմաթիք (ուսողութիւն), Վիեննայի Համալսարանին մէջ պատմութիւն, եւ Զուիցերիոյ Ցիւրիխի Համալսարանին մէջ միջազգային օրէնսգիտութիւն: Անցնելով Ամերիկա, Շիքակոյի Համալսարանին մէջ աւարտած է իր դոկտորայի աշխատանքը ընկերաբանութեան ճիւղին մէջ:*

*Երկու տասնեակ տարիներ դասախօսած է Ամերիկեան շարք մը Համալսարաններու մէջ, բաց աստի, պաշտօնավարած է նաեւ իբրեւ աւագ գիտաշխատող, Հարուըրտ Համալսարանի Միջին Արեւելեան Ուսումնագիտական Կեդրոնի եւ Մասաչուսէց Ինսթիթիւթ Օֆ Թէքնօլօճիի Միջազգային Ուսումնասիրութեան Կեդրոններուն մէջ: Ասոնցմէ դուրս, իբրեւ հիւր փրոֆէսոր՝ դասախօսած է Եւրոպայի եւ Հարաւային Ամերիկայի կարգ մը Համալսարաններու մէջ, ինչպէս Պերլինի, Ցիւրիխի, Միւնիխի, Իտալիոյ՝ Բարմա եւ Թօրինօ, եւ Ուրուկուայի՝ Ուրսալա Համալսարաններուն մէջ, ինչպէս նաեւ Ամերիկեան Տիւք Համալսարանին մէջ:*

*1991 Ապրիլ 24-ի յուշատօնին առթիւ հրաւիրուած էր դասախօսելու գերմանական պետական հինգ համալսարաններու մէջ՝ Ֆրանքֆուրթ, Պոխում, Միւնսթէր, Քէօլն եւ Էսսէն. իսկ 1992-ին Ապրիլ 24-ի յուշատօնին առթիւ, Հոլանտայի մէջ տուած է երկու դասախօսութիւններ, մին Ամսթէրտամի եւ միւսը Կրոնիկէնի Համալսարաններուն, ինչպէս նաեւ Գերմանիոյ Հանովըր Համալսարանին մէջ: Այս բոլոր դասախօսութիւնները Փրոֆ. Տատրեան ըրած է գերմաներէն լեզուով, բացի Հոլանտայէն ուր դասախօսած է անգլերէն լեզուով:*

*Ան կարող է դասախօսել նաեւ երեք յաւելեալ լեզուներով. այսպէս 1990 եւ 1995 Ապրիլ 24-ին ցեղասպանութեան 75 եւ 80 ամեակներուն առթիւ, Հայաստանի Գիտութիւններու Ակադեմիային մէջ դասախօսած է հայերէն լեզուով, ինչպէս տարիներ առաջ ըրած էր Էջմիածին, Վեհափառին հրաւէրին ընդառաջելով: Իսկ Զուիցերիա բնակող եւ Տիարպէքիր, Սասուն եւ Զրընախի պէս գաւառներէ գաղթած Թրքախօս Հայ երիտասարդներու ջերմ փափաքին ընդառաջելով, հոն 1997 Դեկտեմբերին եւ 1999 Նոյեմբերին տուած է յաւելեալ երկու դասախօսութիւններ, այս անգամ Թրքերէն լեզուով հայկական ցեղասպանութեան շուրջ: Իսկ 1996-ին, 1998-ին եւ 1999-ին ֆրանսերէն լեզուով դասախօսութիւններու շարք մը տուած Ժնեւի եւ Պրիւքսէլի համալսարաններուն մէջ, ինչպէս նաեւ Փարիզի՝ ԵՈՒՆԵՍՔՕ-ի կեդրոնին մէջ:*

*Փրոֆ. Տատրեան իր ակադեմական կեանքը գրեթէ ամբողջութեամբ նուիրած է հայկական ցեղասպանութեան պատմագիտական ուսումնասիրութեան յոյժ կենսական գործին: Այս առթիւ հրատարակած է 80-է աւելի երկասիրութիւններ, որոնց մէկ մասը մենագրութիւններ, միւս մասն ալ ակադեմական յօդուածներ են: Եէյլ համալսարանի իրաւագիտական կաճառին կողմէ հրատարակուած իր ընդարձակ մէկ աշխատասիրութիւնը, որ հայկական ցեղասպանութեան իրաւաբանական մէկ վերլուծումն է, լոյս տեսաւ նաեւ Իսթանպուլի մէջ Թուրքերէն եւ Փարիզի մէջ ֆրանսերէն լեզուներով:*

*Իր այս բեղուն ջանադրութիւնը ցարդ հովանաւորուած է Ամերիկեան երկու գիտահետազօտական ականաւոր հաստատութիւններու կողմէ, արդարեւ, աշխարհահռչակ Նաշիոնալ Սայընս Ֆաունտէյշընը երկու իրերայաջորդ մրցանակային յատկացումներով նիւթապէս սատար հանդիսած է իրեն եւ արդիւնքը եղած է իր վերոյիշեալ իրաւաբանական յայնածաւալ մենագրութիւնը. միւս հաստատութիւնն է Հէրրի Ֆրանք Կուկկրնհայմ Հիմնարկը, որ նոյնպէս երկու իրերայաջորդ մրցանակային յատկացումներով սատար հանդիսացած է իր ցեղասպանական պրպտումներուն:*

*Քսան տարիէ ի վեր Նիւ Եորքի Պետական Համալսարանին մէջ դասախօսելէ ետք, Փրոֆ. Տատրեան ներկայիս կը զբաղի միայն ու միայն պրպտումներով եւ հայկական ցեղասպանութեան իր նիւթը վերլուծող համապարփակ ձեռագրի պատրաստութեամբ. ասիկա ընդգրկուած է Կուկկրնհայմ Ֆաունտէյշընի հովանաւորած ցեղասպանական պրպտումներու մէկ ծրագրին*

4

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

# ԴՈԿՏ. ՏԻԳՐԱՆ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ «ՏԱՐՈՒԱՆ ՄԱՐԴԸ» ԳՆԱՀԱՏԱԳՐԻՆ ԱՐԺԱՆՑԱՒ

*Դր. Տիգրան Գույումճեան, որ Ֆրեզնոյի Գալիֆորնիա Նահանգային Համալսարանի «Հայկ եւ Իզապէլ Պէրպէրեան» Հայկական Ուսմանց Ամպիոնի պատասխանատուն է, Հայ Դատի Յանձնախումբին կողմէ գնահատուեցաւ «Տարուան Մարդը» տիտղոսով: Գնահատանքի արարողութիւնը կատարուեցաւ Կիրակի, Մարտ 5ին, Հայ Դատի Յանձնախումբի տարեկան ճաշկերոյթին՝ ընթացքին:*




*Ձախէն՝ Դր. Ռիչըրտ Դարմանեան Ֆրեզնոյի Հայ Դատի Յանձնախումբին կողմէ, Դր. Գույումճեանին կը փոխանց «Տարուան Մարդը» գնահատագիրը:*

*Ան գնահատանքի արժանացաւ Ֆրեզնոյի Համալսարանէն ներս Հայկական Ուսմանց Ամպիոնի տնօրէնի իր պաշտօնին, ինչպէս նաեւ իր շարունակական ուսումնասիրութեանց համար, որ կը կատարէ Հայ ժողովուրդի պատմութեան, լեզուին, մշակոյթին ու կրօնքին վերաբերեալ:*

*Ճաշկերոյթին ներկայ էին շուրջ 300 հոգի: Օրուան հանդիսավարն էր Պերճ Աբգարեան: Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ հովիւ Վահան Քհնյ. Կոստանեան օրհնեց սեղանները եւ Հայկօ Օհաննէսեան երգեց քայլերգները: Ապա «Թէհլիրեան» Կոմիտէի ներկայացուցիչ Մհեր Շրխըրտըմեան բարի գալուստի խօսք ուղղեց ներկաներուն:*

*Ֆրեզնոյի Նահանգային Համալսարանի Ուսանողական Միութեան նախագահ եւ Հայկական Ուսմանց Ամպիոնի ուսանողներէն՝ Առաքել Արիսեան խօսեցաւ փոխադարձ այն յարգանքին մասին, որ գոյութիւն ունի Դր. Գույումճեանի եւ իր աշակերտներուն միջեւ: Գործադրուեցաւ նաեւ գեղարուեստական յայտագիր:*

*Գոնկրէսմէն Ճորճ Ռատանովիչի օգնականը՝ Սթիվ Սամուէլեան ներկայացուց ձեռնարկին ներկայ գտնուող պաշտօնական հիւրերը, որոնց կարգին էին Ֆրեզնոյի քաղաքապետ Ճիմ Փաթըրսըն, որ Դր. Գույումճեանին յանձնեց հռչակագիր մը, որով Մարտ 5ը Ֆրեզնոյի մէջ կը յայտարարուէր «Տիգրան Գույումճեանի Օր»: Համալսարանի տնօրէն Դր. Ռադիկ Մարտիրոսեան Դր. Գույումճեանին յանձնեց ոսկեայ շքանշան մը համալսարանին կողմէ եւ անոր գովքը հիւսեց իբրեւ հայոց պատմութեան եւ հայ մշակոյթին ծանօթ ակադեմական: Դր. Գույումճեանին գնահատագիր յանձնեց նաեւ Նահանգային Ներկայացուցիչներու Տան անդամ Սարա Ռէյրզ:*

*Ֆրեզնոյի Հայ Դատի Յանձնախումբի անդամ Ռիչըրտ Դարմանեան Դր. Գույումճեանին փոխանցեց «Տարուան Մարդը» գնահատագիրը: Այս առթիւ մեծ թիւով շնորհաւորագիրներ յղուած էին գոլէճներէ, բարեկամներէ եւ ազգականներէ:*

*Մեծի Տանն Կիլիկիոյ Արամ Ա. Կաթողիկոս նամակով մը գնահատանքի արտայայտութիւնները փոխանցած էր եւ Պոլսոյ Պատրիարք Մեսրոպ Արք. Մութաֆեան եւս շնորհաւորական իր խօսքը փոխանցած էր:*

*Երուսաղէմի Պատրիարք Թորգոմ Մանուկեան այս առիթով կը գրէր.«Մինչ կը նուազին Հայկական Ցեղասպանութիւնը վկայող սերունդի ներկայացուցիչները, բայց հայութիւնը այժմ, աւելի քան երբեք, իր յոյսերը կը կապէ Տիգրան Գույումճեանի նման աշխոյժ ակադեմականներու, որոնք կը փորձեն շարժել աշխարհի խիղճը: Իսկ Եու.Սի.Էլ.Էյ.ի Արդի Հայոց Պատմութեան Ամպիոնի պատասխանատու՝ Փրոֆ. Ռիչըրտ Յովհաննէսեան ըսաւ, թէ յաճախ չենք գիտակցիր, թէ կրթական, ակադեմական եւ օգնութեան ծրագիրները, Հայ Դատի եւ Հայկական Հարցի կարեւոր բաղադրիչներն են:*

*Ապա Ֆրեզնոյի Գալիֆորնիոյ Նահանգային Համալսարանէն Հարըլտ Հաք ներկայացուց Դր. Գույումճեանին:*

*Հուսկ ուրեմն խօսք առաւ Դր. Տիգրան Գույումճեան եւ շնորհակալական խօսքերով յայտնեց իր երախտագիտութիւնը, որ զինք արժանի համարած էին այս տիտղոսին:*

ԹՂԹԱԿԻՑ

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ 85-ՐԴ ՏԱՐԵԼԻՑ
## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՀԱՆԴԷՍ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐՈՒՆ**
Նախաձեռնութեամբ
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**
Կազմակերպութեամբ
**ԳԱՀԻՐԷԻ ԲՈԼՈՐ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ**

**ՕՐՈՒԱՆ ՊԱՏԳԱՄԱԽՕՍ**
**ԴՈԿՏ. ՓՐՈՖ. ՎԱՀԱԳՆ ՏԱՏՐԵԱՆ**
Յատկապէս հրաւիրուած այս առթիւ
Ամերիկայի Միացեալ Նահանգներէն
Կիրակի, 30 Ապրիլ 2000, երեկոյեան ժամը 8:30-ին
Հելիոպոլսոյ «Պըլըքտանեան Հանդիսասրահ»-ին մէջ

**Գեղարուեստական Պատշաճ Յայտագիր**
Որուն ընթացքին պիտի ներկայացուի Հայրենի բանաստեղծ
**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՇԻՐԱԶԻ**
**«ՀԱՅՈՑ ՏԱՆԹԷԱԿԱՆԸ»**
(Գրական - Երաժշտական Համադրում)
**ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐ**
**ԴՈՑԵՆՏ ԴԱՒԻԹ ՁԱԼԵԱՆ**
**ԴԱՇՆԱՄՈՒՐԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԻՒՆ**
**ԻՐԻՆԱ ՁԱԼԵԱՆ**
*Նահատակներուն յիշատակը յարգելու այս յուշահանդէսին ցանկալի է որ 8 տարեկանէն վար երախաները սրահ չբերուին:*

**ԵՂԵՌՆԻ ՅՈՒՇԱՀԱՆԴԷՍԻ**
**ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ - ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ՁԵՌՆԱՐԿ

**Ապրիլ 1915 - Ապրիլ 2000**
**ԿԱՐՄԻՐ ՋԱՐԴԷՆ ՍՊԻՏԱԿ ՋԱՐԴ**
Երկուշաբթի, 24 Ապրիլ 2000, առաւօտեան ժամը 12-ին
**ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**
Հովանաւորութեամբ՝
**ԳԵՐՇ. Տ. ՁԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Թեմիս Բարեխնամ Առաջնորդ
*Սիրալիր հրաւէր բոլորին*

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ**
Կիրակի 25 Յունիս 2000
**ՏԱՐԵԿԱՆ ՁԵՌՆԱՐԿ**
*Կը խնդրուի նկատի ունենալ*

### ՀԵՌԱԽՕՍԻ ՆՈՐ ԹԻՒ

ՊՊ. Պետրոս եւ Աւետիս Մովսէսեաններու բնակարանի նոր թիւն է՝ 7940949:

### ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՅՈՒՇԱՀԱՆԴԷՍ ՊԱՏԳԱՄԱԽՕՍ՝ ԴՈԿՏ. ՓՐՈՖ. ՎԱՀԱԳՆ ՏԱՏՐԵԱՆ

3

*մէջ, որուն տնօրէնն էր Փրոֆ. Տատրեան: Ներկայիս «Զօրեան Հիմնարկ»ի ցեղասպանութեան պրպտումներու բաժնի տնօրէնն է:*

*Իր գլուխ գործոցը համարուող Հիսթըրի օֆ տը Արմինյըն Ճէնօսայտ հատորը Անգլիա՝ Օքսֆորտի մէջ հրատարակուելէ ետք, Փարիզի մէջ Ստոք մեծ հրատարակչականին կողմէ ֆրանսերէնով լոյս ընծայուեցաւ 1996-ին: Իսկ նոյն հատորին ռուսերէն թարգմանութիւնը չուտով լոյս կը տեսնէ Մոսկուայի մէջ: Իտալերէնի թարգմանութիւնն ալ սկսուած է, իսկ արաբերէնը լոյս պիտի տեսնէ այս տարի 2000 թուականին Դամասկոսի մէջ:*

*1998 տարին իր ամենէն բեղմնաւոր տարին եղաւ. ինը ակադեմական նոր յօդուածներէն զատ, հրատարակուեցաւ իր Ուարրանթ ֆօր Ճէնօսայտ. թհը գի էլէմընթս օֆ թհը Թուրքօ Արմէնիան քոնֆլիքդ հատորը: Իսկ Եէյլ ճուրնալ օֆ ինթէրնաշընըլ լօ իրաւաբանական հանդէսին մէջ հրատարակած իր մէկ նոր երկասիրութիւնը, ակադեմական շրջանակներուն մէջ մեծ հետաքրքրութիւն ստեղծած ըլլալով Բ. տպագրութեան արժանացած էր: Այս գործին մակդիրն է «Թհը հիսթորիքալ էնտ լիկալ ինթէրգոննէքշընս պիթուին թհը Արմինիըն Ճէնօսայտ էնտ թհը ճուիշ հօլօքօսթ, ֆրոմ իմբիւնիթի թու րէթրիպիւթիվ ճասթիս»: Սա հայկական եւ հրէական ցեղասպանութիւններու բաղդատական զուգակշիռն է ըստ միջազգային օրէնքի: 1999-ին լոյս տեսաւ իր վերջին հատորը Թհը քի էլէմընդս ին թհը Թրքիշ տինայլ օֆ թհը Արմինիըն Ճէնօսայտ, 92 էջնոց թրքական ուրացման դէմ փաստարկումներու վրայ հիմնուած հակաճառութիւն մը:*

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց շատ սիրելի եղբօր եւ մօրեղբօր Ողբ. Արամ Աբիկեանի ցաւալի մահուան եւ քառասունքին առթիւ Տիկին Սաթենիկ Վարժապետեան եւ դուստրը Թագուհի, Տէր եւ Տիկին Պետրոս Վարժապետեան եւ Տէր եւ Տիկին Վարուժ Էհրամճեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Պօղոսեան Ազգ. Վարժ.ին | 50 |
| Ս. Պօղոս եւ Պետրոս Եկեղեցւոյ | 50 |
| Տիգրան Երկաթին | 50 |
| Հ.Մ.Ը.Մ. Նուպարին (Աղեքս.) | 50 |
| Յառաջդիմասէրին | 50 |
| Գալուստեան Ազգ. Վարժ.ի Տիկնանց Խնամ. | 50 |
| Հ.Մ.Ը.Մ. Նուպարին (Գահիրէ) | 50 |
| «Յուսաբեր»ին | 50 |
| «Արեւ»ին | 50 |
| «Ջահակիր»ին | 50 |

(Ստանալ «Ջահակիր»էն )

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺ.Ի ՏԻԿՆԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆ

Իրենց շատ սիրելի ազգականին Ողբ. Արամ Աբիկեանի ցաւալի մահուան եւ քառասունքին առթիւ (Թորոնթոյէն) կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկին Յակոբ եւ Սոնա Հապիպեան | 240 |
| Տէր եւ Տիկին Գեղամ եւ Վիվիկ Գոգորեան | 240 |
| Տիկին Հերմինէ Չիքճեան եւ դուստրը | 240 |
| Տիար Կարպիս Թորիկեան | 120 |
| Տէր եւ Տիկին Վարդան եւ Նայիրի Յակոբեան | 120 |
| Տէր եւ Տիկին Ռաֆֆի եւ Սիւզի Տէր Պօղոսեան | 120 |
| Ոմն. (Ուխտի մը համար) | 1000 |

## Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍ.)

Ողբ. Արամ Աբիկեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տոքթ. եւ Տիկին Արթօ Արթինեան | 30 |
| Տիկին Սիրվարդ Արթինեան | 30 |
| Տոքթ. եւ Տիկին Իւսրի Կուտա | 30 |

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**
ԿԻՐԱԿԻ 21 ՄԱՅԻՍ 2000
Կ.Ե. ԺԱՄԸ 7-ԻՆ

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

### Վանօ Սիրադեղեանը Ջերբակալելու Համար ...

1

Այս յայտարարութիւնը վրդովում ստեղծած է Սիրադեղեանի ընտանեկան պարագաներուն մօտ: Վանոյին քոյրերէն մէկը, «Առաւօտ» թերթին հեռաձայնելով, ըսած է. «Ես ճանաչելով իմ եղբօրը, գիտեմ, որ ան կ'ուզէր ապրիլ այս պիղծ, երախտամոռ մարդկանց մէջ, բայց իր հայրենիքէն ներս: Ան պիտի չուզէր թաքնուիլ: Եթէ ուզէր, վաղուց գացած կ'ըլլար: Ինչպէս կրնայ ըլլալ, որ մարդ ուզէ թողնել իր տունը, հայրենիքը եւ երթալ»:

### ԱՄԵՐԻԿԱՑԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԼՈՊԻՆ ՇԱՐԺՄԱՆ Կ'ԱՆՑՆԻ ՈՐՊԷՍԶԻ ԱՄԵՐԻԿԱ ՀՐԱԺԱՐԻ ԹՈՒՐՔԻՈՅ ՈՒՂՂԱԹԻՌ ՎԱՃԱՌԵԼԷ

1

Կոմիտէին վերոյիշեալ առաջարկը:

Անատոլու գործակալութիւնը կը յիշեցնէ թէ 24 Ապրիլի նախօրեակին, Ամերիկայի հայկական լոպին դարձեալ հետեւողական քարոզչութիւն կը կատարէ Թուրքիոյ դէմ: Վերջերս հայկական լոպիի ճիգերով հայկական ցեղասպանութեան ճանաչման մասին որոշում մը քուէարկուած էր Վիրճինիա նահանգի շրջանային քոնկրէսի կողմէ: Հայկական լոպին ուրիշ նահանգներու մէջ ալ թափ տուած է նմանօրինակ աշխատանքի մը:

## ՏՕՆ Է ՀՐԱՇԱՓԱՌ ՅԱՐՈՒԹԵԱՆ

Մեծ Պահոց քառասնօրեայ շրջանին հոգեւոր պատրաստութենէն ետք, մեր գաղութի բարեպաշտ ժողովուրդը Կիրակի 23 Ապրիլ 2000-ին, պիտի տօնախմբէ

**ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՀՐԱՇԱՓԱՌ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԸ**

Զատկական Ս. պատարագը տեղի պիտի ունենայ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ, առաւօտեան ժամերգութենէն ետք:

Այս առիթով Ս. Պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ

**ԳԵՐՇ. Տ. ՁԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**
**ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ**

Ս. Պատարագը պիտի երգուի քառաձայն Եկեղեցւոյս Երգչախումբին կողմէ:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.00-ին
Ս. Պատարագ - - 10.00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## 85-ՐԴ ԱՄԵԱԿ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՂԵՌՆԻ

Ապրիլեան Եղեռնի 85-րդ տարելիցին առիթով, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ Կիրակի 30 Ապրիլ 2000-ին, տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ ապա հոգեհանգիստ, ոգեկոչելու համար խնկելի յիշատակը մեր բիւրաւոր նահատակներուն:

Ս. Պատարագը պիտի մատուցանէ եւ քարոզէ

**ԳԵՐՇ. Տ. ՁԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**
**ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ**

Յաւարտ Ս. Պատարագի տեղի պիտի ունենայ մասնաւոր հոգեհանգստեան արարողութիւն եւ ծաղկեպսակներ պիտի զետեղուին մեր բիւրաւոր նահատակներուն ի յուշ կառուցուած մատուռին մէջ: Ապա թափօրով պիտի յառաջանանք Ս. Եկեղեցւոյ պարտէզին մէջ կառուցուած եւ հայրենիքէն բերուած Խաչքարին առջեւ, ուր ծաղկեպսակի զետեղմամբ եւ Ս. Աւետարանի ընթերցմամբ ՀՈԳԻՈՑ պիտի արտասանուի:

Երգեցողութիւնները պիտի կատարուին Ս. Եկեղեցւոյ Երգչախումբին կողմէ, բազմաձայն Պատարագի ղեկավար Մօ. Դոցենտ Դաւիթ Ձալեան:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին
Ս. Պատարագ - - 10.00-ին
Քարոզ - - 11.00-ին
Հոգեհանգիստ - - 11.30-ին

Հայրենիքի եւ հաւատքի համար մարտիրոսացեալներն ու նահատակները յարգել, անոնց արժանի յաջորդները ըլլալ կը նշանակէ:

Ժողովուրդի փոխադրութեան համար, կարգադրուած է օթօպիւսի մասնաւոր եւ անվճար սպասարկութիւն, Հելիոպոլիսէն Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցի:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Մարի Աբիկեան, Տէր եւ Տիկ. Յակոբ Աբիկեան եւ դուստրը Մարիան, Տէր եւ Տիկ. Գրիգոր Աբիկեան եւ զաւակները Արամ եւ Ռիթա, Տիար Արթին Աբիկեան, այրի Տիկին Սաթենիկ Վարժապետեան եւ դուստրը Օր. Թագուհի ինչպէս նաեւ Վարժապետեան, Էհրամճեան (Մոնթրէալ), Գապագեան, Գրիգորեան (ԱՄՆ), Հաճիգչեան, Ջիլինկիրեան (Թորոնթօ), Սագլարեան, Աբէլեան (Լոս Անճելոս), Տէիրմէնճեան (Հալէպ) Ջիթճեան (Գանատա) եւ Սիմոնեան ընտանիքները կը ծանուցանեն թէ Երեքշաբթի 18 Ապրիլ 2000ի առաւօտեան ժամը 11-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր, մեծհօր, եղբօր, մօրեղբօր եւ ազգականին Ողբացեալ՝

**ԱՐԱՄ ԱԲԻԿԵԱՆԻ**

մահուան քառասունքին առթիւ:

ԾԱՆՕԹ.- Ցաւակցութիւններ կ'ընդունուին նաեւ նոյն օրը, երեկոյեան ժամը 7էն-9-ը, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿԵԴՐՈՆԻ ՁԵՌՆԱՐԿ**
ՀԻՆԳՇ., 4 ՄԱՅԻՍ 2000
**ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ ԵՒ ՉԽԱՁԱԶԵՒԵԼ**

***ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ***

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**
Կիրակի 28 Մայիս 2000
Կը խնդրուի նկատի ունենալ ու չխաչաձեւել

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1424 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ԱՊՐԻԼ 2000 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. | عدد رقم ١٤٢٤ — الخميس ٢٧ ابريل ٢٠٠٠


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՀԱՅ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԻՏՔԸ ՊԱՐՏԻ ՆԱՒԱՐԿԵԼ ՀԱՅ ԴԱՏԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՋՈՒՐԵՐՈՒՆ ՄԷՋ

*85 տարիէ ի վեր համայն հայ ժողովուրդը կ'ոգեկոչէ յիշատակը աւելի քան մէկ ու կէս միլիոն նահատակներու, որոնք կոտորուեցան Օսմանեան Թուրքերուն կողմէ իրագործուած ցեղասպանութեամբ եւ բնաջնջման ծրագրով:*

*1915-ին արմատախլուեցաւ արեւմտահայութիւնը իր 3000-ամեայ հայրենի հողէն: Սակայն ապրելու եւ գոյատեւելու վճռակամութեամբ, հայ ժողովուրդը յաջողեցաւ, յետ երկարատեւ տանջանքներու յարութիւն առնել՝ կերտել հայրենիք եւ պետականութիւն, գէթ իր պապենական հողերու մէկ փոքր հողաշերտին վրայ: Եւ կարմանալի կուգադիպութեամբ մը 2000 թուականի Զատիկը, այսինքն Ս. Յարութեան տօնը կը նշուի այն օրերուն, երբ կ'ոգեկոչուի հայ ժողովուրդի ցեղասպանութեան 85-ամեակը: Չարչարեալ, խաչեալ եւ երրորդ օրը յարուցեալ Քրիստոսի նման, մեր ժողովուրդն ալ տարագրուեցաւ, խաչուեցաւ եւ այսօր Եղեռնէն 85 տարիներ ետք, յարուցեալ է:*




*Ապրիլեան նահատակները յարգել, կը նշանակէ բաժնեկից դառնալ անոնց խաչանման չարչարանքներուն: Անոնք խաչուեցան եւ մկրտուեցան Քրիստոսի արիւնով, ու այդ մկրտարանէն մենք ծնունդ առինք, եւ տակաւին՝ «Կանք, պիտի լինենք ու դեռ շատանանք»...:*

*Թէեւ սպիտակ ջարդը վճռակամ կը շարունակէ իր տխուր դերը, քիչ մը ամէն տեղ առանց մեզի ցոյց տալու կախաղան կամ եաթաղան: Իսկ ամենէն ահաւորը, Հայաստանի ժողովուրդին սանձարձակ արտագաղթն է դէպի օտարութիւն: Այս ցաւալի վիճակին ի տես, ո՞ւր պիտի հասնինք արդեօք: Այլասերում, ձուլում, օտարամոլութիւն, թուրքին ուրախութիւն կը պատճառեն բնականաբար:*

*Ահաւասիկ եկաւ դարերով երազուած անկախութիւնը, սակայն կարծես թէ հետը չի բերաւ գոյատեւելու կամքը: Ինչպէ՞ս կարելի է առաջքը առնել այս հոսքին: Ինչպէ՞ս կարելի է վերականգնել հայրենի ժողովուրդին հոգեկան անկումային իրավիճակը, յուսահատական հոգեվիճակը. հարցեր՝ որոնք կը կարօտին սպառիչ աշխատանքի ներկայ հայրենի կառավարութեան կողմէ: Սպիտակ ջարդին բուժման հիմնական միջոցը, դէպի տուն-դարձն է. եւ ոչ թէ հակառակը: Այսօր պէտք է Հայաստանը նկատուի որպէս Սփիւռքի գոյատեւման հզօրագոյն կռուանը:*

*Մեր նահատակները հայրենիքը երազերով գացին դէպի մահ: Վերջապէս ունեցանք այդ հայրենիքը՝ ազատ ու անկախ: Ուրեմն կը մնայ այդ շահուած անկախութիւնը պահել ու ամրապնդել: Այդ կը պահանջեն մեր նահատակները: Վա՜յ անոր, որ կ'արհամարհէ նահատակներուն պահանջքը: Նահատակները յարութիւն կ'առնեն երբ ամրապնդուի անկախութիւնը: Հողէն հեռու, նահատակները կը մահանան երկրորդ անգամ: Ուրեմն յարութիւն բերենք մեր նահատակներուն...:*

*Նոյնն է պարագան նաեւ Արցախի մէջ: Եթէ ներկայիս Արցախը ապատագրուած է ազերիական ճանկերէն, կայն պահելն ու յաւիտենականացնելը շատ աւելի էական հարց մըն է: Մեր մարտիրոսներուն յարութիւն բերած պիտի ըլլանք, եթէ Արցախը ազատագրուի եւ Ատրպէյճանի կառավարութիւնը ընդունի որպէս հայկական հող: Յարդ ցեղասպանին արիւնակից Ատրպէյճանը, այժմու Թուրքիոյ իշխանութեանց նեցուկով եւ դրդումով, վտանգ մըն է հայ ժողովուրդին:*

*Դժբախտաբար Մեծ Եղեռնէն 85 տարիներ ետք, ցարդ Հայ Դատը կը մնայ անլոյծ: Ցեղասպանը կը շարունակէ ուրանալ իր յանձագործութիւնը: Միջազգային հանրութիւնն ալ տակաւին դատապարտած չէ ջարդարարին: Թէեւ ողջունելի են ցեղասպանութեան ճանաչման քայլերը շարք մը պետութիւններու կողմէ:*

*Հետեւաբար, անհրաժեշտ է, որ հայ քաղաքական միտքը ըՍփիւռքի եւ Հայաստանի տարածքին, որքան ալ խոցելի ըլլայ ան, որքան ալ դեգերի տնտեսական եւ քաղաքական դժուարին պայմաններու տակ, պարտաւոր է նաւարկել հոսանքն ի վեր, միջազգային ջուրերուն մէջ, հետապնդելու անժամանցելի արդար իրաւունքները:*

*Ճիշդ է որ Հայ Դատի հետապնդման գծով կանայան աշխատանքներ կը տարուին տարբեր մարմիններու կամ անհատներու կողմէ, սակայն աւելի ճիշդ պիտի ըլլար, եթէ ստեղծուէր Հայ Դատի Միացեալ Կեդրոնական Մարմին մը, առաւել արդիւնաւէտ դարձընելու տարուած բազմաթիւ աշխատանքները: Թող տարանջատուած Սփիւռքն ու հայրենիքը միասնաբար պահանջեն՝ նախ ցեղասպանութեան ճանաչումը, ապա բռնագրաւեալ հողերու վերադարձը, անոնց իրաւական տիրոջ՝ Հայ ժողովուրդին:*

*Խոնարհինք մեր բիւրաւոր նահատակներու խնկելի յիշատակին առջեւ, եւ զօտեպնդուինք ու տեսնենք, թէ ի՞նչ իմաստ եւ արժէք ունի այսօր մեզի համար Ապրիլ 24-ը...:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՌՈԲԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՈՒՂԵՐՁԸ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԶՈՀԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻ ՕՐՈՒԱՅ ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ

*Սիրելի Հայրենակիցներ,*

*85 տարի առաջ՝ Ապրիլի 24-ին, Հայ մտաւորականութեան զանգուածային ձերբակալութիւններով Օսմանեան Թուրքիայում սկսուեց Հայերի ցեղասպանութիւնը: Այսօր, գլուխ խոնարհելով Հայոց Մեծ եղեռնի միլիոնաւոր զոհերի յիշատակի առջեւ, մենք ստիպուած ենք արձանագրել, որ 85 տարի անց միջազգային Հանրութիւնը դեռեւս չի տուել դարասկզբի ողբերգական իրադարձութիւնների համարժէք գնահատականը: Աւելին, մարդկութեան դէմ նման ոճրագործութիւն կատարելու եւ անպատիժ մնալու նախադէպը դուռ է բացել համանման նոր յանցագործութիւնների: Այս համատեքստում օրինաչափ է, որ, ցեղասպանութեան արդիւնքում՝ իր Հայրենի բնօրրանից զրկուած սփիւռքահայութեան եւ իր անկախ պետականութիւնը վերագտած Հայրենաբնակ մեր ժողովրդի համար, Ապրիլի 24-ը պիտի վերածէր ցեղասպանութեան դատապարտման եւ պատմական արդարութեան վերականգնման պահանջի խորհրդանշական օրուայ: Հայոց ցեղասպանութեան միջազգային ճանաչման խնդիրն այսօր մեր արտաքին քաղաքականութեան օրակարգում է:*

*Վերջին տարուայ ընթացքում բազմաթիւ երկրներ, ինչպէս նաեւ՝ քաղաքների ու նահանգների խորհրդարաններ, ընդունել են Հայերի ցեղասպանութիւնը դատապարտող բանաձեւեր ու որոշումներ: Այդ ուղղութեամբ մենք շարունակելու ենք աշխատել այն համոզմունքով, որ մարդկութեան դէմ կատարուած ոճիրը միայն Հայ ժողովրդի խնդիրը չէ, այլեւ ունի միջազգային ե՛ւ բարոյական, ե՛ւ քաղաքական նշանակութիւն:*

*Հայաստանի Հանրապետութիւնն այսօր միջազգային ընտանիքի լիիրաւ մաս է կազմում եւ դառը փորձառութեամբ իր ներդրումն է բերում ցեղասպանութեան դատապարտմանն ու կանխմանն ուղղուած մարդկութեան ջանքերին: Մենք նաեւ խորապէս գիտակցում ենք, որ մեր տարածաշրջանում տեւական կայունութեան ապահովումն ու տարածաշրջանային համագործակցութեան զարգացումը մեծապէս պայմանաւորուած են Հայ-Թուրքական յարաբերութիւնների նոր վիճակի անցմամբ: Պատմական ճշմարտութեան ընդունումը մեր յարաբերութիւններում պէտք է խթանի վստահութեան եւ փոխըմբռնման մթնոլորտի ձեւաւորումը: Այսօր, ոգեկոչելով մեր անմեղ նահատակների յիշատակը, մեր ժողովրդի բոլոր հատուածները միասնաբար վերահաստատում են յարատեւելու եւ մարդկութեան մեծ ընտանիքում ազատ ու երջանիկ Հայրենիք կերտելու իրենց հաւատն ու վճռականութիւնը:*

## ԵՂԵՌՆԻ 85-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԻԹՈՎ ՑՈՅՑԵՐ ՀԱՅԱՇԱՏ ԿԵԴՐՈՆՆԵՐՈՒ ՄԷՋ

### ԹՐՔԱԿԱՆ ԴՐՕՇԱԿՆԵՐ ՀՐԿԻԶՈՒԵՑԱՆ ԱԹԷՆՔԻ ԵՒ ՍԵԼԱՆԻԿԻ ՄԷՋ

*Աշխարհի զանազան հայաշատ կեդրոններում ինչպէս ամէն տարի, այս տարի եւս հայկական ցեղասպանութեան զոհերը ոգեկոչող ցոյցեր կատարուեցան: Տրուած ըլլալով, որ այս տարի 1915-ի Եղեռնին 85րդ տարեդարձն էր, ցոյցերը վերջին տարիներէն աւելի ծաւալ ստացան:*

*Աթէնքի եւ Սելանիկի մէջ, Հայ ցուցարարներ հրկիզեցին Թրքական դրօշակը: Թուրք իշխանութիւնները բողոք ներկայացուցին յոյն կառավարութեան: Աթէնքի ցոյցերը տեղի ունեցան Թրքական դեսպանատան առջեւ: Ոստիկանները խիստ միջոցառումներու դիմած էին: Թրքական դրօշակը կրակի տրուեցաւ եւ հակաթուրք բացականչութիւններ եղան: Սելանիկի մէջ, կուսակալութեան կողմէ կազմակերպուած կրօնական արարողութենէն ետք, բազմահարիւր հայ ցուցարարներ քայլարշաւի դիմեցին եւ, Թրքական հիւպատոսարանին առջեւ, Թրքական դրօշակը հրկիզեցին: Ցուցարարները Թուրքիոյ դէմ լոզունգներ արձակելէ ետք, ցրուեցան:*

*Բրիւքսէլի մէջ, 450 հայեր ցոյց ըրին Թրքական դեսպանատան առջեւ: Ցուցարարները պահանջեցին, որ բռնարարքներ գործուին Թուրքիոյ եւ Թուրք պետութեան դէմ, որ կը յամառի չճանչնալ Հայկական ցեղասպանութիւնը: Տեւեց երկու ժամ:*

*Ցոյցեր տեղի ունեցան նաեւ Մոսկուայի մէջ, ուր հայերը բողոքի արտայայտութիւններ ունեցան Թուրք դեսպանատան առջեւ:*

*Թեհրանի մէջ, մօտ տասը հազար հայեր քայլարշաւ ու ցոյց ըրին: Նմանօրինակ ցոյցեր տեղի ունեցան նաեւ Փարիզի եւ Պէյրութի մէջ:*

## ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՃԱՆԱՉՄԱՆ ԲԱՆԱՁԵՒԻՆ ՄԵՐԺՈՒՄԻՆ ՊԱՏՃԱՌՈՎ

### Շարլ Ազնաւուր Կը Մերժէ Երգել Ֆրանսայի Ծերակոյտին Մէջ

*Բրիտանական «Լոնտոն Թայմզ» թերթը հաղորդած է, թէ ֆրանսահայ աշխարհահռչակ երգիչ Շարլ Ազնաւուր որոշած է մերժել Յուլիս 14ին կայանալիք Ֆրանսայի անկախութեան տօնակատարութեանց ընթացքին Ծերակոյտին մէջ Ֆրանսայի քայլերգը երգելու պաշտօնական հրաւէրը: Ըստ թերթին, Ազնաւուր այս կեցուածքը որդեգրած է, որովհետեւ «զայրացած է» 1915ին տեղի ունեցած Հայկական Ցեղասպանութեան ճանաչում ապահովող բանաձեւը մերժելու Ծերակոյտին վերջին որոշումէն:*

## ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ ԵՐԵՒԱՆԻ ԵՒ ԱՆԳԱՐԱՅԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆՆԵՐՈՒ ՄԻՋԵՒ

*Անգարայի Համալսարանէն բարձրաստիճան ներկայացուցիչներ երկու օրէ ի վեր Երեւան կը գտնըւին, որպէս փոխ-այցելութիւն 1999-ի Փետրուարին Երեւանի Պետական Համալսարանի Վերատեսուչ՝ Փրօֆ. Տօքթ. Ռադիկ Մարտիրոսեանի գլխաւորութեան պատուիրակութեան մը Անգարա եւ Իսթանպուլ այցելութեան:*

*Անգարայի Օրթա Տողու համալսարանի տեսուչ՝ Փրօֆ. Կինայ Ազպայի գլխաւորութեամբ թուրք համալսարանական պատուի-*

4

ԻՍՐԱՅԷԼ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ ՊԷՏՔ Է ՄԵՐ ԴԱՍԱԳԻՐՔԵՐՈՒՆ ՄԷՋ ՆԵՐԱՌՆՈՒԻ, ԸՍԱՒ ԻՍՐԱՅԷԼԻ ԿՐԹԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐԸ

*Իսրայէլի մէջ, Կրթական նախարար Եոսսի Սարիտ առաջարկեց, որ միջնակարգ վարժարաններու դասագիրքերուն մէջ տեղ տրուի Հայկական Ցեղասպանութեան: Հայոց կողմէ Երուսաղէմի մէջ կազմակերպուած հաւաքոյթին մասնակցելով. Սարիտ ելոյթ մը ունեցաւ եւ յայտարարեց, «Շատ երկար տարիներ դուք առանձին մնացիք: Հիմա այլեւս առանձին չէք»: Ան նաեւ րսաւ «ցեղասպանութեան ենթարկուած հրեայ ժողովուրդը աւելի սերտ գործակցութիւն պէտք է հաստատէ ցեղասպանութեան ենթարկուող ուրիշ ժողովուրդներու հետ»: «Ով որ լուռ կը մնայ, զոհերուն դէմ դիրք բռնած կը նկատուի», աւելցուց ան: «Հայկական ցեղասպանութեան նիւթը պէտք է դասաւանդուի դպրոցներու մէջ: Հրէական ցեղասպանութեան քով՝ Հայկական ցեղասպանութեան եւս տեղ պէտք է տրուի բացայայտ կերպով: Պատմութեան ողբերգական էջը պէտք է տեղ գրաւէ դասագիրքերուն մէջ: Ատիկա ձեզի*

4

### «Հայկական Ցեղասպանութեան» Հարցի Կապակցութեամբ

## ՀՐԵԱՅ ԳՈՐԾԱՐԱՐԻ ՄԸ ԲՈՂՈՔԸ ԻՍՐԱՅԷԼԻ ԿՐԹԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐԻՆ ԴԷՄ

*Հրեայ նշանաւոր գործարար Իսաք Ալաթոն հետեւեալ նամակը ղրկած է Իսրայէլեան «Հաարէց» թերթի խմբագրութեան.*

*Թուրքիոյ «Թիւրքիշ Տէյլի Նիուզ» թերթի 26 Ապրիլի թիւին մէջ տեսայ հետեւեալ խորագիրը. «Իսրայէլի Նախարարը ազդանշան տուաւ այն մասին թէ Իսրայէլէ ներս բան մը կը փոխուի Հայկական Ցեղասպանութեան քաղաքականութեան մէջ»:*

*Այս սխալ եւ անհանգստացուցիչ փոփոխութիւնը կրնայ ժխտական ազդեցութիւն գործել մեր երկու երկիրներու բարեկամական յարաբերութիւններուն վրայ: Եւ Սէֆարատ հրեայ ծագումով թուրք գործարար*

2

# ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՆՇԵՑ ՄԵԾ ԵՂԵՌՆԻ 85-ԱՄԵԱԿԸ ԳԱՂՈՒԹԷ ԳԱՂՈՒԹ

*Հայաստանէն Ուրուկուէյ, Ֆրանսայէն Աւստրալիա, Լիբանանէն Ամերիկա, աշխարհի երեսին ուր որ ապրող, շնչող եւ գոյատեւող հայութիւն կամ հայ գաղութ գոյութիւն ունի, հանդիսաւոր կերպով- եկեղեցական, աշխարհական, քայլարշաւային, քաղաքական եւ հոգեւոր ձեռնարկներով նշուեցաւ Եղեռնի 85-ամեակը: Բոլոր ձեռնարկներու թեմաները նոյնն էին.-*

*- Յարգանքի տուրք՝ 1.5 միլիոն անմեղ զոհերու խունկելի յիշատակին:*

*- Հետապնդում եւ պահանջատիրութիւն հայ ժողովուրդի արդար եւ անժամանցելի իրաւունքներուն:*

*- Ցեղասպանութեան ճանաչում նախ զայն գործադրող Թուրքիոյ, եւ ապա միջազգային ընկերութեան կողմէ, որուն պէտք է ընկերանայ հատուցումը եւ հողերու վերադարձը:*

## ՀԱՅԱՍՏԱՆ

*Հայաստանէն ներս Եղեռնի 85-ամեակը նշուեցաւ Հանրապետութեան նախագահ Ռ. Քոչարեանի սոյն հանդիսաւոր առիթով արտասանած ճառով, պետութեան պատասխանատուներու եւ ժողովուրդի կողմէ Ծիծեռնակաբերդի այցելութեամբ, եւ ծաղկեպսակի զետեղումով:*

*Հայաստան անգամ մը եւս այս առիթով կը հաստատէր թէ ցեղասպանութեան ճանաչումը կը հանդիսանայ երկրի արտաքին քաղաքականութեան հիմնական թէզերէն մէկը:*

*2000 թ. Ապրիլի 24. վաղ առաւօտից մայրաքաղաք Երեւանի տարբեր մայրուղիներով ու փողոցներով մարդիկ խումբ-խումբ՝ մեխակներով ու վարդերով, կակաչներով ու եասամաններով շարժւում են դէպի Ծիծեռնակաբերդի բարձունք՝ Հայոց ցեղասպանութեան զոհերի յուշարձան: Նրանց հետ յաւերժական կրակի առջեւ գլուխ են խոնարհում նաեւ աշխարհի տարբեր ծագերից եկած հայրենակիցներ, հիւրեր:*

*Առաւօտեան ժամը 11-ն է: Իրենց յարգանքի տուրքը մատուցելու համար այստեղ են ժամանում ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանը, Ազգային Ժողովի նախագահ Արմէն Խաչատրեանը, վարչապետ Արամ Սարգսեանը, Ամենայն Հայոց Գարեգին Բ. կաթողիկոսը, Ազգային Ժողովի պատգամաւորներ, կառավարութեան անդամներ, բարձրաստիճան պաշտօնեաներ, գինուորականութեան ներկայացուցիչներ, Հայաստանում հաւատարմագրուած օտարերկրեայ դիւանագէտներ:*

*Եղեռնի զոհերի յուշահամալիրին պսակներ դրուեցին Հայաստանի նախագահի, Ազգային Ժողովի, կառավարութեան, Սահմանադրական դատարանի անունից: Պսակներ կան նաեւ նախարարութիւնների, գերատեսչութիւնների, տարբեր կուսակցութիւնների, կազմակերպութիւնների, Հայաստանում հաւատարմագրուած արտասահմանեան երկրների դեսպանութիւնների, անհատների անունից:*

*Գարնանային թարմ ծաղիկներ դրուեցին նաեւ 20-րդ դարի վերջին հայ ազատագրական պայքարում իրենց կեանքը նուիրաբերած ազատամարտիկների գերեզմաններին, Սումգայիթում եւ Ատրպէյճանի այլ քաղաքներում իրագործուած նոր ցեղասպանութեան զոհերի յուշաքարերին:*

*Հայաստանի Հանրապետութեան ղեկավարները, Մայր Աթոռի հոգեւոր առաջնորդութիւնը, հիւրերը մէկ րոպէ լռութեամբ գլուխ խոնարհեցին յաւերժական կրակի առջեւ: Հոգեհանգստեան պաշտօն կատարեց Գարեգին Բ. Ամենայն Հայոց կաթողիկոսը:*

## ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ

*Ամերիկայի Միացեալ Նահանգներու պարագային, նախագահ Պիլ Քլինթըն եւ փոխ նախագահ Ալ Կոր անգամ մը եւս իրենց «համակրանքը կը յայտնէին 1915-23 տարիներուն հայութեան պատահած ցաւալի դէպքերուն համար», առանց սակայն, ինչպէս անցեալին, այս տարի եւս գործածելու «ցեղասպանութիւն» բացատրութիւն եղած կոտորածներուն եւ կորուստներուն համար:*

*Շուրջ չորս հազար հոգի ներկայ եղան սոյն հանդիսութեան: Հոն էին հայ երեք յարանուանութեանց ղեկավարները, Լոս Անճելըսի մօտ Հայաստանի Աւագ Հիւպատոս Արմէն Մելգոնեանը, Լոս Անճելըսի Շէրիֆ Լի Պաքան, ինչպէս նաեւ հայկական տարբեր կազմակերպութիւններու ներկայացուցիչներ եւ ամերիկեան անձնաւորութիւններ:Հայաստանի եւ Ամերիկայի Միացեալ Նահանգներու դրօշակի արարողութեամբ սկսաւ յիշատակի հանդիսութիւնը զոր ձեռնհասօրէն վարեցին ընկեր Ստեփան Յովակիմեան (հայերէնով) եւ Միրօ Խանգատեան: Ուաշինկթընի մօտ Ռուանտայի դեսպան Ռիչըրտ Սէզապէրա իր ելոյթին մէջ մատնանշեց որ նախորդ դարաշրջանն սկսաւ սխալ ձեւով: Առաջին ցեղասպանութեան զոհերն եղան հայերը եւ նոյն քսաներորդ դարու վերջին ցեղասպանութեան արհաւիրքը կրեց Ռուանտայի ժողովուրդը: Ան կոչ ուղղեց պայքարիլ արդարութեան յաղթանակին ի խնդիր եւ կանխել նման ցեղասպանութիւնները որոնք կատարուեցան հայերուն, հրեաներուն, գամպոտիացիներուն եւ ռուանտացիներուն դէմ: Աւագ Հիւպատոս Արմէն Մելգոնեան ի խօսքին մէջ շեշտեց կարեւորութիւնը համազգային խնդիրներու հետապնդման վճռակամութեան պատմական արդարութեան վերահաստատման ի խնդիր: «Համաշխարհային հանրութիւնը լաւ պիտի իմանայ որ ցեղասպանութիւնը՝ հայութեան խնդիր չէ այլ՝ մարդկութեան խնդիր է» ըսաւ ան եւ ընդգծեց որ ցեղասպանութեան հարցի հետապնդումը Հայաստանի կառավարութեան օրակարգի վրան է: Այս առնչութեամբ ան կարեւորութեամբ նշեց Հայաստանի իշխանութիւններու եւ Սփիւռքի քաղաքական գործիչներու ներդաշնակ աշխատանքը ամրապնդելու մեր ժողովուրդի բոլոր հատուածներու միասնութիւնը:*

*Գալիֆորնիոյ կառավարիչ Կրէյ Տէյվիսի կողմէ Թէրա Պէնէսիրեան կարդաց յայտարարագիր մը որուն մէջ Ապրիլ 24-ը կը հռչակուի նահանգի Հայոց Ցեղասպանութեան տարեդարձի առթիւ:*

*Ան ըսաւ թէ պիտի հրահանգէ ուսուցիչներու որպէսզի այս մասին ուսուցանեն իրենց աշակերտներուն:*

*Ոգեկոչման Կեդրոնական Մարմնի անունով՝ (Ս.Դ.Հ.Կ., Հ.Յ.Դ., Ռ.Ա.Կ.) խօսք առաւ Արա Ահարոնեան եւ ըսաւ թէ այսօր մեր դատին նկատմամբ նոր մօտեցում մը սկսած է սաղմնաւորուիլ միջազգային հանրային կարծիքին մօտ եւ հայ ժողովուրդը դանդաղօրէն կը յառաջանայ մեր մեծ երազի յայն պողոտայէն: Ան կոչ ուղղեց միասնական ճիգերով դիմագրաւելու Թուրքին հակահայ պայքարը եւ աւելցուց «Միաւորուիլ, բռունցքանալ ու բարձր պահել ողջմտութեան դրօշը»:*

*Յիշատակութեան արժանի գլխաւոր ելոյթն էր Րաֆֆի Յովհաննիսեանի, Հայաստանի Հանրապետութեան առաջին արտաքին գործոց նախարարին, որ շուրջ կէս ժամ տեւող բանախօսութեան մը ընթացքին արժեւորումի ենթարկեց Հայաստանի եւ արտասահմանի պատասխանատուներու այժմու գործունէութիւնը, որոշ մանրամասնութեամբ:Սոյն արժեւորում-քննարկումը հազուագիւտ անկեղծութեամբ, եւ առարկայութեամբ յատկանշուած էր, ուր Հայաստանի ներկայ իշխանութեանց- նախագահէն մինչեւ յետին պետական պաշտօնեայի նկատմամբ քննադատական մօտեցում մըն էր, որոնք իրենց սխալ տնօրինութիւններով, անկարող եղած էին իրաւական, բարոյական պետութիւն մը ստեղծելու:*

*Կացութիւնը, ի հարկէ, տարբեր էր Գալիֆորնիայի պարագային, ուր շուրջ 500,000 հայեր կայք հաստատած են, եւ այս նահանգի տարբեր քաղաքներուն մէջ,- Փասատինա, Կլէնտէյլ, Հովիտ, Մոնթեպելլօ, տեղի ունեցան բազմաթիւ ձեռնարկներ Ապրիլ 21-24 շաբաթավերջին:*

*Դրականը այն է որ ընթացիկ հսկումներու եւ Մոնթեպելլոյի Յուշարձանի յուշատօնին կողքին, ազգային երեք կուսակցութեան կողմէ կազմուած Կեդրոնական Յանձնախումբը յաջողցուցած էր քաղաքական զուտ հանդիպում մը, Լոս Անճելըսի Կեդրոնական «Kenneth Hahn Hall of Administration»ի սրահէն ներս, ուր կարեւոր թիւով տեղական, նահանգային եւ դաշնակցային քաղաքական դէմքեր կարճ ելոյթներ ունեցան ցեղասպանութեան ճանաչումը անհրաժեշտութիւն նկատող: Առաւօտեան ժամը 11էն մինչեւ 1 տեւող սոյն նախաձեռնութիւնը խիստ գնահատելի էր, որուն ընթացքին, բազմաթիւ խօսողներու շարքին, գլխաւոր խօսողն էր, Ռուանտայի Ամերիկայի դեսպան, Տոքթ. Ռիչըրտ Սեսիպերա, որ զուգահեռ մը գծեց հայ եւ ռուանտացի ժողովուրդներու պատահած ցեղասպանութիւններուն, մէկը 1915-ին իսկ միւսը 1995-ին, շեշտելով այն իրողութիւնը թէ Հայոց Ցեղասպանութեան յաջորդեց հրէական «հօլօքոստ»ը, Ռուանտայի եւ Քամպոտիայի ցեղասպանութիւնները: Ան շեշտը դրաւ այն իրողութեան վրայ որ միջազգային ընկերութիւնը տակաւին չէր մշակած անհրաժեշտ օրինագիծեր ցեղասպանութեան կանխարգելման համար, եւ առաջարկեց միջազգային մարմին մը նման աշխատանքի անցնելու:*

*Եղեռնի 85 ամեակին նուիրուած ոգեկոչման յիշատակի մեծ հաւաք մը տեղի ունեցաւ Երկուշաբթի Ապրիլի 24-ին, կէսօրէ ետք ժամը 3:00-ին, Մովսրդի սոցիալ-տնտեսական անլուծելի դժուարութեանց, արտագաղթի աղիտալի չափերու, եւ այլ բազմաթիւ հարցերու: Րաֆֆի Յովհաննիսեանի սոյն ելոյթը կարելի է պատմական կոչել, իր համապարփակ, առարկայական եւ իրապաշտ նկարագրին համար:*

*Ան ըսաւ թէ կը պատուենք բոլոր անոնց որոնք Հայ Դատին եւ արդարութեան կողքին կանգնեցան: Ցեղասպանութեան ճանաչումն ու հաստատումը անհրաժեշտ են: Թուրքիա՝ իր դաշնակիցներն ու միջազգային հանրութիւնը պէտք է դէմ յանդիման գան երկխօսութեամբ եւ հայ ժողովուրդին արդար հատուցում:*

*Պետութիւն եւ ազգ, հայրենիք եւ սփիւռք հնարաւոր է որ ընդհանուր խնդիրը կարգադրեն ճկուն մօտեցումով: Տեւապէս համադրուած աշխատանքով, բոլոր հանգրուաններով պիտի շարունակենք մեր մաքցումը:*

*Դրական եւ արժէքաւոր ձեռնարկ մըն ալ տեղի ունեցաւ Ապրիլ 24-ի երեկոյեան, Կլէնտէյլի Կոր Եկեղեցւոյ մէջ, կազմակերպութեամբ Հ.Մ.Մ.Մ.-ի: Գրիգոր Շէնեանի հանդիսավարութեամբ սոյն ձեռնարկի գլխաւոր խօսողներն էին Թոմիկ Ալեքսանեան, Տոքթ. Յովիկ Մելիտոնեան, Կրէկ Միսաքեան, որ ներկայացուց գլխաւոր բանախօս, Գալիֆորնիա նահանգի նախկին կառավարիչ Ճորճ Տէօքմէճեանը, որ բացառիկ նշանակութիւն ունեցող ճառով մը նկարագրեց ցեղասպանութիւնը եւ անոր հետ առնչուող ընկերային, քաղաքական երեւոյթները:*

*Ճոխ գեղարուեստական յայտագրի մաս կը կազմէին գաղութիս ծանօթ եւ սիրուած բազմաթիւ արուեստագէտներ, երգով, նուագով, արտասանութեամբ եւ պարերով:*

## ՅՈՒՆԱՍՏԱՆ

*Ապրիլի 24-ին Աթէնքում տեղի է ունեցել Մեծ Եղեռնի 85-ամեակին նուիրուած միջոցառում, որին մասնակցեցին Յունաստանի կառավարութեան, խորհրդարանի, կուսակցութիւնների, Աթէնքի նահանգապետարանի եւ քաղաքապետարանի ներկայացուցիչներ, յունահայ հասարակական-քաղաքական, բարեգործական, եկեղեցական կազմակերպութիւններ:*

*Ինչպէս ԱՐՄԷՆՓՐԵՍԻՆ յայտնեցին արտաքին գործոց նախարարութեան հասարակայնութեան հետ յարաբերութիւնների վարչութիւնից, ելոյթ են ունեցել Յունաստանի խորհրդարանի նախագահ Ապոստոլոս Կակլամանիսը, մամուլի եւ լրատուամիջոցների փոխնախարար Տելեմաքոս Խիտիրիսը, Աթէնքի փոխքաղաքապետ Գորտոս Եատրակոսը, Յունաստանում Հայաստանի դեսպան Արմէն Պետրոսեանը, Յունաստանի խորհրդարանի անդամներ, յունահայ համայնքի ներկայացուցիչներ:*

## ԿԻՊՐՈՍ

*Ապրիլի 24-ին Կիպրոսի մայրաքաղաք Նիկոսիայում տեղի է ունեցել Հայոց Ցեղասպանութեան 85-ամեակի ոգեկոչման հանդիսաւոր ձեռնարկ: Միջոցառմանը հանդէս եկաւ Կիպրոսի խորհրդարանի նախագահ Սպիրոս Կիպրիանուն: Նա անդրադարձել է հայ եւ յոյն ժողովրդների պատմական ճակատագրի ընդհանրութիւններին, զօրակցութիւն յայտնել հայ ժողովրդին ցեղասպանութեան ճանաչման ջանքերում:*

*Հարկ է նշել, որ Կիպրոսի խորհրդարանը Հայոց ցեղասպանութիւնը ճանաչող ու դատապարտող բանաձեւ է ընդունել 18 տարի առաջ՝ 1982 թուականի Ապրիլի 29-ին:*

*Միջոցառմանը ներկայ էին կիպրահայ համայնքի ներկայացուցիչներ, Կիպրոսի քաղաքական ուժերի ներկայացուցիչներ, Հայաստանի դեսպանութեան ներկայացուցիչներ: Ընթերցուել է Կիպրոսի նախագահ Գլավքոս Քլերիդեսի ուղերձը:*

## ՖՐԱՆՍԱ

*Ապրիլի 24-ի երեկոյեան Ֆրանսայի արտաքին գործոց նախարարութիւնը հաղորդագրութիւն է տարածել, որով ֆրանսական իշխանութիւններն արտայայտում են «իրենց խոր համակրանքը հայկական ծագմամբ համաքաղաքացիների հանդէպ՝ 85 տարի առաջ կատարուած ողբերգական իրադարձութիւնների կապակցութեամբ»:*

*«Ֆրանսան ընդունեց այդ գազրելի ջարդերից մազապուրծ տասնեակ հազարաւոր փախստականների, ջարդեր, որոնց զոհ դարձաւ հայկական բնակչութիւնը... Ֆրանսական իշխանութիւններն այսօր յարգանքի տուրք են մատուցում այդ ողբերգութեան զոհերին եւ վշտով ու պատկառանքով խոնարհւում նրանց յիշատակի առջեւ», ասւում է ԱԳՆ տարածած յայտարարութեան մէջ, առանց նշելու Թուրքիայի անունը:*

*Միաժամանակ, Ֆրանսիայի աջ կուսակցութիւններից RPF-ը (Համախմբում յանուն Ֆրանսայի) Ապրիլի 23-ին տարածած յայտարարութեամբ մեղադրել է կառավարութեանը, քանի որ վերջինս «յամառօրէն մերժում է, որպէսզի հայերի ցեղասպանութեան ճանաչման տեքստն արձանագրուի Սենատի օրակարգում: RPF-ը ցաւ է յայտնել, որ եւրոպական կառավարութիւնները յանձն են առել Թուրքիային ընդունել Եւրոպական միութիւն՝ այն դէպքում, երբ այդ երկիրը պայմանները չի լրացնում եւ յամառօրէն մերժում է ճանաչել հայերի ցեղասպանութեան իրողութիւնը»:*

## ԱՐԺԱՆԹԻՆ

*«Յանուն աշխարհում խաղաղութեան եւ մարդու իրաւունքների պաշտպանութեան» խորագրով Հայոց ցեղասպանութեան 85-րդ տարեդարձի առիթով Պուէնոս Այրէսի Մայր տաճարում տեղի է ունեցել միջկրօնական արարողութիւն՝ Արժանթինի առաջնորդ եւ Պուէնոս Այրէսի Արքեպիսկոպոս Խորխէ Մարիօ Բերգոլիոյի նախագահութեամբ:*

*Արարողութեանը մասնաւորապէս ներկայ են գտնուել Արժանթինի արտգործ-նախարարութեան պաշտամունքի քարտուղար Նորբերտօ Պադիժան, Պուէնոս Այրէս քաղաքի կառավարութեան ղեկավար Էնրիկէ Օլիվերան, Արժանթինի առողջապահութեան նախարար Էկտոր Լոմպարտօ, արժանթինեան զանազան պաշտօնեաներ, դիւանագիտական կորպուսի ներկայացուցիչներ, եկեղեցականներ, հայ համայնքի անդամներ եւ լրագրողներ:*

## ՈՒՐՈՒԿՈՒԷՅ

*Ապրիլի 24-ին ցեղասպանութեան 85-րդ տարեդարձին նուիրուած միջոցառում է տեղի ունեցել Մոնտեվիտեոյում, «Հայաստան» հրապարակում, որին մասնաւորապէս մասնակցել են Ուրուկուէյի արտգործ-նախարար Դիդիէ Օպերտին, ներքին գործերի նախարար Գիժերմօ Ստիրլինգը, սենատորներ, պատգամաւորներ, դիւանագիտական կորպուսի ներկայացուցիչներ:*

---

«Հայկական Ցեղասպանութեան» Հարցի Կապակցութեամբ

# ՀՐԵԱՅ ԳՈՐԾԱՐԱՐԻ ՄԸ ԲՈՂՈՔԸ ԻՍՐԱՅԷԼԻ ԿՐԹԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐԻՆ ԴԷՄ

1

մըն եմ, ծնած եմ 1927-ին: Հօրս սերունդին բերնէն զանազան պատմութիւններ լսած եմ Օսմանեան շրջանի 1915-ի խառնակ անցուդարձերուն մասին:

Երկու կողմերն ալ այս նիւթին շուրջ զիրար կ'ամբաստանեն: Իսկ ճշմարտութիւնը ո՞րն է:

Այս մեղադրանքներն ու հակա-ամբաստանութիւնները երկար ժամանակէ ի վեր կը շարունակուին: Ուրեմն պէտք է ձեռնարկել հետեւեալ միջոցներուն: Նախ, անկողմնակալ անձեր պէտք է ուսումնասիրեն այս հարցը, առանց որ այս ուսումնասիրութեան միջամտեն Հայաստանի, Թուրքիոյ, Իսրայէլի կամ որեւէ երկրի կառավարութիւնները: Զանազան ծագումով փորձառու գիտութեան մարդիկ բանավէճի ամպիոն մը պէտք է պատրաստեն եւ հոն մէջտեղ դնեն այն արխիւները զորս ի ձեռին ունին: Այս կերպով, մինչեւ որ արդիւնք մը առնուի, կը կանխուին այն շարժումները որոնք այս նուրբ հարցին մէջ անտեղի նոր թշնամութիւններ կրնան ստեղծել:

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

**ՕՐ. ՍԱՊԻՆ ԱԶԱՏԵԱՆ**

**ԵՒ**

**ՊՐ. ՎԱՐԴԱՆ Վ. ԳԱԶԱՆՃԵԱՆ**

Պէյրութ-Գահիրէ 20/4/2000

*Խմբագրութիւնս իր ջերմ շնորհաւորութիւնները կը յայտնէ խօսեցեալ զոյգին եւ անոնց ծնողաց:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Նուպարեան Ազգային Վարժարանի Ծնողք - Ուսուցիչ Խորհուրդը եւ Տնօրէնութիւնը իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն հետեւեալ համալսարանաւարտներուն, որոնք ընդառաջելով մեր հրաւէրին, բարեհաճեցան Հինգշաբթի, 30 Մարտ 2000-ին, ներկայ ըլլալ եւ տեղեկութիւններ տալ իրենց համալսարանական փորձառութենէն, մեր երկրորդական բաժնի աշակերտներուն:

1. Տիկին Արշօ Պրլըքտանեան
2. Տիկին Սիմա Թրայեան
3. Տիկին Սօսի Յակոբեան
4. Դոկտ. Նայիրի Համբիկեան
5. Տիկին Արմին Քրէտեան
6. Տիկին Սիլվա Բլատեան
7. Տիկին Սօսէ Կրպոյեան
8. Տիկին Մարի Ջէրտէլեան
9. Օր. Ալին Նագաշեան
10. Պր. Մարտիրոս Պալաեան
11. Պր. Կարօ Վարժապետեան
12. Պր. Արսէն Էմիրզեան
13. Տոքթ. Արմէն Մագլումեան
14. Տոքթ. Գէորգ Երզնկացեան
15. Դոկտ. Ժորժ Սիմոնեան
16. Դոկտ. Օզիրիս Ուանիս
17. Պր. Օհան Ճանիկեան

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### 75-ԱՄԵԱԿԻ ՉԵՌՆԱՐԿ

Կիրակի, 7 Մայիս 2000, երեկոյեան ժամը 6-ին

**«Պըլըքտանեան Հանդիսասրահ»ին մէջ**

Հովանաւորութեամբ

**ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ**

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Նախագահութեամբ

**ԴՈԿՏ. ԵՒ ՏԻԿԻՆ ԺՈՐԺ ՍԻՄՈՆԵԱՆԻ**

**ՅԱՅՏԱԳԻՐ**

1. Յովհաննէս Թումանեանի «Անոյշ»ի
Գրական -Երաժշտական Համադրում
Խմբավարութեամբ

**ԴՈՑԵՆԴ ԴԱՒԻԹ ԶԱԼԵԱՆԻ**

Դաշնակի նուագակցութեամբ

**ՏԻԿԻՆ ԻՐԻՆԱ ԶԱԼԵԱՆԻ**

Մասնակցութեամբ Վարժարանիս Աշակերտներուն
եւ Շրջանաւարտներուն

2. Ցուցադրութիւն Աշակերտական Ձեռային
Աշխատանքներու եւ Գծագրութեանց
3. Ընտանեկան Խրախճանք Վարժարանիս Բակը
D.J.- ի Ռուպէր Թաշճեանի Ընկերակցութեամբ

**ԾՆՈՂՔ - ՈՒՍՈՒՑԻՉ ԽՈՐՀՈՒՐԴ**

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**





## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իր սիրելի քրոջ զաւկին՝ Ողբ. Օննիկ Հալաճեանի մահուան տխուր առթիւ Տիկին Զապէլ Ճիվանեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| «Այծեմնիկ» Հանգստ. Տան | 40 |
| «Արեւ»ին | 20 |
| «Յուսաբեր»ին | 20 |
| «Ջահակիր»ին | 20 |

(Ստանալ «Արեւ»էն)

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Կիրակի 21 Մայիս 2000
Կ.Ե. ժամը 7-ին
Կը խնդրուի նկատի ունենալ
ու չխաչաձեւել

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Կիրակի 28 Մայիս 2000
Կը խնդրուի նկատի ունենալ
ու չխաչաձեւել

## Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ)

### ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Կիրակի 25 Յունիս 2000

### ՏԱՐԵԿԱՆ ՉԵՌՆԱՐԿ

Կը խնդրուի նկատի ունենալ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ ՊԷՏՔ Է ՄԵՐ ԴԱՍԱԳԻՐՔԵՐՈՒՆ ՄԷՋ ՆԵՐԱՌՆՈՒԻ...

1 ➾ *նկատմամբ մեր պարտքն է», եզրակացուց Սարիտ:*

*Թուրքերը չափ նեղուած են Իսրայէլէն: «Իսրայէլ ամօթ ըրաւ», կը գրէ թուրք թերթ մը: Ուրիշ մը կ'ըսէ, թէ Սարիտի մասնակցութիւնը հայկական ցոյցին, «զարմանք պատճառած է նոյնիսկ հայերուն»:*

## ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ ԵՐԵՒԱՆԻ ԵՒ ԱՆԳԱՐԱՅԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆՆԵՐՈՒ ՄԻՋԵՒ

1 ➾ իրականութիւնը հանդիսաւորապէս համագործակցութեան համաձայնագիր մը ստորագրեց Երեւանի Պետական Համալսարանի (ԵՊՀ) Վերատեսուչ՝ Փրոֆ. Ռադիկ Մարտիրոսեանի գլխաւորած պատուիրակութեան հետ: Փրոֆ. Ռադիկ Մարտիրոսեան յայտնեց թէ համագործակցութեան գաղափարին հեղինակը՝ Փրոֆ. Ագպայն է, որու անձնական նախաձեռնութեամբ քանի մը տարի առաջ Անգարայի Համալսարանի մէջ բացուած էր հայագիտութեան ամպիոն, սակայն ուսանողները, հայերէն սորվելու համար գացած էին Մոսկուա եւ Սէնթ Փէթէրսպուրկ:

Փրոֆ. Ագպայ, Ռադիկ յայտնեց թէ հայ ուսանողներու առաջին այցելութիւնը դէպի Անգարա պիտի իրականանայ արդէն այս ամառ:

Միւս կողմէ, դարձեալ «Արմէն Փրէս» թղթակցի վկայութեամբ, ցաւալի դէպք մը պատահեցաւ այն պահուն, երբ նախատեսուած էր որ ԵՊՀի եւ Անգարայի համալսարաններու վերատեսուչները համաձայնագիր մը ստորագրէին: Հայ Յեղափոխական Դաշնակցութեան ուսանողական միութեան անդամները հաւաքուած էին ԵՊՀի կեդրոնական շէնքին առջեւ: Անոնք կը բողոքէին Թուրքիոյ իշխանութիւններու դէմ, պահանջելով որ Թուրքիա ճանչնայ հայկական ցեղասպանութիւնը:

Այս ցոյցերէն ետք, յիշեալ միութեան անդամները հրկիզեցին Թուրքիոյ դրօշակը:

Այս միջադէպի պատճառաւ, Անգարայի համալսարանի պատուիրակութեան այցելութիւնը Մատենադարան՝ ջնջուեցաւ:

## ՄԱՀ՝ ՓՐՈՖ. ՑԻՑԻԼԻԱ ԲՐՈՒՏԵԱՆԻ

Խոր ցաւով տեղեկացանք, որ վերջերս Հայրենիքին մէջ իր մահկանացուն կնքած է Հայրենի ծանօթ երաժշտագէտ Փրոֆ. Ցիցիլիա Բրուտեան:

Հանգուցեալը ծնած է 1920-ին Թիֆլիսի մէջ: Աւարտած է Երեւանի Երաժրշտանոցի պատմա-տեսական ճիւղը 1942-ին, ապա՝ Մոսկուայի Երաժրշտանոցի բարձրագոյն բաժինը: Հեղինակ է բազմաթիւ գործերու: Հանգուցեալը Եգիպտոս այցելած է երկու անգամ եւ տուած բանախօսութիւններ մեր մշակութային միութիւններուն մէջ:

*Խմբագրութիւնս իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին ընտանեկան բոլոր պարագաներուն:*

## ՏԽՐՈՒՆԻ

Տէր եւ Տիկին Հրանդ եւ Նատիա Գութնուեան (Մոնթրէալ), Տիար Րաֆֆի Աբանեան եւ զաւակները Դրօ, Արի եւ Սեւան (Մոնթրէալ), Տէր եւ Տիկին Կարօ եւ Սիլվիա Նազիրկանեան եւ զաւակները Արին եւ Տարօն (Մոնթրէալ), Պէզազեան ընտանիք (Մոնթրէալ), Գութնուեան ընտանիքներ (Եգիպտոս եւ Նիւ Եորք), Գասապեան ընտանիք (Նիւ Եորք), Փողարեան ընտանիք (Սան Տիէկօ), Գոգորեան ընտանիք (Մոնթրէալ) եւ համայն ազգակից պարագաները, ցաւ ի սիրտ կը գուժեն դառնակսկիծ եւ անժամանակ մահը իրենց սիրելի դստեր, կողակիցին, մօր, քրոջ, մօրաքրոջ եւ հարազատին, Ողբ՝

### ՄԵԼԱՆԻ ԳՈՒԹՆՈՒԵԱՆ - ԱԲԱՆԵԱՆԻ

**(Ծնեալ 1957)**

որ տեղի ունեցաւ Մոնթրէալի «Ճեներըլ» հիւանդանոցին մէջ, Շաբաթ 22 Ապրիլ 2000-ի գիշերուան ժամը 9.00-ին, յետ անողոք եւ երկարատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան եւ թաղման արարողութիւնները տեղի ունեցան Երեքշաբթի 25 Ապրիլ 2000-ի կէսօրուան ժամը 12.00-ին, Մոնթրէալի Ս. Յակոբ եկեղեցւոյ մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ Սէն Լորանի գերեզմանատան մէջ:

*Այս տխուր առթիւ «Ջահակիր» իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալի ծնողքին՝ Տէր եւ Տիկին Հրանդ Գութնուեաններուն, ամուսնոյն՝ Տիար Րաֆֆի Աբանեանի եւ զաւակներուն ինչպէս նաեւ բոլոր հարազատներուն:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հ.Բ.Ը.Մ.ի Կեդրոնական Վարչական Ժողովը, ինչպէս նաեւ Եգիպտոսի շրջանակը ներկայիս կը ծանուցանեն, թէ Կիրակի 21 Մայիս 2000ին, առաւօտեան ժամը 10.30-ին, յաւարտ Ս. Պատարագի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի Միութեան կրկնակի վեթերան եւ բարերար անդամուհի՝

### ՈՂԲ. ՍԱԹԵՆԻԿ ՃԱՆԻԿ ՉԱԳԸՐԻ

**(ԾՆԵԱԼ ԹՕՓԱԼԵԱՆ)**

մահուան 18-րդ տարելիցին առթիւ:

Եգիպտահայ մեծ բարերարուհիին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Էտուար (Համբարձում) Պօյաճեան եւ զաւակը՝ Յակոբ, Տէր եւ Տիկին Հայկ Պօյաճեան եւ զաւակները՝ Հրայր եւ Կարօ (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Էտուար Քիւփէլեան եւ զաւակը՝ Պերճ, Տէր եւ Տիկին Վազգէն Բրուտեան եւ զաւակները՝ Թալին եւ Արմէն (Պրագիլ), Տէր եւ Տիկին Ժորժ Ջէրտէլեան, Տէր եւ Տիկին Նուպար Խաչիկեան եւ դուստրը՝ Սիլվա (Աւստրրալիա), Տէր եւ Տիկին Վազգէն Փափազեան եւ զաւակը՝ Ալէն (Աւստրալիա), ինչպէս նաեւ Շէմմէսեան, Քիւփէլեան, Աւետիսեան, Աբոյեան, Կոճամանեան, Դաւուհիտ, Աղաճանեան, Բրուտեան, Սազայեան, Ալպալա, Արսլանեան եւ Նալեան ընտանիքները ներկայիս կը ծանուցանեն թէ Կիրակի, 14 Մայիս 2000-ի առաւօտեան, Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատան Ամենայն Սրբոց մատրան մէջ, յաւարտ Ս. Պատարագի, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ մօր, մեծմօր, մեծ մեծմօր, խնամիին, կեսրոջ եւ ազգականին՝

### ՈՂԲ. ԱՐԱՔՍԻ ՊՕՅԱՃԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Աֆաֆ Ջէրտէլեան, Տէր եւ Տիկին Ասատուր Ջէրտէլեան, Տէր եւ Տիկին Ժորժ Ջէրտէլեան, Տէր եւ Տիկին Հանի Սէֆէն, ինչպէս նաեւ Ջէրտէլեան, Քիւփէլեան եւ Պօյաճեան ընտանիքները, ներկայիս կը ծանուցանեն թէ Կիրակի, 14 Մայիս 2000-ի առաւօտեան, Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատան Ամենայն Սրբոց մատրան մէջ, յաւարտ Ս. Պատարագի, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, խնամիին եւ ազգականին՝

### ՈՂԲ. ԱԼԵՔՍԱՆ ՋԷՐՏԷԼԵԱՆԻ

հոգւոյն ի հանգիստ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Մարի Աբիկեան, Տէր եւ Տիկին Յակոբ Աբիկեան եւ դուստրը Մարիան, Տէր եւ Տիկին Գրիգոր Աբիկեան եւ զաւակները Արամ եւ Ռիթա, Տիար Արթին Աբիկեան, Տիկին Սաթենիկ Վարձպետեան եւ դուստրը Օրիորդ Թագուհի եւ համայն ազգակից պարագաները, այսու կու գան իրենց խորին շնորհակալութիւնը յայտնել եգիպտահայ Թեմի բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանին, Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեանին, սարկաւագաց դասին եւ բոլոր անոնց, որոնք անձամբ, հեռագրով, նամակով, ծաղկեպսակ ղրկելով եւ կամ բարեսիրական եւ այլ հաստատութեանց նուիրատուութիւններ կատարելով, ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, մեծհօր, եղբօր, մօրեղբօր եւ ազգականին,

### ՈՂԲ. ԱՐԱՄ ԱԲԻԿԵԱՆԻ

մահուան եւ քառասունքին առիթներով:

دار شرينة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՈԳԵԿՈՉՈՒՄՆԵՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Այս տարի, Մեծ Եղեռնի 85-րդ տարելիցը արժանավայել ոգեկոչումներով նշուեցաւ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ:

## «ԿԱՐՄԻՐ ՋԱՐԴԷՆ ՃԵՐՄԱԿ ՋԱՐԴ»

Ոգեկոչումներու շարքը սկսաւ Գահիրէի մէջ, Երկուշաբթի 24 Ապրիլի առաւօտեան, զոյգ ազգային վարժարաններու՝ Գալուստեանի եւ Նուպարեանի աշակերտութեանց Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ այցով, առաջնորդութեամբ իրենց տնօրէններուն եւ ուսուցիչներուն: Անոնք ուղղուեցան մեր բիւրաւոր նահատակներու ի յուշ, եկեղեցիին մէջ կառուցուած մատուռը եւ ամէն ոք ծաղիկ մը դնելով տեղի խորանին առջեւ, յարգանքի իրենց տուրքը մատուցեցին:

Տրուած ըլլալով որ Համազգային Յուշահանդէսը այս տարի պիտի կայանար 30 Ապրիլին, ուրեմն բնական էր որ եկեղեցիին մէջ Հոգեհանգստեան պաշտօնն ալ կատարուէր այդ օր՝ Ապրիլ 30-ի առաւօտեան, փոխան Ապրիլ 24-ին: Հետեւաբար աշակերտութիւնը եկեղեցիին նստարաններուն վրայ՝ առիթը ունեցան ունկնդրելու Նուպարեան վարժարանի հայագիտական նիւթերու նուիրեալ ուսուցչուհիներէն՝ Տիկ. Արմիկ Քրէտեանի հայոց ցեղասպանութեան մասին ներածական հակիրճ խօսքը:

Ապա բոլորը միասնաբար ուղղուեցան դէպի Հելիոպոլսոյ «Պլըքտանեան հանդիսասրահ»ը, ուր կէսօրին տեղի պիտի ունենար Ապրիլեան Եղեռնի 85-ամեակի նուիրուած աշակերտական յուշահանդէսը, նշանաբան ունենալով *«Կարմիր ջարդէն ճերմակ ջարդ»*:

Թեմիս բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի հովանաւորութիւնը վայելող սոյն կոկիկ ձեռնարկին ներկայ գտնուեցան տնօրէններ, ուսուցիչներ, ծնողներ նաեւ նահատակներուն յիշատակը յարգող սակաւաթիւ ազգայիններ:

Վարագոյրը բացուելուն, բեմին վրայ աշխոյժ կանգնած էին զոյգ վարժարաններու երկսեռ աշակերտներէն շարք մը: Նուպարեանի աշակերտները հասկացողութեամբ, ամփոփ գիծերու մէջ կ'անդրադառնային հայոց ազատատենչ պատմութեան, հասնելով 1915 Ապրիլի եղերական թուականը: Մինչ Գալուստեանի աշակերտները միատրոփ սրտով, մէջ ընդ մէջ խոր ապրումով կ'արտասանէին Պարոյր Սեւակի հրաշունչ «Անլռելի զանգակատուն»էն եւ «Երաձայն պատարագ»էն հատուածներ, յուզական մթնոլորտ մը ստեղծելով: Միաժամանակ բեմին խորքը, լուսապատկերներու ցուցադրութեամբ կը ներկայացուէր պատմութեան զանազան երեսները:

Բծախնդրութեամբ պատրաստուած համադրումը կը շարունակուէր Եղեռնի զարհուրելի դէպքերու յիշատակումով: Ապա կը շեշտուէր հայ ժողովուրդի յարութիւնը հայրենիքի մէջ, եւ անցնելով կարմիր ջարդէն ճերմակ ջարդ՝ կը պարզուէր գաղթականութիւն եւ օտարացման հայակուլ մակընթացութիւն..., որը նոյնքան ահաւոր է հայութեան համար:

Վերջաւորութեան, իրենց պահանջատիրական ձայնը լսելի դարձնելու մտով, ներկայ աշակերտութիւնը ոգեւորութեամբ, միաձայն երգեցին երկու երգեր՝ «Սարդարապատ»ն ու «Երեւան – Էրեբունի»ն խմբավարութեամբ Դոցենտ Դաւիթ Ջալեանի եւ դաշնակի նուագակցութեամբ Իրինա Ջալեանի: Նուագակցութեան իրենց մասնակցութիւնը բերին նաեւ թմբուկի կազմածի վրայ Մարալ Պալեան եւ սրինգով Գեղամ Կարսեան, առաւել գոհունակութիւն պատճառելով ներկաներուն:

Կուռ փակման խօսքով հանդէս եկաւ առաջնորդ Սրբազան Հայրը եւ հաղորդական ոճով ընդգծեց օրուան խորհուրդին իմաստը եւ «Տէրունական» աղօթքով վերջացուց ոգեկոչումը:

Հայ դատը ճանչնալ եւ ապա ճանչցնել զայն նոր սերունդին, ծառայած կ'ըլլանք հիմնական նպատակին՝ ազգապահպանման սուրբ գործին: Երախտագիտութեան արժանի ձեռնարկ մը իսկապէս, որուն համար գնահատանքի արժանի են երկու վարժարաններու տնօրէնութիւնները եւ Տիկ. Արմիկ Քրէտեանի տարած հայրենասիրական ջանքերը:

## ՈԳԵԿՈՉՈՒՄ Ս. ԹԵՐԵԶԱ ԵԿԵՂԵՑԻԻՆ ՄԷՋ

Նոյն օրը՝ 24 Ապրիլի երեկոյեան, Հելիոպոլսոյ Հայ կաթողիկէ Ս. Թերեզա եկեղեցւոյ մէջ, Մեծ Եղեռնի ի յիշատակ նահատակներուն, Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն կատարուեցաւ:

Արարողութեան ներկայ գտնուեցան Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպան Սերկէյ Մանասարեան եւ իր ազնիւ տիկինը, դեսպանութեան անձնակազմէն աշխատակիցներ, Հայ կաթողիկէ համայնքային վարչութեան անդամներ եւ մեծ թիւով հաւատացեալներ: Այս առթիւ Պատարագի աւարտին Հայ կաթողիկէ Պատրիարքական Կառավարիչ Գերպ. Տ. Մխիթար Վրդ. Պօղոսեան արաբերէն լեզուով կարդաց Հայ Կաթողիկէ Տանն Կիլիկիոյ Ամենապատիւ Տ. Ներսէս – Պետրոս ԺԹ. Պատրիարք – Կաթողիկոսի ուղարկած պատգամը:

Ապա ներկայ հաւատացեալները թափորով առաջնորդուեցան եկեղեցւոյ բակին մէջ զետեղուած յուշատախտակին, ուր աղօթեցին եւ ծաղկեպսակներ զետեղեցին ի յիշատակ ցեղասպանութեան զոհերուն:

## ՆՇՈՒՄ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻԻՆ ՄԷՋ

Կիրակի 30 Ապրիլի առաւօտեան, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր տաճարին մէջ տեղի ունեցաւ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն մեր նահատակներու հոգւոյն:

Արարողութեան ներկայ գտնուեցան ՀՀ դեսպան Սերկէյ Մանասարեան եւ դեսպանատան անձնակազմի անդամներ, համայնքիս հանգամանաւոր անձնաւորութիւններ, ազգային վարժարաններու աշակերտութիւնը եւ հաւատացեալ հասարակութիւն մը:

Ս. Պատարագը մատուցանեց եւ յաւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ Թեմիս Առաջնորդ Սրբազան Հայրը: Հոգեհանգստեան արարողութենէն ետք, հոգեւորական դասն ու ներկայ հաւատացեալ ժողովուրդը ուղղուեցան եկեղեցւոյ պարտէզին մէջ՝ ցեղասպանութեան զոհերու յիշատակին զետեղուած խաչքարը, ուր ծաղկեպսակ զետեղեցին եւ Աւետարանի ընթերցմամբ Հոգւոց արտասանեցին:

Երգեցողութիւնները կատարուեցան եկեղեցւոյ երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ խմբավար Դաւիթ Ջալեանի եւ երգեհոնահարութեամբ Օր. Արփի Ճանիկեանի:

Ապա հաւատացեալներէն շատեր ուղղուեցան Ազգային Առաջնորդարանի դահլիճը, ուր պատշաճ խօսքերով արտայայտութիւններ ունեցան Սրբազան Հայրը, յարգելի դեսպանը եւ Տոքթ. Սուրէն Պայրամեան:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՀԱՆԴԷՍ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ

Հայոց ցեղասպանութեան 85-րդ տարելիցը բացառիկ էր իր բնոյթով, յատկապէս երբ Ազգ. Իշխանութեան հրաւէրով ԱՄՆ-էն ժամանելով, հասաւ հայոց ցեղասպանութեան մասնագէտ Դոկտ. Փրոֆ. Վահագն Տատրեան, իր պատգամը տալու եգիպտահայութեան:

Անուանի գիտնականը Շաբաթ 29 Ապրիլի գիշերը չահեկան բանախօսութեամբ մը իր պատգամը տուաւ աղեքսանդրահայութեան «Մելգոնեան Ազգ. Հանդիսասրահ»ին մէջ, Համազգային Յուշահանդէսին ընթացքին, գործադրուած յաջող յայտագրէն ետք: Յարգելի պատգամախօսը մօտ մէկ ժամ բանախօսեց, յիշելով համաշխարհային Ա. պատերազմին Օսմանեան Թուրքիոյ կողմէ կատարուած մեծ եղեռնը, ջախջախիչ փաստերով:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՇԱՀԱՆԴԷՍ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Կիրակի 30 Ապրիլի երեկոյեան, Հելիոպոլսոյ «Պլըքտանեան» հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ Համազգային Յուշահանդէսը նուիրուած Ապրիլեան Եղեռնի 85-րդ ամեակին, հովանաւորութեամբ Եգիպտահայ Հոգեւոր Պետերուն, նախաձեռնութեամբ Գահիրէի Ազգ. Իշխանութեան եւ կազմակերպութեամբ Գահիրէի բոլոր միութիւններուն:

Ներկայ էին Առաջնորդ Սրբազան Հայրը, ՀՀ դեսպան Ս. Մանասարեան, Գերպ. Տ. Մխիթար Վրդ. Պօղոսեան, Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեան, Արժ. Տ. Ժիրայր Քհնյ. Անանեան, դեսպանատան անձնակազմը, Միութենական ներկայացուցիչներ, խմբագիրներ եւ նահատակներուն յիշատակը յարգող մեծ թիւով հայորդիներ:

Եգիպտոսի եւ ՀՀ-ի հիմներու յոտընկայս ունկնդրութենէն ետք, վարագոյրը բացուեցաւ եւ մեր առջեւ պարզուեցաւ հայկական ճարտարապետական ոճով, աւեր վանքի ընդհանուր տեսարան մը, կեդրոնը ունենալով խաչքար: Սոյն ճարտար բեմայարդարումը կատարած էր ծանօթ քանդակագործ արուեստագէտ Վահան Դելփեան, որուն աշխատանքներուն իրենց մասնակցութիւնը բերած էին Նուպարեան վարժարանի աշակերտներէն ոմանք:

Յուշահանդէսի բացման նշանակալից խօսքը կատարեց Գերաշնորհ Սրբազան Հայրը, որ անդրադառնալէ ետք օրուան խորհուրդին, չեշտը դրաւ ներկայ Հայաստանի հանրապետութեան անկախ պետութեան յաւերժութեան: Ապա ներկայացուց օրուան պատգամախօս Փրոֆ. Վահագն Տատրեանը, թուելով գիտնականին հայոց ցեղասպանութեան ակադեմական ուսումնասիրութեանց մասին քանի մը ծանօթութիւններ:



Լարիսա եւ Արթուր Յարութիւնեաններու ելոյթը

Անցնելով գեղարուեստական յայտագրին, առաջին առթիւ բեմ բարձրացան հայրենի արուեստագէտներ՝ Լարիսա եւ Արթուր Յարութիւնեանները ջութակի վրայ զգայնութեամբ մեկնաբանելու Պախի գոնչերթօն երկու ջութակի համար Ա. մասը, դաշնամուրի նուագակցութեամբ Իրինա Ջալեանի: Պախին յաջորդեց անմահն Կոմիտասի «Ծիրանի ծառ»ի դաշնամուրի բացառիկ նուագածութիւնը, Իրինայի կատարումով: Այնուհետեւ առանձնայատուկ վարպետութեամբ մատուցուեցաւ Կոմիտասի «Կռունկ»ը, դարձեալ Լարիսայի ջութակի նուագածութեամբ եւ միշտ Իրինայի նուագակցութեամբ, յուզական ոգեւորութիւն մը գործելով ներկայ հանդիսականներուն վրայ:

Երաժշտական որակաւոր բաժինը վերջացած ըլլալով, պիտի սկսէր ասմունքի յատուկ բաժինը, Յովհաննէս Շիրազի քերթողական արուեստի գլուխ-գործոցներէն՝ «Հայոց Տանթէականը», որ հազիւ կարելի եղած էր 1965-ին Հայաստանէն գաղտնօրէն դուրս հանել եւ հրատարակել բոցաշունչ Շիրազի այս գործը արտասահմանի մէջ:

Ահա հաստատ քայլերով, բեմէն ներս կը մտնեն ասմունքի բաժինը կատարելու Արաքսի Յովակիմեան եւ Աւետիս Մովսէսեան: Իրենց կը հետեւին երգի բաժինը կատարելու համայնքիս սիրուած երգիչներէն՝ Սիլվա Թէրզիպաշեան, դաշնակի նուագակցութեամբ՝ Իրինա Ջալեանի:

Լոյսերու շողերու արձակումով, Աւետիս բեմի ծայրերու մոմերը կը վառէ ու կը սկսի գրական երաժշտական համադրոյթը:

Քերթուածը կը սկսէր Արաքսիի խորհրդածումով, երբ ան կը զրուցէր տանթէին այսինքն՝ սատանային հետ, Թուրքին կողմէ գործադրուած մեծ եղեռնի դէպքերու յիշատակումով.

**Թէ քափառում ես դու դեռ դժոխքում,**
**Իջիր քեզ տանեմ այնպիսի դժոխք,**
**Որ դու մոռանաս դժոխքը երգիդ:**

Մինչ Արաքսին սոսկումով, կը սկսէր պատմել թշնամիին բնաջնջման հոլովոյթը, Սիլվան բեմի խորքէն պահի պատշաճի տրտում երգով, կ'ալեկոծէր ներկաներուն հոգիները: Ապա Աւետիս վեր կ'անգնելով՝ **դուրս գալու յուշերի նաւով**, իրեն կը յայտնուէր Անդրանիկի անձայն ոգին..., եւ ան ինքնուրոյն արտայայտչութեամբ վեր կ'առնէր հերոսին արժէքը:



*«Հայոց Տանթէականը» կը կատարեն Արաքսի Յովակիմեան եւ Աւետիս Մովսէսեան. ձախէն կանգնած՝ կ'երգէ Սիլվա Թէրզիպաշեան:*

Հոս, Սիլվան խոր լռութեան մէջ սկիզբ կու տար «Տլէ Եաման» սրտագրաւ երգին, մատչելի հնչերանգով:

Թախիծը պատած էր ամբողջ սրահը: Հանդիսականները յարուած կը հետեւէին Արաքսիին սրտաշարժ ասմունքին: Ան խոր ապրումով կը թօթովէր թշնամիին կողմէ գործուած վայրագութիւնները: Միւս կողմէ Աւետիս կը յիշէր հայ ժողովուրդին ճաշակած տուայտանքները, յուզումնախառն մեկնաբանութեամբ, եւ... ակռայի կճրտոցով, կը ջանար **ջախջախել գլուխն էլ օձի...**:

Արաքսին հասած էր **եղեռնադժոխք Տէր Զօր: Հոն կը տեսնէր այն մեծ քարայրը, տասներկու հազար հայ մանուկների մոխիրը, որ Հաճնից, Մարաշից բերել են գաղտնի լցրել են քարայրն ու այրել վայրագ,**– թախծոտ, ձայնով կը պատմէր ան: Կրկին Աւետիսն է, այս անգամ բեմական արտայայտչականութեամբ կը նկարագրէր այն խելագարուած մօր պատմութիւնը, որ թշնամին մորթած էր անոր եօթը զաւակները:

**Ընկնում դիերին, ճանկռտում էր, լալիս.**
**Յանկարծ ծիծաղում, պարում էր յանկարծ,**
**Յանկարծ ուզում էր իր աչքերն հանել,**
**Յանկարծ գոռում էր՝ դիերը գրկած...**

Վերջապէս, Շիրազի փիլիսոփայական մտքի թարգմանը հանդիսանալով, Արաքսին հիասթափուած, խօսքը կ'ուղղէր սատանային.

**Օ՜ տանթէ, գիտեմ ցաւից ես լռել.**
**Դու չէիր տեսել նման մի դժոխք,**
**Եւ ո՞վ էր էր տեսել, որ դու տեսնէիր:**

Ասմունքը իր լրումին հասաւ Սիլվայի հայրենաշունչ երգի գեղգեղումով, եւ ներկաները մեծապէս ոգեւորուած, իրենց գնահատանքը կը յայտնէին երկարատեւ ծափահարութիւններով: Արդարեւ ներկայացումը հոգեզմայլ վայելքի պահեր պարգեւեց բոլորիս, որուն չնորհակալ աշխատանքը տարած էր գեղարուեստական ղեկավար Դոցենտ Դաւիթ Ջալեան: Վարձքը կատար բոլորին:

Գեղարուեստական յայտագրին յաջորդեց օրուան պատգամախօս Դոկտ. Փրոֆ. Վահագն Տատրեանի համապարփակ, տպաւորիչ բանախօսութիւնը:



*Դոկտ. Փրոֆ. Վահագն Տատրեան*

Ան նախ իր գոհունակութիւնը յայտնեց, թէ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ հայ աշակերտութիւնը իրար հետ կը խօսին հայերէն լեզուով: Յարգելի բանախօսը անդրադառնալով իր նիւթին, անհրաժեշտութիւն համարեց իր խօսքը մանրամասնել չորս ստորաբաժանումներու:

Ա) Արտակարգ հանգամանքը ցեղասպանութեան. բ) Տեսաբանական եւ մեթոտկան հարցերու փաստագրում. գ) Հայկական ցեղասպանութեան հիմնաքարերը եւ դ) եզրակացութիւններ:

Հայ դատի մասնագէտը ընդգծեց, թէ՝ «Մեծ եղեռնը իւրայատուկ տարազով ցեղասպանութիւն մըն է, որոնք կը գտնուին ուրիշ ցեղասպանութիւններու մէջ ալ, բայց կարգ մը տեսակէտներէ, հայկական ցեղասպանութիւնը արտակարգ երեւոյթ մըն է արդի պատմութեան մէջ, յատկապէս եթէ նկատի առնենք անոր պատմական նախընթացները, եղեռնի մտայղացումի, ծրագրումի, իրագործման եղանակները»: Ան երկու գլխաւոր պատճառներով առանձնացուց հայկական ցեղասպանութիւնը, որոնց հիման վրայ արդի պատմութեան մէջ մեծ եղեռնը արտակարգ կը համարուի: Առաջին, որ ոճրագործներն ու անոնց ժառանգորդները անպատիժ մնացին: Երկրորդ՝ որ ոճրագործներն ու անոնց ժառանգորդները յամառօրէն, ամբարտաւանօրէն տակաւին կը շարունակեն ուրանալ այդ ոճիրը:

➪ 4

# ԵԶԱԿԻ ԱՆԴՐԱՆԻԿ ՀԱՄԵՐԳ

## Նուպարեան Ազգային Վարժարանին Մէջ

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿԵԴՐՈՆ ԹԷ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԱԿՈՒՆՔ

Իրաւամբ՝ «Երգն ու երաժշտութիւնը կարեւոր ներգործութիւն կ'ունենան մասնաւորաբար մանուկներու եւ պատանիներու դաստիարակութեան վրայ, որովհետեւ երգով ու երաժշտութեամբ է որ մարդկային էակը կը գտնէ իր հոգեկան խաղաղութիւնը, եւ առօրեայէն բաժնուելով, կ'ապրի երազային աշխարհի մը ոլորտին մէջ»:

Այս խօսքերով բացումը կատարուեցաւ Նուպարեան Ազգ. վարժարանի «Երաժշտական կեդրոն»ի անդրանիկ հանդէսին, Հինգշաբթի 4 Մայիս 2000-ի երեկոյեան, «Պիրքտանեան հանդիսարահ»ին մէջ, ի ներկայութեան արուեստասէր հասարակութեան մը, գլխաւորութեամբ Հայաստանի մօտ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեանի: Հանդիսութեան կը հովանաւորէր Գերաշնորհ Սրբազան Հայրը եւ նախագահութիւնը՝ Տէր եւ Տիկ. Նուպար Սիմոնեաններ, սակայն անհանգստութեան կամ ճամբորդութեան պատճառներով ներկայ չէին գտնուած:



Կիթառիստներու խումբը ելոյթի պահուն, խմբավարութեամբ մանկավարժ Էլենա Ումանցկայայի:

Վարժարանի կորովի տնօրէնուհին՝ Տիկ. Հերմինէ Վարժապետեան շարունակելով իր իմաստալից խօսքը յարեց. «Երգով եւ երաժշտութեամբ սնած, մեծցած, դաստիարակուած երախաներ հիմնովին կը զատորոշուին ընկերութեան մէջ, իրենց զգայնութեամբ, ճաշակով, բարեկրթութեամբ, մէկ խօսքով՝ իրենց **կենցաղային գեղագիտութեամբ**: Այս տեսակէտով ալ՝ դպրոցին մէջ ոչ միայն երգ սորվեցնելը մեր նպատակը պիտի ըլլայ, այլեւ երաժշտութեան հանդէպ սէր, հետաքրքրութիւն արթնցնելը: Եւ այդ, իրագործելի դարձնելու համար վարժարանիս տնօրինութիւնը ծրագրեց հաստատել երաժշտական կեդրոն մը»:

Ապա շնորհալի տնօրէնուհին կարգ մը տեղեկութիւններ տալով Կեդրոնին մասին, յայտնեց թէ սոյն ծրագիրը կարելի եղաւ իրագործել շնորհիւ Ազգ. Իշխանութեան եւ յատկապէս Քաղաքական ժողովին հոգածութեան: Առ այժմ, ըսաւ ան,- ունինք 26 հայ աշակերտներ (21-ը Նուպարեանի աշակերտներէն եւ 5-ը այլ վարժարաններու սաներ, 7էն 16 տարեկան), որոնք վեց ամիսէ ի վեր կը հետեւին դասընթացքներու, ուսուցիչ ունենալով Գահիրէի պետական օփերայի եւ պալէի նուագախումբի արուեստագէտներ, իսկ ղեկավարութիւնը յանձն առած է վարժարանիս երգի եւ երաժշտութեան ուսուցիչներէն՝ մանկավարժ Կարինէ Լիյլոզեան: Տիկին Վարժապետեան եզրակացնելով իր խօսքը, յոյս յայտնեց որ մօտիկ ապագային սոյն երաժշտական կեդրոնը պիտի օգնէ դպրոցական նուագախումբի կազմութեան, սէր եւ հակում ունեցող ուսանողներով: Անոնք յարատեւելով եւ խորանալով թերեւս յառաջիկային կրնան փնտռուած արուեստագէտներ դառնալ, ինչ որ նպաստ կրնան բերել թէ վարժարանին եւ թէ եգիպտահայ համայնքի երաժշտական կեանքի աշխուժացման», ըսաւ ան:

Նախքան համերգի գործադրութեան անցնիլը Կեդրոնի վարիչ՝ Կ. Լիյլոզեան շեշտեց, թէ «Մեր ուսանողներու փափաքներուն եւս ընդառաջելով, վերջապէս կարողացանք ունենալ տարբեր գործիքներու վրայ նուագող ուսանողներ, ինչպէս, սրինգ, ջութակ, կիթառ, դաշնակ, հարուածային (արդի թմբուկներու կազմած) եւ ձայնամարզում: Ապա նախապատրաստելով երեկոյթի հոլովոյթը, պարզեց թէ նորավարժ ուսանողները շաբաթական միայն մէկ դասապահ կ'ունենային սորվելու եւ հետեւաբար վեցամսեայ արգասիքն է որ անոնք պիտի ներկայացնեն մեզի այսօր»:

Վարագոյրը բացուելուն հանդէսը սկսաւ Եգիպտոսի եւ Հայաստանի քայլերգներու նուագումով, Կեդրոնի սրնգահարներու խումբի կատարողութեամբ: Յայտագրի գործադրութեան՝ յաջորդաբար բեմ եկան ու նուագեցին Մինա Սարգիս (կիթառ), Նուէր Ալեքսանեան (դաշնակ), Ժիրայր Սուլթանեան (սրինգ), Մկրտիչ Աւետանեան (դաշնակ), Արի Տէր Օհաննէսեան (կիթառ), Ռիթա Զաքարեան (սրինգ), Այլին Թրայեան (դաշնակ), Ա. Թրայեան եւ Արփի Գազազեան (չորս ձեռքեան դաշնակի նուագածութիւն), Արփի Գազազեան (դաշնակ), Վարդան Թումայեանց (հարուածային գործիք), Տարօն Կապէեան (կիթառ), Վարդգէս Լիյլոզեան (սրինգ), Արէն Նազաշեան (հար. գործիք), Կարապետ Թելալեան (ջութակ դաշնակի նուագակցութեամբ Արփի Խաչերեանի), Արամ Աբիկեան (սրինգ), Բաւլօ Անանեան (հար. գործիք), Նարինէ Աւետանեան (կիթառ), Թալին Գալըշեան (երգ որ միակն է ձայնամարզութեան մէջ) եւ Վան Բլատեան (սրինգ):

Կարճ դադարէ մը ետք շարունակուեցաւ յայտագրի գործադրումը Արփի Խաչերեանի կիթառի նուագածութեամբ, Հրազդան Գալընեան (հար. գործիք), Շահան Թէրզիպաշեան (կիթառ), Գեղամ Կարսեան (սրինգ), Հրաչեայ Լիյլոզեան (ջութակ), Թ. Գալըշեան (երգ), Մարալ Պալաեան (հար. գործիք), Անայիս Միքայէլեան (սրինգ), Թ. Գալըշեան (Դոլուխանեանի «Երազ» երգը, որ բացառաբար յարմար չէր նորամարզ ուսանողուհիի ձայնին), Արփի Խաչերեան (դաշնակ), Գեղամ Թէրզիպաշեան (հար. գործիք), եւ վերջաւորութեան ելոյթ կիթառիստներու խումբին:

Հուսկ, բեմ բարձրացան բոլոր ուսանողները միատեսակ հագած ճաշակաւոր զգեստներով, որոնց ընկերացան իրենց ուսուցիչները, ուքրանացի երաժիշտներ՝ Էլենա Ումանցկայա (ջութակ, կիթառ), Միշէլ Վոյնալոյչ (սրինգ), Կեննատի Սարաբուլով (հարուածային գործիք) եւ Կարինէ Լիյլոզեան (դաշնակի եւ ձայնամարզութեան) ապա տիկին տնօրէնուհիին շնորհակալական խօսքերով վերջ գտաւ սոյն եզակի ձեռնարկը, որուն յաջորդեց հիւրասիրութիւն:

Արդարեւ երաժշտական հոգեկան վայելք մը կ'ապրէինք այդ երեկոյ, ուր մեր գմայլանքն ու գնահատանքը կը յայտնէինք խանդավառ ծափերով: Մէն մի մասնակցող ճիգ չէր խնայեր ներկայացնելու իր լաւագոյնը, մասնաւորաբար այն երախաները, որոնք իրենց դալար մատիկներով, խոշոր գործիքներու վրայ կը ջանային նուագել ամենայն նախանձախնդրութեամբ եւ նրբագացութեամբ:

Երաժշտական կեդրոնի՝ այս առաջին քայլերը որպէսզի իր բարեբեր հունձքը ունենայ, ամէն ուսանող պարտի շարունակել եւ յարատեւել նոյն կորովով, առաւել կիրքով եւ աշխատասիրութեամբ:

Յոյսեր կ'ուզենք կապել համայնքէն ներս հաստատուած այս երաժշտական ակունքին հետ, որմէ դեռեւս պիտի բխի շնորհաշատ հայորդիներ, ուր իրենց գեղարուեստական ճաշակը պիտի զարգանայ, եւ գէթ այս ձեւով կարելի պիտի ըլլայ հեռացնել այն անհաճոյ եւ խորթ երգերէն եւ երաժշտութենէն, զոր սովորաբար կ'ունկնդրեն իրենց շրջապատին մէջ:

Սրտաբուխ շնորհաւորութիւններ կը յայտնենք բոլորին անխտիր, մաղթելով առաւել բեղուն գործունէութիւն եւ նորանոր յաջողութիւններ, վարժարանի հիմնադրութեան 75-ամեակի սեմին:

Ա. Մ.

---

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

## Ս.Դ. ՀԱՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը իր լիագումար ժողովը գումարեց Պէյրութի մէջ, 8-12 Ապրիլ 2000ին եւ համակողմանի քննարկման ենթարկեց ազգային-քաղաքական եւ Սփիւռք - Հայրենիք հարցերը եւ տուաւ համապատասխան որոշումներ:

Այս առթիւ, ժողովը յատուկ քննարկման ենթարկեց ժամանակէ մը ասդին Լիբանանի Շրջանի մեր կուսակցական կեանքէն ներս ծնունդ առած տարակարծութիւնները եւ որոշեց.-

Ա. Վերջ տալ անհասկացողութեան անբաղձալի վիճակին: Մեկնելով կուսակցութեան ազգային ընդհանուր մտահոգութիւններէն, նշանակեց Լիբանանի Հնչակեան շարքին միասնականութիւնը մարմնաւորող նոր Վարիչ Մարմին մը, որուն անձնակազմը՝ բաղկացած հետեւեալ ընկերներէն, կը յայտարարենք առ ի գիտութիւն մեր կուսակցութեան շարքային ընկերներուն եւ հանրութեան.

Ընկերներ՝ Սեպուհ Գալփաքեան
Միհրան Արապեան
Եփրեմ Թոքճեան
Վասիլ Ագրլեան
Յովհաննէս Ուզուրլեան
Միհրան Սէֆէրեան
Տոքթ. Սերոբ Տէմիրճեան
Տոքթ. Մացակ Փօլատեան
Տոքթ. Մարտիկ Ժամկոչեան
Պետրոս Ալթըփարմաքեան
Կարապետ Պաղսարեան
Նազարէթ Ճէրէճեան
Կիրակոս Թիւթիւնճեան

Բ. Առ այդ կոչ կ'ուղղենք եւ կը հրահանգենք մեր անձնուէր Հնչակեան շարքային ընկերներուն հաւաքական գիտակցութեամբ համախմբուելու նորակազմ Վարիչ Մարմնին շուրջ եւ լծուելու ազգանուէր աշխատանքին:

Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Պէյրութ, 13 Ապրիլ 2000

---

# «ՈՂՋՈՅՆ ՀԱՅՐԵՆԻՔ»

## ԵՒ ՈՂՋՈՅՆ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ

*«Բացարձակ չեմ կրնար հաւատալ, թէ աշխարհի մէջ գտնուի անձ մը, որ երգ կամ երաժշտութիւն չի սիրեր: Որքան ատեն որ սիրտ մը կը բաբախէ, անպայման այնտեղ կայ սրտին խօսող երգն ու երաժշտութիւնը»: Այսպէս ըսած է անուանի երաժշտագէտ մը: Իսկ մենք աւելցնելով իր խօսքը կը յարենք. «Որքան ատեն որ հայ սիրտ մը կը բաբախէ, անպայման այնտեղ կայ հայ երգն ու երաժշտութիւնը»:*

*Ահա այդ հայ երգի եւ երաժշտութեան երեկոյթի օրն էր, որ ըմբոշխնեցինք Գալուստեան Ազգ. վարժարանէն ներս, Կիրակի 16 Ապրիլի երեկոյեան, մասնակցութեամբը մեր մատղաշ սերունդի երկսեռ աշակերտութեան:*

*Սոյն ձեռնարկը որ վերտառուած էր «**Ողջոյն Հայրենիք**» նշանաբանով, կը հովանաւորէր թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան եւ կը նախագահէր Քաղաքական Ժողովի ատենապետ Պր. Նուպար Սիմոնեանն ու իր ազնիւ տիկինը: Իրենց ներկայութեամբ կը պատուէին երեկոյթը Եգիպտոսի մօտ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան, համայնքիս ներկայացուցչական դէմքեր, տնօրէններ, ուսուցիչներ, ծնողներ եւ արուեստասէր հասարակութիւն մը:*

*Հակիրճ բացման խօսքով ելոյթ ունեցաւ վարժարանի ժրաջան տնօրէն՝ Պր. Սիմոն Զամքերթճեան եւ բարի գալուստ մաղթելէ ետք, յայտնեց թէ քանի մը տարիէ ի վեր այս տեսակ ձեռնարկ չէր գործադրուէր. սակայն, ըսաւ ան, «Շնորհիւ հայրենի վաստակաւոր երաժիշտ, միջազգային մրցոյթի դափնեկիր՝ Դոցենտ Դաւիթ Զալեանի, այսօր պիտի ունենանք հայ երգի ու երաժշտութեան նուիրուած կոկիկ յայտագիր մը:*



Երգչախումբը ելոյթի պահուն, խմբավարութեամբ Դոց. Դաւիթ Զալեանի

*Ապա բեմին վրայ, յաջորդաբար տեղ գրաւեցին վարժարանի աշակերտական երգչախումբի անդամները. ձախին, ուշադիր նստաւ հայրենի դաշնակահարուհի մանկավարժ Իրինա Զալեան, որմէ ետք բեմ բարձրացաւ խմբավար Դ. Զալեան: Ան նախաբան մը տալով հայ երաժշտութեան կարեւորութեան մասին մեր ազգային վարժարաններէն ներս, տեղեկացուց թէ ինք եւ իր տիկինը հայրենիք պիտի վերադառնան, չորս ու կէս տարի երգ ու երաժշտութիւն աւանդելէ ետք Գահիրէի զոյգ ազգային դպրոցներուն մէջ:*

*Ապա սկսաւ երգահանդէսը: Իսկապէս հրճուալի պահեր կ'ապրէինք այդ մատաղ հայորդիներուն հետ: Անոնք երաժշտութեամբ լիցքաւորուած, աշխոյժ տրամադրութեամբ կ'երգէին դպրոցական, հայրենասիրական, ազգագրական եւ գարնանային երգեր:*

*Յաջորդաբար ունկնդրեցինք «Ջան հայրենիք», «Գարուն Երեւան», «Գարուն» (մեներգի բաժինը կատարեց Ալիս Ժամկոչեան), «Ողջոյն դպրոց», «Իմ ուսուցիչ», «Սարդարապատ», «Հայաստան» (մենակատար՝ Տիանա Միլատ), արաբերէնով՝ «Թէլէէթ եա մահլա նուրհա», «Spring» եւ «Edelweiss» անգլերէն երգերը, (դարձեալ մեներգի բաժինը զգայնութեամբ կատարեց Տ. Միլատ): Որմէ ետք հայրենի արուեստագէտներ՝ Յարութիւնեան ամոլի որդին էյամը՝ զուսպ արտայայտչականութեամբ ջութակի վրայ նուագեց ռուսական կտոր մը, որ գնահատուեցաւ ներկաներուն կողմէ ծափողջյուններով: Յայտագիրը շարունակելով, աշակերտները երգեցին «Երիտասարդական քայլերգ»ը, «Երաժշտութիւն», «Do, re, me»ն (մենակատարութեամբ խոստմնալից Ալիս Ժամկոչեանի եւ Լեւոն Արթինեանի), «Երազանք», «Երեւան - էրեբունի», եւ «Հայ երգը»:*

*Բոլոր երգներն ալ ընդունուեցան ջերմ խանդավառութեամբ, մինչ հայրենասիրական երգերը արժանացան ներկաներուն խոր հիացմունքին: Խմբավարին, աշակերտներուն ապա դաշնակահարին ներդաշնակ փոխ-ըմբռնումը մեծապէս նպաստեց խմբերգներուն մատուցման, որոնք ներկայացուեցան հարազատութեամբ եւ հաղորդակից ջերմութեամբ: Վերջապէս միաձոյլ ներշնչուածութեամբ, թարմ կատարումները հոգեկան բաւարարութիւն պատճառեցին ունկնդիրներուն, որոնք իրենց գնահատանքը կը յայտնէին երկարատեւ ծափահարութիւններով:*

*Քաղցրաւենիներու հիւրասիրութեամբ վերջ գտաւ սոյն ձեռնարկը:*

*Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք բոլորին յատկապէս շնորհաւորութեան խօսք ունինք խմբավար Դ. Զալեանին եւ իր տիկնոջ Իրինայի, որոնք յաջողեցան կրկնակի աշխատանքով, հայ աշակերտին սիրուեցնել հայ երգն ու երաժշտութիւնը: Կ'ողջունենք նաեւ դպրոցի տնօրէնութիւնը եւ բոլոր անոնք որոնք սատար հանդիսացան սոյն երգահանդէսի յաջողութեան:*

*Ա. Մ.*

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ՏՈՔԹ. ՄԻՀՐԱՆ ՍԷՖԷՐԵԱՆ**
**ԵՒ**
**ՕՐ. ԼԻՆՏԱ ՅԱԿՈԲԵԱՆ**

ԱՄՆ - ԳԱՀԻՐԷ 30 Ապրիլ 2000

*Մեր ջերմ խնդակցութիւնները կը յայտնենք նորապսակ ամոլին, մաղթելով անամպ կեանք: Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նաեւ իրենց ծնողաց՝ Տիկին Ալիս Սէֆէրեանի եւ Տիկին Հայկուհի Յակոբեանի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն:*

## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ԳԷՈՐԳ ՋԷՐՔԷՋԵԱՆ**
**ԸՆԴ**
**ՕՐ. ԹԱԼԻՆ ՃՌՃՌԵԱՆԻ**

Մոնթրէալ, Աղեքսանդրիա 29 Ապրիլ 2000

*«Ջահակիր» եւ իր շրջանակը սրտագին կը շնորհաւորեն խօսեցեալ զոյգին, նաեւ անոնց ծնողաց՝ Տէր եւ Տիկ. Յովհաննէս եւ Մանուշակ Ջէրքէզեաններուն (Մոնթրէալ) եւ Տէր եւ Տիկ. Արթօ եւ Նուարդ Ճռճռեաններուն, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն, մաղթելով երջանիկ կեանք խօսեցեալ զոյգին:*

## ԵՒՐՈՊԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԻ ԼԻԱԳՈՒՄԱՐ ՆԻՍՏԸ ՅՈՒՆԻՍԻՆ ԿԸ ՔՆՆԱՐԿԷ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԴԱՄԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԸ

1 Եւրոպայի Խորհրդին: Մտքերի փոխանակման ընթացքում ելոյթ է ունեցել նաեւ ՀՀ ԱԺ պատուիրակութեան ղեկավար, արտաքին յարաբերութիւնների յանձնաժողովի նախագահ Յովհաննէս Յովհաննիսեանը: Նա նշել է, որ Հայաստանի անդամակցութիւնը եւս մէկ լրացուցիչ եւ կարեւոր խթան կը հանդիսանայ ժողովրդավարական բարեփոխումների համար: Այն, ըստ հայ պատգամաւորի, կը նպաստի նաեւ տարածաշրջանում փոխվստահութեան մթնոլորտի ձեւաւորմանը, նոր ուղի կը բացի տարածաշրջանում տնտեսական համագործակցութեան համար:

Բանաձեւի նախագիծը, որը քննարկուել է կէտ առ կէտ, քաղաքական հարցերի յանձնաժողովը ընդունեց միաձայն: Ձեռնպահ է մնացել մէկ պատգամաւոր: Դրանով քաղաքական հարցերի յանձնաժողովը երաշխաւորել է Հայաստանի անդամակցութիւնը Եւրախորհրդին:

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՈԳԵԿՈՉՈՒՄՆԵՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

2 Խնամուած բանախօսութեան՝ Տոքթ. Տատրեան անհրաժեշտ համարեց ջախջախիչ փաստեր հաւաքելը: Ապա դիտել տուաւ թէ առաջին համաշխահրային պատերազմի ընթացքին, ցարական Ռուսիոյ, Մեծն Բրիտանիոյ եւ Ֆրանսայի դիւանագէտները ամբաստագրեր հրապարակած են Օսմանեան կառավարութեան դէմ, սակայն կարեւոր են այն փաստաթուղթերը, որոնք 1918-ին Մեծն բրիտանական եւ ֆրանսական կառավարութիւնները Կ. Պոլիսը գրաւելէ ետք, թրքական արխիւներէն փաստաթուղթեր վերցուած են: Նման կարեւորութիւն կը ներկայացնեն, ըստ ան,- գերմանական եւ աւստրիական փաստաթուղթերը: Մասնագէտ բանախօսը կարեւոր համարեց 1920-էն, 30ական թուականներուն վերապրող հայերու վկայութիւններու հաւաքումը:

Շուրջ 1.5 ժամ տեւող իր չահեկան խօսքին մէջ, Փրոֆ. Տատրեան հանգամանօրէն արտայայտուեցաւ, նշելով դէպքեր, թուականներ, փաստացի տուեալներով: Ան թուեց ու վերլուծեց ցեղասպանութեան ծրագրման եւ իրագործման եղանակները, միշտ ապացոյցներու վրայ, որոնց աղբիւրները թրքական պատերազմական ատեանի, Օսմանեան երեսփոխանական ժողովի եւ ծերակոյտի քննիչ յանձնաժողովի հաւաքուած նիւթերն ու խոստովանութիւններն էին:

Կորովամիտ Փրոֆեսորը յաւատեսութեամբ արտայայտուեցաւ, որ թուրք մտաւորականներ ու երիտասարդ հետազօտողներ լծուած են թրքական ուրացման քաղաքականութեան մէջ ու ապացուցական փորձերով, թուրք ժողովուրդին մէջ գիտեն պատրաստել հայկական ցեղասպանութեան ճանաչումը, օրպէս օրինակ բերելով իր հեղինակած երկասիրութեան թրքերէն թարգմանութեան, հրատարակութեան եւ Թուրքիոյ մէջ ցրուումին հետ կապուած բոլոր վտանգներու յանձնառութիւնը անոնց կողմէ, որ պսակուած էր յաջողութեամբ Թուրքիոյ գերագոյն դատարանի վճիռով:

Դոկտ. Տատրեան յոյս յայտնեց, որ մօտերս լոյս պիտի ընծայուին նաեւ ցեղասպանութեան փաստագրման նուիրուած իր ութ յօդուածներու հաւաքածոն:

Յարգելի Փրոֆ. Վահանգ Տատրեան իր հմատալից խօսքով, կարողացաւ տարիներու յաջորդական պրպտումներն ու անխոնջ ուսումնասիրութիւնները փոխանցել ներկաներուն մէկ ու կէս ժամկէտով եւ արժանանալ անոնց միահամուռ գնահատանքին, որոնք որոտընդոստ ծափողջոյններով, իրենց անվերապահ երախտագիտութիւնը կը յայտնէին:

Վերջաւորութեան, Սրբազան Հայրը իր խորին շնորհակալութիւնները յայտնելէ ետք բանիմաց պատգամախօսին եւ բոլորին, բեմ հրաւիրեց Գահիրէի Թեմական Ժողովի ատենապետ՝ Պր. Անդրանիկ Մեսրոպեանը, որ յանուն Ազգ. Իշխանութեան պատշաճ ոսկի յուշանուէրով մը պատուէ Փրոֆ. Վ. Տատրեանը:

Հուսկ ուրեմն, Գերաշնորհ Սրբազան Հօր եւ Հայր Մխիթար Վարդապետին «Պահպանիչ»ով վերջ գտաւ սոյն բացառիկ յուշահանդէսը: Որմէ ետք ներկաները հիւրասիրուեցան Հանդիսասրահի կից՝ Նուպարեան վարժարանի բակին մէջ, Տիկնանց Խնամակալութեան կողմէ կազմակերպուած քաղցրաւէններու ընդունելութեան եւ ապա մեկնեցան 85-րդ տարելիցին առթիւ, նահատակներու յիշատակը յարգած ըլլալու ներքին գոհունակութեամբ:

**ԱՊԱՀՈՒՆԻ**

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպանութեան երրորդ քարտուղար՝ Պր. Ֆատէյ Չարչօղլեան եւ իր տիկինը՝ Աննան վերջերս բախտաւորուած են առջինեկ, մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Աշոտ:

Այս ուրախ առթիւ «Ջահակիր» ջերմօրէն կը շնորհաւորէ նորածինին ծնողքը եւ մեծ ծնողները, մաղթելով արեւշատ եւ երկար կեանք նորածին մանկան:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի քաջալերութիւն թերթիս ազգօգուտ գործունէութեան, Տէր եւ Տիկին Հայկ Աստուրեան կը նուիրեն 100

Իրենց սիրելի դուստրին՝ Օր. Թալին Ճռճռեանի ընդ Պր. Գէորգ Ջէրքէզեանի նշանախօսութեան ուրախ առթիւ, Տէր եւ Տիկին Արթօ Ճռճռեան կը նուիրեն 50

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այսու մեր շնորհակալութիւնը կը յայտնենք Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի Ատենապետ՝ Պր. Լեւոն Գաղթացեանին, որ սիրայօժար կերպով ստանձնեց լուսաւորութեան աշխատանքը դպրոցիս դաշտահանդէսին, մեծապէս օգտակար հանդիսանալով մեզի:

* * *

Այսու մեր երախտագիտութիւնը կը յայտնենք Տեարք Նուպար եւ Հրաչ Սիմոնեան եղբայրներուն, որոնք սիրայօժար կերպով ստանձնեցին մեր դպրոցի այս տարեշրջանի «ՄԵՆՔ ԵՒ ՄԵՐ» պարբերականին՝ ամբողջ ծախսերը: Դպրոցին այս հրատարակութիւնը անհրաժշտութիւն մըն է քաջալերելու համար մեր աշակերտները:

Տնօրէնութիւն՝
**ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ**

## ՅԱՋՈՐԴ ԹԻՒՈՎ ԿԱՐԴԱԼ

Հայոց ցեղասպանութեան մասնագէտ՝ Դոկտ. Փրոֆ. Վահագն Տատրեանի լրագրական ասուլիսը, որ վերջերս ան կատարեց Եգիպտահայ Մամուլին հետ, «Ռամսէս Հիլթըն»ի մէջ:

**ԽՄԲ.**

## «ԵՐԿՐԱՊԱՀ» ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐ ԴՈՒՐՍ ԳԱԼՈՎ «ՄԻԱՍՆՈՒԹԻՒՆ» ԴԱՇԻՆՔԷՆ ...

1 *ղեկավար ընտրուած է Միասնիկ Մալխասեանը, քարտուղար՝ Արա Կէտիկեանը:*

*Նորակազմ պատգամաւորական խումբը պիտի փորձէ դառնալ խորհրդարանական նոր մեծամասնութիւն, այժմ որ «Միասնութիւն» խմբակցութիւնը կորսնցուցած է իր մեծամասնութիւնը եւ 131 հոգինոց խորհրդարանէն ներս ունի միայն 50 պատգամաւոր:*

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացընելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք ղրկել « M. BALAYAN »ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

ԳԱՀԻՐԷ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Կիրակի, 28 Մայիս 2000-ի առաւօտեան, Ս. Պատարագի ընթացքին, Հայաստանի առաջին պետականութեան հռչակման, 1918 ՄԱՅԻՍ 28-ի առթիւ, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. պատարագ:

Պիտի պատարագէ

**ՀՈԳՇ. Տ. ԳԱԼՈՒՍՏ ՎԱՐԴԱՊԵՏ ԴԱՐԲԻՆԵԱՆ**

Ապա տեղի պիտի ունենայ Հայրենիքի ազատագրութեան ճանապարհին վրայ Հերոսացեալներուն ի հանգիստ յատուկ հոգեհանգստեան արարողութիւն: Յաւիտենական հանգիստ, հայրենի ազատագրութիւնը կերտող մարտիկներու հոգիներուն:

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10-ին
Հոգեհանգիստ - - 11-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Յառաջիկայ Երկուշաբթի, 22 Մայիս 2000-ին, **ՏՕՆ Է ՍԱՐՏԱՐԱՊԱՏԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ** քաջարի հերոսներուն, որոնց անունը եւ հերոսական խոյանքը միշտ պիտի յիշուի:

Այս առթիւ Կիրակի 21 Մայիս 2000-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի Ս. եւ անմահ Պատարագ:

Պիտի պատարագէ

**ՀՈԳՇ. Տ. ԳԱԼՈՒՍՏ ՎԱՐԴԱՊԵՏ ԴԱՐԲԻՆԵԱՆ**

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին
Ս. Պատարագ - - 10.00-ին
Հոգեհանգիստ - - 11.00-ին

Թող Տէրը լուսաւորէ ազգասէր ու հայրենանուէր բոլոր այն հերոսներուն հոգիները որոնք ինկան, ազգային ազատագրական բուռն պայքարի ճանապարհին, կերտելով լուսաւոր էջ Հայոց նոր շրջանի պատմութեան մէջ:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Կիրակի 21 Մայիս, 2000 Կ. Ե. ժամը 7-ին

**ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**

Հովանաւորութեամբ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Բարեխնամ Առաջնորդ Հայոց Եգիպտոսի
Նախագահութեամբ
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՒԵՏԻՍ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻ**
Տեղի Պիտի Ունենայ Նաեւ
**ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ**
Գծագրութեանց Եւ Ձեռային Աշխատանքներու
*Սիրելի հրաւէր բոլորին*

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**

Կիրակի 28 Մայիս 2000-ի երեկոյեան ժամը 6-ին
«Պըլըքտանեան» Հանդիսասրահին Մէջ

Հովանաւորութեամբ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Թեմիս Բարեխնամ Առաջնորդ
Նախագահութեամբ
**ՏԷՐ եւ ՏԻԿԻՆ ՊԵՐՃ ՍՈՒԼԹԱՆԵԱՆԻ**
*Սիրալիր հրաւէր բոլորին*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير

جريدة أسبوعية

ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR

Armenian Weekly

P.O.Box 2111 (Cairo),

Tel: 4530327, Fax: (202) 4522282

E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1426 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ՅՈՒՆԻՍ 2000 · ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. · عدد رقم ١٤٢٦ — الخميس ١ يونيو ٢٠٠٠

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՍՏԵՂԾՈՒԵՑ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՈՒԺԵՐՈՒ ՆՈՐ ՄԻՈՒԹԻՒՆ

*Հայաստանի Սոցիալ-Դեմոկրատական ուժերի միութեան ստեղծմանն էր նուիրուած «Մարդու իրաւունքներ 96» կուսակցութեան գրասենեակում հրաւիրուած մամլոյ ասուլիսը:*

*Նորաստեղծ միութեան մէջ, նախօրօք յայտարարուած հինգի փոխարէն, մտան երեք՝ «Մարդու իրաւունքներ 96», Հայաստանի Սոցիալ-Դեմոկրատական եւ Սոցիալ-Դեմոկրատական Հնչակեան կուսակցութիւնները, իսկ «Ազգային անվտանգութիւնը» եւ «Հայաստան-Սփիւռքը» առայժմ գործելու են դիտորդի կարգավիճակով:*



*Հայաստանի ՍԴՀԿ նախագահ Ծորճ Յակոբեան ելոյթի պահուն*

*ՀՍԴՀԿ-ի նախագահ Ծորճ Յակոբեանի խօսքերով, դաշինքի ստեղծման նպատակն է համախմբել Հայաստանի սոցիալ-դեմոկրատական ուժերը՝ հասարակութիւնում դեմոկրատական սոցիալիզմի գաղափարները տարածելու համար, որը թոյլ կը տայ ազատուել լիբերալիզմի ծայրայեղականութիւնից եւ վերջապէս, ստեղծել միջին խաւ:*

*Միութեան մաս կազմող կուսակցութիւնների նախագահները յայտարարեցին իրենց պատրաստակամութիւնը՝ համագործակցելու գաղափարակից բոլոր ուժերի հետ, այդ շարքին չդասելով, սակայն «Արդարութիւն» դաշինքը, որը նրանց կարծիքով, աւելի շուտ հիմնւում է կոմունիստական, քան՝ սոցիալ-դեմոկրատական գաղափարախօսութեան վրայ:*

*Խօսելով նորանշանակ կառավարութեան հանդէպ իրենց վերաբերմունքի մասին, «Մարդու իրաւունքներ 96» կուսակցութեան նախագահ Ռուբէն Թորոսեանը նշեց, որ իրենք դէմ են կառավարութեան անընդհատ փոփոխութիւններին, իսկ կազմաւորման սկզբունքը թոյլ չի տալիս հետեւութիւններ անել գաղափարական ուղղուածութեան մասին: Ինչեւէ, Ռ. Թորոսեանը չի բացառում, որ այս կառավարութիւնը կ'աշխատի մինչեւ նախագահի պաշտօնավարման աւարտը, քանի որ աւելի լոյալ է նախագահի հանդէպ:*

## ՀՀՇ-Ն ՎԵՐԱԴԱՌՆՈՒՄ Է ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՍՊԱՐԷԶ

*«ՀՀՇ-ն վերադառնում է քաղաքական ասպարէզ: Կուսակցութիւնն այսօր անելիք ունի եւ պէտք է շարունակի 1988թ. սկսած իր առաքելութիւնը», ԱՐՄԷՆՓՐԵՍԻ մամուլի սրահում անցկացրած ասուլիսում յայտարարեց ՀՀՇ վարչութեան նախագահի պաշտօնակատար Ալեքսանդր Արզումանեանը: Ապա յարեց «Այս պայմաններում ՀՀՇ-ն այլեւս չի կարող լռել»:*

*Իսկ ՀՀՇ իշխանութեան տարիներին եղած բացթողումները բանախօսը բացատրեց հիմնականում նորանկախ երկրներին յատուկ օրինաչափութիւններով, ինչպէս նաեւ կուսակցութեանը «կպած» պատեհապաշտներով, որոնցից այսօր ՀՀՇ-ն ձերբազատուել է:*

*Լրագրողների այն հարցին, թէ ով է կուսակցութեան լիտեր, որը, ՀՀ նախագահի հրաժարականի դէպքում (դա ՀՀՇ հիմնական պահանջն է), կ'առաջադրուի իբրեւ նախագահի թեկնածու, Ա. Արզումանեանը պատասխանեց, թէ կուսակցութիւնում կան տասնեակ լիտերներ: Իսկ Լեւոն Տէր-Պետրոսեանի մասին ասուեց, թէ նա 1998թ. իշխանափոխութիւնից (Պր. Արզումանեանի խօսքով՝ «յեղաշրջումից») յետոյ ոչ մի վայրկեան չի լքել հանրապետութիւնը եւ ներկայումս հետեւում է իրադարձութիւններին:*

*Ա. Արզումանեանը նշեց, թէ իրենց յայտնի չէ ՀՀՇ նախագահ Վանօ Սիրադեղեանի գտնուելու մասին որեւէ տուեալ եւ իրենք մտահոգուած են դրանից: ՀՀՇ-ն Վ. Սիրադեղեանի նկատմամբ յարուցուած քրէական գործը համարում է «քաղաքական խայտառակ հետապնդում եւ պատուէր» այն դէպքում, երբ վերջինս չէր խուսափում դատարանի առջեւ կանգնելուց:*

*ՀՀՇ նախագահի պաշտօնակատարը նոր նշանակուած վարչապետի վերաբերեալ ասաց, որ Հայաստանի ներքաղաքական իրավիճակը կայունացնելուն ուղղուած ցանկացած քայլ իրենք կ'ողջունեն, սակայն Անդրանիկ Մարգարեանի նշանակումն այդպիսին չէր: «Ռ.Քոչարեանն իր հարցերն է լուծում», նշեց Ալեքսանդր Արզումանեանը:*

*Ասուլիսին մասնակցում էին նաեւ կուսակցութեան այլ ղեկավարներ:*

## ՆԱԽԱԳԱՀ Ռ. ՔՈՉԱՐԵԱՆ ՈՒԱՇԻՆԿԹԸՆ ՊԻՏԻ ԱՅՑԵԼԷ ՅՈՒՆԻՍԻ ՎԵՐՋԸ ՔԼԻՆԹԸՆԻ ՀԵՏ ՏԵՍԱԿՑԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Նախագահ Ռոպերթ Քոչարեան Յունիսի վերջը իր առաջին այցելութիւնը պիտի տայ Սպիտակ Տուն, ուր պիտի տեսակցի նախագահ Պիլ Քլինթընի հետ:

Արտաքին գործոց նախարարութեան բանբեր Արա Պապեան յայտարարեց, թէ այցելութիւնը տեղի պիտի ունենայ Յունիս 26-27: Բայց Քոչարեանի խօսնակը՝ Վահէ Գաբրիէլեան ուղղեց, ըսելով թէ ճիշդ թուականը տակաւին չէ որոշուած:

## ԴՐՕՅԻ ԱՃԻՒՆՆԵՐԸ ԱՄՓՈՓՈՒԵՑԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Կիրակի, 28 Մայիսին, Հայաստանի առաջին Հանրապետութեան ռազմական նախարար Դրաստամատ Կանայեանին (Դրօ) վերջին հրաժեշտը տուին հազարաւոր Հայաստանցիներ ու Սփիւռքահայեր, որոնք հաւաքուեցան Ապարան քաղաքին մէջ:

27 Մայիսին զօրավարի աճիւնները Մայր Աթոռ Ս. Էջմիածնէն փոխադրուած էին Ապարանի Ս. Պօղոս-Պետրոս (Պագիլիք?) եկեղեցին: Դէպի Ապարան երկարող ճամբաները կը ծածանէին ՀՀ պետական եռագոյն դրօշակներով: Եկեղեցւոյ մէջ, Դրօյի աճիւններու մօտ պատուոյ պահակ կանգնեցան Պաշտպանութեան Նախարարութեան բարձրաստիճան սպաներ: Հոգեհանգստեան արարողութենէն ետք, Դրօյի աճիւնները ամփոփող դագաղը հրասայլի վրայ փոխադրուեցաւ դէպի Ապարանի յուշահամալիր (հեղինակ՝ ճարտարապետ՝ Ռաֆայէլ Իսրայէլեան): Հակառակ յորդահոս անձրեւին, յուղարկաւորներու ստուար բազմութիւն մը լեցուցած էր յուշահամալիրի շրջափակը:

Ներկայ էին Նախագահ Ռոպերթ Քոչարեան, Գարեգին Բ. Ամենայն Հայոց Հայրապետը, Ղարաբաղի թեմի Հայոց Առաջնորդ՝ Գերշ. Տ. Պարգեւ Ս. Արք. Մարտիրոսեան, Վարչապետ Անդրանիկ Մարգարեան, Ազգային Ժողովի երեսփոխաններ ու կառավարութեան անդամներ:

Հոս Դրօյի գործունէութեան մասին արտայայտուեցան Խորհրդարանի Նախագահ Արմէն Խաչատրեան, Պաշտպանութեան Նախարար՝ Սերժ Սարգսեան, Դրօյի որդին՝ Մարտիրոս Կանայեան, Արագածոտնի մարզպետ՝ Հրայր Կարապետեան եւ ուրիշներ:

Դրօյի աճիւնները յուշահամալիրէն ձեռնաբարձ փոխադրուեցան քիչ հեռու գտնուող բարձունքը: Հնչեցին պատուոյ համազարկեր, որմէ ետք զօրավարի աճիւնները ամփոփուեցան մայր հողին մէջ:

## ԻՍՄԱՅԻԼ ՃԷՄ ԿՐԿՆԵՑ ԹԷ ԹՈՒՐՔԻԱ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԿԸ ՑՈՒՑԱԲԵՐԷ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԶՕՐԱԿՑՈՒԹԻՒՆ

### «Հայերը Պէտք Է Վերադարձնեն Լեռնային Ղարաբաղի Բռնագրաւուած Հողամասերը»

Արտաքին Նախարար Իսմայիլ Ճէմ երէկ գիշեր վերադարձաւ Ատրպէյճանէն, ուր նախորդ իրիկուն գացած էր միօրեայ այցելութեան մը շրջագծով: Արտաքին Նախարարը լրագրողներուն յայտնեց թէ Ատրպէյճանի Նախագահին հետ ունեցաւ շինիչ, օգտաւէտ տեսակցութիւն մը, որու ընթացքին օրակարգի եկան Պաքու-Ճէյհան քարիւղատար խողովակի գործընթացի այժմու վիճակն ու Լեռնային Ղարաբաղի հարցը: Ճէմ տեսակցութիւններ ունեցաւ նաեւ Ատրպէյճանի Արտաքին Նախարար Վիլայէթ Կուլիյէվի հետ:

Ճէմ ըսաւ որ Պաքու-Ճէյհան քարիւղատար խողովակի ծրագիրը իր այսօրուան հանգրուանին հասած է Նախագահ Ալիեւի ճիգերուն շնորհիւ: Իսկ Թուրքիա ելմտական գետնի վրայ իր ձեռքէն եկածը կ'ընէ այդ ծրագիրը ժամ առաջ իրականացնելու համար:

Ճէմ յատուկ կերպով ընդգծեց Լեռնային Ղարաբաղի հարցն ալ: Ան Ալիեւի հետ տեսակցութեան ընթացքին կրկնեց թէ այս հարցին մէջ Թուրքիա կը կանգնի Ատրպէյճանի կողքին եւ կը մտածէ թէ հայերը պէտք է վերադարձնեն իրենց բռնագրաւած հողամասերը: Թուրքիա եղբայրաբար նեցուկ կը կանգնի Ատրպէյճանի եւ սրտանց պիտի ընդունի միայն այնպիսի լուծում մը, որ ընդունելի պիտի ըլլայ նաեւ Ատրպէյճանի կողմէ: Թուրքիա միշտ զօրավիգ պիտի կանգնի Ատրպէյճանի, ըսաւ Իսմայիլ Ճէմ:

Իսմայիլ Ճէմ անդրադարձաւ նաեւ Տէմիրէլի կողմէ առաջարկուած Կովկասեան Կայունութեան Ուխտի հարցին, որ ի մի պէտք է բերէ Կովկասեան երեք հանրապետութիւններու կողքին Ամերիկան, Ռուսաստանը, Թուրքիան: Ճէմ ըսաւ որ Թուրքիա պաշտպան կը կանգնի այդ ծրագրին, բայց ոմանք կ'աճապարեն եւ կը սպասեն որ ատիկա ժամ առաջ իրականանայ: Մինչդեռ դիւրին չէ Կովկասի մէջ կայունութիւն հաստատել:

## ԸՍՏ ԱԼԻԵՒԻ, ՄԱՐՏԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՎԵՐՍԿՍՈՒՄԸ ԽԵԼԱՅԵՂՈՒԹԻՒՆ ԿԸ ԼԻՆԷՐ

*Ատրպէյճանի նախագահն այն կարծիքին է, որ ղարաբաղեան ճակատում մարտական գործողութիւնների վերսկսումը խելայեղութիւն կը լինէր:*

*«Վերսկսելով պատերազմը, կարելի է ազատագրել բռնագաւթուած տարածքները, բայց կորուստներն անչափ մեծ կը լինեն», -ընդգծել է նա՝ յայտարարելով, որ ինքը խնդրի քաղաքական կարգաւորման կողմնակիցն է: Միաժամանակ նախագահը նշել է, որ «խաղաղ գործընթացի ձգձգումը բարդացնում է ղարաբաղեան պատերազմի հետեւանքով անօթեւան մնացած աւելի քան մէկ միլիոն ատրպէյճանցի գաղթականների առանց այդ էլ ծանր վիճակը»:*

## ՂԱՐԱԲԱՂԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՍԿՍԱՒ ՔԱԼԵԼ

Ղարաբաղի Նախագահ Արկադի Ղուկասեան, որ մահափորձի ենթարկուելէ ետք, ապաքինման շրջան կը բոլորէ Երեւանի «Միքայէլեան» վիրաբուժական կեդրոնին մէջ, մեծ հաւանականութեամբ յաջորդ շաբաթ դուրս պիտի գայ հիւանդանոցէն: Հիւանդանոցի պատասխանատուները յայտնեցին որ Նախագահը արդէն սկսած է քալել եւ անոր առողջական վիճակը բուժման համապատասխան կ'ընթանայ:

Նախագահին կատարելապէս ապաքինման համար տակաւին երկու շաբաթ պէտք է:

## ՀԱՅ-ԹՐՔԱԿԱՆ ԱՆՆԱԽԱԴԷՊ ՀԱՄԱԺՈՂՈՎ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Յունիս 8-ին, Ֆրանսայի Ծերակոյտին «Մեդիսիս» սրահին մէջ տեղի պիտի ունենայ «Հայ-թրքական երկխօսութիւն հայկական հարցի շուրջ» միօրեայ համաժողով:

Աննախադէպ այս ժողովի ընթացքին պիտի քննարկուին հայկական հարցը, հայ-թուրքական յարաբերութիւններ, նաեւ 1915-ի Մեծ Եղեռնին ճանաչման խնդիրը:

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ՈՂԻՄՊԻԱԿԱՆՆԵՐՈՒ ՀԵՏ

Նախընթաց օր, ՀՀ Նախագահ Ռոպերթ Քոչարեան ընդունեց Հայաստանի ազգային ողիմպիական խումբի անդամները, որոնք կը պատրաստուին մասնակցելու Սիտնիի ամառնային ողիմպիականին:

Խումբը կը գլխաւորէր Մշակոյթի եւ Մարզանքի Նախարար Ռոլանտ Շառոյեան, որ մարզիկներու անունով իր երախտագիտութիւնը յայտնելով Նախագահին, ընդգծեց որ Հայաստանցի մարզիկներու յաջողութիւնները անկասկած կախեալ են նաեւ այն հոգածութենէն, զոր պետութիւնը կը ցուցաբերէ անոնց նկատմամբ: Նախարար Շառոյեան նշեց որ առաջին անգամ ըլլալով կառավարութիւնը դրամական մրցանակներ պատրաստած է այն մարզիկներուն համար, որոնք ողիմպիական մրցումներու մէջ ախոյեան պիտի հանդիսանան: Փոխ-Նախարար Իշխան Զաքարեան եւ հաւաստիացուց որ ողիմպիական ազգային խումբը լաւ մարզավիճակի մէջ կը գտնուի:

Նախագահ Քոչարեան, աւանդութեան համաձայն, դրամական պարգեւներ յանձնեց 65 մարզիկներու եւ մարզիչներու, որոնք աչքառու յաջողութիւններ արձանագրած են այս տարեշրջանին: Նախագահ Քոչարեան ընդգծեց նաեւ որ ամէն մէկ մարզիկի համար առաջնահերթ նպատակ եւ մեծ պատիւ է ողիմպիական խաղերու մասնակցութեան իրաւունք շահիլը:

**ԳԱՀԻՐԷ**

# ՓՐՈՖ. ՎԱՀԱԳՆ ՏԱՏՐԵԱՆԻ ՇԱՀԵԿԱՆ ԵԼՈՅԹԸ ՀՀ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄԷՋ

*Դոկտ. Փրոֆ. Վահագն Տատրեան խիստ շահեկան ելոյթ մը ունեցաւ Չորեքշաբթի 3 Մայիսի երեկոյեան, Գահիրէի ՀՀ դեսպանատան մէջ, եգիպտական զանգուածային լրատուական միջոցներու ներկայացուցիչներու առջեւ, որուն ներկայ էին նաեւ եգիպտահայ մամուլի ներկայացուցիչներ:*

*ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան հակիրճ խօսքով ներկայացնելէ ետք՝ ելոյթ ունենալու հրաւիրեց մասնագէտ փրոֆէսորը:*



Ձախէն՝ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, Փրոֆ. Վահագն Տատրեան եւ ՀՀ դեսպան՝ Սերկէյ Մանասարեան

*Դոկտ. Տատրեան անգլերէն լեզուով, նախ անդրադարձաւ ցեղասպանական ոճիրին, ապա շեշտը դրաւ հայկական ցեղասպանութեան վրայ, տալով կարգ մը տեղեկութիւններ այս առնչութեամբ:*

*Հետեւաբար ծանրացաւ ցեղասպանութեան եղակի բնոյթին վրայ եւ այդ՝ որպէս անպատիժ մնացած ոճիր: Ան իր խօսքը եզրափակեց յարելով, -թէ ցարդ Թրքնամին կ'ուրանայ իր կատարած ցեղասպանութիւնը:*

*Խօսքի աւարտին, ներկաներէն ոմանք հարցումներ բրին եւ ան գոհացում տուաւ բոլորին: Յարգելի դասախօսը պատասխանելով մէկ հարցումին, նշեց իթթիհատական կառավարութեան ստեղծած ոճիրին յատուկ կազմա-*

4

## Համահայկական Խաղերու Համաշխարհային Կոմիտէի Արտակարգ Նստաշրջանի Արդիւնքները

*Ս.Թ. Մայիսի 5-7-ը Փարիզում կայացաւ Համահայկական Խաղերի Համաշխարհային Կոմիտէի (ՀԽՀԿ) առաջին արտակարգ նստաշրջանը:*

*Նստաշրջանին մասնակցում էին Կոմիտէի անդամները Երեւանից, Ստեփանակերտից, Թորոնթոյից, Փարիզից, Լոս-Անճելոսից, Մոնրէալից, Գահիրէից, Նիկոսիայից, Հոնքոնկից եւ աշխարհի այլ քաղաքներից: Դիտորդի դերում ներկայ էին Ֆրանքֆուրդի, Պուէնոս Այրէսի եւ Սթամպոլի պատուիրակութիւնները:*

*Արտակարգ նստաշրջանի օրակարգի գլխաւոր կէտը եղաւ ՀԽՀԿ-ի Կանոնադրութեան եւ Կանոնակարգի նախագծի քննարկումը: Նստաշրջանի մասնակիցները ունկնդրեցին նաեւ ՀԽՀԿ-ի նախագահ Աշոտ Մելիք-Շահնազարեանի հաշուետու զեկուցումը Առաջին Համահայկական Խաղերի անցկացման արդիւնքների վերաբերեալ, եւ հաղորդում այն աշխատանքների մասին, որը Համաշխարհային Կոմիտէի ղեկավարութիւնը ծաւալել է Խաղերը աւարտելուց յետոյ:*

*Նախագահի զեկուցման մէջ նշուած էր Խաղերի /Երեւան, 1999թ.-ի Օգոստոսի 28-Սեպտեմբերի 5/ փայլուն յաջողութիւնը, որտեղ մասնակցում էին մարզիկներ, մարզիչներ, մրցավարներ եւ պաշտօնեաներ շուրջ 27 պետութիւնների 61 քաղաքներից:*

*Առաջին Համահայկական Խաղերը հանդիսացան կարեւոր եւ կոնկրէտ ներդրում Հայաստան – Սփիւռք միասնութեան եւ ամբողջ հայ ժողովրդի համախմբման գործում:*

*Խաղերի նախապատրաստական աշխատանքները եւ մասնակցութիւնը դրանցում նպաստեցին Սփիւռքի տարբեր հայ կազմակերպութիւնների եւ միութիւնների համագործակցութեան հաստատմանը, ընդլայնմանը եւ ակտիւացմանը՝ սպորտի բնագաւառում: Խաղերի շնորհիւ մասնակիցների մեծ մասը (աւելի քան 78 %) առաջին անգամ ոտք դրեցին մայր-Հայրենիքի հողի վրայ, ծանօթացան նրա տեսարժան վայրերի, մշակոյթի եւ պատմութեան հետ:*

*Նստաշրջանի մասնակիցները պատշաճը հատուցեցին Հայաստանի Հանրապետութեան կառավարութեանը եւ անձամբ ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանին՝ Առաջին Համահայկական Խաղերի անցկացման գործում ունեցած վճռորոշ ներդրման համար: Նրանք յայտնեցին իրենց բաւարարուածութիւնը երկրի ղեկավարութեան որոշմանը Խաղերի Ազգային Կազմկոմիտէին մշտական կարգավիճակ տրամադրելու համար, որը բարեյաջող նախադրեալներ է ստեղծել յետագայ Խաղերի յաջող անցկացման, ինչպէս նաեւ Համաշխարհային Կոմիտէի եւ Խաղերի Ազգային Կազմկոմիտէի միջեւ մշտական համագործակցութեան կապերի հաստատման գործում:*

*Նստաշրջանի մասնակիցները քննարկեցին այն թերութիւնները, որոնք ի յայտ էին եկել Խաղերի ընթացքում եւ ընդունեցին յանձնարարականներ նրանց վերացման համար: Յատուկ ուշադրութիւն էր դարձուած մրցավարութեան հարցերին: Մրցավարութեան ասպարէզում էլ աւելի անկողմնապահ իրավիճակ ապահովելու նպատակով յանձնարարւում է մարզական պատուիրակութեան կազմի մէջ ընդգրկել օտարերկրեայ մրցավարներին՝ այն պետութիւնների քաղաքացիներին, որոնց քաղաքները մասնակցում են Խաղերին: Սոյն որոշումը տարածւում է նաեւ մարզիչների ազգային պատկանելիութեան հարցի վրայ:*

*Մասնակիցներին տեղեկացուեց այն աշխատանքի մասին, որը Համաշխարհային Կոմիտէի ղեկավարութեան կողմից ծաւալուել է Խաղերի մասնակիցների շրջանակի ընդլայնման համար. առաջին հերթին ԵՊՀ եւ Մերձաւոր Արեւելքի պետութիւնների հայ համայնքների հաշուին, պետութիւնների ընդհանուր քանակը մինչեւ 40-ի հասցնելու նպատակով, որոնց քաղաքները կը մասնակցեն Երկրորդ Համահայկական Խաղերին:*

*Նստաշրջանում կարեւոր ուշադրութեան արժանացաւ Համահայկական Խաղերի Կանոնադրութեան եւ Կանոնակարգի նախագծերի քննարկումը: Ընդունուեցին Կանոնադրութեան եւ Կանոնակարգի նախագծերի կէտերի աւելի քան 90%-ը: Նշուած փաստաթղթերի վերջնական տեքստերի բովանդակութիւնը կ'ընդունուի Համաշխարհային Կոմիտէի հերթական նստաշրջանում:*

*Համահայկական Խաղերի Կանոնադրութիւնը կազմուած է նախաբանից եւ տաս գլուխներից: Կանոնակարգը Կանոնադրութեան բաղադրեալ մասն է:*

*Կանոնադրութեան առանձին գլուխները նուիրուած են Համաշխարհային Կոմիտէի դերին եւ տեղին համահայկական մարզական շարժման գործում, Խաղերի եւ նրա ատրիբուտիկայի վրայ եղած իրաւաբանական իրաւունքներին, ղեկավար մարմինների կառուցուածքին, Համաշխարհային Կոմիտէի անդամների, այդ թւում նախագահի, փոխնախագահի եւ Գործադիր կոմիտէի անդամների, ինչպէս նաեւ Համահայկական Խաղերի քաղաքային կոմիտէների պարտականութիւններին, Համաշխարհային եւ Կազմակերպչական կոմիտէների լիազօրութիւնների բաշխմանը, քաղաքների մարզիկների*

4

## ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 80-ԱՄԵԱԿԸ ԵՒ ԱՐԱՔՍ ՉԷՔԻՃԵԱՆԻ ԱՌԻՆՔՆՈՂ ՀԱՄԵՐԳԸ

Հայ ակումբները սփիւռքի մէջ անվիճելիօրէն հայապահպանման մէյ-մէկ կռուաններ են, որոնք կը սատարեն ազգապահպանման սուրբ գործին: Այդ կռուաններէն մէկը կը նկատուի Գահիրէի կեդրոնը գտնուող՝ Հայ Գեղարուեստասիրաց Միութիւնը. մասնաւորաբար գեղարուեստական բնագաւառէն ներս, ունի 80 տարուայ բեղուն անցեալ մը եւ կը շարունակէ իր գործունէութիւնը մինչեւ այսօր, ամենայն աշխուժութեամբ, գոհացում տալով մեր արուեստասէր հասարակութեան: Այս բոլորը անշուշտ կ'իրականանայ, երբ հոն գտնուին նուիրեալ անձեր, հայրենասիրական ոգիով լիցքաւորուած՝ որակաւոր ձեռնարկներ կազմակերպեն, անխոնջ աշխատանք տանելով:

Հետեւաբար ներկայ վարչութիւնը գեղեցիկ գաղափար մը ունեցած էր, յոբելինական ձեռնարկներու շարքին՝ Սուրիայէն հրաւիրելու սիրուած մեներգչուհի Արաքսի Չէքիճեանը, որ համերգներ տալով առինքնէ եգիպտահայութիւնը:

Արաքսին դասական երաժշտութեան ծանօթ մեկնաբան մըն է: Աւարտած է Երեւանի Կոմիտասի անուան երաժշտանոցը, գերազանցիկ վկայականով: 1982-ին արուեստագիտուհին վերադարձած է իր ծննդավայրը՝ Հալէպ, ուր առանձին ելոյթներու կողքին, այժմ նուիրուած է երաժշտական - մանկավարժական ասպարէզին, պատրաստելով սաներ:

Շաբաթ 6 Մայիսի գիշերը, Հ.Գ.Մ.-ի «Թէքէեան Սրահ»ին մէջ տեղի կ'ունենար յոբելինական 4-րդ ձեռնարկը, հովանաւորութեամբ Առաջնորդ Սրբազան Հօր եւ նախագահութեամբ Տէր եւ Տիկ. Անդրանիկ Մեսրոպեանի, ի ներկայութեան մեծ թիւով հրաւիրեալներու, անդամներու եւ համակիրներու:

Իրաւամբ, շնորհալի երգչուհին առաջին վայրկեանէն շլացուց ներկաները իր գեղեցիկ եւ ուժեղ սոփրանօ ձայնով: Իր պատրաստած երգացանկը տարբեր ժանրի երգեր էին: Արաքսին հիանալի մեկնաբանութեամբ կատարեց հայ եւ օտար դասական երաժշտական երգեր: Երգեց Կոմիտասէն, Սայաթ Նովայէն, Աբրահամեանէն եւ քանի հատուածներ միջազգային օփերաներէ, դաշնակի բացառիկ նուագակցութեամբ Իրինա Աբգարեանի:

Ան հանդէս եկաւ ինքնատիպ կարողութեամբ, մերթ յուզումի տիրապետութեամբ, մերթ բարձր ներշնչանքով եւ մերթ աշուղական թռիչք առնելով, ներկայ հանդիսականներուն երկարատեւ ծափողջոյնները խլելով:

Յաւարտ երաժշտական սոյն երեկոյթին, հանդիսականները վեր՝ «Հայ տանիք» բարձրացան, ներկայ գտնուելու Յոբելինական ճաշկերոյթ - պատուասիրութեան: Բոլորը տեղ գրաւելով սեղաններու շուրջ, ճաշակեցին, որմէ ետք Միութեան եռանդուն ատենապետ Պր. Գրիգոր Մարգարեան, յանուն վարչութեան երախտագիտական խօսքերով ողջունեց ներկաները, ապա ամփոփ կէտերու մէջ տուաւ Միութեան պատմականը, յետոյ յատուկ պարգեւներով եւ գնահատանքի վկայականներով պատուեց Միութեան Վեթերան անդամները:

4

## «ԾԱՂԿԱՍՏԱՆ»Ը ԲՈՒՐԵՑ ԳԱՀԻՐԷԻ ԵՒ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ ՄԱՆԿԱՊԱՏԱՆԵԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ԵԼՈՅԹՆԵՐՈՎ

Նախ Աղեքսանդրիոյ՝ Հինգշաբթի 11 Մայիսին, «Մելգոնեան Սրահ»ին մէջ, ապա Գահիրէի՝ «Պլըքտանեան Սրահ»ին մէջ, Հինգշաբթի 18 Մայիս 2000-ի երեկոյեան, տեղի ունեցաւ ճոխ համերգներ «Ծաղկաստան» երգչախումբին յաջող ելոյթներով, մասնակցութեամբ «Յուսաբեր»ի եւ «Յառաջդիմասէր»ի մանուկներուն եւ պատանիներուն, «ՔԵԶ ՀԱՅԱՍՏԱՆ»՝ ընդհանուր վերտառութեամբ:

Գահիրէի մէջ կատարուած ելոյթին ներկայ էին հովանաւոր՝ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան եւ տիկինը, օրուան նախագահներ՝ Տէր եւ Տիկ. Վարուժան Գազանճեաններ, Գահիրէի հոգեւոր հովիւ՝ Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեան, համայնքի ներկայացուցիչներ եւ հոծ թիւով հանդիսականներ:

Տիկին Նորա Քէօհնէլեան հակիրճ իր բացման խօսքին մէջ, շեշտը դնելէ ետք մատղաշ սերունդին հայ երգ սորվեցնելու անհրաժեշտութեան, անդրադարձաւ հայ երգի միջոցաւ, հայկական ոգի ներշնչելու եւ այլասերման դիմագրաւելու կարեւորութիւնը, որոնք բնականաբար պիտի նպաստեն հայապահպանման գործին:

Ջերմիկ մթնոլորտի մէջ սկսաւ համերգը, ղեկավարութեամբ հայրենի երաժիշտ Դոցենտ Դաւիթ Ջալեանի եւ նուագակցութեամբ իր տիկնոջ՝ հայրենի մանկավարժ Իրինա Ջալեանի, որուն իրենց մասնակցութիւնը կը բերէին աւելի քան 40 երկսեռ (4-14 տարեկան) փոքրիկներ, շիկացնելով ներկայ ունկնդիրներուն հոգիները:

Երգացանկը կ'ընդգրկէր առաւելաբար հայրենաշունչ եւ ազատատենչ ժողովրդական խմբերգներ, համեմուած գարնանային երգերու բոյրով մը: Այդ հայորդիները կ'արտացոլէին իրենց հարազատ ապրումները, խիզախօրէն, վարակիչ հաղորդականութեամբ, մեզի պարգեւելով ոգեւորիչ պահեր:

Յիշողութեան արժանի են մասնաւորաբար այն խոստումնալից նորափթիթ մեներգիչները, որոնք իրենց նուրբ հնչերանգով կը ջանային գերել ներկաները: Սփոփիչ երեւոյթ մըն էր նաեւ այն սանիկներուն մասնակցութիւնը, որոնք թէեւ մեր հայկական վարժարանները չեն յաճախեր, սակայն նոյնքան հրաշունչ արտայայտչականութեամբ կը կատարէին հայկական մեր հոգեթով երգերը:

Համերգի աւարտին, որոտընդոստ ծափերու ներքեւ, օրուան նախագահուհի՝ Տիկ. Սոնա Գազանճեան յուշանուէրով մը պատուեց Ջալեան ամոլը: Վերջաւորութեան, բեմ հրաւիրուեցաւ Առաջնորդ Սրբազան Հայրը եւ շնորհաւորելէ ետք բոլորին, իր սրտի խօսքը յայտնեց երգչախումբին, յարատեւութեան մաղթանքներ ընելով, ապա «Պահպանիչ»ով փակեց երեկոյթը:

Վարձքը կատար բոլորին անխտիր, յատկապէս խմբավար Դոց. Դ. Ջալեանին, որ յաջողած էր հայ մանուկին ճարտարօրէն սորվեցնել հայ երգն ու հայկական մեղեդին: Արդարեւ գնահատանքի արժանի կազմակերպական պիտանի աշխատանք մը, որ հայ երգի միջոցաւ, նորահաս սերունդը ջամբուի հայկական շունչով եւ կոփուի հայրենասիրական ուղիով:

**Ա. Մ.**

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹՈՒՄԱՆԵԱՆԻ «ԱՆՈՅՇ»Ը ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍՆ ՈՒ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

### Նուպարեան Ազգ. Վարժարանին Մէջ

Նուպարեան վարժարանի հիմնադրման 75-ամեակն էր Կիրակի 7 Մայիսին, «Անոյշ» օփերայի հատուածական ներկայացումով, գրական երաժշտական համադրումով մը, զոր պատրաստած էր Դոցենտ Դաւիթ Ջալեան, դաշնակի նուագակցութեամբ Իրինա Ջալեանի եւ մասնակցութեամբ աշակերտներուն ու շրջանաւարտներուն, որոնք երգեցին եւ ասմունքեցին:

Հանդէսը կը հովանաւորէր Եգիպտահայոց առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, նախագահութեամբ՝ Դոկտ. եւ Տիկին Ճորճ Սիմոնեանի:

Ասմունքեցին Սիլվա Պայրամեան, Անի Օհաննէսեան, Ռուբինա Ասլանեան, Գեղամ Կարսեան եւ Շահան Թէրզիպաշեան: Մեներգչուհի Սիլվա Թէրզիպաշեանի անհանգստութեան պատճառով «Անոյշ»ի նախերգանքը եւ մեներգները հաղորդուեցան ձայներիզով:

Նախքան հանդէսը սկսիլը Դոց. Դաւիթ Ջալեան ըսաւ, թէ օփերա մը կարելի է ունկնդրել բեմական ճոխութեամբ եւ արուեստագէտներու միջոցաւ, մասնաւոր հանդիսասրահի մէջ: Մեզ համար կարելի է արտասանութեամբ, խմբերգներով եւ մենակատարութեամբ ներկայացնել: Բացատրեց «Անոյշ»ի հիմնական գաղափարը՝ սէրը եւ այդ սիրոյ խորտակումը, սիրոյ տառապանքը, ինչպէս նաեւ Արմէն Տիգրանեանի երաժշտական արժանիքը: Գնահատելի է խմբերգներու կատարումը, մանաւանդ ասմունքներու անթերի, հասկացողութեամբ արտասանութիւնը:

Ներկայացումի աւարտին ներկաները իջան սեղանատան ընդարձակ սրահը, ուր սարքուած էր նկարներու, ասեղնագործութեան եւ ձեռային աշխատանքի ցուցադրութիւն:

Վարժարանիս գծագրութեան ուսուցիչ Պր. Մ. Խորչէտի ցուցմունքներով, այս տարի բարձրագոյն դասարաններու աշակերտութիւնը պատրաստած էր օրացոյցներ զանազան ջրաներկ նկարներով. այդ օրացոյցներէն օրինակներ ներկայացուած էին, ինչպէս նաեւ՝ ջրամաններու նկարազարդումը, քանդակ, դիմանկար, ծաղկեփունջեր խաւաքարտի վրայ, բնանկարներ:



Անի Օհաննէսեան եւ Շահան Թէրզիպաշեան

Ասեղնագործութեան պատասխանատու ուսուցչուհին է Տիկին Գոհար Գազազեան: Իր աշակերտները ներկայացուցած էին քառասունէ աւելի նմոյշներ թելով, քօթօն փեռլէով աշխատուած գոգնոցներ, բարձի երեսներ, կաղանդի ծառեր, հայկական նրբաթել կառուցաքով (փուէն տարմենի) եւ ուրիշ զանազան ասեղնակէտեր:

Գալով ձեռային աշխատանքներուն, որոնց ուսուցչուհին է Տիկին Յասմիկ Գազազեան, ներկայացուցած էին մանկապարտէզի աշխատանքները: Իր նպատակը եղած է ընդհանուր ծանօթութիւն տալ նկարչական տարրական օրէնքներուն, գոյներու ճիշդ զանազանման եւ մի քանի գոյն իրարու խառնելով նոր երանգներ ստանալու: Յաջող կերպով ներկայացուած էին բադիկներն ու կենդանիները:

Հուսկ ուրեմն դաշտահանդէսը սկսաւ: Տօնական օր էր դպրոցի փակին մէջ, ուր շարքուած էր բեմահարթակ մը, որուն շուրջ սեղաններ: D.J. Ռոպէր Թաշճեան պարային եղանակներ կը ներկայացնէր, մինչ ներկաները (աւելի քան երեք հարիւր) կը համտեսէին մսեղէններն ու խմորեղէնները: Նաեւ եղաւ վաճառքը հայկական ճաշերու խմորեղէններու, եւայլն:

Յաջող հանդէս մը. վարձքը կատար անոնց, որոնք աշխատեցան հանդէսի յաջողութեան համար:

**Յ. Հ.**

## ՎԵՐԱՐԺԵՒՈՐՄԱՆ ԱՅՍ ՕՐԵՐՈՒՆ

# ԴՐՕ, ԳԱՐԵԳԻՆ ՆԺԴԵՀ ԵՒ ՈՒՐԻՇՆԵՐ

Հայաստանի անկախացումէն ետք, հայկական նախկին արժէքներու՝ քաղաքական գործիչներ, գրողներ, մտաւորականներ եւ այլք, վերագնահատումի գործնական աշխատանքներ կատարուեցան ու կը կատարուին պետական եւ ժողովրդային մակարդակներու վրայ: Խորհրդային իշխանութեան տարիներուն, յաճախ անարդարացի կերպով անտեսուեցան անցեալի այնպիսի արժէքներ՝ նուիրեալ դէմքեր, որոնք արժանի էին գնահատանքի ու մեծարանքի, եւ այս՝ առնուազն յանուն ճշմարտութեան կամ արդարութեան:

Անկախ Հայաստանի իշխանութիւններ՝ Լեւոն Տէր-Պետրոսեանի թէ Ռոպերթ Քոչարեանի նախագահութեան օրերուն, գրեթէ նոյն տրամաբանութեամբ հետամուտ եղան արժէքներ վերագնահատումի աշխատանքներուն:

Մօտաւորապէս երկու տարի առաջ, Սօսէ Մայրիկի աճիւնասափորը Գահիրէէն՝ Եռաբլուրի գերեզմանատունը փոխադրուեցաւ եւ այդպիսով հերոսուհին իր վերջնական հանգիստը գտաւ հայրենի հողին տակ: Երեւանի Սպայից Տան մէջ, կարգ մը ընկերներու հետ, ես հնարաւորութիւնը ունեցայ ներկայ գտնուելու Սօսէ Մայրիկի վերաթաղման առիթով կատարուած պաշտօնական արարողութիւններուն: Այնտեղ էին Հայաստանի Հանրապետութեան պատասխանատու դէմքերը, բանակի բարձրաստիճան զինուորականներն ու այդ օրերուն դեռ պաշտպանութեան նախարար՝ Վազգէն Սարգսեանը:

Բոլորովին վերջերս Փարիզի Փեր Լա Շեզ գերեզմանատունէն արժանի պատիւներով Երեւան՝ Եռաբլուր տեղափոխուեցաւ նաեւ Ազգային Հերոս Զօրավար Անդրանիկի աճիւնը: Անկախութեան պռաջին տարիներուն իսկ պետականօրէն վերարժեւորուած էին արդէն ուրիշ դէմքեր եւս. անոնց շարքին՝ Վանի ինքնապաշտպանութեան ղեկավար, Հայաստանի Առաջին Հանրապետութեան ներքին գործոց նախարար Արամ Մանուկեանը, պայծառ, անարատ նկարագրով ու վարքով անձնաւորութիւն մը: Նոյնպէս իրենց արժանի գնահատականները ստացան Նիկոլ Դումանը, Նիկոլ Աղբալեանը, Լեւոն Շանթը, Աւետիս Ահարոնեանը:

* * *

Սակայն, վերարժեւորուածներու առաջին շարքին վրայ կը գտնուէր Գարեգին Նժդեհը: Այս գործիչի մասին պիտի աշխատինք անդրադառնալ հանգամանօրէն:

Նժդեհ այն կերպարն էր, որուն էութեան մէջ թաքնուած անհանգիստ նկարագրի շեշտուած, հոգեբանական հակադիր շերտաւորումներ: Եթէ ծանօթանանք անոր տեսութիւններուն, այնտեղ պիտի գտնենք հայրենասիրութեան, ազգասիրութեան եւ նուիրումի վերամբարձ ոճով ու բովանդակութեամբ շարադրուած գաղափարներ: Միեւնոյն ատեն, հակառակ իր զինուորական ու քաղաքական գործիչի յուրջ տուեալներուն՝ գործելակերպին մէջ պիտի նկատենք անհեռատեսութիւն, վրիպումներ եւ ծայրայեղութիւններ: Գաղափարական Նժդեհը ծնունդն էր Հայ Յեղափոխական Դաշնակցութեան, սակայն այս ոչ սովորական մարդու գործելակերպը շատ անգամ եղաւ ինքնուրոյն՝ կուսակցութեան մէջ ստեղծեց գրեթէ ուրիշ կուսակցութիւն, այդ է՝ «Ցեղակրօն Ուխտ»ը, կազմակերպութիւն մը, որուն մասին պիտի անդրադառնանք:

Իսկ ո՞վ էր Գարեգին Նժդեհ: Նախ ճանչնանք մարդը:

Գարեգին Նժդեհ, բուն անունով՝ Գարեգին Տէր Յարութիւնեան, ծնած է 1888-ին՝ Նախիջեւանի, իսկ մահկանացուն կնքած է 1955-ին, Սիպերիոյ աքսորավայրերէն մէկուն մէջ: Նժդեհի կեանքը լի է վերիվայրումներով: Ըլլալով Դաշնակցութեան գործիչներէն եւ Հայաստանի առաջին հանրապետութեան ղեկավարներէն մէկը, անցաւ բոլոր այն ճամբաներէն, որոնք վերապահուած էին Հանրապետութեան այդ շրջանի ղեկավարներուն: Նժդեհ, 1921-ին Փետրուարեան ապստամբութեան կազմակերպիչներէն մէկը եղաւ, եւ այդ արկածախնդրութեան ձախողութենէն ետք ապաստանեցաւ արտասահման՝ Պուլկարիա ապա շրջան մը՝ Ամերիկա: Երկրորդ Համաշխարհային պատերազմի տարիներուն այս տարագիր գործիչը Ամերիկայէն վերադարձաւ Պուլկարիա՝ Նացիստական հաւանական յաղթանակին յուսալով:

Ինչպէս Դրօն՝ Պերլինէն, այնպէս ալ Նժդեհ Սոֆիայէն գերմանական զօրքերուն հետ կը հասնէին Հայաստան «պոլշեւիկեան լուծէն» ազատագրելու համար այն երկիրը, ուրկէ մօտաւորապէս տասնամեակ մը առաջ հալածեալով հեռացած (փախած) էին: Նժդեհ, ըստ Խորհրդային աղբիւրներու, 1942-ին Դրոյի նման դարձած էր Պերլինի մէջ ստեղծուած «Հայկական Ազգային Խորհուրդ»ի անդամ եւ կը գործակցէր գերմանական փաշիզմի հետ:

Սակայն, պատերազմի ճակատներուն վրայ Գերմանիոյ կրած պարտութիւններէն քաջալերուած, պուլկար ժողովուրդը ապստամբեցաւ օրուայ իշխանութիւններու դէմ, եւ մէկ օրէն միւսը երկիրը համայնավարացաւ: Իշխանափոխութիւնը այնքան անակնկալ ու արագ եղաւ, որ Նժդեհ առիթ չունեցաւ հեռանալու երկրէն: Ան՝ յետագային պուլկար ոստիկանութեան կողմէ ձերբակալուելով, որպէս քաղաքական յանցագործ, յանձնուեցաւ Խորհրդայիններուն, որմէ ետք Երեւանի մէջ դատուելով Սիպերիա աքսորուեցաւ, այնտեղ ալ մահացաւ:

Այս անհանգիստ ու եռանդուն մարդուն կենսագրութիւնը անշուշտ չի սահմանափակուիր վերոյիշեալներով: Շեշտուած ազգային զգացումները, նկատելի վաստակն ու մտածումները Նժդեհի ստորոգելիներն էին, եւ այդ ստորոգելիները հիմքեր հանդիսացան, որպէսզի ան շուտով վերագնահատուի Հայաստանի իշխանութիւններուն կողմէ, դեռ այն ժամանակ, երբ տարակարծութիւններ կային Հանրապետութեան ղեկավարութեան եւ Դաշնակցութեան միջեւ:

Զինուորական ու քաղաքական գործիչ Նժդեհի հիմնական արժանիքը կը կայանայ անշուշտ Հայաստանի Զանգեզուրի շրջանի պաշտպանութեան մէջ: Երբ Ատրպէյճան 1920-ի Ապրիլին Խորհրդայնացաւ, Կարմիր Բանակի 11-րդ զօրասիւնը Պաքուէն փորձեց ներխուժել Զանգեզուր, տարածքը խորհրդայնացնելու եւ այդ պայմաններու տակ ալ ինքնաբերաբար կցելու Ատրպէյճանին, քանի որ Հայաստան տակաւին խորհրդայնացած չէր եւ կը պայքարէր այդ իշխանութեան ծաւալման դէմ: Զանգեզուրի պաշտպանողական կռիւները առկայ պայմաններու տակ դարձած էին անհրաժեշտ: Կովկասի թաթարները՝ ազերիները միշտ ալ փորձած են Զանգեզուրը իրենց ներկայացնել:

Սակայն առաջին Հանրապետութեան ղեկավարները կրնային կանխել բոլոր տեսակի արիւնահեղութիւններն ու աւերուածութիւնները, եթէ կարողանային ճիշդ գնահատական տալ ԺԱՄԱՆԱԿ հասկացողութեան: Տուեալ ժամանակը Խորհրդայիններու (Ռուսաստանի) աստեղային պահն էր եւ Հայաստանի Խորհրդայնացումը անխուսափելի: Այնուամենայնիւ, ինչ որ ալ եղաւ՝ Զանգեզուրի հայկականութեան պահպանման մէջ Նժդեհ կարեւոր եւ անուրանալի ներդրում ունի: Վերջին հաշուով ան, բարոյական արիութիւնը ունեցաւ քաղաքական ու մարտական ռազմավարութիւնը տանիլ այնպէս, որ Զանգեզուրը Հայաստանի՝ Խորհրդային իշխանութեան յանձնուի եւ ո՛չ խորհրդային Ատրպէյճանին:

Գարեգին Նժդեհի կենսագրութեան մէջ կարեւոր տեղ ունի Միացեալ Նահանգներու մէջ ծաւալած գործունէութիւնը: Հայաստանէն հեռանալէն ետք, տարագրուած ղեկավարը ինչպէս նկատել տուինք, մշտական բնակութիւն հաստատած էր Պուլկարիա: 1932-ին Դաշնակցական գործիչը ժամանեց Փարիզ, իր կուսակցութեան ԺԲ ընդհանուր ժողովին մասնակցելու համար: Ընդհանուր ժողովը պարտականութիւն տուաւ անոր, որպէսզի կազմակերպչական աշխատանքներ տանի ամերիկահայ երիտասարդական շրջանակներէն ներս: Նոյն տարին Նժդեհ հասաւ Միացեալ Նահանգներ: կարգ մը վերլուծութիւններ ցոյց կու տան, թէ անոր Ամերիկա հաստատուիլը, որը տեւեց մօտաւորապէս երկու տարի, կապ ունի ոչ միայն կուսակցական կազմակերպչական աշխատանքներու, նաեւ շատերու համար վտանգ դարձած Խորհրդային Միութեան դէմ՝ պայքարի գործունէութեան հետ: Նժդեհ գործիչը պերճախօս մարդ էր, համոզող, ու երիտասարդութիւնը գրաւելու յատկութիւններ ունեցող ղեկավար: Ամերիկայի մէջ ան շուտով հիմնեց կազմակերպութիւն մը՝ «Ցեղակրօն Ուխտը»:

1933-ին Միացեալ Նահանգներու հայ եկեղեցիներէն մէկուն մէջ, պատարագի ընթացքին, խորանին վրայ մի քանի երիտասարդներու գնդակներէն մահացու վէրքեր ստացաւ Ղեւոնդ Արք. Դուրեանը: Ոճիրին պատճառը եռագոյն դրօշի շուրջ ծագած վէճն էր: Շուտով պարզուեցաւ, որ ոճրագործները Գարեգին Նժդեհի աճեցուցած «Ցեղակրօն Ուխտի» տղոցմէ էին: Այդ արարքով, **ազգի միասնականութեան ջատագով** գործիչը արդէն մխրճուած էր հայութիւնը պառակտող վէճերուն ոլորտը. երեւոյթ մը, որուն ինք տեսականօրէն հակադրուած էր: Հայաստանի առաջին Հանրապետութեան տարագիր գրեթէ բոլոր ղեկավարները բռնուած էին հակապոլշեւիզմի տենդով եւ մասնակից՝ համաշխարհային նման շարժումներուն, ապագայի երազներով ու նիւթական բարեկեցութեան հոգերով: Այս գծով առաւել ցայտուն օրինակ էր Դրոյի գործելակերպը արտասահմանի մէջ: Ան, իր անխոհեմ քայլերով, յանուն հակապոլշեւիզմի, վտանգեց արաբական երկիրներէն ներս մեծ վստահութիւն վայելող հայկական գաղութները: Անդրանիկ Ծառուկեան իր «Վերջին Անմեղը» փաստագրական վէպով դիպուկ կը ներկայացնէ Դրոյի լիբանանեան կեանքի պատկերն ու բնութագիրը, երբ կը նկարագրէ «բայիկներ» երիտասարդական գաղտնի կազմակերպութեան գործունէութիւնը: Այսպէս կոչուած «բայիկներու» կազմակերպութեան գաղտնիքներուն բացայայտումը մեծ անախորժութիւններ պատճառեց յատկապէս սուրիահայ մեր համայնքին եւ նոյնինքն Դրոյի ընկերներուն: Սփիւռքի հայ երիտասարդութիւնը հակապոլշեւիզմի վտանգաւոր երախը տանող Դրօն, իր ապրած տարիներու այլ երեսներով ալ չի կրնար համեմատուիլ ո՛չ Անդրանիկի, եւ ո՛չ Արամ Մանուկեանի հետ: Բաշ Աբարանի հերոսին կեանքի որոշ տարիներու բազմաթիւ էջերը կը մնան վիրաւոր...:

Անցեալի արժէքներու վերագնահատումը պետական գնահատելի նախաձեռնութիւն է, սակայն անհրաժեշտ է պահել չափի զգացումը...: Գերմանական Ֆաշիզմին հետ գործակցելով (որը Թուրքիոյ դաշնակից էր) Հայաստան ներխուժելու նպատակով մինչեւ Հիւսիսային Կովկաս հասնող Դրօն, անվերապահ մեծարելու ծրագիրը կը մնայ անհասկնալի:

Վերադառնանք Գարեգին Նժդեհին:

Ինչպէս վերը նշեցինք, Նժդեհ Հայ Յեղափոխական Դաշնակցութեան ԺԲ ընդհանուր ժողովին ներկայ գտնուեցաւ եւ իր մասնակցութիւնը բերաւ այդ ժողովի աշխատանքներուն:

Հայաստանի խորհրդայնացումով, երեսնական թուականներուն խանդավառութիւն մը սկսաւ ամերիկահայ երիտասարդական շրջանակներէն ներս: Այս խանդավառութիւնը ուղղակի հակադրութիւն էր Հայաստանէն տարագրուած ղեկավարութեան հակախորհրդային տենդին: Հետեւաբար, ԺԲ ընդհանուր ժողովին կը մնար գտնել այն դէմքը, որը կարենար Ամերիկայի հայ

➪ 4

# ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ՓՐՈՖ. ՎԱՀԱԳՆ ՏԱՏՐԵԱՆԻ ՀԵՏ

*Ինչպէս որ իր ատենին տեղեկացուցած էինք, Ապրիլեան Եղեռնի 85-ամեակին առիթով ԱՄՆ-էն յատկապէս Եգիպտոս հրաւիրուած էր անուանի գիտնական, հայոց ցեղասպանութեան մասնագէտ՝ Փրոֆ. Վահագն Տատրեան, իր պատգամը տալու Եգիպտահայութեան:*

*Առիթէն օգտուելով, Եգիպտահայ մամուլի յարգելի խմբագիրները («Արեւ» օրաթերթ՝ Դր. Յովհ. Տէր Պետրոսեան, «Յուսաբեր» օրաթերթ՝ Դր. Զաւէն Լիւլըզեան, «Ջահակիր» շաբաթաթերթ՝ Դր. Աւետիս Մովսէսեան եւ «Տեղեկատու» պարբերաթերթէն՝ Հ.Բ.Ը.Մ.-ի ատենապետ Դր. Պերճ Թէրզեան) հանդիպում մը ունեցան 2 Մայիսի երեկոյեան, յարգելի Փրոֆեսէօրին հետ, իր իջեւանած «Հիլթըն Ռամսէս» պանդոկին մէջ:*

*Նախքան մեզի հետաքրքրող հարցումներուն պատասխանելը, մեծարգոյ հիւրը հաճելի զրոյց մը ունեցաւ զանազան հարցերու շուրջ, որուն առանցքը առաւ Հայրենիքի այժմու կացութիւնը: Իր բանիմաց արտայայտութիւններէն դատելով, անկեղծօրէն կրնանք ըսել, որ Փրոֆ. Վ. Տատրեան անքասիր հայրենասէր մըն է, համեստ եւ հանդարտ խառնուածքով անձնաւորութիւն մը:*

*Ահա սկսաւ մեր հարցազրոյցը:*

Հարցում.- Կը խնդրենք պատկերացում մը տալ համաշխարհայնացած հայկական ցեղասպանութեան հետապնդումներուն ու Հայ Դատին եւ ուր պիտի յանգեցնէ Թուրքիոյ հետ մեր յարաբերութիւնները:

Պատասխան.- Գիտնականի մը համար դժուար կ'ըլլայ կանխագուշակումներու ասպարէզին մէջ մտնել, որովհետեւ պատմութիւնը միշտ անակնկալներով լի է: Ինծի համար մտահոգիչը Հայաստանի եւ համայն հայութեան համար Թուրքիոյ մշտական հզօրացումն է. այլազան զէնքեր կը գնէ եւ կը կուտակէ եւ ոչ մէկ պետութիւն կը հետաքրքրուի եւ կը հարցնէ թէ ինչո՞ւ այդքան զէնքերու պէտքը ունիք: Կը մտածեմ որ Թուրքիա թաքուն նպատակներ ունի, հաւանաբար կենդանացնելու համար իր հին կայսրութիւնը եւ հեռապատկերը ունիմ որ յետագային երբ ճգնաժամ ստեղծուի, ինչպէս պատահած է անցեալին, պիտի օգտուի առիթէն գործադրելու իր նպատակը: Ինծի համար կենսական է որ Հայաստան պահպանէ իր զինուորական ուխտը հարեւան Ռուսիոյ հետ: Նոյնքան մտահոգուած եմ Ռուսիայով, որ տնտեսապէս քայքայուած է, մինչդեռ Թուրքիա հետզհետէ կը հզօրանայ եւ վախնամ որ ասպարէզ կարդայ անոր հանդէպ:

Հ.- Կը կարծէ՞ք որ Թուրքիոյ հզօրացումը նկատի չեն առներ ԱՄՆ եւ Եւրոպան. իրենց փափաքո՞վն է, թէ ոչ հակառակ իրենց կամքին կը զօրանայ ան: Կրնայ շրջանային ոյժ ըլլալէ ետք, գերհզօր ոյժի վերածուիլ եւ այն ժամանակ զայն զսպելը անհնար կ'ըլլայ:

Պ.- Թէ ԱՄՆ եւ թէ Եւրոպա չափէն աւելի կարճատես են. չեն հասկցած թրքական հոգեբանութիւնը ու կը կարծեն որ շարունակական կերպով ժողովրդավարութեան կրնան ենթարկել Թուրքերը: Պէտք է յիշեցնել անոնց որ Ապտիւլ Համիտը տապալող յեղափոխականներէն մեծ մասը Եւրոպա կրթուած մարդիկ էին եւ հիմնեցին Իթթիհատ կուսակցութիւնը: Իմ կարծիքով, Թուրքերու համար ժողովրդավարութիւնը մակերեսային է: Թուրքիոյ ղեկավար տարրը քաղաքային իշխանութիւն չի ներկայացներ՝ այլ զինուորական է: Թուրքերը կ'ըսեն, Թուրքիան պահողը զինուորականութիւնն է, սպայակոյտն է, որ ընդարձակ ցանց մը ունի բոլոր նախարարութիւններու մէջ եւ շատ աչալուրջ կերպով կը հսկեն պետական գործերը: Եթէ սպայակոյտը չըլլայ, Թուրքիոյ հիմերը կը խարխլին:

Հ.- Բացի թրքական, աւստրիական եւ գերմանական ձեր յիշած աղբիւրներէն, տակաւին չօգտագործուած այլ փաստաթուղթեր կա՞ն ուրիշ երկիրներու մէջ:

Պ.- Լսեցի որ Վատիկանի մէջ գաղտնի արխիւներ կան, որովհետեւ Վատիկանի կցորդը պատերազմի շրջանին Իսթանպուլ կը գտնուէր. քանի մը տեղեկագիրներ ունենալու է, սական մի քանի հայեր գացին Վատիկան, բայց տակաւին արդիւնք չտեսանք:

Հ.- Հայ Դատի առնչութեամբ անշուշտ մեծ աշխատանք կը տանիք եւ կան ուրիշ կառոյցներ որոնք եւս կը զբաղուին. կան նաեւ ուրիշներու կողմէ անհատական աշխատանքներ իրենց կարողութիւններուն համեմատ. արդեօք ասոնք համադրուա՞ծ են համագործակցութեան գծով:

Պ.- Այո, չէ կատարուած եւ ըսեմ որ բարդ խնդիր է: «Զօրեան հիմնարկ»ը որ փաստաթուղթեր հաւաքելով կը զբաղի, բայց վերլուծուած չեն ատոնք. հետեւաբար արժեւորուած չեն: Անհրաժեշտ է հաւաքուած վաւերագրերը վերլուծել: Անձնապէս Ամերիկայի մէջ նմանապէս գերմանական փաստաթուղթեր անգլերէնի թարգմանած եմ եւ դիմած եմ հրատարակիչներու, բայց մերժած են, առարկելով որ ընթերցող հասարակութիւնը ժամանակ չի տրամադրեր կարդալու զանոնք ու պահանջած են ներկայացնել վերլուծումներով: Մեր ամենամեծ յոյսը Հայաստանն էր, բայց ես շատ յուսախաբ եղայ, որովհետեւ հոն ցեղասպանութեան դպրոց չէ հաստատուած: Կար ժամանակ մը Ճօն Կիրակոսեանը, որ մեռած է: Կարեւոր է Հայաստանի մէջ հաստատել նման դպրոց մը:

Հ.- Արդեօք ունի՞ք աշակերտներ, ինչպէս՝ Աքչամը, որոնք ձեր տարած գործը շարունակեն:

Պ.- Ուղղակի չունիմ. աշակերտ պատրաստելը ժամանակ կը խլէ: Ես որոշեցի որ աւելի մեծ ծառայութիւն կատարած կ'ըլլամ, եթէ մեռնելէ առաջ արագութեամբ գիրքեր հրատարակեմ, որպէսզի որպէս ատաղձ օգտակարութիւն ունենան ցեղասպանութեան ուսումնասիրութեանց: Նաեւ կ'ուզեմ Երեւանի մէջ հայկական ցեղասպանութեան ուսումնասիրութեան կեդրոն մը հիմնել ու իմ արխիւս հոն փոխադրել եւ բանասիրութեան երիտասարդներ պատրաստել, բայց Ամերիկայի մէջ հրատարակչութեան գործերս աւարտելէ յետոյ:

Հ.- Ձեր հրատարակած գործերէն կա՞ն հայերէնի թարգմանուած:

Պ.- Ցարդ ատոնցմէ ոչ մէկը թարգմանուած է հայերէն լեզուով: Այդքան գիս չի հետաքրքրեր: Իմ ամբողջ աշխատանքս Եւրոպայի եւ Ամերիկայի ակադեմիաներու հետ է: Մէկ գիրք մը ունիմ հայերէն լեզուով, օսմանեան խորհրդարանին մէջ հայկական ջարդերու վիճաբանութիւններուն վերաբերեալ, 1918 թուականի զինադադարի շրջանին: Ասիկա իմ ամենակարեւոր գործերէս մէկն է:

Հ.- Թրքերէն լեզուով չէ՞ք գրեր:

Պ.- Մինչեւ հիմա չեմ գրած, բայց թրքերէնի թարգմանուած են ակադեմական յօդուածերս հայկական ցեղասպանութեան մասին եւ ամփոփուած հատորի մը մէջ:

Հ.- Ձեր տարած աշխատանքի ընթացքին հանդիպա՞ծ էք փաստաթուղթերու որոնք կը խօսին հայկական նիւթական կորուստներու մասին, կամ դրամատնային գումարներու վերաբերեալ:

Պ.- Շատ քիչ. տարտղնուած լուրեր կան որ կանոնաւոր չեն: Ֆրանսերէն լեզուով գիրք մը հրատարակուած է, 1919-ին Պօղոս Նուպարի վիճակագրութիւնները կան հայկական անշարժ կալուածներու եւ նիւթական կորուստներու վերաբերեալ, բայց յուրջ բաներ չեն եւ անկարելի է, ո՞վ պիտի կրնայ չափել կորսուած հարստութիւնները:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Տեղեկացանք, որ մեր բարեկամներէն, ծանօթ ազգային՝ Պր. Միսաք Չէչճէնեան, վերջերս լեղուցի վիրահատման գործողութեան մը ենթարկուած է: Ուրախ ենք որ վիրահատումը անցած է յաջող, եւ ան այժմ տուն վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ:

Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի քաջալերութիւն Թերթիս ազգօգուտ գործունէութեան, Տէր եւ Տիկին Վարուժան Գազանճեան կը նուիրեն 100

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրեցեալ դստեր, քրոջ եւ մօրաքրոջ Ողբ. Մէլանի Գութնուեան - Աբանեանի անժամանակ ու կսկծալի մահուան տխուր առթիւ Տէր եւ Տիկին Հրանդ Գութնուեան, եւ Տէր եւ Տիկին Կարօ Նազիրկանեան եւ զաւակունք կը նուիրեն.

«Արեւ»ին 50 Գանատ. տոլար
«Ջահակիր»ին 50 Գանատ. տոլար

<u>ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ</u>

## ԾԱՆՈՒՑՈՒՄ

Աղեքսանդրիոյ ազգային Իշխանութիւնը հաճոյքն ունի տեղեկացնելու իր համայնքի յարգելի ազգայիններուն, որ դատարանը վաւերացուցած է ամուսնական նօտարութեան փաստաբան Ժիրայր Մանուկեանի թեկնածութիւնը:

Ուստի, բոլոր անոնք, որոնք մտադրած են ամուսնանալ, կրնան դիմել Աղեքսանդրիոյ Առաջնորդարանի դիւանատան, օրինապէս հարկ եղած պաշտօնական ձեւակերպութիւնները կատարելու համար:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳ.**
**ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Յառաջիկայ Կիրակի, 18 Յունիս 2000-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն, 1915-ին, Կ. Պոլսոյ մէջ կախաղան հանուած ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ նահատակութեան 85-րդ տարելիցին առթիւ:

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու եւ աղօթելու նահատակներու հոգիներուն խաղաղութեան համար:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.-ին
Սկիզբ Ս. Պատարագի - - 10.-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Կիրակի, 18 Յունիս 2000, առաւօտեան ժամը 10.30-ին

**ԳԱՀԻՐԷԻ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻՆ ՄԷՋ**

**ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ**

**1915-ԻՆ ՊՈԼՍՈՅ ՄԷՋ ԿԱԽԱՂԱՆ ՀԱՆՈՒԱԾ ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ**

**ՅԻՇԱՏԱԿԻՆ, ԱՆՈՆՑ ՆԱՀԱՏԱԿՄԱՆ 85-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ**

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը անխտիր, իր ներկայութեամբ յարգելու աննման հերոսներուն յիշատակը:

## Համահայկական Խաղերու Համաշխարհային Կոմիտէի Արտակարգ Նստաշրջանի Արդիւնքները

2

*եւ մարզական Թիմերի Խաղերին մասնակցելու կարգին եւ այլն:*

*Նստաշրջանի մասնակիցների կողմից հաւանութեան արժանացած Կանոնակարգը կարգաւորում է արարողակարգի տարբեր խնդիրներ, մասնաւորապէս, Խաղերի բացման եւ փակման արարողութիւններ, չեմպիոնների եւ մրցանակակիրների պարգեւատրումը, ինչպէս նաեւ Խաղերի ծրագրի մէջ ընդգրկուած նոր մարզաձեւերի չափանիշներ եւ այլն:*

*Հաշուի առնելով Միջազգային Օլիմպիական Կոմիտէի խնդրանքը եւնելով Համահայկական Խաղերի խորհրդանիշի փոփոխման վերաբերեալ, նրա՝ «օլիմպիական խորհրդանիշի հետ որոշ նմանութիւն» ունենալու պատճառով, նստաշրջանի մասնակիցները ընդունեցին կարեւոր որոշում Համահայկական Խաղերի խորհրդանիշի փոփոխման մասին, այսինքն՝ նախկին խորհրդանիշի վեց օղակները փոխել վեց ութանկիւնանիի վրայ: Այսպիսով, մի կողմից նստաշրջանի մասնակիցները դրսեւորեցին բարի կամք, իսկ միւս կողմից պահպանեցին Համահայկական Խաղերի նախկին խորհրդանիշի գաղափարը եւ խորհրդանշանը:*



*Նստաշրջանը հաստատեց Երկրորդ Համահայկական Խաղերի անցկացման վերջնական ժամկէտը. Երեւան, 2001թ-ի Օգոստոսի 18-ից 26-ը:*

*Նստաշրջանի մասնակիցները որոշեցին հռչակել Ապրիլի 30-ը որպէս Համահայկական Խաղերի Համաշխարհային Օր: Այդ օրը՝ 1997թ-ի Ապրիլի 30-ին, աշխարհի հայ մարզական կազմակերպութիւնների սահմանադիր համաժողովում ստեղծուեց Համահայկական Խաղերի Համաշխարհային Կոմիտէն:*

*Համահայկական Կոմիտէի միաձայն նոր անդամ ընտրուեց Ռուբէն Խորանեանցը ԳՖՀ-ից (Ֆրանքֆուրդ):*

*Նստաշրջանի մասնակիցները ընդունեցին յատուկ ուղերձ ԼՂՀ նախագահ Արկադի Ղուկասեանին՝ արտայայտելով համերաշխութիւն եւ շուտափոյթ ապաքինման բարեմաղթանք:*

*Նստաշրջանի մասնակիցներին ընդունեց Ֆրանսիայում ՀՀ դեսպան Էդուարդ Նալպանտեանը:*

*Մասնակիցները Փարիզի հայկական եկեղեցում ներկայ գտնուեցին պատարագին, ինչպէս նաեւ Իսսի-լէ-Մուլենոյի քաղաքապետ Պր. Անդրէ Սանտինի կողմից յատուկ կազմակերպուած ընդունելութեանը:*

*Աւարտին նստաշրջանի մասնակիցները երախտագիտութիւն յայտնեցին Հայկական Ընդհանուր Բարեգործական Միութեան փարիզեան մասնաճիւղին արտակարգ նստաշրջանը անցկացնելու գերազանց պայմաններ ապահովելու համար, ինչպէս նաեւ յատուկ երախտագիտութիւն Համաշխարհային Կոմիտէի անդամ Պր. Ժաք Հայրապետեանին (Փարիզ) արտակարգ նստաշրջանի հետ կապուած նախապատրաստական եւ կազմակերպչական աշխատանքների եւ դրա հետ կապուած արարողական միջոցառումների համար:*

*ՀԽՀԿ-ի չորրորդ հերթական նստաշրջանը որոշուեց անցկացնել Երեւանում, 2000թ. Հոկտեմբերի 8-ից 10-ը:*

Փարիզ, Մայիսի 7, 2000թ.

## ՓՐՈՖ. ՎԱՀԱԳՆ ՏԱՏՐԵԱՆԻ ՇԱՀԵԿԱՆ ԵԼՈՅԹԸ ՀՀ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄԷՋ

2

*կերպութեան յառաջացման հանգամանքները:*

*Ինչ կը վերաբերի կարգ մը պետութիւններու, ինչպէս Միաց. Նահանգները, որոնք տեղեակ են ցեղասպանութեան իրողութեան եւ այս գծով իրենց սեփական արխիւներուն մէջ փաստաթուղթեր կը գտնուին, սակայն բացայայտօրէն չեն ճանչնար զայն, Փրոֆ. Վ. Տատրեան հարցը վերագրեց քաղաքական նկատառումի:*

*— Մեծարգոյ դեսպանին փակման խօսքով, վերջ գտաւ դասախօսութիւնը:*

*Հայկական ցեղասպանութեան նիւթին շուրջ եգիպտական մամուլի ներկայացուցիչներուն լուսաբանութիւններ տալ, ահա անհրաժեշտ նախաձեռնութիւն մը, որը թերեւս իր ազդեցութիւնը ունենայ յառաջիկային:*

**Մ. Պ.**

## ՀԱՅ ԳԵՂ. ՄԻՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒԹԵԱՆ 80-ԱՄԵԱԿԸ...

2

Նոյնպէս՝ քանի մը անձնաւորութիւններ եւս պարգեւներու արժանացան Միութեան 80-ամեակին առիթով:

«Ջահակիր» եւ իր շրջանակը կը շնորհաւորէ Հայ Գեղ. Միութեան հիմնադրման 80-ամեակը, հայ մշակոյթի ի սպաս տարած աշխատանքին համար, մաղթելով առաւել բեղուն գործունէութիւն եւ նորանոր յաջողութիւններ:

**Ա. Մ.**

## ԴՐՕ, ԳԱՐԵԳԻՆ ՆԺԴԵՀ ԵՒ ՈՒՐԻՇՆԵՐ

3

երիտասարդութեան ներշնչել ծայրայեղ ազգայնականութեան՝ ազգայնամոլութեան հակադրուելու համար պոլշեւիզմին հայ իրականութեան մէջ: Պահանջուող մարդուն գիւտը կատարուեցաւ յանձին Գարեգին Նժդեհի: 1933-ին հասնելով Միացեալ Նահանգներու Արեւելեան ափը, հայկական շրջանակներէն ներս գործիչը սկսաւ քարոզչական բուռն աշխատանքներուն: Յոգնիլ չգիտցող այս մարդը հայրենասիրական իր զգացումներուն միացնելով ազգայնական չեշտուած դրոշմը, կարողացաւ շուրջը հաւաքել ազգին սիրով խանդավառ երիտասարդութեան փաղանգ մը: Նկատի ունենալով որ իր քարոզած գաղափարները ծայրայեղութիւններ էին եւ ըստ էութեան ոչ հաշտ՝ Դաշնակցութեան ընկերվարական ծրագրին հետ, Նժդեհ նոյն կուսակցութեան շրջանակներէն ներս ծնունդ տուաւ երիտասարդական նոր կազմակերպութեան մը եւ այն կոչեց «Ցեղակրօն Ուխտ»: Ինչպէս անունը կը յուշէ, այդ կազմակերպութեան գաղափարախօսութիւնը **ցեղին պաշտամունքն** էր՝ ձեւով մը հայուն «նոր կրօնքը»: Այդպիսի գաղափարախօսութեան ձեւակերպումը նորութիւն չէր: Նոյն տարիներուն «ցեղակրօնութեան» տարբերակներ արդէն կը մոլեգնէին Գերմանիոյ, Աւստրիոյ եւ Իտալիոյ մէջ, սպառնալով աշխարհի խաղաղութեան:

Նժդեհի ցեղակրօն ուսմունքը իր անձի անհետացումով ալ մարեցաւ, թէեւ անոր մնացուկները յաճախ զգալ կու տան իրենց գոյութիւնը:

Ժողովուրդներու ժամանակակից փոխ-յարաբերութիւններու պայմաններուն մէջ, Նժդեհի այս աստիճան խորացուած «ցեղակրօնութիւնը» այսօր տարօրինակ չի թուի՞ր: Նորանկախ Հայաստանը, որ կը յաւակնի եւրոպական համայնքին լիիրաւ անդամը դառնալ, որքա՞ն կրնայ այդ համայնքին ներկայանալ ցեղակրօն փիլիսոփայի մը անվերապահ վերարժեւորումով: Երեւանի երկրորդ կարեւոր հրապարակը կը կրէ «ցեղակրօն» առաջնորդի անունը, ինչպէս նաեւ այլ հաստատութիւններ: Լաւ պիտի ըլլար պահել չափի՝ զգացումը:

Ո՞ւր մնաց հայ ժողովուրդի համար իրենց կեանքերը զոհաբերած միւս հերոս նահատակներու արժեւորումը: Եթէ մարդիկ չարունակեն լռել, քարերը պիտի աղաղակեն...:

**ՄԱՆՈՒԷԼ ԱԴԱՄԵԱՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Եգիպտոսի Արաբական Հանրապետութիւնում ժամանակաւոր բնակութիւն հաստատած Հայաստանի Հանրապետութեան քաղաքացիներին խնդրւում է ս.թ. Յունիսի 5-10-ը, ժամը 10.00-ից մինչեւ 14.00-ը ներկայանալ ՀՀ դեսպանութիւն հիւպատոսական հաշուառման կանգնելու կամ վերահաշուառուելու համար:*

*ՀՀ բոլոր քաղաքացիներին խնդրւում է իրենց հետ ունենալ ՀՀ քաղաքացիական անձնագիր կամ անձը հաստատող այլ փաստաթուղթ:*

*ՀՀ քաղաքացիներին հիւպատոսական ծառայութիւնների մատուցումը դիւրացնելու նպատակով՝ վերը նշուած ժամկէտներում ՀՀ դեսպանութիւն ներկայանալը պարտադիր է:*

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ**

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1427 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 15 ՅՈՒՆԻՍ 2000 | ՀԱՏԸ ՋԵՆՔԷ 50 Եգ. Դհկ. | عدد رقم ١٤٢٧ — الخميس ١٥ يونيو ٢٠٠٠

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՔՍԱՆՆԵՐԸ՝ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԱՆՎԵՀԵՐ ՀԵՐՈՍՆԵՐԸ

*Քսան տիտաններր կը մնան պարծանքը հայութեան, քանզի անոնք հայ ժողովուրդի ազգային եւ ընկերային ազատագրական պայքարի ջահակիրներն են:*

*Անհատական խիզախութեան, ֆիզիքական եւ հոգեկան տոկունութեան, գաղափարական հաւատքի զօրութեան առաջնորդող ղեկավարներ եղան անոնք:*

*15 Յունիս 1915-ին Քսան Հնչակեան հերոսներ, Սուլթան Պայազիտի հրապարակին վրայ, առանց ընկրկումի, որպէս մէկ հաւատքի, մէկ գաղափարի ուխտեալներ, դիմաւորեցին մահը «Կեցցէ՛ Հայաստան, կեցցէ՛ Հայաստան» ըսելով:*




Գործ՝ ՍԻՄՈՆ ՍԱՄՍՈՆԵԱՆԻ

*Այս արտասանուող մրմունջը կախաղաններուն վրայէն, կտակն է անոնց որոնք մահը արհամարհելով, կանխատեսեցին հայութեան վառ ապագան: Քսաններուն կտակը՝ հայութեան ուղղուած, մանաւանդ ներկայ մեր օրերուն, կառչիլ հայրենի հողին՝ մայր Հայաստանին, կուրծք ցցուելու այլասերումին: «Կեցցէ Հայաստան»ը անոնց բողոքն էր ընդդէմ թրքական սադրանքներուն ու դաւադրութեանց:*

*Արդարեւ, Հնչակեան կուսակցութիւնը ծնունդ առած է Հայ ազգի տառապանքէն, նպատակ ունենալով վերջ տալ այդ տառապանքին: Ու Քսանները, որպէս հաւատարիմ զինուորները Հնչակեան կուսակցութեան, իրենց վրայ դրուած պարտականութեան ծանր լուծը տարին մինչեւ մահ, օրինակ հանդիսանալով զիրենք յաջորդող բոլոր սերունդներուն:*

*Կուսակցութեան ղեկավարները կանխագուշակելով հայութեան սպառնացող վտանգը, կոչ ուղղեցին հայութեան, Մեծ Եղեռնի նախորդող տարիներուն, չհաւատալ Երիտ. Թուրքի խոստումներուն եւ 1908-ի թրքական Սահմանադրութեան:*

*Այդ օրերուն չլսուեցաւ Հնչակեան կուսակցութեան կոչը: Աւելին, անոնք մեղադրուեցան անոնց կողմէ որոնք կը հաւատային Թուրքիոյ ստախօսութեանց, խաբէութեանց՝ յայտարարուած նոր կարգ ու սարքին:*

*Հետեւաբար 1913-ին Հնչակեան կուսակցութեան 7-րդ համագումարը գումարուեցաւ ռումանական Քէօսթէնճէ (Քոսթանցա) քաղաքին մէջ. հոն որոշուեցաւ Քսանները հրապարակ իջեցնել, կարենալ առաջքը առնելու հայկական կոտորածներուն...: Սիրանք մը՝ որ վստահեցաւ յեղափոխական մտաւորական ու քաղաքական գործիչ Հնչակեան կուսակցութեան կեդրոնի անդամ՝ անմահին Փարամազի եւ իր ընկերներուն:*

*Պէտք էր գետին տապալէին այն անձերը, ինչպէս Էնուէր, Թալաաթ կամ Ճէմալ, որոնց ափերուն մէջ ամփոփուած էին ցեղասպանութեան գործադրման ծրագիրը:*

*Ուրեմն կուսակցութեան նպատակը կասեցնել էր կանխամտածուած հայոց մեծ սպանդը: Եւ կարելի էր այդ, եթէ միայն հետեւելով Քսաններուն, հայութիւնը մէկ բռունցք կազմելով, ցցուէր Երիտ. Թուրքերու իշխանութեան դէմ: Թշնամիին դէմ պիտի կազմէր միացեալ ճակատ. պայքարիլ անոնց դէմ համազգային միութեամբ, ամէն բանէ վեր դասելով ազգին եւ հայրենիքին շահերը:*

*Դժբախտաբար անոնց ծրագիրը չպսակուեցաւ յաջողութեամբ: Անոնք չյաջողեցան վերացնել Իթթիհատական կուսակցութեան հայատեաց պարագլուխները: Գայանի ոստիկանութիւնը, օժանդակութեամբ Արթիւր Եսաեան լրտեսի մը, ամէն հնարաւորութիւն ունէր ձեռք ձգելու ծածկագիր նամակները եւ անկէ հասկնալ տէռորի մասին բոլոր մանրամանութիւնները, ինչ որ կը դիւրացնէր «աքտ»ին մասնակից անձերը բանտարկելու գործը: Եւ այդպէս ալ եղաւ:*

*Անոնք ինկան որպէս հերոս, Մեծ Երազի ճանապարհին՝ աչքերնին յառած դէպի արշալոյսը հայ ազատագրութեան: Իրենց խօսքերը արդէն իսկ իրականութիւն դարձած են այսօր՝ «Դուք մեզ քսաններս կը կախէք, սակայն քսան հազարներ պիտի գան մեր վրէժը լուծելու»:*

*Ահա մեր ազգը, որ իր վրէժը լուծեց ազատ անկախ պետականութեան ստեղծումով: Ու պիտի շարունակէ լուծել՝ մինչեւ որ ազատագրուին հայապատկան միւս բոլոր հողերը եւ կցուին Հայաստանին:*

*Այսօր Քսան անմահները կը հանդիսանան հայ ժողովուրդի դիմադրական անընկճելի ոգիին արտայայտիչները, ազատագրական պայքարի անվեհեր հերոսները եւ իբրեւ այդպիսիք, անոնք արժանի են համայն հայութեան երախտագիտութեան*

⇨ 3

ՍՈՒՐԻԱ

## ՍՈՒՐԻՈՅ ՆԱԽԱԳԱՀ ՀԱՖԷԶ ԷԼ ԱՍԱՏ ՈՂ ՉԷ ԱԼ

### ՊԱՇՇԱՐ ԷԼ ԱՍԱՏ ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՆ ԹԵԿՆԱԾՈՒ ՆՇԱՆԱԿՈՒԱԾ

Անցեալ Շաբաթ 10 Յունիսի առաւօտեան, իր մահկանացուն կնքեց Սուրիոյ Հանրապետութեան նախագահ Հաֆէզ էլ Ասատ:

Յուղարկաւորութեան արարողութիւնը կատարուեցաւ Երեքշաբթի 13 Յունիսի առաւօտեան, որմէ ետք հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ իր ծննդավայրը, Լաթաքիա նահանգիստի՝ Քուրտահա գիւղը:

Հաֆէզ էլ Ասատի յանկարծական մահէն ետք, իր տղան՝ Պաշշար էլ Ասատ նախագահութեան թեկնածու նշանակուեցաւ: Նախապէս՝ փոխ նախագահ Ապտէլ Հալիմ Խատտամ, գործակատար նախագահի հանգամանքով, զօրավարի (Ֆարիքի) աստիճան տուաւ Պաշշար էլ-Ասատին ու զայն նշանակեց զինեալ ուժերու ընդհանուր հրամանատար:

Ըստ սուրիական սահմանադրութեան, խորհրդարանը պէտք է վաւերացնէ Պաշշար էլ Ասատի թեկնածութիւնը - ժողովրդային հանրաքուէ կազմակերպէ պաշտօնապէս զայն նախագահ ընտրելու համար:

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՌՈԲԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ ՄԱՍՆԱԿՑԵՑԱՒ ՀԱՖԷԶ ԷԼ ԱՍԱՏԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՆ

Սուրիոյ Հանրապետութեան նախագահ Հաֆէզ էլ Ասատի յուղարկաւորութեան արարողութեան, իր մասնակցութիւնը բերաւ ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեան որ տեղի ունեցաւ 13 Յունիսին:

Ինչպէս «Արմենփրէս»ին յայտնեցին, ՀՀ նախագահին գլխաւորած պատուիրակութեան մաս կազմած են արտադրական ենթակառուցուածքներու նախարար Դաւիթ Զադոյեան, Ազգային Ժողովի պատգամաւորներ՝ Գագիկ Թադեւոսեան, Ստեփան Զաքարեան, արտաքին գործոց նախարարի տեղակալ Արմէն Մարտիրոսեան եւ պաշտօնատար այլ անձինք:

Այս տխուր առթիւ ցաւակցական ուղերձ մը յղած է Ռ. Քոչարեան հանգուցեալի որդոյն՝ Պաշշար էլ Ասատին:

*(Հանգուցեալ նախագահին հակիրճ կենսագրականը կարդալ էջ 2)*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾՈՑ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ ԲԱՆԲԵՐԻ ՀԱՄԱՁԱՅՆ «ՏԱՐԱԾՔԻ ՓՈԽԱՆԱԿՄԱՆ ԱՌԱՋԱՐԿԸ ԱՌԱՅԺՄ ԸՆԴՈՒՆԵԼԻ ՉԷ»

*Հայաստանի արտաքին գործոց նախարարութեան բանբեր Արա Պապեանի կայացած մամլոյ ասուլիսը նուիրուած էր նախարար Վարդան Օսկանեանի մայիսեան պաշտօնական այցելութիւններու արդիւնքներուն: Սակայն, Ղարաբաղեան հարցի եւ հողերու փոխանակման մասին շրջող լուրերու վերաբերեալ հարցումներուն Պապեանի պատասխանները հերքումէ աւելի շփոթ յառաջացուցին, յատկապէս երբ ան յայտարարեց, որ տարածքային փոխանակման առաջարկը առայժմ ընդունելի չէ:*

*Ինչ կը վերաբերի արտաքին գործոց նախարարութեան դիրքորոշումներուն՝ միջանցքներու շուրջ շրջող լուրերուն, ըստ որու Մեղրիի միջանցքը պիտի փոխանակուի Լաչինի միջանցքի հետ, Մեղրին տէ ժուրէ մնալով Հայաստանին, տէ ֆաքթօ՝ անցնելով Ատրպէյճանին, մամլոյ խօսնակը մերժեց այդ հարցը կապել Ղարաբաղի հարցի լուծման հետ, որովհետեւ, ինչպէս ըսաւ ան, «Դա աւելի շուտ վերաբերում է ապաշրջափակմանը»:*

*«Մենք 92-ից ի վեր հետեւողականօրէն կողմ ենք արտայայտւում շրջափակման վերացմանը, մեր մօտեցումը միշտ եղել է հետեւեալը այս հարցում. պէտք չէ սպասել ղարաբաղեան հարցի լուծմանը՝ տնտեսական կապերը զարգացնելու համար:*

## ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆ ՎԿԱՆԵՐՈՒՆ

Ինչպէ՜ս անշուշտ մըսեցաւ, օ՜հ մըսեցա՜ւ ձեր հոգին՝
Երբ Յունիսի այդ առտուն, արշալոյսէն դեռ առաջ,
Իրարու քով, իրարու միայն կառչած նայուածքին,
Մահափայտերը տեսաք՝ ձեր դէմ ցցուած իբրեւ խաչ...

Ինչպէ՜ս անշուշտ խորհեցաք թէ ա՛լ արեւը երբե՛ք,
Նոյն օրն ու օր մը նորէն պիտի երբեք չը ծագի
Ձեզի համար, եւ ինչպէ՜ս այդ ըզգացմամբ սրտաբեկ՝
Դուք նայեցաք ճերմըկող անհունութեանն երկընքի...

Ի՜նչպէս անցան մի առ մի ձեր աչքերուն առջեւէն
Սիրուած դէմքերը բոլոր՝ հայրենիքին հետ սիրուած,
Ե՛ւ հին յուշերը անուշ, ե՛ւ նոր յոյսերը ամէն...

Բայց եւ ի՜նչպէս ամէնքդ ալ, վերջին պահուն, ձեր դիմաց
Երազային, շատ պայծառ ուրիշ Արեւ մը տեսաք,
Եւ ճօճեցաք օդին մէջ՝ զայն խըմելէ վերջ գըյագ...:

1915

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

## ՄԵԾ ԱԿՆԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՈՒԱՇԻՆԿԹԸՆ ԱՅՑԷՆ

Արտաքին նախարար Վարդան Օսկանեան յայտարարեց, թէ «մեծ ակնկալութիւններ» ունի նախագահ Ռոպերթ Քոչարեանի Միացեալ Նահանգներ յառաջիկայ այցելութենէն, որուն ընթացքին, խօսակցութեանց գլխաւոր նիւթերը պիտի ըլլան Ղարաբաղի բանակցութիւններուն ընթացքը եւ Հայաստանին ընծայուելիք յաւելեալ օժանդակութիւնը:

Քոչարեան Ուաշինկթըն կը հասնի Յունիս 27ին, Սպիտակ Տան մէջ իր առաջին տեսակցութիւնը ունենալու համար նախագահ Քլինթընի հետ:

Նախքան Ուաշինկթըն գալը, նախագահ Քոչարեան պիտի երթայ Մոսկուա՝ ներկայ գտնուելու համար Անկախ Պետութիւններու Հասարակապետութեան (ԱՊՀ) գագաթի ժողովին: Այս առիթով պիտի տեսնուի նախագահ Փութինի հետ:

## ՌՈՒՍԻԱ ԴԺԳՈ՞Հ

«Ազգ» թերթը կը հաղորդէ, թէ ռուսական Վերին Խորհրդարանը՝ Դաշնակցային Խորհուրդը մերժած է վաւերացնել հայեւռուս միջ-կառավարական համաձայնագիր մը, որ կնքուած էր վերջերս երկու երկիրներու մէջ բնակող ռուս եւ հայ քաղաքացիներու իրաւական փոխադարձ գոյավիճակի մասին:

Թերթին Մոսկուայի թղթակիցը կ'ըսէ, թէ ռուս մեկնաբանները զարմանք յայտնած են այս մերժումին համար: Դաշնակցային Խորհուրդը բաղկացած է Ռուսաստանի զանազան շրջաններու կառավարիչներէն:

Հիմնականին մէջ, կը տրուին երկու բացատրութիւններ: «Կամ այն է՝ որ ռուս ծերակուտականները չեն հասկնար, թէ Հայաստան իրենց միակ դաշնակիցն է Կովկասի մէջ, եւ կամ իրենց մերժումը խորհրդանշական քայլ մըն էր՝ ուղղուած Ռոպերթ Քոչարեանին, որ Արեւմուտքի կողմնակից կը նկատուի Ռուսաստանի մէջ»:

## ԻՏԱԼԻՈՅ ԱՐՏԱՔԻՆ ՓՈԽ-ՆԱԽԱՐԱՐԻ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Իտալիոյ Արտաքին Փոխ-Նախարար Ռանիէրի գլխաւորութեամբ պատուիրակութիւն մը, դէպի Կովկասեան տարածքաշրջան կատարելի այցելութեան շրջագծով, երէկ Թիֆլիսէն Երեւան ժամանեց:

Պատուիրակութեան անդամները օդանաւակայանէն առաջնորդուեցան նախագահական պալատ եւ ընդունուեցան Նախագահ Ռոպերթ Քոչարեանի կողմէ: Նախագահ Քոչարեան ողջունելով հիւրերը, դիտել տուաւ որ Հայաստան իր արտաքին

⇨ 4

ՈՒՐՈՒԿՈՒԷՅ

# «ՌԱՏԻՕ ԱՐՄԵՆԻԱ»Ն 65 ՏԱՐԵԿԱՆ Է

Կը տեղեկանանք թէ 16 Յունիս 2000-ին, Ուրուկուէյի «ՌԱՏԻՕ ԱՐՄԵՆԻԱ»ն կը բոլորէ իր 65 տարին: Արդարեւ Ուրուկուէյի սոյն կայանը հայ համայնքի իսկական ողնաշարը կը նկատուի, որ մեծ դերակատարութիւն ունեցած է հայ-ուրուկուէյական յարաբերութիւններու ձեւաւորման ու զարգացման մէջ:

Կայանի հիմնադիր, հմուտ տնօրէն Յարութիւն Ռուբէնեանի մահէն յետոյ (1993-ին) իր կողակից` Տիկին Արաքսիի ու զաւակներուն` Պերճի եւ Արամի աշխատանքով, «ՌԱՏԻՕ ԱՐՄԵՆԻԱ»ն բացի իր տեղեկատուուական եւ մշակութային գործունէութենէն, կը ծաւալէ նաեւ բարեգործական մեծ օգնութիւն` ցուցաբերելով ոչ միայն հայ համայնքին այլ Ուրուկուէյի եւ Հարաւային Ամերիկայի կարիքաւորներուն. գործունէութիւն, որ տեղական իշխանութիւններու անվերապահ համակրանքին արժանացած է:

Այս առթիւ մեծ շուքով կը նշուի հիմնադրութեան 65 ամեակը: Յունիս 12-ին, Մոնթեվետիոյի Քաղաքապետարանի գլխաւոր սրահին մէջ տեղի ունեցաւ շքեղ համերգ մը, Ուրուկուէյի Ֆիլհարմոնիք Նուագախումբին կողմէ: Վաղը` Ուրբաթ 16 Յունիսին, ակադեմական յայտագիր մը պիտի կայանայ, համայնքի ակնառու ներկայացուցիչներու մասնակցութեամբ: Իսկ 22 Յունիսին, «SHERATON» պանդոկին մէջ տեղի պիտի ունենայ ընդունելութիւն մը, Ուրուկուէյի բարձրաստիճան պաշտօնեաներու ներկայութեամբ:

Նշենք թէ այս տօնակատարութիւններէն բացի, Ուրուկուէյի Ազգային Փոստային վարչութիւնը նամականիշ մը պիտի հրատարկէ նուիրուած կայանին հիմնադրութեան 65-ամեակին:

*Խմբագրութիւնս իր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնէ «ՌԱՏԻՕ ԱՐՄԵՆԻԱ»ի պատասխանատուներուն, մաղթելով նորանոր յաջողութիւններ:*

# ՀԱԿԻՐՃ ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ՀԱՖԷԶ ԷԼ ԱՍԱՏԻ

Սուրիոյ Առիւծը, ինչպէս կը կոչեն զինք, Հաֆեզ էլ Ասատ ծնած է Սուրիոյ Լաթաքիա նաւահանգիստ քաղաքին մօտ գտնուող Քուրտահա գիւղը, 6 Հոկտեմբեր 1930ին:

Երկրորդական ուսումը ստացած է Լաթաքիոյ մէջ:

Պաաս ընկերվարական կուսակցութեան անդամ եղած է 1946ին ու մասնակցած է Սուրիոյ ազատագրութեան ի նպաստ կատարուած ուսանողական շարժումներուն:

Զինուորական Ակադեմիա մտած է 1952ին, որմէ շրջանաւարտ եղած է 1955ին, իբրեւ օդաչու տեղակալ: Նոյն մարզէն ներս ուսանած է Խորհրդային Միութեան զինուորական վարժարաններուն մէջ, ուրկէ վկայուած է որպէս մարտական օդաչու:

Դէմ եղած է Սուրիոյ եւ Եգիպտոսի անջատումին, որ տեղի ունեցաւ 1961ին: Մասնակցած է 8 Մարտ 1963ի յեղափոխութեան:

21 Նոյեմբեր 1970ին, դարձած է Սուրիոյ վարչապետ եւ Պաշտպանութեան նախարար:

12 Մարտ 1971ին հանրաքուէով ընտրուած է Սուրիոյ Հանրապետութեան նախագահ:



*Ընտանեկան այս աւանդական նկարին մէջ` նախագահին կողքին, կինը` Անիսա Մախլուֆ, աղջիկը` Պուշրա, որ դեղագործութեան դոկտորա ունի: Տղաքը, ձախէն աջ` Պասէլ (զոհ գացած է ինքնաշարժի արկածի մը 1994-ին ճարտարագէտ սպայ էր), Պաշշար` բժիշկ–գնդապետ, Մահէր` ճարտարագէտ–հազարապետ, Մաճէտ` Տնտեսագէտ:*

Զօրավար Հաֆէզ էլ Ասատ, մեղմ ու բարեհամբոյր արտաքինին ներքեւ, երկաթեայ կամքի տէր բացառիկ անձնաւորութիւն մըն էր:

ԹՈՒՐՔԻԱ

# ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԸ ԲԱՐՁՐԱՑՈՒԵԼ Է ԹՈՒՐՔԻԱՅԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆՈՒՄ, ԲԱՅՑ ԻՆՉՊԷ՞Ս

Այս շաբաթ Հայոց ցեղասպանութեան հարցի մասին խօսք է բացուել Թուրքիայի խորհրդարանում, երբ պատգամաւորներից մէկը` Թուրքիայի արտաքին գործերի նախարար Իսմայիլ Ճեմին հարցրել է, թէ արտգործնախարարութիւնն ինչ է անում հայկական ցեղասպանութեան պնդումների դէմ:

Ինչպէս տեղեկացնում է «Ազատութիւն» ռադիոկայանը, արտգործնախարարն ասել է, որ այդ հարցը յաճախ է հայերի կողմից առաջ քշւում, իսկ նախարարութիւնը իր կարողութեան չափ պայքարում է դրա դէմ ու որոշ յաջողութիւններ է ձեռք բերել:

Իսկ ըստ «Թրքիշ Տէյլի Նիւսի», պատգամաւորի հարցապնդմանն արտգործնախարարը պատասխանել է, թէ արտգործնախարարութիւնը երկու աշխատանքային խումբ է ստեղծել հետեւելու համար հայերի «այսպէս կոչուած» ցեղասպանութեան ճանաչմանն ուղղուած արշաւին: «Եւրոպայի մի շարք երկրներում մենք կանխել ենք «այսպէս կոչուած» ցեղասպանութեան վերաբերեալ սխալ որոշումների ընդունումը` այդ պետութիւնների խորհրդարանների կողմից», ասել է նա, կոնկրետ չասելով, թէ` որ խորհրդարաններում է կանխել:

Անդրադառնալով հայ դատի ճանաչմանը ԱՄՆ-ում, Ճեմը նշել է. «Մեզ յաջողուել է նաեւ կանխել համանման զարգացումները Միացեալ Նահանգներում, բայց այնտեղ ծաւալուող որոշ արշաւների դէմն առնելը դժուար կը լինի»:

Ճեմը խօսել է նաեւ Ղարաբաղի խնդրի մասին, ասելով, որ պիտի Ատրպէյճանի համար ցանկալի լուծում գտնուի, եւ հայերը դուրս բերեն զօրքերը «գրաւեալ տարածքներից»:

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՔՐԻՍՏԻՆԷ ԲԱԲԱՅԵԱՆ ՄԻՍ ՀԱՅԱՍՏԱՆ - 2000



Միսս Հայաստան – 2000 գեղեցկութեան մրցումը տեղի ունեցաւ 12 Յունիսի գիշերը, Ալեքսանտր Սպենդիարեանի օփերայի եւ պալէի Թատրոնին մէջ:

Հայաստանի Գեղուհի ընտրուեցաւ Քրիստինէ Բաբայեան, որ իր հայրենիքը պիտի ներկայացնէ «Միսս Աշխարհ» մրցումին:

Հայաստանի անկախութենէն ի վեր իր տեսակին մէջ չորրորդը եղող այս մրցումին մասնակցեցան 17–24 տարեկան 22 գեղուհիներ, որոնք դիմած էին Երեւանէն, Արմաւիրէն, Լոռիէն, Սիւնիքէն եւ Ղարաբաղէն: Մրցումին իբրեւ հիւր ներկայ եղան օտար գեղուհիներ:

## ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԵՂՐԻ ՇՐՋԱՆԸ ԶԱՐԳԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Այսօր, ՀՀ կառավարութիւնը քայլ մը եւս առաւ, ընդգծելու համար Մեղրիի շրջանի զարգացման նկատմամբ իր յանձնառութիւնը, քննարկելով շրջանի տնտեսութեան բարգաւաճման ուղեալ համապարփակ թղթածրար մը:

Կառավարութեան նիստի օրակարգի առաջին կէտն էր այս մէկը:

Թղթածրարի նախագիծը պատրաստուած էր նախորդ Վարչապետ Արմէն Սարգսեանի օրով: Այս մասին վարչապետ Անդրանիկ Մարգարեան յայտնեց, թէ համապատասխան Նախարարութիւնները յաւելեալ քննարկումներ պէտք է կատարեն, որուն պէտք է հետեւին ծրագիրը կեանքի կոչելու մասնայատուկ առաջարկները` համապատասխան գումարներով: Անդրանիկ Մարգարեանի գլխաւորած կառավարութիւնը, յետ քննարկումներու, սկզբունքային համամտութիւն յայտնեց ծրագրին կապակցութեամբ, որ նաեւ կը նախատեսէ մեծաքանակի եւ փոքրաքանակի շուկաներ` Իրանի հետ սահմանային կէտին մօտ: Շուկաները պիտի վայելեն աւելի նպաստաւոր պայմաններ, քան երկրի միւս շրջաններու շուկաները, իսկ այն հաստատութիւնները, որոնք կը փափաքին հոն մասնաճիւղեր բանալ, պէտք է Մեղրիի մէջ գրանցուին:

## ԱՄՈՒՍՆԱԼՈՒԾՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԹԻՒՆ ԱՃԵԼ Է 1,3 ԱՆԳԱՄ

Յունուար-մարտ ամիսներին Հայաստանում իւրաքանչիւր 1000 նոր կազմաւորուած ամուսնական զոյգերից 135-ը ամուսնալուծուել է:

Ըստ ՀՀ առաջին եռամսեակի սոցիալ-տնտեսական տեղեկագրի` անցած տարուայ նոյն ժամանակահատուածի համեմատութեամբ, գրանցուած ամուսնութիւնների քանակը նուազել է 15,1 տոկոսով եւ կազմել 2.677, իսկ ամուսնալուծութիւնների թիւը հասել է 360-ի:

ԳԵՐՄԱՆԻԱ

# ՀԱՅԱՍՏԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԱԾ Է EXPO 2000 ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍՈՒՄ

## Յունիսի 24-ը Հայաստանի Օր Յայտարարուած

Յունիսի 1-ին Գերմանիայի Դաշնային Հանրապետութեան Հանովեր քաղաքում տեղի ունեցաւ EXPO 2000 համաշխարհային ցուցահանդէսի հանդիսաւոր բացումը: Անցնող հազարամեակի խոշորագոյն այս միջոցառմանը աշխարհի 180 երկրների եւ միջազգային կազմակերպութիւնների շարքում իր մասնակցութիւնն ունեցաւ նաեւ Հայաստանը:

EXPO 2000-ի բացման արարողութեանը մասնակցում էին աշխարհի տարբեր երկրների նախագահներ եւ վարչապետներ, թագաւորներ եւ թագուհիներ, արքայադուստրեր եւ արքայազններ, քաղաքական յայտնի դէմքեր եւ մշակոյթի ներկայացուցիչներ:

Հանդիսաւոր պայմաններում «Նոյեան տապանի հետքերով նորովի յայտնագործենք Հայաստանը» խորագրով Հայկական տաղաւարը բացել է EXPO 2000-ի Հայաստանի գլխաւոր յանձնակատար, ՀՀ արդիւնաբերութեան եւ առեւտրի նախարար Կարէն Ճշմարիտեանը: Բացման արարողութեանը մասնակցում էին Գերմանիայում Հայաստանի Հանրապետութեան դեսպան Աշոտ Ոսկանեանը, ցուցահանդէսի կազմակերպիչներ, հայկական սփիւռքի ներկայացուցիչներ, բազմաթիւ այլ հիւրեր:

Օրուայ երկրորդ կէսին Կ. Ճշմարիտեանը հանդիպումներ է ունեցել ցուցահանդէսին Հայաստանի մասնակցութեան համար պատասխանատու պարոն Ա. Սարկանի եւ Հայաստանի ազգային օրուայ պատասխանատու Ա. Շիլլինգի հետ: Քննարկուել են բազմաթիւ խնդիրներ` կապուած Յունիսի 24-ին նշուելիք Հայաստանի ազգային օրուայ հետ:

Բիբլիական Արարատ լերան ֆոնի վրայ Նոյեան տապանի տեսքով ներկայացուած հայկական տաղաւարը բացման առաջին իսկ ժամերից գրաւել է այցելուների ուշադրութիւնը:

Այցելուներին գրաւում է Արարատի չքնաղ տեսարանը, Նոյեան տապանը, թարմ լաւաշի բուրմունքը:

Հաճելի է, երբ պարզւում է, որ աշխարհը ճանաչում եւ շատ աւելի բարձր է գնահատում հայորդիներին, քան մենք ենք ներկայացրել:

Հինգ ամիս շարունակ հայկական Նոյեան տապանը կը ներկայացնի աշխարհին հայ ժողովրդի պատմական ուղին` անցեալից մինչեւ ապագան, մշակոյթը, հին ու նոր ճարտարապետութիւնը, Հայ եկեղեցին, ազգային կենցաղը, ժամանակակից գիտա-տեխնիկական մշակումները, ազգի մտաւոր ներուժը եւ ազգովի համայն հայութեան Հայաստան երկրի արժանավայել ապագան կերտելու անսպառ կամքը:

EXPO 2000 ցուցահանդէսում Հայաստանի օր յայտարարուած Յունիսի 24-ին ակնկալւում է Հայաստանի պաշտօնական պատուիրակութեան մասնակցութիւնը: Այդ օրը հայկական տաղաւարում տիրոջ իրաւունքով Հայաստանը կը ներկայացնեն աշխարհի տարբեր երկրներից ժամանած մեր հայրենակիցները:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՎԱՐԿԵՐ ՏՐԱՄԱԴՐՈՂ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԴԺԳՈՀ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿԷՆ

Անցնող շաբաթավերջին Հայաստան այցելեցին Համաշխարհային Դրամատան եւ Արժութային Միջազգային Հիմնադրամի ներկայացուցիչները, որոնք երկրի ղեկավարութեան հետ իրենց ունեցած հանդիպումներու ընթացքին մտահոգութիւններ յայտնեցին տնտեսական բարեփոխումներու ընթացքին եւ զարգացումներուն վերաբերեալ:



*Նախագահ Քոչարեան կ'ընդունի Համաշխարհային Դրամատան ներկայացուցիչ Տիկ. Ճիւրի Օ'Քոնըրը*

Ուրբաթ, Յունիս 3-ին նախագահ Ռոբերդ Քոչարեան ընդունեց Արժութային Միջազգային Հիմնադրամի պատուիրակութիւնը` եւրոպական երկիրներու բաժանմունքի փոխտնօրէն Թոմ Ուլֆի գլխաւորութեամբ:

Պատուիրակութիւնը, որ Հայաստան ժամանած էր կառավարութեան հետ բանակցութիւններ վարելու նպատակով, մտահոգութիւն յայտնած է, որ տնտեսական զարգացումը ակնկալուած արդիւնքները չեն տուած: Նախագահ Քոչարեան պատճառաբանելով ըսած է, թէ ձախողութիւնները ստեղծուած ներքին քաղաքական կացութեան հետեւանք էին: Իսկ այժմ վիճակը փոխուած է եւ ամէն ինչ հսկողութեան տակ է:

Նախագահը հաւաստիացուցած է, որ մի քանի ամսուայ ընթացքին տարբերութիւնը եւ դրական արդիւնքները ակնյայտ կը դառնան, իսկ այս տարուայ աշնան բոլորովին այլ տնտեսական ցուցանիշներ կ'արձանագրուին:

Կողմերը առաջնահերթ նկատած են կաշառակերութեան դէմ պայքարը. որ պիտի իրականացուի համապատասխան օրէնքներու ձեւաւորումով:

Համաշխարհային Դրամատան տարածաշրջանային տնօրէն, Տիկին Ճիւդի Օ' Քոնըր Հայաստան եկած էր կառուցուածքային բարեփոխումներու SAC-3 վարկի տրամադրման ժամկէտներու շուրջ բանակցութիւններ վարելու նպատակով: Հանրապետութեան նախագահին ու վարչապետին ներկայացնելով իր գնահատականները, ինք եւս արտայայտած է որոշ մտահոգութիւններ: Ան անդրադարձած է նաեւ սեփականաշնորհման գործընթացին, մասնաւորապէս ուժանիւթի բաշխիչ ցանցերու սեփականաշնորհման հարցին: ՀՀ նախագահը այս մասին յայտնած է, որ Ազգային Ժողովը ոչ թէ դէմ է այդ ցանցի սեփականաշնորհման, այլ կարեւոր կը նկատէ գործընթացի նկատմամբ վերահսկողութիւն հաստատել:

«Որոշ առումով հիասթափուած եմ, ինչպէս եւ շատ մարդիկ, որ որոշ քաղաքական վայրիվերումներու եւ փոփոխութիւններու պատճառաւ Հայաստանի տնտեսական առաջընթացը դանդաղած է»,- Յունիս 5-ին կայացած մամլոյ ասուլիսի ընթացքին յայտարարեց Տիկ. Օ'Քոնըր:

Հանրապետութեան ղեկավարներու հետ իր վերջին օրերու հանդիպումներէն ետք, Համաշխարհային Դրամատան շրջանային տնօրէնը եկած է այն եզրակացութեան, որ Հայաստանի իշխանութիւնները լուրջ քայլերու կը ձեռնարկեն տնտեսական աճին նոր ազդակ տալու, ինչպէս եւ աշխա-

➪ 4

# ՀԱՏՈՒԱԾ՝ ՓԱՐԱՄԱԶԻ ՎԵՐՋԻՆ ՃԱՌԷՆ



*Պարսախանելով Խուրշիտ Պէյի արտայայտութիւններուն, դատաքննութեան ընթացքին, Քսաններու պարագլուխը՝ Փարամազ կը խօսի հինգնավարաի եւ խոր համազոմով.-*

«Քիչ առաջ փոխ նախագահ Խուրշիտ Պէյ սրտբաց յայտարարութիւններ ըրաւ հոս, եւ ես որ կեանքիս մէջ լացած չեմ, նոյնիսկ տասնեակ տարիներով ընտանիքէս հեռու ապրեր եւ օր մը տուն վերադարձիս իմ աղջկանս կողմէ չճանչցուելու յուզիչ տեսարանին առջեւ անայլայլ մնացեր եմ,- ինչ մեղքս պահեմ, իրապէս յուզուեցայ Խուրշիտ Պէյի ճառի անկեղծութենէն... ու լացի, ես՝ Փարամազս, որովհետեւ ան մատը մեր վէրքին վրայ դրաւ, ըսելով թէ՝ «ինչե՞ր չէին կրնար ընել ձեզի պէս խանդավառ մարդիկ, եթէ հասարակաց երջանկութեան իտէալը ընդհանուր դրօշի մը տակ համադրուէր»,- լացի, այո՛, որովհետեւ այդ քանի մը բառերուն մէջ ճշմարտութեան ճառագայթը փայլեցաւ:

Այդ միեւնոյն հարցումը մենք պիտի ընէինք, աւելցնելով թէ՝ ինչե՞ր չըրինք մենք այս դժբախտ երկրին երջանկութեան համար: Ինչ անսահման զոհողութիւններու չյօժարեցանք, ինչքա՞ն եռանդ ու արիւն չսպառեցինք հայ եւ թուրք եղբայրակցութեան իրականացման համար. ինչպիսի՞ զրկանքներ յանձն չառինք փոխադարձ վստահութեամբ զիրար բարձրացնելու համար...: Ու ինչ տեսանք:

Դուք քաջալերեցիք ոճիրն ու հարստահարութիւնը, եւ լռեցնել ջանացիք բողոքի ամէն մի արտայայտութիւն:

Դուք մեզ ջարդել սկսաք, եւ օրին մէկը վճռեցինք մեր արժանապատուութեան համապատասխան դիրքի վրայ բարձրանալ»:

# ՏԷՐ Գ. ՔՀՆՅ. ՊՕՂՈՍԵԱՆ ԱՅՍ ԽԱՉՈՎ ՕՐՀՆԵՑ ՔՍԱՆ ՀԵՐՈՍՆԵՐՈՒՆ



*Այս Խաչը, որ ներկայիս Ս. Էջմիածնի Թանգարանին մէջ կը գտնուի պատկանած է Հանգուցեալ Տէր Գ. Քհնյ. Պօղոսեանի: Այս խաչով է որ Տէր Հայրը Ներքին Գործոց Նախարարութենէն կանչուելով, Ս. Հաղորդութիւն տուած է նահատակութեան պատրաստուող Քսաններուն: Տէր Հայրը իր կտակին մէջ խնդրած է որ իր մահէն ետք այդ խաչը տարուի Սուրբ Էջմիածին, յանձնուելու համար Ամենայն Հայոց Հայրապետին:*

## ՔՍԱՆՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

(ամփոփուած)

Քսան ընկերները տարին ու կեցուցին կախաղաններուն առջեւ:

Այն հոգեկան կորովը, որ ցոյց կու տային անոնք, կը վարակէր զիս ալ եւ կը տոկայի այդ տեսարանին:

... Ոչ մէկ տրտունջ կամ դժգոհութիւն կը լսուէր անոնց բերնէն, որովհետեւ համոզուած զինուորներ էին ազատութեան բանակին:

... Այն վայրկեանին, երբ կը կարդացուէր մահավճիռը, բոլորը միասին պոռացին.- *Կեցցէ՛ Հայաստան, կեցցէ՛ Հայաստան:*

Մահավճիռին ընթերցումէն յետոյ Փարամազ դարձաւ իր ընկերներուն եւ քաջալերական խօսքեր ըրաւ անոնց, մինչ Տոքթ. Պէննէ կը պոռար դահիճներուն երեսին.

- *Մեզ քսաններս կը կախէք, բայց քսան հազարներ պիտի հետեւին մեզ:*

... Առաջին անգամ Փարամազը տարին կախաղանին առջեւ, իսկ զիս բաժնեցին անոնցմէ եւ տարին այն սենեակը ուր արարողութիւն կատարեր էի:

Յանկարծ երգի մը ձայնը լսուեցաւ: Երուանդն էր՝ Բանուորը, որ երգով կը դիմաւորէր մահը, արհամարհելով զայն.

*Ամենայն տեղ մահը մի է, մարդ մի անգամ պիտ՝ մեռնի.*

*Բայց երանի որ իր ազգին ազատութեան կը զոհուի:*

Երգին վերջին վանկերը խառնուեցան մահուան հոնդիւններուն հետ:

Այսպէս վարձատրուեցան անոնք, որոնք մահը արհամարհեցին Հայաստանի համար: Վերջապէս խժդժօրէն նահատակուեցան իրենց կեանքին գարունին մէջ այդ անձնուրաց գործիչները եւ խոստմնալից մտաւորականները, որպէսզի *«Հայը որ կաթիլ կաթիլ կը մեռնէր»*, ազատուէր այդ մահէն:

Հանգիստ անոնց ոսկորներուն եւ օրհնութիւն անոնց յիշատակին:

**ՏԷՐ Գ. ՔՀՆՅ. ՊՕՂՈՍԵԱՆ**

## ՔՍԱՆՆԵՐԸ՝ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԱՆՎԵՀԵՐ ՀԵՐՈՍՆԵՐԸ

1 ➩

*սիրոյն եւ անվերապահ յարգանքին, թէ՛ հայրենիքի եւ թէ՛ սփիւռքի մէջ:*

*Վստահ ենք որ պիտի գայ այն օրը, որ Քսաններու աճիւնները Էտիրնէ Գաբուի հայոց գերեզմանատունէն փոխադրուին հայրենիք եւ հանգչին իրենց այնքան սիրած ու երազած ազատ հայրենիքի սրբազան հողին մէջ:*

*Հայութեան ազատագրական պայքարին մէջ չկայ այնքան նշանակելի, այնքան ցնցող, որքան Քսան Կախաղաններու դէպքը:*

*Բիւ՛ր յարգանք եւ օրհնութիւն անոնց անթառամ յիշատակին:*

# ՄԱՀԱՎՃԻՌ

*Ահա այն զեկոյցը, զոր Պոլսի Պատերազմական Ատեանը հաղորդեց մամուլին, քսան Հնչակեան ընկերներու մասին, անոնց կախաղան բարձրանալէն յետոյ:*

Պատերազմական Ատեանին առջեւ տեղի ունեցած դատավարութեամբ հաստատուեցաւ թէ հետեւեալ անձերը անկախ եւ ինքնօրէն Հայաստան մը կազմելու համար ոճրափորձեր սարքած են եւ օտարները կայսերական կառավարութեան դէմ գրգռելու եղանակով, ձեռնարկած են կայսերական երկիրներուն մէկ մասը Օսմանեան Կառավարութենէն անջատելու, եւ այս նպատակով օտար երկիրներու զանազան տեղերը գաղտնի ու յայտնի համաժողովներ գումարելով հանդերձ հրատարակութիւններ, գրգռութիւններ եւ թղթակցութիւններ ըրած են:

Այդ անձերը հետեւեալներն են.-

Հնչակեան Կուսակցութեան ազդեցիկ անդամներէն եւ Ռուսահպատակ Կովկասցի Փարամազ անունով ծանօթ՝ Մաթէոս Սարգիսեան եւ կամ Թէքիրտաղցի Համբարձում Գրիգոր:

Վանեցի Յակոբ Ղազարեան, որդի Մուրատեանի, ուրիշ անունով՝ Մուրատ Զաքարեան:

Կիրասոնցի մշակ Մինաս, որդի Գաբրիէլ Քէչիչեանի, ուրիշ անունով՝ Սարը Խաչիկ կամ Մինաս:

Պիթլիսցի դերձակ՝ Սմբատ, որդի Վարդան Գլըճեանի, ուրիշ անունով՝ Անկուտի Պետրոս:

Զմչկածագցի յանձնակատար Վահան Պօյաճեան, ուրիշ անունով՝ Ռուբէն, որդի Մինաս Կարապետեանի:

Խարբերդցի Տոքթ. Պետրոս, որդի Պէննէ Թորոսեանի:

Վաճառական Արմենակ, որդի Համբարձումի:

Կօշկակար Աբրահամ, որդի Ստեփան Մուրատեանի:

Կալուածական միջնորդ, Արաբկիրցի Արամ, որդի Կարապետ Աչըգպաշեանի:

Բժշկական Վարժարանի Գ. Դասարանի ուսանողներէն Արամ, որդի Աբրահամ Եկաւեանի:

Սարաճխանէի մէջ վրան չինող գործաւոր՝ Շապին Գարահիսարցի Գարեգին, որդի Առաքել Պօղոսեանի:

Քիլիսի Հնչակեան Մասնաճիւղի նախագահ, Սինկէրի Ընկերութեան հաւաքիչ՝ Յակոբ, որդի Ղազար Պասմաճեանի:

Նոյն ճիւղին անդամներէն եւ Հայոց Վարժարանին ուսուցիչներէն՝ Թովմաս, որդի Վահան Թովմասեանի:

Կօշկակար Երեմիա, որդի Կիպիրանոս Մանանեանի:

Խարբերդի Հնչակեան ճիւղին անդամներէն Մկրտիչ, Յովհաննէս Էպրէնէսեան, Երէցեանի:

Զինուորական Վարժարանին մէջ, սպայութեան թեկնածու, Վանեցի Գեղամ, որդի Կարապետ Վանիկեանի:

Պարտիզակի Հայոց Վարժարանի ուսուցիչներէն Երուանդ Թօփուզեան:

Գայսերիի Հնչակեան ճիւղին անդամներէն եւ վարժարանի ուսուցիչներէն՝ Յովհաննէս, որդի Ստեփան Եղիազարեանի:

Գուրը Գահուէճի Գառնիկ, որդի Գրիգոր Պօյաճեանի:

Կ. Պոլսի Պատերազմական Ատեանի քաղաքային պատժական օրէնքին 54-րդ յօդուածին համաձայն վերոգրեալ անձերը մահուան դատապարտեց. Վեհ. Սուլթանը վաւերացուց վճիռը, որով եղած կայսերական իրատէին համաձայն՝ վերոգրեալ անձերը ըստ սովորութեան բերուած կրօնական պաշտօնեայի կողմէ, կրօնական արարողութիւնը կատարուելէ, կտակնին գրելէ ու բժշկական քննութեան ենթարկուելէ ետքը, պատերազմական պաշտօնատան դիմացի կառափնատեղին տարուելով, մահու պատիժին ենթարկըւեցան:

Վերոգրեալ ոճիրին համար ի բացակայութեան դարձեալ մահուան դատապարտուած Քօմիթէին ընդհ. կեդրոնին նախագահ Սապահ Գիւլեանի եւ անդամներէն Վարազդատի մասին ալ ձեռնարկուած է օրէնքին պահանջմանց գործադրութեան:

# ԴԱՒԱՃԱՆԸ ԵՒ ԻՐ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ

## Ո՞Վ ԷՐ ԱՐԹԻՒՐ ԵԱՍԵԱՆԸ

Այժմ հակիրճ կերպով ծանօթացնենք այդ թշուառականը, ազգադաւը:

Համաձայն այն ատենի լրագիրներու հաղորդագրութեանց, այս երիցս թշուառականը, անմրցելի դաւաճանը եղած է Եօզղատցի, իսկական անունով Արշաւիր Սահակեան: Եղած է ծանօթ մէկէ աւելի լեզուներու: Յաճախակի կրած է ակնոց, մերթ ալ առանց ակնոցի կատարած է տխուր դերը, չքեղօրէն հագնուած, գրպանը լեցուն, ձեռքը գաւազան մը, այլազան վայրերու մէջ յայտնուած հետեւեալ կեղծ անուններով. Մհեր, Ա. Մեգմունի, փիլոս Ալիս, Մոկ Ֆարհադ, Մարքիզ, Ալիս Ռշտունի, Ռատօլֆ Սթօն, Մաքլատ, Լութֆի եւայլն եւայլն: Շրջագայած է Սեբաստիոյ, Կեսարիոյ, Պրուսայի շրջանները, որպէս գաղտնի լրտես Իթթիհատի: Անցած է Եգիպտոս (Ֆրանսերէն լեզու դասաւանդած Գալուստեան վրժ.ին մէջ), Պալքաններ եւ այլուր:

Ուր որ գացած է այս հրէշը, խաբելով աղջիկներ՝ ամուսնացած է: Եւ որպէսզի իր անպարտ զոհերը իրենց չի հետեւին, հետքը կորսնցնեն, հայ եւ թուրք թերթերու մէջ կեղծ անուններով թղթակցութիւններ տպել տուած է, իբր թէ մեռած է, կամ Իտալացի զինուորներ սպաննած եւ դիակը ծովը նետած են:

Ի՞նչպէս գիտցուած է այս հրէշին ինքնութիւնը:

Պոլսոյ Կեդր. նամակատան մէջ այս գազանը նամակատուփ մը կը վարձէ Ս. Դ. Հնչ. Ուսանողական Միութեան տուփին մօտ: Օր մը Հնչակեան ընկեր սովորականին պէս կը հանդիպի նամակատուն նամակները ստանալու: Տուփին մէջ դրուած նամակներու կարգին արտառոց հասցէ կրող նամակ մը կը գտնէ - Թիւ 50 Փօլ: Հնչակեան ընկերը պաշտօնեային երբ կը հարցնէ նամակի տիրոջ մասին, պաշտօնեան կ'ըսէ, - «Ահա՛ այդ նամակին տէրը», եւ ցոյց կու տայ նոր ներս մտնող ակնոցաւոր եւ չիք հագուած երիտասարդ մը:

Հնչակեան ընկերը այս պարագան կը յայտնէ Հնչակեան վերին մարմնին, որու կատարած քննութիւնը երեւան կը հանէ Թիւ 50 Փօլի ինքնութիւնը:

Դաւաճանը ճանչցուած էր:

Պէտք էր մտածել զայն շուտով մէջտեղէն վերցնելու մասին:

Որոշումը կը տրուի:

1915 Յունուար 29-ին, Վարդանանցի օրը, Ղալաթիոյ եկեղեցւոյ մէջ քարոզելու էր Կէտիկ Փաշայի քարոզիչ Տ. Օհան Վրդ. Կարապետեան եւ Կոմիտաս Վարդապետն ալ պիտի երգէր:

Նախընթաց երեկոյին սակայն, Յունուար 28-ին, Բերայի մէջ որոշումը կը գործադրուի, տեղի կ'ունենայ մահափորձ: Թիւ 50 Փօլը՝ Արթուր Եասեան կը զարնուի երկու գնդակով, դժբաղդաբար վէրքերը մահացու չեն ըլլար: Տէռօրիստները կը մնան անծանօթ: Իթթիհատի հրահանգով դաւաճանը կը փոխադրուի հիւանդանոց, ուր արտակարգ խնամքներու ներքեւ կը վերագտնէ կարճ ժամանակէն իր առողջութիւնը:

Վարդանանց հանդէսը տեղի չ'ունենար, կ'արգիլուի ոստիկանութեան հրահանգով:

### ԴԱՒԱՃԱՆԻՆ ՎԱԽՃԱՆԸ

Գիտենք թէ ընթերցողները անհամբեր են գիտնալու թէ ազգադաւ - Ա. Եասեան ի՞նչ վախճան ունեցաւ:

Ասոր պատասխանը, առնուած է Հնչակեան վեթերան մտաւորականներէն Ընկ. Ս. Շահէնի յուշերէն.-

«Համաշխարհային Առաջին Պատերազմին Թուրքիոյ եւ Գերմանիոյ պարտութեամբ երբ դաշնակից զրաման բանակները Պոլիս կը մտնեն, Թրքական կառավարութեան յատուկ մէկ յանձնարարականով, Ա. Եասեան կը մեկնի Ատանա եւ Ատանայի Թրքական կառավարութեան հաւանութեամբ որպէս «գեղծարար ոճրագործ» բանտարկութեան չինծու վճիռ կը ստանայ եւ կ'ապաստանի Ատանայի բանտը ապահովութեան համար:

«1919-ին Ընկեր Մաթէոս Երէցեան կը տեղեկանայ եղելութեան եւ կ'իմացնէ Ատանայի Առաջնորդ Արսլանեան Սրբազանին: Առաջնորդի գիտակցութեամբ տեղի կ'ունենան խորհրդակցութիւններ քանի հոգիի մէջ: Այդ խորհրդակցութեանց կը մասնակցին ընկերներ Սարգիս Կէզուրեան, Առաքել Քէչեան եւ Դաշնակցական Գարեգին Մարտիրոսեան. այս վերջինը ըլլալով Հնչակեան ընկերներու շատ մօտ ապրող մը, որ վերջէն հեռացաւ դաշնակներէն, եթէ չեմ սխալիր»:

«Խորհրդակցութեան վերջնական որոշումը այն կ'ըլլայ, որ Ընկ. Մաթէոս Երէցեան բանտը այցելելով՝ տեսակցի Եասեանի հետ ու կերպով մը մտերմութիւն հաստատէ: Ընկերը յանձնուած պաշտօնին մէջ կը յաջողի, գրաւելով դաւաճանին վստահութիւնը:

«Եասեանի նկարագրի մեծագոյն յատկանիշն ըլլալով օղի եւ կին, Ընկ. Երէցեան կ'առաջարկէ բանտէն դուրս գալ գիշեր մը եւ վայելել կեանքը: Եասեան առանց կասկածի կ'ընդունի առաջարկը բերնին ջուրերը վազելով:

«Ընկերներ անմիջապէս հրահանգ կուտան Զարչափուկ փողոցը բնակող Ընկ. Քէչիչեանին որ իր կինը եւ զաւակները որոշեալ գիշերը իր ազգականին տունը ուղարկէ:

«Որոշեալ գիշերը կը հասնի: Սեղանը կը պատրաստեն ու զայն կը բեռնաւորեն պտուղներով եւ օղիի շիշերով: Հոն են ընկերներ Սարգիս Կէզուրեան, Առաքել Քէչեան, Մաթէոս Երէցեան եւ Գարեգին Մարգարեան: Երեք զինուած պահակներ, երկուքը Հնչակեան, իսկ մէկը Դաշնակ, կը սպասեն միւս սենեակը:

«Ընկեր Մաթէոս Երէցեան, գործի ոգին, կը մեկնի բանտ եւ Եասեանը առնելով կը բերէ Զարչափուկ քէյֆին վայրը:

«Օղին կը սկսի հոսիլ ու Եասեանի գլուխը երբ կը տաքնայ, աղջիկ կ'ուզէ...:

«- Հիմա կը բերենք, կ'ըսէ Կարապետ Զավուշ, զէնքը ձեռքը ներս մտնելով երկու պահակներու հետ:

«Եասեան կը զգայ թակարդուիլը: Ոչ մէկ հնարաւորութիւն կ'ունենար ազատելու սակայն:

«Կը կազմուի *Դատական ատեան*...: Եասեան կ'ընկճուի: Ընկեր Կարապետ հրացանի կոթով մի քանի հարուածներ կուտայ Եասեանի կոնակին որ մանրամասնութեան ազատ տրաման պարզէ: Եասեան վերջապէս կը խոստովանի ամէն ինչ...: Հնչակեան Դատարանը Եասեանին կամաց-կամաց խեղդամահ ընելու վճիռը կուտայ: Երկու Հնչակեան պահակները կ'անցընեն չուանը Եասեանի վիզը, որու լեզուն դուրս կ'իյնայ ու քանի մը վայրկեան չարչարուելէ յետոյ կը մեռնի:

«Լուսաբացին Եասեանի դիակը երկաթուղիի կայարանին մօտիկ մէկ ձողին վրայ կախուած կը գտնէ Ֆրանսական իշխանութիւնը, որը սատկի վտահամբաւ մէկն ըլլալը իմանալով, եւ ոչ ոք դիակին տէր ըլլալով անծանօթ փոսի մը մէջ կը նետէ...»:

Այսպէս դաւաճանի անարգ կեանքին վերջ կը դրուի Հայ Նեմեսիսներու օրհնուած ձեռքերով:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Կիրակի, 25 Յունիս 2000-ի առաւօտեան ժամը 7.30-ին

**ԶԲՕՍԱՊՏՈՅՏ ԴԷՊԻ «ԱՊՈՒ ՍՈՒԼԹԱՆ»**

**«LA PALMA BEACH»**

**ԵՐԹՈՒԴԱՐՁ ԲԱՐԵԽԱՌՆԵԱԼ ՕԴՕՓԻՍՈՎ, ՄՈՒՏՔ ԵՒ ՃԱՇ**

**ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ՝ Ե.Ո. 45**
**ՈՉ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ՝ Ե.Ո. 50**
**12 ՏԱՐԵԿԱՆԷՆ ՎԱՐ՝ Ե.Ո. 25**

Արձանագրութեան համար դիմել հեռաձայնելով,
Տիկ. Սոնա Պալաեանի՝ 4176956, Տիկ. Այտա Նազաշեանի՝ 2900786
եւ Պր. Աւետիս Մովսէսեանի՝ 7940949, ամենաուշը մինչեւ 22 Յունիս:

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ-ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ**

Չորեքշաբթի, 21 Յունիս 2000, երեկոյեան վերջ ժամը 6-ին

**ԱՄՐԱՆ ԵՂԱՆԱԿԻ ԲԱՑՄԱՆ ԱՌԹԻՒ**
**ՕՇԱՐԱԿԱՍԵՂԱՆ - ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ**

Շարժումիս բոլոր սկաուտները, կայտերը, գայլիկները
եւ արծուիկները հրաւիրուած են ներկայ գտնուելու,
վերսկսելու համար ամառնային եղանակի հաւաքոյթները

* * *

Կիրակի, 25 Յունիս 2000, երեկոյեան ժամը 7-ին

**ՔԷՐՄԷՍ**

**ՄԻՈՒԹԵԱՆՍ ՇՔԵՂՕՐԷՆ ԶԱՐԴԱՐՈՒԱԾ ՄԱՐԶԱԴԱՇՏԻՆ ՎՐԱՅ**

**ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՑ ՔԷՐՄԷՍԵԱՆ ԶԱՆԱԶԱՆ ԽԱՂԵՐ**
Պատրաստուած Շարժումիս սկաուտներու եւ կայտերու կողմէ
**ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ ԱՐԺԷՔԱՒՈՐ ՆՈՒԷՐՆԵՐ**
**ԽՈՐՈՎԱԾԻ ԵՒ ԼԱՀՄԱՃՈՒՆԻ ՍՊԱՍԱՐԿՈՒԹԻՒՆ**
Պատրաստուած Շարժումիս սկաուտներու եւ կայտերու կողմէ

*Սիրելի աղեքսանդրահայե՛ր,*

*Ազատուեցէք զբաղուածութենէ, ըմբոշխնելու համար Շարժումիս սոյն կազմակերպած Քէրմէսին հաճելի օրը*

## Զաքարեան Հիմնարկ – Երեւան

## «Ճանաչել Հայրենիքը»

## Ամառ 2000

Սփիւռքահայ պատանիներու համար պատրաստուած Հայաստան այցելելու այս տարուան յայտագիրն է: Փորձառութիւն մը, որ պատանիներուն ոչ միայն առիթ կու տայ տեղւոյն վրայ ծանօթանալու Հայաստանի բնութեան եւ մշակոյթին, չփման մէջ մտնելու ժողովուրդին եւ նորաստեղծ ընկերային պայմաններուն հետ, այլ՝ իր դասապահերու եւ արուեստի փորձառական աշխատարաններուն միջոցաւ կը նպաստէ անոնց հայեցի դաստիարակման:

*Յաւելեալ տեղեկութիւններու համար դիմել՝*
*Ամառ 2000 – Պր. Թովմաս Զաքարեանին*
*Հեռ. Ֆաքս (202) 2583256*
***E-mail : zakarian@menanet.net***
***Web site : www.zakarian.org***

## ՎԱՐԿԵՐ ՏՐԱՄԱԴՐՈՂ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԴԺԳՈՀ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿԷՆ

2 ☞

տավարձերու, կենսաթոշակներու եւ նպաստներու ուշացումները յաղթահարելու ուղղութեամբ, եւ այս բոլորին պատրաստ է աջակցելու Համաշխարհային Դրամատունը:

Ճիւտի Օ՛Քոնըր յայտնեց նաեւ որ Դրամատան կողմէ տրամադրուող վարկերու հերթական՝ 50 միլիոն տոլար գումարի փոխանցումը կ'ուշանայ բաշխիչ ցանցերու սեփականաշնորհումը յետաձգուելուն պատճառաւ:

Յայտնենք, որ բաշխիչ ցանցերու սեփականաշնորհումը տնտեսական դաշտէն տեղափոխուեցաւ քաղաքականի, երբ Միջազգային Դրամատան ճնշումներուն պատճառաւ, ռուսաստանեան ընկերութիւնները դուրս ձգուեցան սեփականաշնորհման մրցոյթէն, հրապարակի վրայ մնալով միայն արեւմտեան չորս ընկերութիւններ: Ասոր ի պատասխան Հայաստանի Խորհրդարանը, նախկին վարչապետ Արամ Սարգսեանի պաշտօնավարութեան վերջին օրերուն որոշեց յետաձգել բաշխիչ ցանցերու սեփականաշնորհումը:

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Կը տեղեկանանք, որ համայնքիս սիրուած հայուհի՝ Տիկին Աննա Ասատուրեան ամսոյս 5-ին, Գերմանիոյ մէջ ոտքի բարդ վիրաբուժական գործողութեան մը ենթարկուած է, որ բարեբախտաբար անցած է յաջող: Ան այժմ ապաքինման շրջան մը կը բոլորէ եւ մօտերս պիտի վերադառնայ Գահիրէ:

Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի ազնիւ Տիկ. Ա. Ասատուրեանին:

## «ՋԱՀԱԿԻՐ» ԻՆ

Առ ի քաջալերութիւն Թերթիս ազգօգուտ գործունէութեան, ՈՄՆ կը նուիրէ 100

## ԻՏԱԼԻՈՅ ԱՐՏԱՔԻՆ ՓՈԽ-ՆԱԽԱՐԱՐԻ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

1 ☞

քաղաքականութեան մէջ մեծ կարեւորութիւն կ'ընծայէ եւրոպական պետութիւններու հետ համագործակցութեան եւ կը ձգտի լիիրաւ կերպով անդամակցիլ եւրոպական ընտանիքին:

Իր կարգին Իտալիոյ Արտաքին Փոխ-Նախարարը նշեց որ Իտալիան եւ Եւրոխորհուրդը առաջնահերթ կը նկատեն Եւրոխորհուրդին Հայաստանի անդամակցութիւնը, գնահատելով այդ ուղղութեամբ այն ջանքերը, որոնք ի գործ դրուած են Հայաստանի կառավարութեան կողմէ:

Նախագահ Քոչարեան նշեց որ Եւրոխորհուրդին անդամակցութեան հարցին մէջ Հայաստան երկար ճամբայ մը անցած է՝ իրականացնելով հետեւողական եւ համապարփակ Խօսելով հայիտալական երկկողմանի յարաբերութիւններու մասին, Նախագահ Քոչարեան ընդգծեց որ անհրաժեշտ է թափ տալ անոնց: Նաեւ նշեց որ Հայաստանի մօտ Իտալիոյ դեսպանատան բացումը նոր խթան պիտի հանդիսանայ՝ փոխադարձ համագործակցութիւնը ընդլայնելու ուղղութեամբ:

<u>ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ</u>

## ԾԱՆՈՒՑՈՒՄ

Աղեքսանդրիոյ ազգային Իշխանութիւնը հաճոյքն ունի տեղեկացնելու իր համայնքի յարգելի ազգայիններուն, որ դատարանը վաւերացուցած է ամուսնական նոտարութեան փաստաբան Ժիրայր Մանուկեանի թեկնածութիւնը:

Ուստի, բոլոր անոնք, որոնք մտադրած են ամուսնանալ, կրնան դիմել Աղեքսանդրիոյ Առաջնորդարանի դիւանատան, օրինապէս հարկ եղած պաշտօնական ձեւակերպութիւնները կատարելու համար:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք ղրկել « M. BALAYAN »ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Յառաջիկայ Կիրակի, 18 Յունիս 2000-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն, 1915-ին, Կ. Պոլսոյ մէջ կախաղան հանուած ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ նահատակութեան 85-րդ տարելիցին առթիւ:

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու եւ աղօթելու նահատակներու հոգիներուն խաղաղութեան համար:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.-ին
Սկիզբ Ս. Պատարագի - - 10.-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Կիրակի, 18 Յունիս 2000, առաւօտեան ժամը 10.30-ին

**ԳԱՀԻՐԷԻ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻՆ ՄԷՋ**

**ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ**

**1915-ԻՆ ՊՈԼՍՈՅ ՄԷՋ ԿԱԽԱՂԱՆ ՀԱՆՈՒԱԾ ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ**

**ՅԻՇԱՏԱԿԻՆ, ԱՆՈՆՑ ՆԱՀԱՏԱԿՄԱՆ 85-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ**

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը անխտիր, իր ներկայութեամբ յարգելու աննման հերոսներուն յիշատակը:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Երանաշնորհ Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոս, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. արդիւնաշատ Հայրապետին վախճանման Ա. տարելիցին առթիւ, Եգիպտահայ Թեմի մեր եկեղեցիներուն մէջ, Կիրակի 2 Յուլիս 2000-ին, Ս. Պատարագի մատուցմամբ կը կատարուի յատուկ Հոգեհանգստեան արարողութիւն:

Աղօթք, խունկ եւ օրհնութիւն Երանաշնորհ Հայրապետի քաղցր յիշատակին: Ողորմած Աստուած, եռամեծ Հայրապետներու շարքին թող դասէ իր բարի Հոգին, յաւիտենական երանութեան մէջ:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**

## ՆԿԱՐՉԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

**ԵԳԻՊՏԱՀԱՅ ԳԵՂԱՆԿԱՐԻՉ**

**ՍԻՄՈՆ ՇԱՀՐԻԿԵԱՆԻ**

**ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ**

**ՄԱՀՈՒԱՆ 10-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ**

**ԿԷԶԻՐԷԻ ԱՐՈՒԵՍՏԻՑ ԿԵԴՐՈՆԻ**

**ՌԱՂԷՊ ԱՅԵԱՏ ՑՈՒՑԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

1, Էլ-Մարաաֆի փողոց - Զամալէք

Ցուցահանդէսը բաց պիտի մնայ
Յունիս 6-էն 24, 2000, ամէն օր
կ.ա. ժամը 10-էն 13.30, իսկ կ.ե. 6-էն 10-ը,
բացի Ուրբաթ օրերէն:

*Արուեստասէր հանրութենէն կը խնդրուի ներկայ գտնուիլ*

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի Քաղաքական ժողովը, գործադրելով, «Վ. Չագըճեան» հայերէն եւ հայագիտական նիւթերու ուսուցչաց ֆոնտին յատուկ կանոնագրութեան տրամադրութիւնները, որոշեց 1999 Հոկտ.-Դեկտ. եռամսեայ համար, Գալուստեան, Նուպարեան եւ Պօղոսեան Վարժարաններէն ներս այս նիւթերը դասաւանդող ուսուցիչ-ուսուցչուհիներուն Եգ. ոսկի 2990 քաջալերական յատկացում կատարել 12 Յունիս 2000-էն սկսեալ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Առաջնորդարաններուն միջոցաւ:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**



ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1428 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՅՈՒՆԻՍ 2000 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. | عدد رقم ١٤٢٨ — الخميس ٢٩ يونيو ٢٠٠٠


## ՄՏՈՐՈՒՄՆԵՐ

# ՀՈՂԻՆ ՀՈԳԻՆ...

Խռոված է հողին հոգին՝ իր ներսի թէ դուրսի կաւակներէն: Հայրենախոց հովեր ներքին թէ արտաքին աշխարհներէ ամէհի ոռնոցներով, փլուզումի ենթակոչ շառաչներով կ'ալրշտկեն փողոց ու արտ, կը խարպանեն մարդ ու ծառ: Փողոցները տխրօրէն կ'ամայանան. արտերը ցորեանի ալեկոծումներուն կարօտով կը տոչորին, մարդերը մարդերէ կը տառապին ու ծառերը տերեւաթափէ ու չորացումէ կը հիւծին:

Ո՞վ է հողի հոգիի ձայնին ունկնդիր, անոր ցաւին ու խռովքին սրրտակից ու ցաւակից: Կայ ներսը, մանաւա՛նդ ներսը եւ դուրսն ալ: Առանց անոնց հողին հոգին կ'աւանդէր իր շունչը, կը սպառէին կենսատու բջիջները, կանգ կ'առնէին տրոփները, կը փակուէին ապագայի ճանապարհները: Հողի հոգին խոնարհելով կը համբուրէ հոգիները իր այն կաւակներուն, որոնք կուրծք տալով անասելի դժուարութիւններուն հողը կը պահեն...:

Հողին հոգին կը շնչէ՝ հակառակ շնչահատութեան հեղձամղձուկ հեւքերուն...:

Հողին հոգին կ'ապրի՝ հակառակ ոգեսպան ուրուականներուն...: Հողին հոգին կը տրոփէ՝ հակառակ շուրջի հողմակոծ տարափներուն...: Հողին հոգին կը գտնէ իր իմաստուն ճանապարհը՝ հակառակ խափանարար ուժերու դաւադիր սադրանքներուն...:

Հողին հոգին անմեռ է եւ կը կրէ անմահութեան խորհուրդը...: Բայ՛ց, խռով է...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք իր խորհուրդէն պարպուած՝ կ'աղարտեն իր էութեան սրբութիւնը...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք յուդայական արծաթասիրութեամբ չեն դադրեցներ խարդաւանանքի ամէն դաւ ու որոգայթ...: Ամէն շահածրաւ նենգութիւն ու վաճառք...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք ամէն հեղինակութիւն ու իշխանութիւն կը ծառայեցնեն շահամոլական անյագուրդ տենչերու հրմշտուքին...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք ազգային գերագոյն նպատակներու երակը մոռցած, իրար գլուխ կը կոտրեն, նորին վսեմութիւն աթոռապահութեան սիրոյն...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք իր հոգին սպաննելու ծառայող հայաթափութեան հոսանքին սառնասիրտ անտարբերութեամբ կը վերաբերին եւ ոչ մէկ կերպով թումբ կանգնելու կեցուանք կ'որդեգրեն...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք տէր չեն կանգնիր իր հոգին հերկող, շնչաւորող, կենսաւորող այն ընտրեալ հոգիներուն,- արուեստ ու մշակոյթ արարող,- արուեստագէտներուն, ստեղծագործ մտաւորականներուն եւ գիտնականներուն՝ որոնք երկիրը կը գեղեցկացնեն, դիմագիծը կը պայծառացնեն, տեսիլքները կը մարմնաւորեն, եւ աստուածները կը խօսեցնեն...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք թշնամիները չարախինդ ծիծաղով կ'ուրախացնեն, անկախ պետականութեան հիմքերը կը խախտեն, եղբայրասպան դաւադրութիւններու ոխերիմ եւ անխնայ մեքենայութեամբ...:

Խռո՛վ է անոնցմէ, որոնք ժողովուրդը կ'հիրաւայրկեն, կ'ամլացնեն, բարօր կեանքի հեռանկարները անորոշօրէն կը հեռացնեն, ինքն իր հողէն ու պետութենէն կ'օտարացնեն՝ ծնունդ տալով ընչաքաղցներու եւ հարստահարիչներու մենաշնորհեալ դասակարգի մը, որ իւրացումներով եւ կուտակումներով կ'աղքատացնէ ու կը կեղեքէ ժողովուրդը...:

Հողին հոգին ժողովո՛ւրդն է, որ դարերու իր անհաշիւ կռիւներութիւններով, հերոսական սխրագործութիւններով, իր հողապաշտ կենսափիլիսոփայութեամբ, բուռ մը հողի համար արիւնահեղ մաքառումներով հողը օծած է բոսորափայլ շռայլ ու շքեղ երանգներով...:

Հողին հոգին թոյլ պիտի չտայ, որ ժողովուրդով պայմանաւորուած,- գիւղացի, բանուոր, մտաւորական, ուսանող եւ արուեստագէտ,- այսինքն՝ հայրենիքին ընդհանրութիւնը կազմող կանգուածով՝ հողը կորսնցնէ իր շռայլ ու շքեղ գոյները...:

Հողին հոգին չ'ապրիր առանց ժողովուրդի կենսունակութեան, որ սնուցանող, ոգեւորող աւիշ է ու աւիւն, սաւառնաթեւ թռիչքի ոստում է ու մակընթացութեան շարժում: Ո՞ւր է կամ ո՛ւր մնաց հայրենի ժողովուրդի կենսունակութիւնը, որ հողը արժեւորող եւ իմաստաւորող կեանքն է իր բազմերես եռուզեռով եւ եռեւեփումներով...: Ի՛նչ եռուզեռ, ու ի՛նչ եռեւեփում երբ կեանքը մեռած է ժողովուրդի լուռ մեծամասնութեան առօրեայական մտալլկիչ հոգսերով, գործազրկութեան հոգեմաշ տագնապով, ապագայի հանդէպ անորոշ հարցականներով, անակնկալ պատահարներու կրկներեւոյթներով եւ կայունութեան ու ապահովութեան մղձաւանջներով...: Հողին հոգին իբր անլռելի կանգակ կ'ահազանգէ հողէն, հոգիէն, ազգէն ու պետութենէն օտարացումներով հեռացումներու, մեկնումներու եւ հայրենալքումներու չարաղէտ վտանգը...: Հողի հոգին մտատանջօրէն կը դողայ, ցաւագինօրէն կ'արիւնի ոչ միայն իրմէ տարանջատուող հայ հոգիներու տխրագին բաժանումներէն, անվերադարձ հեռացումներէն եւ տարամէտ հակումներէն, այլեւ՝ դուրսը գտնուող իր տարագիր հոգեկաւակներուն այլասերումներէն, ազգային ինքնութեան հանդէպ անհաւատարմութիւններէն...:

Հողին հոգին տագնապահար կը հառաչէ Հայաստանէն հոգեպէս խզուող մէն մի հայու կորուստին, ազգային արժէքներէ, աւանդապահ բարքերէ եւ հայրենաբոյր սրբութիւններէ նահանջին ի տես...:

Հողին հոգին իր դարերու փորձին իմաստութեամբ, իր խռոված բջիջներուն ճենճերող ձայներով, պոռթկացող կանչերով եւ աղերսակոծ ճիչերով հրաւէր կ'ուղղէ կգաստութեան, պատգամ կ'արձակէ ողջմտութեան իր պետական ու քաղաքական այրերուն, որ ➪ 3

# Քլինթըն-Քոչարեան Հանդիպման Արձագանգները
# ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ ՆԱԽԱԳԱՀԸ ՔՈՉԱՐԵԱՆԷՆ Կ'ԱԿՆԿԱԼԷ ԼՈՒԾՈՒՄ ՄԸ ԳՏՆԵԼ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԻՆ



ՀՀ Նախագահ Ռոպերթ Քոչարեան եւ ԱՄՆ Նախագահ Պիլ Քլինթըն

Երեքշաբթի, Յունիսի 27ի յետմիջօրէին, Սպիտակ Տան մէջ, տեղի ունեցաւ նախագահներ՝ Պիլ Քլինթընի եւ Ռոպերթ Քոչարեանի հանդիպումը: Կը հաղորդուի թէ այս տեսակցութեան մայր գիծը հանդիսացաւ Ղարաբաղեան հարցը: Քլինթըն իր խօսակիցէն պահանջեց լուծում մը գտնել Լեռնային Ղարաբաղի հարցին համար, քանի որ այդ լուծումը կրնայ բարգաւաճումի առաջնորդել եւ դուռ բանալ Արեւմուտքի զօրակցութեան՝ ամբողջ շրջանին համար:

Կը տեղեկանանք թէ Քլինթըն-Քոչարեան տեսակցութիւնը տեւեց 35 վայրկեան: Այս ժամանակամիջոցին մեծագոյն մասը յատկա- ➪ 4

## ԳԱՀԻՐԷ

# ՔՍԱՆ ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻ 85-ԱՄԵԱԿԻ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ

Կիրակի 18 Յունիս 2000-ի առաւօտեան, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր տաճարին մէջ, ի յուշ 1915 Յունիս 15-ին, Պոլսոյ Պայազիտի Հրապարակին վրայ կախաղան բարձրացուած Քսան Հնչակեան նահատակներու 85-րդ տարելիցին, մատուցուեցաւ Ս. Պատարագ եւ տեղի ունեցաւ Հոգեհանգիստ, ի ներկայութեան համայնքիս հայրենասէր անձնաւորութիւններու, գաղափարի ընկեր-ընկերուհիներու, համակիրներու:

Օրուան պատարագիչն էր Գահիրէի Հոգեւոր Հովիւ Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեան, որ յաւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ եւ արժանին մատուցանելով, անդրադարձաւ թէ կախաղան բարձրացած 20 Հնչակեանները իրենց կեանքը զոհեցին հայ ժողովուրդի ազատագրութեան համար: Հոգեչնորհ Հայր Սուրբը չեչեց, թէ Քսան անմահներուն երազանքը իրականացած է այսօր ազատ եւ ինքնիշխան մեր Հայրենիքի գոյութեամբ: ➪ 3

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը հաղորդենք մեր յարգոյ հասարակութեան, թէ Ս. Էջմիածնէն Շաբաթ 17 Յունիսին Գահիրէ ժամանած է Արժ. Տ. Յովսէփ Քհնյ. Ալեքսանեան, իր հոգեւոր ծառայութիւնը բերելու համայնքիս, ընկերակցութեամբ երէցկնոջ եւ դստրիկին:

Արժ. Տէր Հօր կը մաղթենք բարի կեցութիւն:

**ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ**

## ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳԻԾԵՐ

# ԳԱՀԻՐԷԻ ՀՈԳԵՒՈՐ ՀՈՎԻՒ ԱՐԺ. Տ. ՅՈՎՍԷՓ ՔՀՆՅ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ



Արժ. Տէր Յովսէփ Քհնյ. Ալեքսանեան

*Ծնած է 1976-ին, Էջմիածին: Աւազանի անունով Արտակ: Միջնակարգ ուսումը ստանալէ ետք, 1991-ին յաճախած է Գէորգեան Հոգեւոր Ճեմարանը: 2 Փետրուար 1997-ին Էջմիածնի Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ քահանայ ձեռնադրուած է Գերշ. Տ. Ասողիկ Եպս. Արիստակէսեանի ձեռամբ, անուանափոխելով Յովսէփ:*

*Արժ. Տէր Հայրը ճեմարանին մէջ եղած է դաստիարակ, ապա դասախօս՝ դասաւանդելով Նոր Կտակարանը: Ան Ս. Էջմիածնի տաճարին մէջ լուսարարապետի օգնականի պաշտօն կը կատարէր եւ վերջերս Մայր տաճարի Թանգարանի վարիչ նշանակուած էր:*

*Առ այդ, տեղեկացնենք թէ Արժ. Տէր Հայրը անցեալ տարուայ՝ 1999-ի սկիզբ, մօտ ամիս մը Գահիրէ մնացած էր, Սուտանի գաղութին չուրջ երեք ամիս Հոգեւոր ծառայութիւն կատարելէ առաջ:*

*Տէր Յովսէփ Քահանայ այժմ բընակութիւն հաստատած է Հելիոպոլիս, իր երէցկնոջ՝ Գարմէնի եւ երկու տարեկան դստրիկին՝ Անահիտի հետ:*

*Ջերմօրէն կը շնորհաւորենք Արժ. Տէր Յովսէփ Քհնյ. Ալեքսանեանը, իր ստանձնած նոր պաշտօնին համար, յաջողութեան եւ քաջառողջութեան մաղթանքներով, իրեն եւ իր ընտանիքի անդամներուն:*

*«Ջ.»*

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՒ ԱՏՐՊԷՅՃԱՆ ԸՆԴՈՒՆՈՒԵՑԱՆ ԵԻՐՈԽՈՐՀՈՒՐԴԷՆ ՆԵՐՍ

Երէկ, Չորեքշաբթի, 28 Յունիսին, Ստրազպուրկի մէջ, Եւրոխորհուրդի Խորհրդարանական Վեհաժողովը քուէարկեց ի նպաստ Հայաստանի եւ Ատրպէյճանի անդամակցութեան՝ ձայներու ճնշիչ մեծամասնութեամբ: Յաջորդ հանգրուանը գրեթէ ձեւական է երբ Նախարարաց Յանձնաժողովը պիտի վաւերացնէ անդամակցութիւնը: Այս մէկը տեղի պիտի ունենայ յառաջիկայ Սեպտեմբերին: Երեւան եւ Պաքու, իրենց կարգին, յանձնառութիւնը ստանձնեցին Լեռնային Ղարաբաղի հարցին խաղաղ լուծում մը գտնելու եւ քաղաքական բարեկարգումներ իրականացնելու: Իւրաքանչիւրին յանձնուած է պարտաւորութիւններու ցանկ մը, որոնք կ'առընչուին մարդկային իրաւանց, օրինական բարեկարգումներու եւ օրէնքի գերիշխանութեան: Այսպէս, Հայաստան, իր անդամակցութեան յաջորդող առաջին երեք տարիներու ընթացքին զինուորական ծառայութեան նոր օրէնք մը պէտք է որդեգրէ, նաեւ երաշխաւորէ «ոչ աւանդական կրօնական համայնքներու» գործունէութիւնը՝ առանց խտրականութեան: Բացի ատկէ, իշխանութիւնները մամլոյ, քաղաքական կուսակցութիւններու, ոչ-կառավարական կազմակերպութիւններու նոր օրէնքներ պէտք է մշակեն, ինչպէս նաեւ, երկրի բանտերը պէտք է ըլլան Արդարադատութեան Նախարարութեան գերիշխանութեան տակ:

Երեւան նաեւ իր հեղինակութիւնը պէտք է բանեցնէ Լեռնային Ղարաբաղի վրայ, որպէսզի համամարտութեան լուծում մը գտնուի: Վեհաժողովի երկու կարեւոր յանձնաժողովներ եզրակացուցած էին, թէ անդամակցութիւնը պատճառ պիտի դառնայ, որ թէ՛ Հայաստան եւ թէ Ատրպէյճան յաւելեալ քայլեր առնեն դէպի ժողովրդավարացում:

## ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԳԵՐԱԳՈՅՆ ՀՈԳԵՒՈՐ ԽՈՐՀՈՒՐԴԻ ԱՆԴԱՄՆԵՐՈՒ ՀԵՏ

### Նախագահ Քոչարեան. «Եկեղեցին Պետութեան Հիմնական Նեցուկն Է»

23 Յունիսին, ՀՀ Նախագահ Ռոպերթ Քոչարեան նախագահական պալատան մէջ ընդունեց այցելութիւնը Հայ Առաքելական Եկեղեցւոյ Հայաստանեան եւ արտերկրի թեմերու Առաջնորդներու, որոնք Հայաստան կը գտնուին Գերագոյն Հոգեւոր Խորհուրդի (ԳՀԽ) նիստին մասնակցելու նպատակաւ: Պատուիրակութեան կը նախագահէր Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Վեհափառ Հայրապետը: Ողջունելով հոգեւորականները, Նախագահ Քոչարեան նշեց որ եկեղեցին պետութեան հիմնական նեցուկը կը հանդիսանայ եւ ազգային ➪ 2

ԳԱՀԻՐԷ

## ԽՕՍՔ՝ ԱՐՏԱՍԱՆՈՒԱԾ ՔՍԱՆ ԱՆՄԱՀ ԿԱԽԱՂԱՆՆԵՐՈՒ 85-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ

### Գահիրէի Ազգային Առաջնորդարանի Դահլիճին Մէջ

## ԸՆԿԵՐ ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ ԿՈՂՄԷ

*Յարգելի ազգակիցներ,*

*85 տարիներ անցած են այսօր, այն չարաշուք օրէն, երբ ազատութեան համար իրենց կեանքը նուիրած Քսան Հնչակեան հայեր դիմաւորեցին մահը «**Կեցցէ՜ Հայաստան**» գոչելով:*

*Արդարեւ 85 տարի եւք, Յունիս 15-ը տարեդարձն է հայու ազատագրական պայքարի փշոտ ուղիին:*

*Այսօր մենք սուգ չունինք, այլ միայն հիացում եւ խոր յարգանք, այն Քսան անմահներուն, որոնք Պոլսոյ Սուլթան Պայազիտի հրապարակին վրայ անվախօրէն կախաղան բարձրացան:*



*Ընկ. Պետրոս Մովսէսեան կ'արտայայտուի Քսաններու մասին, ձախին նստած՝ «Ջահակիր» շրջանակի պատասխանատու՝ ընկ. Վրէժ Սէֆէրեան:*

*Հայութեան ազատագրական պայքարին մէջ չկայ այնքան նշանակելի, այնքան ցնցող, որքան Քսան կախաղաններու դէպքը: Եւ այդ դէպքը հակառակ իր կրած անմիջական ջախջախումին, դեռեւս կը մնայ մեծ, հպարտացնող եւ յիշատակութեան արժանի:*

*Օսմանեան կայսրութեան դեկը ստանձնած Իթթիհատականներ, կը ծրագրէին բնաջնջումը ողջ ժողովուրդի մը: Անոնց ծրագիրն ու քայլերը անանխընթաց էին ու հայաջինջ: Ուրեմն չկար այլ ընտրանք, բացի անձնազոհ խոյանքէ:*

*Այդ պատմական առաքելութիւնը ստանձնած էին հայ անդրանիկ քաղաքական - յեղափոխական շարժումը՝ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութիւնը: 1913-ին Ռումանիոյ մէջ կայացած Հնչակեան կուսակցութեան 7-րդ ընդհանուր ժողովը կ'որոշէր Իթթիհատ կուսակցութեան պարագլուխները ջախջախել յեղափոխական արարքով:*

*Այդ սխրանքը վստահեցաւ յեղափոխական, մտաւորական ու քաղաքական գործիչ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնի անդամ՝ Փարամազի եւ իր ընկերներուն:*

*Դժբախտաբար, անսպասելի դաւաճանութեան մը պատճառով, թրքական կառավարութիւնը կ'իմանար Հնչակեան այդ յանդուգն որոշումը: Ուրիշ միջոց չկար, եթէ ոչ՝ հալածանք հնչակեաններու դէմ:*

*Փարամազի գլխաւորութեամբ կը ձերբակալուին 120 գործիչներ: 1915-ին կեղծ դատավարութենէ մը եւք, անոնցմէ 22-ը կը դատապարտուին մահապատիժի, եւ որովհետեւ անոնցմէ երկուքը՝ Սապահ - Գիւլեան եւ Վարազդատ հեռու տեղեր կը գտնուէին՝ քսան ձերբակալները 15 Յունիս 1915-ին կ'անմահանային կախաղաններու ջողափայտերուն վրայ:*

*Քսան հերոսները մահացան, բայց կախաղաններու վրայէն աւետեցին հայ ժողովուրդի եւ հայրենիքի լուսաշող առաւօտ: Եւ իրաւամբ, այդ խոր հաւատքը չուշացաւ իրականութիւն դառնալու: Անկախ Հայաստանի վերածնունդը իրականացած եւ մարմին առած է այսօր, որ կը ջերմացնէ մեր հոգիները:*

*Հնչակեան կուսակցութեան նպատակը Մեծ եղեռնը կանխել էր. եւ կարելի էր այդ, եթէ միայն հետեւելով Քսաններուն, հայութիւնը մէկ բռունցք կազմելով, ցցուէր Երիտ. Թուրքերու իշխանութեան դէմ: Հայութիւնը իր 1918 թուի Սարդարապատը պիտի մղէր 1915-ի նախօրէին:*

*Թշնամիին դէմ պիտի կազմէր միացեալ ճակատ. պայքարիլ անոնց դէմ համազգային միութեամբ, ամէն բանէ վեր դասելով ազգին եւ հայրենիքին շահերը:*

*Հնչակեան Քսանները ամբողջութեամբ կը պատկանին հայ ժողովուրդին որովհետեւ անոնք իրենց կեանքը զոհեցին հայութեան համար:*

*Անգամ մը եւս հաղորդուինք ու ներշնչուինք հայ ժողովուրդի բոլոր արդար իրաւունքներու ստացման եւ պաշտպանութեան համար զոհուած վկաներուն մաքուր գաղափարականով: Այդ հաւատքով շարունակենք մեր ճանապարհը, հաւատալով որ վաղը, հայութիւնը ամբողջ, մայր Հայաստանի եւ ի Սփիւռս աշխարհի՝ իր արժանի յարգանքը պիտի մատուցանէ անոնց, որոնք կախաղան բարձրացան ու նահատակուեցան, որպէսզի հայը ապրի:*

*Պէտք է իրագործենք Քսան հերոսներուն կտակը որ է՝ պաշտպանել հայրենիքը ամբողջական Հայաստանի հաստուցումով:*

*Փա՜ռք Քսաններու անթառամ յիշատակին:*

*Շնորհակալութիւն:*

## ԻՐ ՄԱՀԿԱՆԱՑՈՒՆ ԿՆՔԵՑ ԱՇԽԱՐՀԱՀՌՉԱԿ ՅՕՐԻՆՈՂ՝ ԱԼԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ

Ցաւով կը տեղեկանանք որ 21 Յունիսին Ամերիկայի Սիէթըլ քաղաքին մէջ իր մահկանացուն կնքեց հայազգի աշխարհահռչակ յօրինող՝ 89ամեայ Ալան Յովհաննէս, սուգի մատնելով երաժշտական աշխարհը:

Սիէթըլի Սենֆոնիի երաժշտական տնօրէնը՝ Ճերարտ Շուարց կը տեղեկացնէ, թէ Ալան Յովհաննէս մահացաւ Սիէթըլի Շուէտական Բժշկական Կեդրոնին մէջ, վերջին երեք տարիներուն ստամոքսի խիթէ տառապելէ ետք: Ալան Յովհաննէս, որ երկար տարիներ իւրայատուկ տեղ գրաւած է երաժշտական աշխարհին մէջ, ո՛չ միայն կը միաձուլէր երաժշտական Արեւմտեան եւ Արեւելեան աշխարհներու ոճերը, այլ նաեւ արդիականն ու հինը: Ժամանակակից յօրինող էր, միաժամանակ ըլլալով ամէնէն աւանդականը: Ան խորապէս սերտած էր հայկական երաժշտութեան հարստութիւնները, աշխատանք մը որ զինք մղած էր վերատեսութեան ենթարկելու իր ստեղծագործական ուղին, զայն աւելի եւս իւրայատուկ ու տպաւորիչ դարձնելով:

Բուն անունով Ալան Վանէս Չաքմաքճեան, ծնած էր 8 Մարտ, 1911ին, Սամըրվիլ, Մասաչուսէց (ԱՄՆ):

*«Ջ.» Յարգանքով կը խոնարհինք այս մեծ յօրինողին յիշատակին առջեւ:*

## ՔՍԱՆ ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻ 85-ԱՄԵԱԿԻ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ

1 ➩



*Ծաղկեպսակ զետեղուեցաւ Քսաններու յիշատակին «Ջահակիր»ի շրջանակին կողմէ, Ազգ. Առաջնորդարանի բակին մէջ բարձրացուած Ցեղասպանութեան զոհերու յիշատակի յուշարձանին առջեւ:*

Հոգեհանգստեան արարողութենէն ետք, ներկաները հաւաքուեցան Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ, ուր Հայր Սուրբը խօսք տալու հրաւիրեց Հայկական Ընթերցասրահի պատասխանատու վարիչներէն՝ ընկ. Պետրոս Մովսէսեանին: Յարգելի ընկերը կուռ խօսքով մը վեր առաւ 20 նահատակներու նուիրուածութիւնը, հանդէպ իրենց հայրենիքին ու հայ ժողովուրդին: (Ընկ. Մովսէսեանի համապարփակ խօսքը կարդալ նոյն էջի ձախին):

Ապա Հելիոպոլսոյ մէկ շքեղ ճաշարանի մը մէջ, ոգեկոչումը շարունակուեցաւ գաղափարի եւ համակիրներու հանդիպումով:

Բիւր յարգանք Քսաններու անթառամ յիշատակին:

## ՀՈՂԻՆ ՀՈԳԻՆ...

1 ➩

ժողովուրդին վերադարձնեն կամ ապահովեն մարդավայել կեանքի տարրական պահանջքներու գոհացումը: Դուրս գալով անտարբերութեան ոսկնիական պատեանէն առաջքը առնեն հայաթափումի ազգակործան արիւնահոսութեան...: Վերջ տան պառակտողական բեւեռացումներու, իշխանատենչութեան քանդիչ պայքարներու, երկիրը ճգնաժամի առաջնորդող հաւաքական ու անհատական ոճրափորձերու՝ դիմակայերծելով կամ բացայայտելով յանցապարտները, որոնք բանտերուն մէջ կամ բանտերէն դուրս... անպատիժ քարշ կու տան իրենց մեղապարտ կեանքերը...:



Ընկ. Պէպօ Սիմոնեան

Ժողովրդավարութիւնն ու անկախութիւնը չչարաշահուի ի հեճուկս ժողովուրդի բարօրութեան... եւ պետական այրերու... կամ ուրիշ այրերու պարարտացման: Խօսք չմնայ միայն հայրենիքի բարգաւաճումն ու ժողովուրդին բարօրութիւնը...: Անոնց ապահովումը երաշխաւորող ազգային արդիւնաբերութեան եւ գիւղատնտեսութեան կարգացումը...:

Հողին հոգին լաւ գիտէ ու կը ճանչնայ հայ մշակոյթին ճառագայթող ոգիէն սփռուող շողերուն բարիքները՝ հին դարերէն մինչեւ ներկայ օրերը: Ե. դարու ոսկեդարէն... մինչեւ խորհրդային «դժողք»ի ոսկեդարը...: Հողի հոգին հայու հոգիին միանալով եւ անոր թարգմանը հանդիսանալով կը սրէ անհրաժեշտութիւնը մշակութային պետական քաղաքականութեան, որ ըստ իր գրող կուակներէն մէկուն. «Քանի դեռ կառավարութեան նիստերի ժամանակ մշակութային հարցերը քննարկւում են հարկահանութեան հարցերից յետոյ»: Հողին հոգին չի վերապահեր իր ընդվկումը, որ իր իսկ յաւերժութեան ծառայող մշակոյթը այսօրուան անկախ Հայաստանի մէջ աղքատ ազգականի նուաստացման, խեղճութեան եւ անտեսումի ենթարկըւած մնայ...:

Հողի հոգին իրմէ ծնած հերոսներուն, ազատամարտիկներուն հողապաշտ ներուժ մղումներով, ազատագրութեան անձնազոհ կռիւներով նուիրագործուեցաւ բռնագրաւեալ իր մէկ բեկորին՝ Լեռնային Ղարաբաղի ազատագրման յաղթական պսակումը: Լեռներու կամարներէն եւ ձորերու անդունդներէն լսեց հողին հոգին յաղթանակին ձայնը եւ հրճուեցաւ յաղթանակին ցնծութեամբ: Ցնծութիւնը թախիծով պատո՛ւած է իր իսկ կուակներուն իրարու դէմ ժպրհող դաւադրութիւններով եւ տմարդի գրոհներով...:

Հողին հոգին ի տես այսօրուան իրավիճակին եւ միջազգային շահերու սարքած դիւանագիտական սադրանքներուն՝ մտահոգ է Լեռնային Ղարաբաղի ազգային ճակատագրով:

Հողին հոգին անկախացաւ, համազգային ցընծութեան ալիքով, ողողելով ամէն հայու սիրտն ու հոգին: Կը մնայ անոր վայելքին ըմբոշխնումը հողի հոգիին խոր ցանկութեամբ:

*Պէյրութ, Մայիս 2000* **ՊԷՊՕ ՍԻՄՈՆԵԱՆ**

ՄՈՆԹՐԷԱԼ

## Գինեձօն՝ Ի Պատիւ Դաւիթ Էվերեկլեանի «Միշտ Թատերական Ճամբուս Վրայ»

### Գրքին Հրատարակութեան Առթիւ

Նախաձեռնութեամբ Մոնթրէալի Պոլսահայ Միութեան «ՄԷԿ» Մշակութային Յանձնախումբին եւ մասնակցութեամբ գաղութիս շարք մը մշակութային միութիւններու, շնորհանդէս մը կազմակերպուած էր Կիրակի Մայիս 7-ի երեկոյեան, Պոլսահայ Միութեան հանդիսասրահին մէջ, թատերագէտ, բեմադրիչ եւ դերասան՝ Դաւիթ Էվերեկլեանի չորրորդ հատորին՝ **«Միշտ... Թատերական ճամբուս վրայ»** գրքին հրատարակութեան առթիւ:





Գրասէր ընտրանի հանրութիւն մը եւ հեզահամեստ բնաւորութեամբ հեղինակին գործակիցներու ու բարեկամներու լայն շրջանակ մը փութացած էր իր սէրը եւ յարգանքը մատուցանելու հայ թատերական արուեստի երկարամեայ անխոնջ ծառայող՝ Դաւիթ Էվերեկլեանին:

Հանդիսավար՝ Տիկ. Վարդանուշ Գարանֆիլ հակիրճ կերպով ներկայացուց օրուան մեծարեալ թատերագէտը եւ թուեց հեղինակած նախորդ գրքերը, որոնք միասնաբար կը կազմեն սփիւռքի վերջին կէս դարու հայ թատերական կեանքի մէկ համայնապատկերը: Ապա, Պրն. Կարպիս Գոնաք կարդաց ինքնագիր չափածոյ ուղերձ մը, ձօնուած հեղինակին, իւրայատուկ կերպով յայտնելով իր ջերմ շնորհաւորութիւնը եւ բարեմաղթութեան զգացումները:

Պրն. Էվերեկլեանի վաղեմի գործակիցներէն եւ իրեն հիացնողներէն, հոգեբոյժ - բժիշկ՝ Յակոբ Գոճեան հրաւիրուեցաւ իր սրտի խօսքը ըսելու: Լիբանանի Մեսրոպեան վարժարանի աշակերտական օրերու յիշատակներով եւ թատերական կեանքի գործակցութեան հաճելի մանրապատումներով, յարգելի բժիշկը սիրազեղ խօսքերով դրուատականը հիւսեց Դաւիթ Էվերեկլեան մարդուն, դերասանին եւ հեղինակին:

Ծանօթ սրնգահար եւ երաժիշտ՝ Համբարձում Ծապուրեան տուտուկով նուագեց կոմիտասեան սիրուն կտոր մը, արժանանալով բոլորին գնահատանքին եւ այս ձեւով բերելով մեծարեալին նկատմամբ իր յարգանքը:

Օրուան գլխաւոր բանախօս՝ Մօ. Համբարձում Անտոնեան խղճամիտ քննարկութեամբ մը ներկայացուց նոր հրատարակուած հատորը, որ միացած հեղինակին նախորդ երեք հատորներուն, կը պարփակէ ներկայ ժամանակաշրջանի եւ ընդարձակ տարածքաշրջանի մը աւելի քան կէս դարու, Պէյրութէն մինչեւ Մոնթրէալ եւ Լոս Անճելըս, հայ թատերական կեանքի հետ առնչուող գրեթէ բոլոր անձնաւորութիւններն ու երեւոյթները: Յարգելի բանախօսը նոյնպէս վեր առաւ իր դպրոցական կեանքը եւ յետագային, հայ մշակոյթի ծիրէն ներս հեղինակին եւ իր ունեցած բարեկամական եւ գործակցութեան կապերը, իբր եղբօր մը անվերապահ սէրով եւ ամբողջական յարգանքով շաղախուած:

Գաղութիս գեղարուեստական կամարին վրայ նորայայտ տաղանդներէն երիտասարդ ասմունքող Նարեկ Ղազարեան խոր զգացումով արտասանեց Դանիէլ Վարուժանի երկարաշունչ գեղեցիկ քերթուածը՝ «Դէպի Աղբիւրը Լոյսին» պատշաճ երաժշտութեան մը ստեղծած հաճելի մթնոլորտին մէջ: Ան արժանացաւ ներկաներու բարձր գնահատանքին:

«ՄԷԿ»ի վարչութեան ժրաջան ատենապետ՝ Պրն. Սարգիս Ղ. Սարգիսեան իր կարգին շնորհաւորեց մեծարեալը, իր հեղինակութիւնը նկատելով սփիւռքահայ թատերգութեան համայնագիտարան մը, շնորհակալութիւն յայտնեց յայտագրի մասնակցողներուն եւ հրաւիրեց մեծարեալ Պրն. Դաւիթ Էվերեկլեանը իր խօսքը ըսելու:

Պրն. Էվերեկլեան, իր վճիտ մտքէն, սրտէն ու հոգիէն բխած բիւրեղանման հայերէնով, իր զգացուած շնորհակալութիւնները յայտեց ներկաներուն եւ յայտագրին մասնակցողներուն կողմէ իրեն հանդէպ ցուցաբերուած յարգանքին համար եւ ցաւով յիշեց թէ վերջին քանի մը տարիներու ընթացքին, հայ մշակոյթին ծառայող հոյլ մը պատուական իր բարեկամներէն եւ գործակիցներէն մեկնած էին այս աշխարհէն: Ան մանաւանդ շնորհակալութիւն յայտնեց հանդիսութիւնը կազմակերպող մասնակից բոլոր միութիւններուն, մի առ մի յիշելով զանոնք:

Վերջաւորութեան, Հայ կաթողիկէ համայնքին հովուապետ՝ Գէորգ Ծ. Վրդ. Զապարեան հրաւիրուեցաւ օրհնելու նոր հրատարակուած հատորը: Հայր Զապարեան արտասանեց յատկապէս այս առթիւ իր գրի առած աղօթքը, շնորհաւորեց հեղինակը եւ երկար, առողջ կեանք ու շարունակական յաջողութիւն մաղթեց իրեն:

Յայտագրի աւարտին տեղի ունեցաւ ընդունելութիւն, որուն ընթացքին ներկաները պատեհութիւնը ունեցան հեղինակին կողմէ մակագրել տալու նոր հրատարակուած հատորին իրենց օրինակները:

**ԹՂԹԱԿԻՑ**

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ
**ՊՐ. ԱՐԱՄ ԱՐԹԻՆԵԱՆ**
ընդ
**ՕՐ. ՋԻՋԷԹ ԹԱՏՐՈՍԻ**

ԳԱՀԻՐԷ 25 ՅՈՒՆԻՍ 2000

*Մեր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնենք խօսեցեալ զոյգին, իրենց ծնողաց՝ Տէր եւ Տիկին Նակիպ Արթինեաններուն եւ Թատրոս ընտանիքի անդամներուն ու բոլոր պարագաներուն:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Կիրակի, 16 Յուլիս 2000-ի առաւօտեան ժամը 7.30-ին

**ՋՔՕՍԱՊՏՈՅՏ ԴԷՊԻ «ԷՅՆ ՍՈԽՆԱ»**

**«MENA OASIS BEACH»**

**ԵՐԹՈՒԴԱՐՁ ԲԱՐԵԽԱՌՆԵԱԼ ՕԴՕՊԻՍՈՎ, ՄՈՒՏՔ ԵՒ ՃԱՇ**

**ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ՝ Ե.Ո. 55**
**ՈՉ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ՝ Ե.Ո. 60**
**12 ՏԱՐԵԿԱՆԷՆ ՎԱՐ՝ Ե.Ո. 30**

Արձանագրութեան համար դիմել հեռաձայնելով,
Տիկ. Սոնա Պալաեանի՝ 4176956, Տիկ. Այտա Նազաշեանի՝ 2900786
եւ Պր. Աւետիս Մովսէսեանի՝ 7940949, ամենաուշը մինչեւ 13 Յուլիս:

## ՀԱՃԵԼԻ ՄԻՕՐԵԱՅ ՋԲՕՍԱՊՏՈՅՏ ՄԸ ԴԷՊԻ ԱՊՈՒ ՍՈՒԼԹԱՆԻ ԾՈՎԱՓԸ







*Անցեալ Կիրակի 25 Յունիս 2000-ի ամբողջ օրը, Հաճելի զբօսապտոյտի մը ներկայ գտնուեցանք, ճամբորդելով դէպի Կարմիր Ծովի, Ապու Սուլթան ծովափը գտնուող «LA PALMA BEACH» չքեղ պանդոկը:*

*Այս յաջող պտոյտը, որ կազմակերպած էր Հայկական Ընթերցասրահի նորընտիր վարչութիւնը, սկսաւ առաւօտէն, երբ հանգստաւէտ օթօպիւսով մը հասանք պանդոկ: Երկսեռ երիտասարդութիւնը անմիջապէս ջուրին կողմը անցաւ, իսկ երէցները տեղ գրաւեցին ծովեզերքը գտնուող աթոռներուն վրայ: Հակառակ կիզիչ արեւին, մասնակցողները կը շնչէին մաքուր օդ եւ կը վայելէին հանդարտ մթնոլորտ:*

*Կէսօրին բոլորս հաւաքուեցանք պանդոկին բարեխառնեալ ճաշասրահը, ուր միատեղ ճաշակեցինք պանթոկին համադամ ուտելիքները: Յետմիջօրէին, մասնակցողներէն շատեր կրկին կը զբաղուէին լողալով, իսկ միւսները ժամանցի զանազան խաղեր խաղալով, ուրախ պահեր կ'անցընէին:*

*Հեռու մնալով առօրեայ մեր զբաղումներէն եւ ըմբոշխնելով բնութեան տեսարաններով լի այս գեղեցիկ վայրը, վերանորոգած էին մեր ջիղերը եւ զուարթացուցած տրամադրութիւնները:*

*Արդէն հասած էր վերադառնալու պահը: Շիկացած մարմիններով եւ անմոռանալի օր մը անցուցած բլլալու տրամադրութեամբ, ժամը 7-ին ճամբայ ելանք վերադառնալու Գահիրէ:*

*Կը շնորհաւորենք կազմակերպիչ վարչութիւնը եւ անհամբեր ու անյապաղ կը սպասենք յաջորդ զբօսապտոյտի օրը:*

**ՆԵՐԿԱՅ ՄԸ**

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Կը տեղեկանանք, որ ձայնասփիւռի Հայկական ռատիոժամի տնօրէնուհի, համայնքիս ազնիւ ազգայիններէն՝ Տիկին Արաքսի (Այտա) Տէօվլէթեան երէկ, «Էլ Սալամ» հիւանդանոցին մէջ վահանագեղձի հատման (Thyroidectomy) գործողութեան մը ենթարկուած է: Ուրախ ենք որ գործողութիւնը անցած է յաջող եւ ան քանի մը օրէն իր բնակարանը պիտի վերադառնայ ապաքինման շրջան մը բոլորելու համար:

Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք Տիկին Ա. Տէօվլէթեանին:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

**Ողբ. Մէլանի Գուլթունեան-Աբանեանի (Մոնթրէալ) մահուան քառասունքին առթիւ անոր քաղցր յիշատակին, Տէր եւ Տիկին Պերճ եւ Մարօ Գոգորեաններ եւ զաւակները կը նուիրեն 50 Գանատական տոլար:**

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Տիար Միսաք Չէչճէնեան բարեյաջող վիրահատման ենթարկուելուն առթիւ եւ մաղթելով բոլորին քաջառողջութիւն, կը նուիրէ.

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 50 |
| «Ջահակիր»ին | 50 |

## ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Մոնթրէալէն, թերթիս աշխատակից, ծանօթ գրող, հայ թատերական արուեստի անխոնջ ծառայող՝ Դաւիթ Յ. Էվերեկլեանի «ՄԻՇՏ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԿԵԱՆՔԻՍ ՃԱՄԲՈՒՆ ՎՐԱՅ» գիրքը, որ հայ թատերական կեանքի համայնապատկեր մը կը նկատուի, ընդգրկելով հարցազրոյցներ, հանդիպումներ, թատերայուշեր եւ գրախօսականներ:

190 էջնոց, սոյն գեղեցիկ կողքով հատորը հրատարակութիւնն է «Նոր Հայաստան» օրաթերթի, Լոս Անճելըս՝ 1999:

### Քլինթըն-Քոչարեան Հանդիպման Արձագանգները...

1 ☞

ցուեցաւ Լեռնային Ղարաբաղի հարցին եւ ատոր կապուած տընտեսական հարցերու:

Տեսակցութենէն վերջ երկու Նախագահները առանձին յայտարարութիւններ չըրին: Սպիտակ Տան բանբեր Փ. Քրաուլի, տեսակցութենէն վերջ մամուլին յայտարարեց հետեւեալը.

«Հիմնականին մէջ, նախագահ Քոչարեանին մեր փոխանցած պատգամն այն էր, թէ Ամերիկա, միջազգային համայնքին հետ զուգահեռաբար, իրեն բաժին ինկած ճիգը պիտի վատնէ որպէսզի մնայուն լուծումի մը համար զօրակցի Հայաստանին: Այդ առիթը պիտի ստեղծուի եթէ երկու կողմերը կ'ուզեն խաղաղութիւն հետապնդել»:

Բանբերը յայտնեց նաեւ, թէ բացի Լեռնային Ղարաբաղի հարցէն, կողմերը խօսած են նաեւ շրջանային ապահովութեան եւ տնտեսական զարգացման մասին: Ան ըսաւ.

«Յստակօրէն, առիթը կայ Հայաստանի մէջ յաւելեալ բարգաւաճում յառաջացնելու, սակայն այդ մէկը պէտք է բխի կայուն կացութենէ մը, որ իր կարգին վստահութիւն պիտի ներշնչէ ներդրողներուն: Մենք պատրաստ ենք զօրակցելու Հայաստանին, եթէ Հայաստան եւ Ատրպէյճան կարենան լուծում մը գտնել Լեռնային Ղարաբաղի մէջ»:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Երանաշնորհ Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոս, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. արդիւնաշատ Հայրապետին վախճանման Ա. տարելիցին առթիւ, Եգիպտահայ Թեմի մեր եկեղեցիներուն մէջ, Կիրակի 2 Յուլիս 2000-ին, Ս. Պատարագի մատուցմամբ կը կատարուի յատուկ հոգեհանգստեան արարողութիւն:

Աղօթք, խունկ եւ օրհնութիւն Երանաշնորհ Հայրապետի քաղցր յիշատակին: Ողորմած Աստուած, եռամեծ Հայրապետներու շարքին թող դասէ իր բարի հոգին, յաւիտենական երանութեան մէջ:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

### ԱՄԱՌՆԱՅԻՆ ՃԱՄԲԱՐ 2000

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաքենիկ Չագըր Ֆոնտը կը կազմակերպէ ամառնային ճամբար Հայաստանի մէջ 31 Յուլիսէն 28 Օգոստոս 2000 երկարող շրջանին:

Մասնակցութեան տարիք 17-27 տարեկան:
Մասնակցութեան թիւ 6-8 հոգի:

### ԱՄԱՌՆԱՅԻՆ ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՃԱՄԲԱՐ 2000

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաքենիկ Չագըր Ֆոնտը կը հովանաւորէ Քէսապի մէջ՝ 20-28 Օգոստոս 2000-ին կայանալիք Հ.Բ.Ը.Մ. - Հ.Մ.Ը.Մ.ի տարեկան սկաուտական ճամբարին, եգիպտահայ պատանիներու մասնակցութիւնը:

Սոյն ճամբարին կրնան մասնակցիլ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի եւ Հ.Մ.Ը.Մ. Նուպարի շրջանակին անդամները:

Մասնակցութեան տարիք 13-20 տարեկան:

* * *

Մանրամասնութիւններու եւ յատուկ հարցարաններ լեցնելու համար դիմել՝

**Գահիրէի մէջ**
Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի գրասենեակը
15 Էմատ Էլ տին փողոց, Ա. յարկ, հեռ. 5919636

**Աղեքսանդրիոյ մէջ**
Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ մասնաճիւղին

Դիմումներու վերջին թուականն է 10 Յուլիս 2000:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՊԱՍՔԷԹ-ՊՈԼԻ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑԱՇԱՐՔ

Ուրբաթ 21, Շաբաթ 22 եւ Կիրակի 23 Յուլիս 2000

Մանրամասնութիւնները յաջորդիւ

*Կը խնդրուի նկատի ունենալ*

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ԾԱՆՈՒՑՈՒՄ

Աղեքսանդրիոյ ազգային Իշխանութիւնը հաճոյքն ունի տեղեկացնելու իր համայնքի յարգելի ազգայիններուն, որ դատարանը վաւերացուցած է ամուսնական նոտարութեան փաստաբան Ժիրայր Մանուկեանի թեկնածութիւնը:

Ուստի, բոլոր անոնք, որոնք մտադրած են ամուսնանալ, կրնան դիմել Աղեքսանդրիոյ Առաջնորդարանի դիւանատան, օրինապէս հարկ եղած պաշտօնական ձեւակերպութիւնները կատարելու համար:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail:tchahagir@journalist.com.

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1429 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 13 ՅՈՒԼԻՍ 2000 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 եգ. Դիկ. — عدد رقم ١٤٢٩ — الخميس ١٣ يوليو ٢٠٠٠


## ՀԱՅԱՊԱՀՊԱՆՄԱՆ ԳԼԽԱՒՈՐ ԹՇՆԱՄԻՆԵՐԸ

*Հայ կեանքէն ու հայու իրավիճակէն անտեղեակ անձի մը համար տարօրինակ եկր մըն է հայապահպանումը, հայապահպանում- բարդ բառ մը՝ կազմուած հայ եւ պահպանել բառէն ու բայէն. այսինքն՝ հայը պահպանել հայ, մաքառիլ ու տքնիլ, որպէսզի հայը չձուլուի եւ մնայ հայ, շատցնէ հայուն տեսակը կամ գոնէ մնայ հայ՝ իր ազգութեան կառչած:*

*Իր հողին վրայ ապրող, իր ազգային մշակոյթին մթնոլորտին մէջ ուռճացող, իր պապենական հայրենիքին վրայ բնակող ռեւէ անհատի համար, անհասկնալի է պայքարը իր տեսակին պահպանումին համար, այդ բնական ու տրամաբանական օրինաչափութիւն է. գիտութեան բնական հետեւանքը. իր հողին վրայ ապրող ցանկացած ժողովուրդի համար, գալիք սերունդները պիտի պատկանին այդ նոյն ժողովուրդին, հոն տեսակի գոյակռիւ ու տքնանք չկայ:*

*Նոյնիսկ հայրենաբնակ հայը, որ անծանօթ է սփիւռքահայութեան պայմաններուն, դժուար ըմբռնէ հայապահպանման գերմարդկային ճիգերն ու պայքարը, մտահոգութիւնն ու անդոհանքը: Հայապահպանումը սփիւռքեան երեւոյթ է, Մեծ Եղեռնէն ետք ստեղծուած, առաջնային օրակարգ դարձած եւ այս օրերուն բոլոր սրտցաւ հայերուն համար գլխաւոր տուայտանք հանդիսացող: Աւելին, հայապահպանումը կը նմանի անարիւն պատերազմի՝ մղուող հայրենասէրներու եւ օրուան դժնդակ հոսանքին միջեւ՝ դրսեւորուած ուծացմամբ, ձուլմամբ, օտարացմամբ եւ հայազրկմամբ:*

*Սփիւռքահայ մեր կառոյցները, միութիւններն ու բջիջները (քաղաքական, մշակութային, մարզական, կրթական, բարեսիրական, եկեղեցական, հրատարակչական, հայրենակցական) կեանքի կոչուած են եթէ ոչ ամբողջովին, գէթ մասամբ միանալու հայապահպանման թէժ գօտեմարտին, գօտեմարտ՝ որ կը պահանջէ մարդկային, նիւթական, բարոյական անմնացորդ կոհաբերութիւններ, անհաւասար մարտնչումներ յանուն հայուն տեսակարար կշիռին բազմացման կամ գէթ եղած թիւին պահպանումին: Բոլոր միաւորներուն առաջնահերթ խնդիրը հայապահպանման կռիւն է, որովհետեւ եթէ հայ չկայ, հայը վերջանայ ու վերանայ, աւելորդ կ'ըլլայ խօսիլ Հայկական Դատի կամ ազգային տենչերու մասին. եթէ սպառնալիքի դիմաց է հայու գոյութիւնը, յարատեւումը եւ լինելութիւնը, ուրեմն ի՞նչ եւ ինչպէ՞ս պահանջենք մեր իրաւունքները մեր աւանդական ու պատմական ոսոխէն՝ Թուրքիայէն: Արդեօք անբովանդակ ու ճապաղ կրոյց չըլլա՞ր մեր պահանջատիրական պոռթկումները, երբ ոգի ի բռին պայքարելով հայապահպանման համար, համարեա ամէն օր կը կորսնցնենք հայեր (անշուշտ ոչ ֆիզիքապէս այլ բարոյապէս): Մեր ազգային պայքարը կ'ուզենք շարունակել, մեր նախատակներուն անթառամ յիշատակը ոգեկոչել, մեր կորուսեալ հողերուն տիրանալ, երբ անդին՝ հայը հազիւ հայ կը պահենք, երբ ամէն օր այս կամ այն ձեւով հայ կը կորսնցնենք:*

*1894-1921 հայու տեսակը վտանգուած էր թրքական եաթաղանին արածութեանց եւ անգթութեանց պատճառով. այդ ժամանակաշրջանը ծանօթ է կարմիր եղեռն եկրով: Անկէ ետք, տարագիր հայութիւնը, սփիւռքացած հայու բեկորները, Եղեռնէն մազապուրծ ճողոպրած խլեակները դիմակալեցին նոր տիպի եղեռն մը՝ սպիտակ ջարդ յղացքով տիրահռչակ: Այս անգամ հայը կը գտնուէր նոր ճգնաժամի դէմ յանդիման՝ մնալ ու տոկալ որպէս հայ եւ ահա այդ ճգնաժամին դեղատոմսը՝ հայապահպանում: Փաստօրէն, սփիւռքահայութեան իրականութեան յուզահեռ բնական կերպով բխեցաւ հայապահպանման օրակարգը, որ համազօր է յարատեւ, անդրաւ ու անկոտրում պայքարի. ան կը պահանջէ ամէնօրեայ կոհողութիւն՝ ազգային կառոյցներուն շուրջ դրսեւորուող, ըլլան անոնք՝ դպրոց, մամուլ, ակումբ, եկեղեցի, դարմանատուն թէ հայ տիպ ու տառ:*

*Բայց, ո՞րն է աւելի վտանգաւոր ու համայնաքանդ թշնամի- թըրքական եաթաղա՞նը թէ՞ հայապահպանման դէմ սուր ծօծող վտանգները: Առաջինը բացայայտ է ու բացորոշ, իսկ երկրորդ՝ աներեւոյթ, մեր շուրջ, մեր մէջ, վարակիչ ու անմեղունակ արտաքինով: Առաջինին հասցէն յստակ է, իսկ երկրորդի՞ն- կարծեմ յըստակ, բայց վիրաւորական:*

*Առանց բառերը ծամծմելու ըսենք, որ հայապահպանման թշնամիները հայերն են, այսօր, մեր թշնամին չփնտռենք մինչեւ Թուրքիա, մասոնութիւն թէ սիոնիզմ: Չտարուինք լոզունգներով. մեր թշնամին մենք ենք, որ կը խարխլենք հայապահպանման կառոյցները:*

*Տարօրինակ պատկեր չպարզուեցա՞ւ, երբ կը նկատենք հայեր, ամէն գնով նուիրուած հայապահպանման, իսկ հայեր՝ հայապահպանման թշնամիներ. առաջինները սրտցաւ են, հայատրոփ սիրտի տէր, իսկ երկրորդը՝ անտարբերներ, դասալիքներ ու ազգուրացներ:*

↳ 4

## ՀՀ ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐ ՎԱՐԴԱՆ ՈՍԿԱՆԵԱՆ ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՏՈՒԱՒ ՎԵՐՋԻՆ ԱՆՑՈՒԴԱՐՁԵՐՈՒ ՄԱՍԻՆ

ՀՀ Արտաքին Նախարար Վարդան Ոսկանեան երէկ Հայաստանի Մամլոյ Ակումբի հրաւէրով «Հոլսթէն» սրճարանին մէջ սարքեց մամլոյ ասուլիս մը, որու ընթացքին համապարփակ տեղեկութիւններ տուաւ Հայաստանը շահագրգռող վերջին իրադարձութիւններու մասին:

Առաջին գծի վրայ Նախարար Ոսկանեան, անդրադառնալով Նախագահ Քոչարեանի Ամերիկայի եւ Ֆրանսայի վերջին այցելութիւններուն, յայտնեց թէ ամենակարեւոր կէտն այն էր թէ Հայաստանի նկատմամբ վստահութիւնը վերականգնած է արտասահմանի մէջ: Նախարարը դիտել տուաւ սակայն, որ վերջին 7-8 տարուայ տնտեսական բարձրացման կշռոյթը բաւարար չէ եւ իշխանութիւնները շատ աւելին կը սպասեն:

### ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ

Լուսարձակի տակ առնելով Ռուսաստանի եւ Ամերիկայի հետ Հայաստանի յարաբերութիւններու «մէկզմէկ» լրացնելու քաղաքականութիւնը, Ոսկանեան շեշտեց որ այստեղ կարելի չէ մէկ կամ միւս երկրին հետ յարաբերութիւնները սահմանափակել միայն քանի մը նիւթերով: Հայաստանի համագործակցութիւնը Ռուսաստանի հետ չի սահմանափակուիր միայն ռազմական, իսկ Ամերիկայի հետ ալ՝ միայն տնտեսական ոլորտներով: Հայաստանի այս կամ այն երկրի հետ յարաբերութիւններու խորութիւնը պէտք չէ արգելք հանդիսանայ ուրիշ երկրի մը հետ ալ նմանօրինակ խորունկ յարաբերութիւններ մշակելու, ըսաւ Նախարար Ոսկանեան:

### ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՄԱՍԻՆ

Արտաքին Նախարարը նշեց որ իսկապէս 27 Հոկտեմբերի ոճիրը զգալի վնաս հասցուց Հայաստան-Սփիւռք կապերուն եւս: Նախարարը յիշեցուց որ վերջերս Արտաքին Նախարարութեան հովանիին ներքեւ ստեղծուած է Սփիւռքի հետ կապերու գործադիր քարտուղարութիւն մը, որուն կանոնադրութիւնը մշակումի հանգրուանի վրայ է: Դժբախտաբար, այս վերջին շրջանին Սփիւռքի կողմէ Հայաստանի նկատմամբ ցուցաբերուած յուսախաբութիւնն ու անտարբերութիւնը թոյլ չէին տար որեւէ կարեւոր գործունէութեան, ըսաւ Ոսկանեան:

↳ 2

## ՆԱԽԱԳԱՀ ՍԷԶԷՐ ՊԱՔՈՒԻ ՄԷՋ ՓՈԽԱՆՑԵՑ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒԺԵՂ ՊԱՏԳԱՄՆԵՐ

### «Թուրքիա Ղարաբաղեան Հարցի Մէջ Մինչեւ Վերջ Պիտի Մնայ Ատրպէյճանի Կողքին»

Նախագահ Ահմէտ Նէճտէթ Սէզէրի երկօրեայ Պաքու այցելութիւնը առիթ մը դարձաւ որպէսզի նորընտիր Նախագահը պաշտօն ստանձնելէ ասդին պատգամներ փոխանցէ Թուրքիա-Ատրպէյճան զօրակցութեան կապակցութեամբ: Ան դիտել տուաւ որ Թուրքիա պիտի ընդունի միայն այն լուծումը որ ընդունելի է Ատրպէյճանի կողմէ:

Նախագահ Սէզէր այցելեց Ղարաբաղի նահատակ զինուորներու դամբարանն ու պատերազմի պատճառաւ Ատրպէյճան ապաստանած Ազերի փախստականներու բնակավայրը եւ նուէրներ բաժնեց անոնց:

Նախագահ Սէզէրի երէկուան կարեւոր այցելութիւններէն մէկն էր Ատրպէյճանի Ազգային Խորհրդարան այցելութիւնը, ուր խօսք ուղղեց երեսփոխաններուն: Ան դիտել տուաւ որ Կովկասի մէջ կայուն ու խաղաղ կարգավիճակը կենսական է, որովհետեւ ատիկա միակ պայմանն է որպէսզի հողատարածքի երկիրները բարօր ու երջանիկ կեանք մը ապրին ու օգտուին Կովկասի կարելիութիւններէն: Թուրքիոյ Նախագահը ըսաւ որ Անատոլուի թուրքերը եւ Ատրպէյճանի թուրքերը նոյն ժողովուրդն են:

Նաեւ ըսաւ որ Պաքու-Ճէյհան ուղեգծին առջեւ այլեւս ո՛չ մէկ արգելք մնացած է, յայտնեց նաեւ որ Թիւրքմէնստանի որոշումով կեանքի պիտի կոչուի նաեւ Անդր-Կասպից բնական կազի խողովակաշարի ծրագիրը: Նախագահ Սէզէր Պաքուի մէջ տեսակցեցաւ նաեւ այդ երկրին մէջ աշխատող թուրք գործարարներուն հետ եւ լսեց անոնց հարցերը:

## ԵՐԿԽՕՍՈՒԹԵԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՊԷՍ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ ՓԱՐԻԶԻ «ՀԱՅԿԱԿԱՆ ՍՓԻՒՌՔԻ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԿԵԴՐՈՆ»Ի ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ՊԵՌԼԻՆԻ ՄԷՋ ՊՈՒՆԹՍԹԱԿԻ ՂԵԿԱՎԱՐՆԵՐՈՒՆ ՀԱՆԴԻՊԵՑԱՒ

*Անցեալ Յունիս 17-ին (ինչպէս անդրադարձած էինք նախորդ թիւով), Ֆրանսայի Ծերակոյտին մէջ յաջողութեամբ պսակուած «ՀԱՅ ԹՐՔԱԿԱՆ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻՆ ՄԱՍԻՆ ԱՅՍՕՐ» համագումարին լայն արձագանգներէն քաջալերուած Հայաստանի, Թուրքիոյ, Սփիւռքի ժողովրդավար շրջանակներու ու զանգուածային լրատուութեան միջոցներու մօտ, Փարիզի «Հայկական Սփիւռքի Հետազօտութիւններու Կեդրոն»ը (C.R.D.A.) նոյնանման ծրագրով դիմեց Գերմանիոյ Պունտեսթակի (խորհրդարանի) ղեկավարներուն:*

*Ստանալով հրաւէր մայրաքաղաք Պեռլինի մէջ հանդիպման, Յուլիս 4-ի կէսօրին, C.R.D.A.-ի պատուիրակութիւնը ժամանեց Պեռլինի «Թեկել» օդանաւակայանը: Դիմաւորուելով ՀՀ դեսպանատան խորհրդական Ա. Ալեքսանեանի ու դիւանագէտ Ա. Բալայեանի կողմէ, հիմնադիր - նախագահ Ժան- Գյուտ Քեպապճեանը, արտաքին յարաբերութիւններու բաժնի պատասխանատու Ռաֆֆի - Հերմոն Արաքսը եւ Կեդրոնի Հայաստանի ներկայացուցիչը այցելեցին Բ. Աշխարհամարտի եւ «ցուրտ»*

↳ 4

## ՀՀ ՎԱՐՉԱՊԵՏԸ ԴԺԳՈՀ Է ԻՐ ԵՒ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՈՐՈՇՈՒՄՆԵՐՈՒ ԱՆՊԱՏՇԱՃ ԳՈՐԾԱԴՐՈՒԹԵՆԷՆ

Երէկուայ հերթական նիստին ընթացքին, Վարչապետ Անդրանիկ Մարգարեան իր դժգոհութիւնը յայտնեց ի՛ր եւ կառավարութեան որոշումներու անպատշաճ եւ անպարտաճանաչ գործադրութեան գծով: Վարչապետը մասնաւորաբար անբաւարար գտաւ պարտաւորութիւններու կատարելու այն գնացքը, զորս կառավարութեան զանազան գերատեսչութիւններ կ'իրականացնեն ընկերային ապահովութեան հիմնադրամի նկատմամբ: Այս առումով Անդրանիկ Մարգարեան վերահսկողութեան ծառայութեան յանձնարարեց հետեւիլ Նախարարութիւններու գործունէութեանց եւ պարբերաբար կառավարութեան նիստին զեկուցել անոնց մասին: Վարչապետը ներկայացուց նաեւ Համալսարաններու մուտքի քննութիւններու նիւթերու յանձնաժողովներու նախագահներուն հետ մէկ օր առաջ ունեցած իր հանդիպման արդիւնքները:

Կառավարութիւնը մերժեց երկրի մէջ ժողովներ, հանրահաւաքներ, երթեր եւ ցոյցեր կատարելու առժամեայ կարգի մասին ներկայացուած նախագիծը: Վարչապետը նպատակայարմար չգտաւ որ նմանօրինակ առժամեայ կանոն մը ընդունուի, որ կը հակասէ ՀՀ Սահմանադրութեան:

## ՀՀ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԴԱՏԱԽԱԶ ԳԱԳԻԿ ՃԻՀԱՆԿԻՐԵԱՆ Կ'ԱՐՏԱՅԱՅՏՈՒԻ 27 ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՈՃԻՐԻ ԸՆԹԱՑՔԻՆ ՄԱՍԻՆ

ՀՀ Զինուորական Դատախազ Գագիկ Ճիհանկիրեան, հարցազրոյց մը ունենալով «Հայաստանի Հանրապետութիւն» օրաթերթին թղթակցին հետ, յայտնեց, թէ 27 Հոկտեմբերի ոճիրով նախաքննութեան աւարտէն ետք, քննչական թղթածրարի նիւթերուն ծանօթանալու գործընթացը չձգձգելու համար, դատախազներուն 50 աշխատանքային օր պիտի տրամադրուի, իսկ թղթածրարը ուսումնասիրելէ ետք, եթէ հիմնաւորուած միջնորդութիւններ չկատարուին, թղթածրարը անմիջապէս դատարան պիտի յանձնուի:

Ըստ Ճիհանկիրեանի, ներկայ դրութեամբ, տուեալներ չկան հաստատելու համար թէ 27 Հոկտեմբերի ոճրային արարքի ետին պատուիրատուներ կան: Ոճիրի գլխաւոր մեղադրեալ Նայիրի Յունանեանի վերջին վկայութիւններուն համաձայն, ա՛ն է որ մտայղացած եւ իրագործած է 27 Հոկտեմբերի ոճիրը:

Յանցագործներու պատիժը կը նախատեսուի 15 տարի բանտարկութիւն, կամ մահապատիժ:

Հարցազրոյցի վերջին բաժնով, Զինուորական Դատախազը ամենայն պատասխանատուութեամբ

ԳԱՀԻՐԷ

# ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾ ԱՐՄԷՆ ԿՐՊՈՅԵԱՆ ԻՏԱԼԻԱ ՄԵԿՆԵՑԱՒ

Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ ծանօթ քանդակագործ՝ Արմէն Կրպոյեան Հինգշաբթի 6 Յուլիսին Իտալիա մեկնած է՝ Հռոմի Եգիպտական Ակադեմիան, յանձնարարութեամբը՝ Եգիպտոսի Մշակոյթի նախարարութեան:

Ան 15 ամիսներու ընթացքին, առիթ պիտի ունենայ խորանալու իր արւեստին մէջ:

Ջերմօրէն կը շնորհաւորենք պատուաբեր երիտասարդ արուեստագէտ Ա. Կրպոյեանը, մաղթելով նորանոր յաջողութիւններ իր ընտրած արուեստին մէջ:

# ԱԶԳԱՅԻՆ ՄԻԱՍՆՈՒԹԵԱՆ ՈՒԽՏ

## ԿՈՉ

### ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻՆ, ՀՀ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻՆ, ՀԱՅՐԵՆԻՔԻ ԵՒ ՍՓԻՒՌՔԻ ԲՈԼՈՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՈՒ ԱՅԼ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ, ԱԶԳԱՅԻՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԳՈՐԾԻՉՆԵՐԻՆ, ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻՆ ՈՒ ՔԱՐՈԶՉԱՄԻՋՈՑՆԵՐԻՆ

ՍԻՐԵԼԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐ,

Ս.Թ. Օգոստոսի 10-ին լրանում է վերջին մի քանի հարիւրամեակների ընթացքում հայոց դիւանագիտութեան արձանագրած ամենանշանակալի ձեռքբերման, Սեւրի միջազգային դաշնագրի ստորագրման 80-ամեակը: Սեւրի պայմանագրի Հայաստանին վերաբերող յօդուածների տակ իրենց ստորագրութիւնները դրած Թուրքիան, Բրիտանական Կայսրութիւնը, Ֆրանսիան, Չեխոսլովքիան, Յունաստանը, Իտալիան, Պելճիքան, Ճափոնիան, Լեհաստանը, Փորթուգալիան եւ Ռումինիան ճանաչում էին Միացեալ Հայաստանի անկախութիւնը, որը պահպանուելու դէպքում պիտի ընդգրկէր մօտ 162 հազ. քառ. քմ. տարածք 90 հազ. քառ. քմ. Արեւմտահայաստան, մնացածը՝ Արեւելահայաստան):

Հայ ժողովուրդը, ի Հայաստան եւ ի Սփիւռս, ՀՀ կառավարութեան գլխաւորութեամբ, պէտք է մեծ շուքով ու համատարած հանդիսութիւններով նշի այդ պատմական իրադարձութեան տարելիցը: Խիստ անհրաժեշտ է, որպէսզի հայկական եւ օտար լրատուամիջոցներով յայնօրէն հանրաւորուեն այդ հանդիսութիւնները, ուղերձներ յղուեն Սեւրի պայմանագիրն ստորագրած տէրութիւններին՝ յորդորելով պաշտօնապէս վերաամրագրել ու արձանագրել իրենց իսկ ստորագրութիւններով վաւերացուած պատմական իրողութիւնը՝ ճանաչելով ու դատապարտելով հայոց ցեղասպանութիւնը, ընդունելով հատուցում ստանալու հայ ժողովրդի անժամանցելի իրաւունքը:

Սիրելի հայրենակիցներ,

Սեւրի պայմանագրի ստորագրման 80-ամեակի համազգային նշումը դարձնենք մեր ժողովրդի միասնութեան ու հայ արդար ու անժամանցելի դատը հետապնդելու համաշխարհային քարոզարշաւ՝ Արարատեան դաշտից մինչեւ Արժէնթինա, Գանատայից ու ԱՄՆ-ից մինչեւ Եւրոպա ու Մերձաւոր Արեւելք, Իրանից մինչեւ Ռուսաստան:

*Երեւան, 7 Յուլիսի, 2000 Թ.*

**ԱԶԳԱՅԻՆ ՄԻԱՍՆՈՒԹԵԱՆ ՈՒԽՏԻ ԽՈՐՀՈՒՐԴ**

## ՀՀ ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐ ՎԱՐԴԱՆ ՈՍԿԱՆԵԱՆ ...

1

Անխուսափելիօրէն անդրադառնալով արտագաղթի հարցին, Նախարարը այն կարծիքը յայտնեց թէ արտագաղթի թիւերը չափազանցըւած են, բայց ատիկա արգելք պէտք չէ ըլլայ, որ որոշ քայլեր առնուին այս ցաւոտ խնդրին լուծում մը գտնելու ուղղութեամբ: Արդէօք Ռուսաստանի տարածքի վրայ բնակող Հայաստանցի քաղաքացիներու կարգավիճակի մասին Ռուսաստանի Խորհրդարանին կողմէ առնուած որոշումը ա՛լ աւելի պիտի չհրահրէ՞ դէպի Ռուսաստան արտագաղթը: Լրագրողի մը այս հարցումին պատասխանելով, Վարդան Ոսկանեան յայտնեց թէ կարելի չէ ետ մնալ նմանօրինակ քայլերէ, պարզապէս վախնալով որ ատիկա կը խթանէ արտագաղթը:

### ԵԱՀԿ-Ի ՄԻՆՍՔԵԱՆ ԽՄԲԱԿԻ ՀԱՄԱՆԱԽԱԳԱՀՆԵՐՈՒ ՀԵՏ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Արտաքին Նախարարը կարեւոր բացատրութիւններ տուաւ նաեւ ԵԱՀԿի Մինսքեան Խմբակի երեք համանախագահներու վերջին այցելութեան մասին: Կրկնեց որ անոնք որեւէ նոր առաջարկ կամ գաղափար չէին բերած իրենց հետ: Բոլոր համանախագահները առաւելաբար կը ծանրանան Ռոպերթ Քոչարեանի եւ Հայտար Ալիեւի հանդիպումներու հեռանկարներուն վրայ: Յայտնի է որ երկու Նախագահները Օգոստոսին՝ Ղրիմի մէջ, անկէ վերջ ալ, Սեպտեմբերին Նիւ Եորքի մէջ ՄԱԿի գագաթաժողովի շրջագծով հանդիպումներ պիտի ունենան:

Ոսկանեան համաձայն չէ այն տեսակէտին, թէ Ղարաբաղեան խնդիրը ներկայիս «սառեցումի» վիճակի մէջ կը գտնուի:

Իսկ մինչեւ այսօր առաջարկուած երեք տարբերակներէն ո՞ր մէկուն վրայ ներկայիս պիտի կեդրոնանան բանակցութիւնները: Այս հարցումին պատասխանելով, Ոսկանեան նշեց թէ կարելի է երեք տարբերակներուն մէջէն ծաղկաքաղ մը ընել: Ամէն պարագայի, քանի որ նորը չկայ, միշտ վերջին առաջարկը աւելի արժանի է ուշադրութիւն գրաւելու:

### ԹՈՒՐՔԻՈՅ ՀԵՏ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Արտաքին Նախարար Ոսկանեան մամլոյ ասուլիսի ընթացքին կանգ առաւ նաեւ հայ-թուրք յարաբերութիւններու վրայ, դիտել տալով որ այս հարցը քննարկուեցաւ Քոչարեան-Քլինթըն, Քոչարեան-Կոր, Քոչարեան-Շիրաք հանդիպումներու ընթացքին: Ամերիկա աջակցութիւն խոստացաւ այս խնդրին մէջ Թուրքիան համոզելու, որպէսզի Հայաստանի հետ սահմանադուռը բացուի: Սակայն յայտնի է թէ ո՞րն է հիմնական խոչընդոտը: Թուրքիա միշտ Հայաստանի հետ յարաբերութիւնները կը կապէ Ղարաբաղեան խնդրին:

Նախարարը զարմանալի գտաւ Կարսի միջադէպը: Առաւել եւս զարմանալի գտաւ Կարսէն վտարուած Հայաստանցիներու հարցին մէջ Թուրքիոյ Արտաքին Նախարարի բանբերին այն յայտարարութիւնը, ըստ որու, Թուրքիա Հայաստանի հետ իր յարաբերութիւնները կը կապէր նաեւ ցեղասպանութեան հարցին մէջ Հայաստանի իշխանութիւններու կողմէ ցուցաբերուած հետեւողական աշխատանքին: Ոսկանեան աւելցուց որ ցեղասպանութեան ճանաչումը Թուրքիոյ կողմէ ո՛չ միայն նոր թշնամութիւններ պիտի չստեղծէ երկու ժողովուրդներու եւ երկիրներու միջեւ, այլ ընդհակառակը, պիտի ջնջէ թշնամութիւնը եւ պիտի նպաստէ յարաբերութիւնները բնականոն դարձնելու:

«Մեր խնդիրն է վեր կանգնիլ պատմութենէն, բայց ո՛չ թէ մոռնալ պատմութիւնը» ըսաւ Նախարար Ոսկանեան:

## Սփիւռքահայ Գրականութեան Մեծ Կորուստը

## ՄԱՀ՝ ՎԱՀԷ ՕՇԱԿԱՆԻ

Սփիւռքահայ գրականութիւնը ունեցաւ նոր ու անմխիթարելի կորուստ մը: Մեզմէ հրաժեշտ առաւ 29 Յունիսին, յետ սրտի անհանգստութեան, Սփիւռքահայ անուանի գրող, բանաստեղծ ու գրականագէտ, հայ եւ անգլիական գրականութեան դասախօս՝ Վահէ Օշական:



Վահէ Օշական որդին էր հայ գրականութեան տիտան դէմքերէն, գրագէտ, գրականագէտ եւ ուսուցիչ Յակոբ Օշականին: Ծնած էր 1922ին Ֆիլիպէ քաղաքին մէջ: 1928-1934 թուականներուն աշակերտած է Կիպրոսի Մելքոնեան վարժարանին: Յետոյ Երուսաղէմի մէջ դարձած է Հայ Սքոլի ուսանող: Աւելի վերջ ընտանիքին հետ մեկնած է Պէյրութ:

Վահէ Օշական 1946ին 3

ԳԱՆԱՏԱ

## ԳԵՐՇ. Տ. ՅՈՎՆԱՆ ԱՐՔ. ՏԷՐՏԷՐԵԱՆ ԵՐՐՈՐԴ ԱՆԳԱՄ Կ'ԸՆՏՐՈՒԻ ԱՌԱՋՆՈՐԴ

Գանատայի թեմի Հայոց Առաջնորդարանէն ստացանք հետեւեալ հաղորդագրութիւնը.-

Թորոնթոյի մէջ գումարուեցաւ Գանատահայոց թեմի Պատգամաւորական ԺԷ. ժողովը, հիւրընկալութեամբ Ս. Երրորդութիւն Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ: Իբրեւ օրակարգի կարեւորագոյն նիւթ ունէր Գանատահայոց թեմի Առաջնորդի ընտրութիւնը:

Պատգամաւորական ԺԷ. ժողովը քուէներու բացարձակ մեծամասնութեամբ՝ Առաջնորդ վերընտրեց Գերշ. Տ. Յովնան Արք. Տէրտէրեանը, երրորդ հնգամեայ շրջանի մը համար: Ընտրութեան արդիւնքներու հրապարակումէն անմիջապէս ետք, վերընտրեալ Առաջնորդ Սրբազան Հայրը, շրջապատուած թեմի հոգեւորականներով, «Հրաշափառ»ի հնչիւններուն ներքեւ մուտք գործեց եկեղեցի:

Կը շնորհաւորենք Գերշ. Տ. Յովնան Արք. Տէրտէրեանը իր երրորդ ընտրութեան այս գեղեցիկ առիթով եւ կը մաղթենք նորանոր յաջողութիւններ՝ եկեղեցաշէն եւ հայրենանուէր իր ծառայութեանց մէջ:

## ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ

### ՇՆՈՐՀԱՒՈՐԱՆՔ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք, որ 1999-2000 ուսումնական տարեշրջանի բարձրագոյն նախակրթարանի (Էտատէյա) քննութեանց Էլ-Կօմրօք կրթական բաժնի աշակերտութեանց մէջ Մայք Ժորժ Լէյլէկեան հանդիսացած է 3-րդը, իսկ Մէրի Նազարէթ Գարթալեան Մարք Ուանիս Հէնին հանդիսացած են 7-րդը:

Այս բացառիկ յաջողութեան առթիւ Հոգաբարձութիւնն ու Տնօրէնութիւնը կը շնորհաւորեն յառաջադէմ աշակերտները եւ իրենց ծնողները, մաղթելով նորանոր յաջողութիւններ:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ աշակերտաց ծնողներուն, որ վարժարանիս 1999-2000 ուսումնական տարեշրջանի նախակրթարանի եւ բարձրագոյն նախակրթարանի (Էտատէյա) պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

| Գ. ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ | Առ հարիւր |
|---|---|
| Յովիկ Արթին Խանձեան | 93 |
| Մանուէլ Սամուէլ Խունկանեան | 89 |
| Այրին Ռոպէր Պալեան | 84 |
| **ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ (Էտատէյա)** | |
| Մայք Ժորժ Լէյլէկեան | 96 |
| Մէրի Նազարէթ Գարթալեան | 95.3 |
| Մարք Ուանիս Հէնին | 95.3 |
| Նորայր Վահէ Պէնօհանեան | 93.5 |
| Հրանդ Գէորգ Գավուքճեան | 89.2 |
| Մարալ Զաւէն Կիրիտլեան | 84.2 |
| Կարօ Արթին Խանձեան | 84.2 |
| Վանիա Կարպիս Միսքճեան | 80.7 |
| Հայկ Արթին Միսքճեան | 78.5 |
| Քրիսթին Ալպէր Սելուանիս | 76.4 |
| Ռիթա Պերճ Թովմասեան | 61.4 |

Հոգաբարձութիւնն ու Տնօրէնութիւնը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները, յառաջիկայ նորանոր նուաճումներու մաղթանքներով:

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ աշակերտաց ծնողներուն, որ Վարժարանիս 1999 - 2000 ուսումնական տարեշրջանի Գ. Նախակրթարանի, Ե. Նախակրթարանի եւ Բարձրագոյն պատրաստականի (Էտատէյայի) պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

| Գ. Նախակրթարան | Առ հարիւր |
|---|---|
| Ալեքս Յովսէփ Մովսէսեան | 96 |
| Ժոզէֆ Գառնիկ Պալճեան | 95.5 |
| Քրիս Հրայր Շահրոյեան | 95.5 |
| Մայքըլ Անթոնիոս | 90 |
| **Ե. Նախակրթարան** | |
| Գէորգ Ժորժ Պարութճեան | 90 |
| Սպարտակ Աղաւարտ Եղեազարեան | 88.2 |
| Մայքըլ Նակիպ Զաքեան | 86.7 |
| **Բարձրագոյն Պատրաստական (Էտատէյա)** | |
| Մարի Եագուպ Կիւրիւնլեան | 78.5 |
| Ժօզէֆ Եագուպ | 73.9 |

Տնօրէնութիւնս եւ ուսուցչաց կազմը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները յառաջիկայ նորանոր նուաճումներու մաղթանքներով:

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ աշակերտաց ծնողներուն, թէ Վարժարանիս 1999-2000 ուսումնական տարեշրջանի Գ. եւ Ե. Նախակրթարանի, եւ Գ. Պատրաստականի պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով.-

| Գ.- Նախակրթարան | | Առ հարիւր |
|---|---|---|
| 1. Մինաս Սարգիս | | 97 |
| 2. Ռիթա Զաքարեան | | 96.5 |
| 3. Ալին Եուսէֆ | | 95.5 |
| 4. Վալանթինա Մակլումեան | | 95 |
| 5. Կարապետ Թէլլալեան | | 91 |
| 6. Յակոբ Մակլումեան | | 89.5 |
| 7. Կարօ Էտուար | | 86 |
| **Ե.- Նախակրթարան** | **350** | |
| 1. Նանսի Էտուար | 332 | 94.8 |
| 2. Մելոտի Գոչունեան | 317.5 | 90.7 |
| 3. Արմէն Գապապեան | 298 | 85.1 |
| 4. Անթուան Թուխթարեան | 246 | 70.2 |
| 5. Ալիս Մակլումեան | 239.5 | 68.4 |
| 6. Տաթեւիկ Շապոյեան | 193.5/200 | 96.7 |
| 7. Մանուէլ Հանի | 189.5/200 | 94.7 |
| **Գ.- Պատրաստական** | **280** | |
| 1.Նորա Էտուար | 256.5 | 91.6 |
| 2.Նէրմին Թուխթարեան | 247.5 | 88.3 |
| 3.Թամար Գասապեան | 245.5 | 87.6 |
| 4.Ռոժէ Մարիօ | 243 | 86.8 |
| 5.Ռակի Սարգիս | 241.5 | 86.2 |
| 6.Մանէ Բլատեան | 232 | 82.8 |
| 7.Շահան Թէրզիպաշեան | 226 | 80.7 |
| 8.Քրէյոս Ուատիի | 213 | 76 |
| 9.Թալին Գալըշեան | 210.5 | 75.1 |
| 10.Արէն Նազաշեան | 209.5 | 74.8 |
| 11.Աւետիս Կիւլիւզեան | 197.5 | 70.5 |

*Խմբագրութիւնս եւս կը շնորհաւորէ ազգային վարժարաններու տնօրէնութիւնները, ուսուցչական կազմերն ու յաջողած աշակերտները, այս փայլուն արդիւնքներուն համար, մաղթելով նորանոր յաջողութիւններ:*

**ՄՈՆԹՐԷԱԼ**

# «ՄԱՆՉ Է ԹԷ ԱՂՋԻԿ» ԿԱՏԱԿԵՐԳՈՒԹԵԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

Շաբաթ 3 եւ Կիրակի 4 Յունիս 2000-ի երեկոյեան, մասնակցութեամբ բեմի հաւատարիմ խնկարկու Պր. Դաւիթ Յ. Էվերեկլեանի, ղեկավարութեամբ, իր հօր քայլերուն հետեւող՝ Տիկ. Ռոզալիա Վասիլեանի եւ միաձուլուած Հ.Կ.Մ. «Ալիշան» թատերախումբի մշտաթարմ ուժերուն հետ, Հայ Կաթողիկէ «Իփէքեան Սրահ»ին մէջ, կը ներկայացուէր եգիպտահայ անուանի դերասանուհի, թատերագիր՝ Արաքսի Օհանեանի «Մանչ է թէ աղջիկ» երեք արար եւ մէկ պատկեր կատակերգութիւնը:

Նախքան ներկայացման սկսիլը յայտարարող զաւազանի երեք հարուածներուն, բեմ բարձրացաւ Պր. Յարութիւն Էվերեկլեան եւ քանի մը խօսքով արտայայտուեցաւ ներկայացման զանազան դժուարութիւններուն՝ ամիսներու յարատեւ աշխատանքին մասին, որմէ ետք, հազիւ քանի մը ժամով կը հրամցուի հասարակութեան... համեղ ճաշի մը նման:

Օրուան զուգաւոր յայտագրին վրայ, քանի մը տողով, բայց այնքան հարազատօրէն նիւթին մասին անդրադառնալով գրուած էր.

«Կաղանդի գիշեր է, գործէ արձակուած մանկամարդուհի մը, ճամբուն եզրին լքուած մանկիկ մը կը գտնէ: Սա՝ պատուհասը կը հանդիսանայ բազմաթիւ անձերու... անակնկալ պատահարներ... իրարանցում եւ յուզում կը յաջորդեն իրարու... եւ տակնուվրայութիւնը կը դառնայ անպատմելի...»:

Առաջին առթիւ, գնահատանքի յատուկ խօսք ունինք դերակատարներուն, որոնք բոլորն ալ ըլլալով երիտասարդներ, անգամ մը եւս կու գային ապացուցանելու, թէ նոր եւ թարմ ուժ միշտ անհրաժեշտ է որեւէ մէկ գործի յաջողութեան:

ՌՈԶԱԼԻԱ ՎԱՍԻԼԵԱՆ (Սիւզանի դերով).- Բեմի մեր զարդերէն դարձած Ռոզալիան, այս անգամ մեզի կը ներկայանար բոլորովին նոր ոճով մը: Բացառիկ բեմական կարողութեամբ՝ ան կրցաւ արտայայտել հոգեկան տարբեր ապրումներ, եւ ճարտարօրէն մեզ հաղորդակից դարձնել իր այլազան յուզումներուն: Նախ կաղանդի գիշերով գործը կորսնցուցած, յետոյ մայր մը ըլլալու ամբաստանութեամբ, ինչպէս նաեւ իր ազնիւ ուրախութիւնը անծանօթ մանուկին հետ, կամ իր անուշ այլ զուսպ վարուելակերպը իր բարեկամին՝ Հրաչին հանդէպ: Ան յաջողութեամբ կը հետեւէր իր խաղընկերոջ խօսակցութեանց, նոյնիսկ իր լռութեան պահուն՝ իր դէմքի միմիքներով ու պատշաճ շարժումներով: Վերջապէս, Տիկ. Վասիլեան անգամ մը եւս կու գար գերազանցել ինքզինքը:

ԴԱՒԻԹ ՃԱՊՐԱԵԱՆ (Հրաչի դերով).- Եղաւ Սիւզանի անկեղծ բարեկամը: Ան հարազատօրէն ներկայացուց այն ազնիւ անձը որ կը տառապէր ինքն իր մէջ...: Բզկտուած սիրոյ... ու պարզապէս անկեղծ բարեկամ մը ըլլալու եւ Սիւզանին շահերը գերադասելու միջեւ, մինչեւ իսկ եթէ այդ ըլլար իր սրտին հաշւոյն...: Անսայթաք էր խաղարկութիւնը եւ հաճելի իր ներկայութիւնը բեմին վրայ:

ՎԻՔԻ ՕՏԱՊԱՇԵԱՆ (Մանկամսուրի տնօրէնուհիի դերով).- Ան գերազանցօրէն մարմնաւորեց զսպուածութեան, խստութեան, պարտականութեան գիտակցութեան եւ սկզբունքի տէր՝ տնօրէնուհիի մը դերը: Իր ներկայութիւնը բեմին վրայ, մեզի ապրեցուց «զուարթ - սսկում» խառն պահեր:

ԳՐԻԳՈՐ ԱՐԸՃԵԱՆ (Էտմոնի դերով).- Համարձակ եւ ինքնավստահ խաղարկութեամբ եւ մանաւանդ բոլորովին նոր մեկնաբանութեամբ ներկայացուց որդիի մը զուսպ այլ արդիական պոռթկումներն ու ընդդիմութիւնները հօրը յայտնած փափաքին հանդէպ, երբ այս վերջինը կ՚ուզէր զինք ամուսնացնել, թոռնիկ մը ունենալու մտադրութեամբ... «թոռնիկամոլութիւն»:

Պր. Արըճեանի այս նոր մօտեցումը, որքան հարազատ է մեր այսօրեայ Հիւսիսային Ամերիկայի կեանքին... նայինք մեր շուրջը ու պիտի տեսնենք մեր տղոց ճիշդ նոյն արտայայտութիւնները, ճիշդ նոյն պոռթկումներով, երբ մենք ծնողներս, անոնց հետ խօսինք ամուսնութեան մասին: Պէտք է ըսենք, թէ այս նոր մեկնաբանութիւնը յեղափոխութիւն մըն էր սոյն ներկայացման աւանդութեան: Ճի՛շդ է որ Պր. Արըճեան փորձեց նորութիւն մը... եւ նոյնպէս ճիշդ է, որ ան տարաւ յաղթանակ մը...:

ՀՈՒՐԻ ՊԱԼԱՍԱՆԵԱՆ (Էլիզի դերով).- Աստուած իմ, կարծեք հեղինակը՝ անմահն Արաքսի Օհանեան, 40 տարիներ առաջ այս կերպարը պատրաստած ըլլար Օր. Հուրիին համար: Այս դերակատարուհին եղած էր հեղինակին երազած Էլիզը, իր շնորհքով, իր ֆրանսուհիի ծեքծեքուն՝ միաժամանակ պատշաճ շարժումներով, իր հագուստով, իր խօսելաոճով, մէկ խօսքով բոլոր էութեամբ:

ՄԱՆՈՒԷԼ ԱՖԱՐԵԱՆ (Խոսրովի դերով).- Առանց անոր, կարծէք բան մը պիտի պակսէր: Իբրեւ թոթով հաշուակալ, որ նիւթականը իրեն աստուածն էր, Պր. Աֆարեան լաւ ուսումնասիրուած դէմքի իւրայատուկ խաղերով եւ իր դերին յարմար շարժումներով, եկաւ ամբողջացնելու ներկայացման յաջողութիւնը:

Ապա ընդհանուր ծափերու մէջ, մուտք գործեց ԴԱՒԻԹ ԷՎԵՐԵԿԼԵԱՆ: Իմացանք որ ասկէ 40 տարի առաջ, ան հանդէս եկած է երիտասարդ Էտմոնին դերով, ներկայութեամբ նոյնինքն հեղինակին: Բայց այսօր, ոչ թէ Էտմոնի, այլ Էտմոնի հօր՝ Կոստանի դերով, ապացուցանելով, թէ բեմական փորձառութիւն եւ կարողութիւն եթէ խառնուին գիտակցութեան եւ ինքնազսպումի հետ, կրնան թատերական հրաշքներ գործել: Ան գիտցած էր չգործել նոյն սխալը որ նախկին բեմի տիտաններ գործած էին: Ուրիշներ, որոնք հակառակ իրենց տարիքի յառաջացման, տակաւին կը փորձեն, տարիքի անյարմար դերերով հանդէս գալ եւ ապա «ցաւով» վերջ դնել իրենց թատերական ասպարէզին: Պր. Էվերեկլեան յարմար իր տարիքին ու դերին, երբեմն յուզիչ ձայնի թրթռուն ելեւէջներով, իրեն յատուկ հանդարտ շարժումներով, ներդաշնակութեան դրոշմը դրաւ ներկայացման այլ պոռթկումներու: Թերեւս առանց իրեն միօրինակութիւն մը պիտի ստեղծուէր: Ան եղաւ ներկայացման առանցքը: Պր. Էվերեկլեան անգամ մը եւս կու գար յայտնելու սէրն ու հաւատարմութիւնը սուրբ բեմին հանդէպ: Գլխարկները վե՛ր իրեն:

Թէեւ բեմադրիչի անուն չէր յայտարարուած, բայց համեստաբար գրուած էր Ռոզալիա Վասիլեանի անունը որպէս ղեկավար: Ներկայացման բացառիկ յաջողութիւնը մեզ կ՚արտօնէ որ Տիկին Վասիլեանի կոչենք «բեմադրիչ»:

Երաժշտութիւնն ու ձայներու նուրբ ընկերակցութիւնը պատրաստուած էր Գրիգոր Արըճեանի կողմէ, որ սփռուեցաւ Հայկ Աֆարեանի պատասխանատուութեամբ, իսկ ճաշակաւոր բեմայարդարումը կատարած էր Գասպար Գասպարեան: Գալով տէքորներուն՝ կահ-կարասիները տրամադրուած էին «Աննա Գարինա» հաստատութեան կողմէ:

Արդարեւ, սա թատերական վայելքի փառատօն մըն էր:

Խունկերամ թատերասէր հասարակութիւն մը եկած էր ըմբոշխնելու արուեստի գործ մը: Գործ մը որ մօտ 40 տարի անցեր էին անոր հեղինակութենէն, սակայն այսօր ան կը ներկայացուէր նոր մեկնաբանութեամբ: Այս կը նշանակէ թէ դասականի արժանացող եւ երբեք ժամանակավրէպ նկատուող արուեստի գործ մըն է «Մանչ է թէ աղջիկ»ը:

Վարձքը կատար բոլորին:

Մոնթրէալ

ԹՂԹԱԿԻՑ՝
ՊԵՐՃ ԳՈԳՈՐԵԱՆ

# ԳԵՐՇ. ԳՆԷԼ ԱՐՔ. ՃԵՐԷՃԵԱՆ.

## «ՄԶԿԻԹՆԵՐՈՒ ԿԱՆՉԸ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒ ՂՕՂԱՆՋԸ ՍՈՒՐԻՈՅ ՄԷՋ ԿԸ ՆՄԱՆԻՆ ԱՆՆՄԱՆ ՍԻՐՈՅ ՍԻՄՖՈՆԻԻ ՄԸ»

## «ՍԻՈՆԻԶՄԸ ՉԻ ԿՐՆԱՐ ՀՐԷԱԿԱՆԱՑՆԵԼ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԿՐՕՆՔԸ»



Գերշ. Տ. Գնէլ Արք. Ճերէճեան

*Վերջերս, սուրիական «Թըշրին» օրաթերթի շաբաթօրեայ յաւելուածական բաժինի թղթակից Մոհամմէտ Տաուտ, հարցազրոյց մը ունեցած է Դամասկոսի Հայ Առաքելական Եկեղեցւոյ թեմի առաջնորդ Գերշ. Տ. Գնէլ Արք. Ճերէճեանի հետ: Սրբազանը հարցազրոյցի ընթացքին լրագրողին հաստատած է, թէ Սուրիոյ Նախագահ Հաֆէզ Ասատի հայրը՝ Սուլէյման Ասատը մեծ նպաստ ունեցած է հայ տարագրեալներու օգնութիւն ցուցաբերելու գործին մէջ (Մեծ Եղեռնի շրջանին):*

*Առ այդ, հարցազրոյցը տեղի ունեցած է նախքան Հաֆէզ Ասատի վախճանումը: Ան աւելցուցած է, թէ Սուրիան համակեցութեան օրինակելի երկիր մըն է: Լրագրողը իր գրոյցին մէջ արծարծած է հրեաներու դերը հայերու բնաջնջման մէջ, հրեաներու դերը քրիստոնէութեան հրէականացման մէջ, ինչպէս նաեւ «Միլոտի» առասպելի մասին եւ այլ ուրիշ նիւթեր, որոնց պատասխանած է Դամասկոսի թեմի բարեջան առաջնորդը, ստորեւ՝ թարգմանաբար «Թըշրին Ալ-Ուսպուհի» պաշտօնաթերթին հարցազրոյցին բովանդակութիւնը:*

*ԽՄԲ.*

*ՀԱՐՑՈՒՄ.- 1915 Թուականին Պոլսոյ մէջ Գերմանիոյ դեսպան Հրեայ պարոն Վանկհայմ, Պեռլին իր ուղարկած հեռագրին մէջ Հայ ժողովուրդի դէմ մեծ ատելութեամբ կ՚ըսէր, որ պատմութիւնը իրեն պիտի դարձնէր Հայերու բնաջնջման գործին մէջ մեծագոյն սիւներէն մին...: Ձեր կարծիքով ի՞նչպիսին է հրեաներու դերը այս ոճիրին մէջ:*

ՊԱՏԱՍԽԱՆ.- Հրեաները չատ կեղտոտ մասնակցութիւն ունեցած են Հայ ժողովուրդի դժբախտութեան մէջ. եւ այն, որ հրեաները չեն ընդունիր այլ ժողովուրդներու գերակայութիւնը. աշխատած են միշտ կործանել զանոնք, ընդ որում Հայ ժողովուրդը Թուրքիոյ մէջ եւ ճիգ չխնայեցին ջնջելու հայերը՝ գործակցելով հրեայ ծագում ունեցող օսմանցի ղեկավարներու հետ, ինչպիսիք էին՝ Թալաաթ, Էնվեր, Ճեմալ փաշաները, որոնք բոլորն ալ մասոններ էին, որուն հիմնադիրներէն մէկն ալ հրեայ քահանայ Սաթովն էր. մենք կը մերժենք մասոնութիւնը կտրականապէս:

*Հ.- Ի՞նչ փաստեր գոյութիւն ունին, որոնք կ՚ապացուցեն հրեաներու մասնակցութիւնը Հայկական ջարդերուն մէջ:*

Պ.- Այո, կտրուկ փաստեր գոյութիւն ունին, որոնք կ՚ապացուցեն, թէ հրեաները մասնակից են Հայկական ջարդերու ծրագրաւորման եւ կիրառման մէջ, եւ անոնց մասին չատ յստակ եւ ցայտուն կերպով անգլերէն լեզուով գրած է հայ մտածող ու պատմաբան Վահագն Տատրեան, որ վերջերս Սուրիոյ Մշակոյթի Նախարարութեան կողմէ հրաւիրուած էր Սուրիա եւ դասախօսութիւն մը տուած էր, ուր բազմաթիւ փաստերով կ՚ապացուցէր հրեաներու մասնակցութիւնը այս եղեռնագործութեան մէջ:

Իսկ մեծագոյն ապացոյցը այն է, որ հրեաները մինչեւ օրս բոլոր միջոցներով ճնշում կը բանեցնեն ԱՄՆի եւ եւրոպական երկիրներու վրայ, որպէսզի չճանչնան Թուրքիոյ կողմէ կատարուած ցեղասպանութիւնները հայոց դէմ: Աւելին, անոնք կը փորձեն համոզել իսրայէլացիները եւ աշխարհը, որ Թուրքերը չեն կատարած այդպիսի արարք, այլ՝ հակառակը:

*Հ.- 1915 Թուականին Թրքական «տէօնմէ» կառավարութիւնը հրամայեց աքսորել Հայերը Անատոլիայէն. ինչպէ՞ս ձեզի ընդունեց Սուրիան եւ ինչպէ՞ս կը բնորոշէք ձեր կեանքը այստեղ:*

Պ.- Այն վերապրողներէն մէկն եմ, որոնք փրկուեցան Թրքական նախճիրէն: Փոխադրուեցանք Սուրիա, ստոյգ՝ Լաթաքիա, ուր արաբները մեզի դիմաւորեցին հիւրնկալաբար: Այստեղ, մենք ապահով կը զգանք. սուրիացի ընտանիքները իրենց դռները բացին մեզի, ուր մենք կ՚ապրինք մէկ ընտանիքի պէս: Եւ մենք, որպէս Հայեր, Նախագահ Հաֆէզ Ասատի ղեկավարութեան ներքոյ կ՚ապրինք ազատութեամբ եւ որպէս լիիրաւ քաղաքացիներ: Հայ ժողովուրդը այստեղ մեծ յարգանք կը տածէ Սուրիոյ նկատմամբ, որ մեզի օգնութեան ձեռք երկարեց եւ ապահովեց մեր կեանքը եւ ապա գոյատեւումը՝ որպէս պատուաւոր քաղաքացիներ:

Առաջնորդը կ՚աւելցնէ, որ աւելի քան 700 Հայ ընտանիքներ փոխադրուեցան Լաթաքիոյ Քրրտահա գիւղը, ուր Հայոց օգնութեան հասնողներուն մէջ առաջին անձնաւորութիւններէն էր Նախագահ Հաֆէզ Ասատի հայրը՝ Սուլէյման Ասատ: Առաջնորդը կը նշէ.- «Սուլէյման Ասատի համար կ՚աղօթենք, որ բարձրեալն Աստուած արժանացնէ երկնային դրախտին: Որպէս Հայեր չենք կրնար մոռնալ անոր բարիքը մեր ժողովուրդին հանդէպ, որ այսօր կը շարունակուի իր որդւոյն՝ Նախագահ Հաֆէզ Ասատի կողմէ: Մենք հպարտ կը զգանք սուրիացի եւ հայ ըլլալնուս համար»:

*Հ.- Արեւելեան եկեղեցին կը կարծէ, որ քրիստոնէական կրօնը վտանգուած է սիոնիստներու կողմէ հրէականացման փորձերէն, որոնք կ՚ըսեն թէ Յիսուս Քրիստոս Իսրայէլի հարազատ զաւակն է: Ձեր կարծիքով ի՞նչ են քրիստոնէական կրօնի հրէականացման բուն նպատակները եւ ապա Յիսուսի հրէականացումը:*

Պ.- Ճիշդ է, որ Յիսուս Քրիստոս ծնաւ հրեայ ընտանիքի մը մէջ, բայց Ան Աստուծոյ որդին է եւ ուրեմն հրեայ չի համարուիր, ապա, երբ Ան իր աշակերտները ուղարկեց աւետելու քրիստոնէութիւնը, անոնցմէ պահանջեց որ մտնեն բոլոր տուներէն ներս անխտիր, հետեւաբար, ոչ մէկ կապ գոյութիւն ունի քրիստոնէութեան եւ հրէականութեան միջեւ:

Իրականութեան մէջ սիոնականութիւնը կը փորձէ հրէականացնել քրիստոնէութիւնը: Կրնայ ըլլալ, որ Յիսուս որոշ բաներ քաղած է Մովսէս մարգարէի ուսմունքէն, սակայն՝ Յիսուս չեչտեց սիրոյ հասկացողութիւնը որ պէտք է տիրէ ամբողջ մարդկութեան մէջ եւ Յիսուսի ուսմունքը բոլոր մարդկութեան համար է, մինչդեռ Մովսէս մարգարէի ուսմունքը՝ միայն Հրեայ ժողովուրդին:

Մենք չենք ընդունիր սիոնականութիւնը, հետեւաբար չենք ընդունիր քրիստոնէութեան հրէականացումը եւ կ՚ուզեմ այս նշել, թէ Յիսուսի առաքեալները չարչարուեցան եւ հալածուեցան Երուսաղէմի մէջ եւ մինչեւ իսկ հրեաներ փորձեցին սպաննել զանոնք՝ քրիստոնէութիւնը քարոզելու համար: Ամենածիծաղելին այն է, որ անոնք 15 տարիներ առաջ փորձեցին արդարացնել Յիսուսը, սակայն չյաջողեցան:

*Հ.- Երբ կը պատրաստուինք դիմաւորել Քրիստոսի ծննդեան 3-րդ հազարամեակը, կը կանգնինք դէմ յանդիման այն հրէական առասպելին, որ կը խօսի «Միլոտի» կոչուած կարմիր կովու յայտնութեան մասին, որուն յայտնութեամբ հրեաները պիտի կործանեն Երուսաղէմի մէջ գոյութիւն ունեցող ամէն ինչ որ արաբական է. ի՞նչ է ձեր մեկնաբանութիւնը այս առասպելի մասին: Եւ ի՞նչ է ձեր կարծիքով միջոցը այս սիոնական ծրագիրը ձախողեցնելու եւ փրկելու Երուսաղէմի իսկական դէմքը:*

Պ.- Այս պարզապէս նախապաշարում մըն է եւ մենք չենք հաւատար անոր, իսկ սիոնականներու ծրագիրները ձախողեցնելու համար հարկաւոր է, որ մենք եւ արաբները գօտեպնդուինք եւ միանանք Սուրիոյ պինդ կեցուածքին:

*Հ.- Շարք մը խորհրդաժողովներ եւ համագումարներ եղան քրիստոնեայ - իսլամ երկխօսութեան մասին, ի՞նչ է ձեր կարծիքը այս մասին:*

Պ.- Կրնամ հաստատել, որ այսպիսի երկխօսութիւններ չատ օգտակար են, քանի որ այս երկու կրօնները չատ հարցերու չուրջ կը համաձայնին, սակայն՝ հրեաներուն հետ չեմ կարծեր որ կարելի է եզր մը գտնել:

*Հ.- Ինչպէ՞ս կը տեսնէք Սուրիոյ մէջ ազգային միասնականութիւնը:*

Պ.- Իրականութեան մէջ, Սուրիան իր տարբեր յարանուանութիւններով միաձուլուած է մէկ ներդաշնակ հիւսուածքի մէջ եւ անոնք իրարու կապուած են սիրոյ զգացումներով: Դամասկոսի մէջ մզկիթներու կանչը եւ եկեղեցիներու զանգերուն ղօղանջը կը նմանի սիրոյ աննման սիմֆոնիի մը: Ինչպէս նաեւ, բոլոր տօնական առիթներով երկրի պաշտօնական պատասխանատու անձնաւորութիւններ կ՚այցելեն մզկիթներ եւ եկեղեցիներ, այն ինչ որ համակեցութեան գեղեցիկ պատկեր մը կը նկարեն Սուրիոյ մէջ՝ Նախագահ Հ. Ասատի հովանիին ներքեւ:

## Սփիւռքահայ Գրականութեան Մեծ Կորուստը ՄԱՀ՝ ՎԱՀԷ ՕՇԱԿԱՆԻ

2

անցաւ Փարիզ, ուր իր ուսումը շարունակած է Սորպոն համալսարանին մէջ: 1961ին իր տոքթորայի թէզը պատրաստած է, ուսումնասիրելով Արեւմտահայ գրականութիւնը:

Անուհետեւ դատապարտուեցաւ ապրելու զանազան երկիրներու մէջ, Ամերիկայէն մինչեւ Աւստրալիա, որպէս համալսարաններու մէջ դասախօս՝ անգլիական գրականութեան: Միաժամանակ շատ մօտէն կը հետեւէր Սփիւռքահայ գրականութեան, ինք եւս կը գրէր բանաստեղծութիւն ու պատմուածք: 1996ին գնաց Ղարաբաղ, ուր մօտաւորապէս երկու ամիս դասաւանդեց հայոց գրականութիւն: Վերջին տարիներուն ան կարեւոր մասնակցութիւն կը բերէր Ամերիկայի մէջ անգլերէն «Րաֆֆ» բանաստեղծական պարբերաթերթին, որ փոքրածաւալ, բայց շատ արժէքաւոր հրատարակութիւն մըն է: Օշական կանոնաւոր կերպով «Ասպարէզ» եւ «Յառաջ» թերթերու մէջ կը հրատարակէր նոր գիրքերու մասին տեսութիւններ ու վերլուծումներ:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ՀԱՐԻ ՋԷՋՃԷՆԵԱՆ**

Ընդ

**ՕՐ. ԱՆԻ ԳՐԻԳՈՐԵԱՆԻ**

ԳԱՀԻՐԷ — 9 ՅՈՒԼԻՍ 2000

*Խմբագրութիւնս իր ջերմ շնորհաւորութիւնները կը յայտնէ խօսեցեալ զոյգին, ինչպէս նաեւ անոնց ծնողաց, մաղթելով երջանիկ կեանք խօսեցեալ զոյգին:*

---

## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐՈՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԳՈՐԾԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

### ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ - ՊԱՏՈՒԱՄԻՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 13 Յուլիս 2000 կ.ե. ժամը 8.30-ին

**ԳԱՀԻՐԷԻ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ**

**Ի Պատիւ**

**Համահայկական Առաջին Խաղերուն Մասնակցող Եգիպտահայ Մարզիկներուն**

**ՄԵՏԱՅԼՆԵՐՈՒ ԵՒ ՎԿԱՅԱԿԱԳԻՐՆԵՐՈՒ ՏՈՒՉՈՒԹԻՒՆ**

**Տեսերիզի Ցուցադրութիւն**

*Սիրալիր Հրաւէր Մարզասէր Հասարակութեան*

---

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ ՀՀ կառավարութեան կողմից բուհական ընդունելութեան պետական պատուէրի շրջանակներում 70 տեղ է յատկացուել սփիւռքահայ դիմորդներին:

Այդ տեղերի շրջանակներում ընդունելութիւնն իրականացուելու է «ՀՀ-ում օտարերկրեայ քաղաքացիների ուսուցման մասին» կարգի համաձայն՝ ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարի կողմից ստեղծուող յանձնաժողովի նիստում՝ առաւելութիւն տալով հայագիտական, մանկավարժական, արուեստի եւ սփիւռքի համար առաջնահերթ նշանակութեան այլ մասնագիտութիւններին:

Պետական պատուէրի տեղերից բացի սփիւռքահայ դիմորդները հնարաւորութիւն ունեն ընդունուելու նաեւ վճարովի համակարգ՝ նոյն կարգի համաձայն:

Հայոց լեզուին բաւարար տիրապետելու եւ կրթական ծրագրերին յարմարուելու նպատակով սփիւռքահայ դիմորդներն ընդունուելու են նախապատրաստական բաժանմունք՝ մէկ տարի ժամկէտով: Հայկական դպրոցների շրջանաւարտներին հնարաւորութիւն կը տրուի գիտելիքների ստուգման (հարցազրոյցի) արդիւնքներով ուսումն սկսել առաջին կուրսից:

Դիմորդների փաստաթղթերի ընդունելութեան վերջին ժամկէտը Յուլիսի 25-ն է:

Դիմում-հարցաթերթիկը ստանալու եւ յաւելեալ մանրամասների համար դիմել Գահիրէում ՀՀ դեսպանութիւն:

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ- ԳԱՀԻՐԷ**

---

## ՀԱՅԱՊԱՀՊԱՆՄԱՆ ԳԼԽԱՒՈՐ ԹՇՆԱՄԻՆԵՐԸ

*Արդարեւ, հայապահպանման թշնամիները հայեր են, տարին անգամ մը Եղեռնի նահատակները յիշող կամ չյիշող:*

*Հայապահպանման թշնամիներն են հետեւեալ հայանուն հայերը--*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ԻՐԵՆՑ ՁԵՌՔԵՐՈՎ ԻՐԵՆՑ ԶԱՒԱԿՆԵՐԸ Կ'ԱՌԱՋՆՈՐԴԵՆ ՕՏԱՐ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ:*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ՉԵՆ ՔԱՋԱԼԵՐԵՐ ՀԱՅ ԴՊՐՈՑ, ՀԱՅ ՄԱՄՈՒԼ, ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ:*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ԶԱՆԱԶԱՆ ԱՆՀԻՄՆ ՊԱՏՃԱՌՆԵՐՈՎ ԿԸ ԽՈՒՍԱՓԻՆ ԲԱԶՄԱԾՆՈՒԹԵՆԷ (քաւ լիցի Աստուծոյ տնօրինումին եւ կամքին միջամտելու փորձութիւնը):*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ՕՏԱՐԱԶԳԻՆԵՐՈՒ ՀԵՏ ԿԸ ԿԱԶՄԵՆ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲՈՅՆ, ԿԸ ՔԱՋԱԼԵՐԵՆ ԽԱՌՆ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ:*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ՀԱՍՈՒՆ ՏԱՐԻՔԻ ՀԱՍՆԵԼՈՎ ՉԵՆ ՈՒԶԵՐ ԿԱԶՄԵԼ ՀԱՅԿԱԿԱՆ ԲՈՅՆ ԵՒ ԿԸ ՄԵՐԺԵՆ ԲԱԶՄԱՆԱԼ:*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ՉԵՆ ՈՒԶԵՐ ԽՕՍԻԼ ԿԱՄ ՃԻՇԴ ԽՕՍԻԼ ԻՐԵՆՑ ՄԱՅՐԵՆԻՆ:*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ԻՐԵՆՑ ԶԱՒԱԿՆԵՐԸ ԿԸ ԿՈՉԵՆ ՕՏԱՐ ԱՆՈՒՆՆԵՐՈՎ:*

*ԱՆՈՆՔ, ՈՐՈՆՔ ԿԸ ԽՊՆԻՆ ՈՒ ԱՄՕԹԽԱԾ ԿԸ ԶԳԱՆ ՀԱՅ ԾՆԱԾ ԸԼԼԱԼՈՒՆ ՀԱՄԱՐ:*

*Համոզուեցա՞ք, որ հայապահպանման գլխաւոր թշնամիները հայեր են, թուրքին գործը շարունակող եւ թուրքին հաճոյք պատճառող հայեր:*

*Վա՜յ այդպիսի հայերուն:*

**ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

---

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Համբարձում Եալնըզեանի մահուան տխուր առթիւ, փասն ցաւակցութեան, Ընկերներ Պետրոս եւ Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն 25

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց ամուսնոյն, հօր եւ մեծհօր Սերոբ Թիւթիւնճեանի մահուան 19-րդ տարելիցին առթիւ Թիւթիւնճեան ընտանիք կը նուիրէ.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս - Պետրոս Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| Պօղոսեան Ազգ. Վարժարանին | 50 |
| «Տիգրան Երկաթ» Հայ Մշակ. Միութեան | 50 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին (Աղեքս.) | 50 |
| «Արեւ»ին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

(Ստանալ Աղեքս. Ազգային Առաջնորդարանէն)

---

## ՀՀ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԴԱՏԱԽԱԶ ԳԱԳԻԿ ԺԻՀԱՆԿԻՐԵԱՆ Կ'ԱՐՏԱՑԱՑՏՈՒԻ 27 ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՈՃԻՐԻ ԸՆԹԱՑՔԻՆ ՄԱՍԻՆ

յայտարարեց, որ ոճիրի նախաքննութեան ընթացքին ինք հաշուետուութիւն չէ կատարած «Միասնութիւն» դաշինքին եւ «Երկրապահ» Կամաւորական Միութեան: Միաժամանակ սակայն, խոստովանեցաւ, որ ինք մասնակցած է անոնց նիստերուն, թոյլատրելի տեղեկութիւններ փոխանցած է անոնց եւ նոյնքան տեղեկութիւններ փոխանցած է նաեւ երկրի Նախագահին:

---

## ԵՐԿԽՕՍՈՒԹԵԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՊԷՍ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ ՓԱՐԻԶԻ «ՀԱՅԿԱԿԱՆ ՍՓԻՒՌՔԻ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԿԵԴՐՈՆ»Ի ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ՊԵՌԼԻՆԻ ՄԷՋ ՊՈՒՆԹՍԹԱԿԻ...

*պատերազմի յայտնի եւ անյայտ մարտերու պատմական վայրերը, այժմ միաւորուած Պեռլինի մէջ:*

*Երեկոյեան ժամը 5-ին, հիանալիօրէն վերանորոգուած Պունթըսթակի շէնքի արեւելեան մասնաշէնքին մէջ C.R.D.A.-ի պատուիրակութիւնը շուրջ 1.5 ժամուան խորհրդակցութիւն - հանդիպում ունեցաւ: Գերմանական կողմէն հանդիպման ներկայ էին Պունթսթակի փոխ - նախագահուհի Ա. Ֆուքսի, (S.P.D.) աշխատակազմի ղեկավար Ե. Կայսերը եւ խորհրդարանի կովկասեան խմբակցութեան ղեկավարուհի Ք. Լէօրխէրը:*

*Քննարկուեցան Հայ-Թրքական երկխօսութեան երկրորդ համագումարին կազմակերպութեան հարցերը, որուն պիտի մասնակցին Ֆրանսայէն, Գերմանիայէն, Թուրքիայէն եւ Հայաստանէն մեծահամբաւ ժողովրդավար դէմքեր, գործիչներ, մտաւորականներ: Մինչ այդ C.R.D.A.-ի պատուիրակութեան առաջարկուեցաւ պաշտօնապէս հրաւիրել Գերմանիոյ Արտաքին Գործոց նախարարութեան եւ Մարդու Իրաւունքներու պաշտպանութեան յանձնաժողովին՝ անհրաժեշտ հովանաւորումն ու ֆինանսաւորումը ձեռք բերելու համար: Առայժմ համագումարին կազմակերպման թուականը որոշուեցաւ յառաջիկայ Սեպտեմբեր - Հոկտեմբերին: Մինչ այդ, վերադառնալով Փարիզ ու Երեւան, «Հայկական Սփիւռքի Հետազօտութիւններու Կեդրոն»ի պատասխանատուները լծուեցան անհրաժեշտ փաստաթուղթերու նախապատրաստման աշխատանքներուն, միացեալ պատուիրակութեամբ անգամ մը եւս հանդիպելու Գերմանիոյ կառավարութեան հետ:*

(Թղթակցութիւն «Ջահակիր»ի)

*Պեռլին, Փարիզ* **ՀԱՄՕ ՄՈՍԿՈՖԵԱՆ**

---

## Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ - (ԱՂԵՔՍ.)

### ՊԱՍՔԷԹՊՈԼԻ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑԱՇԱՐՔ

Ուրբաթ 21, Շաբաթ 22 եւ Կիրակի 23 Յուլիս 2000-ին

**Նուիրուած**

**Հ.Բ.Ը.Մ.-Ի ԿՈՂՄԷ ՄԻՈՒԹԵԱՆՍ ՍԻՐԱՅՕԺԱՐՕՐԷՆ ՏՐԱՄԱԴՐՈՒԱԾ ԱՅԺՄՈՒ ՄԱՐԶԱԿԱՆ ԿԵԴՐՈՆԻ 40-ԱՄԵԱԿԻՆ (1960-2000)**

**Մասնակցութեամբ**

**ԵԳԻՊՏԱՀԱՅ ԲՈԼՈՐ ՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ**

**Հովանաւորութեամբ**

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց

**Նախագահութեամբ**

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԳԷՈՐԳ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ**

**Մրցաշարքին բաժակը նուիրած են**

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՊԵՐՃ ԹԷՐԶԵԱՆ**

**Մրցաշարքին մետայլները նուիրած են**

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՐԴ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ**

**ՅԱՅՏԱԳԻՐ**

**Ուրբաթ 21 Յուլիս 2000**

**Ա. ՄՐՑՈՒՄ ԵՐԵԿՈՅԵԱՆ Կ.Ե. ԺԱՄԸ 8.30-ԻՆ**

**Հ.Մ.Ը.Մ.- ԱՐԱՐԱՏ X Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ ԳԱՀԻՐԷ**

**Բ. ՄՐՑՈՒՄ ԵՐԵԿՈՅԵԱՆ Կ.Ե. ԺԱՄԸ 9.30-ԻՆ**

**Հ.Մ.ԸՄ.-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ X ՍԷՆԹ ԹԷՐԷԶ**

**Շաբաթ 22 Յուլիս 2000 կ.ե. ժամը 9-ին**

**Հ.Մ.Ը.Մ.-ԿԱՄՔ X ՈՒՐԲԱԹ ՕՐՈՒԱՆ Ա. ՄՐՑՈՒՄԻ ՅԱՂԹԱԿԱՆ**

**Կիրակի 23 Յուլիս 2000 կ.ե. ժամը 9-ին**

**ԱՒԱՐՏԱԿԱՆ ՄՐՑՈՒՄ**

**ՈՒՐԲԱԹ ՕՐՈՒԱՆ Բ. ՄՐՑՈՒՄԻ ՅԱՂԹԱԿԱՆ X ՇԱԲԱԹ ՕՐՈՒԱՆ ՅԱՂԹԱԿԱՆ**

*Մարզասէր Հասարակութիւնը Սիրով Հրաւիրուած է*

---

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի Աղեքսանդրիոյ վարչութիւնը ներկայիս կու գայ իր խորին շնորհակալութիւնը յայտնելու, եգիպտահայ պասքէթպոլի լաւագոյն մարզիկներէն եւ մարզական շարժումին միշտ սատար հանդիսացող՝ Պր. ՀԱՅԿ ԱՍԱՏՈՒՐԵԱՆԻ, որ պասքէթպոլի մարզադաշտիս լուսաւորման համար բարեհաճօրէն նուիրեց արդիական լուսարձակներու լրիւ սարք մը:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

---

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՋԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ 1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Ջագըր Հիմնադրամը 2000-2001 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանաւոր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով երկու լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը եւ վերջին տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները, կրնան իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան:

Սաթենիկ Ճ. Ջագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանի ա. եւ բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր եւ վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է, Աղեքսանդրիոյ համար 13 Օգոստոս 2000 եւ Գահիրէի համար 15 Օգոստոս 2000:

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Այն անդամները, որոնք կը փափաքին մաս կազմել վարչական նոր կազմին՝(4 անդամի ընտրութիւն), պարտին Վարչութեանս ներկայացնել իրենց թեկնածութիւնը գրաւոր, Բշ. 17 Յուլիսէն մինչեւ Գշ. 25 Յուլիս 2000, դիմելով Միութեանս կեդրոնատեղին, 15 Էմատ Էլ Տին փողոց, Գահիրէ, առաւօտեան ժամը 9.30-էն յ.մ. ժամը 3, բացի Կիրակի եւ տօնական օրերէն:*

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

---

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail:tchahagir@journalist.com.

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1430 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ՅՈՒԼԻՍ 2000    ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 50 Եգ. Դհկ.    عدد رقم ١٤٣٠ — الخميس ٢٧ يوليو ٢٠٠٠.


ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵԳԻՊՏՈՍԻ ԱՐԱԲԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԸ ՆՇՈՒԵՑԱՒ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Ուրբաթ 21 Յուլիսին, Եգիպտոսի Հանրապետութեան ազգային տօնը նշուեցաւ Երեւանի մէջ, (տօն յեղափոխութեան 1952) Կառավարութեան Ընդունելութիւններու Տան մէջ, որ կազմակերպած էր Հայաստանի մօտ Եգիպտոսի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան՝ Պաքրի Ռուշտի Էլ-Ամարը: Ան անդրադառնալով հայ - եգիպտական դարաւոր բարեկամութեանը, յայտնեց թէ երկու երկիրներուն միջեւ այսօր կան մշակութային, տնտեսական համագործակցութիւն, միաժամանակ չեշտելով գործարար կապերու ամրապնդման անհրաժեշտութիւնը: Դեսպանը նաեւ յիշեց Հայաստանի ամենամեայ յաջող մասնակցութիւնը Գահիրէի միջազգային ցուցահանդէսին:

ՀՀ Ազգային Ժողովի փոխ-խօսնակ Գագիկ Ասլանեան եւս խօսք առնելով, շնորհաւորեց Եգիպտոսի ազգային 48-րդ տարեդարձը, մաղթելով անոր ժողովուրդին խաղաղութիւն եւ բարգաւաճում՝ ի շահ նաեւ երկու երկիրներու բարեկամութեան ամրապնդման:

Յայտնենք թէ ընդունելութեանը ներկայ էին ՀՀ նախարարներ, Հայաստանի մէջ հաւատարմագրուած դիւանագէտներ: Ապա տօնական միջոցառումը շարունակուեցաւ եգիպտական ազգային ուտելիքներով, առատ սեղաններու շուրջ:

## ԵԳԻՊՏԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՐՈՒԵՍՏԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

22 Յուլիսին Երեւանի Ազգային Պատկերասրահին մէջ բացումը կատարուեցաւ Եգիպտացի ժամանակակից նկարիչներու ստեղծագործութիւններու ցուցահանդէսին՝ նուիրուած Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան անկախութեան 48րդ տարեդարձին: 18 նկարիչներ հանդէս եկան 50 գեղանկարչական աշխատանքներով: Անոնք իրենց ինքնատիպ աշխարհահայեացքով, գունային բազմազանութեամբ եւ նրբագոյն գիծերու միահիւս ներդաշնակութեամբ, վկայութիւններ կը բերէին Եգիպտոսի բնութեան, կենցաղի, մարդոց մասին: Նկարներուն վրայ զգալի էր եւրոպական ժամանակակից արուեստի ազդեցութիւնը:

Ցուցահանդէսի բացման ներկայ գտնուեցան Հայաստանի Մշակոյթի Նախարար՝ Ռոլան Շառոյեան, Հայաստանի մէջ Եգիպտոսի արտակարգ եւ լիազօր դեսպան՝ Պաքրի Ռոշտի Էլ-Ամարի, դեսպաններ, արուեստագէտներ: Պր. Շառոյեան իր խօսքին մէջ շնորհաւորեց Եգիպտոսի ժողովուրդը անկախութեան առթիւ եւ մաղթեց նորանոր նուաճումներ: Խօսելով հայ-եգիպտական պատմամշակութային կապերու մասին, ան նշեց որ այս ցուցահանդէսը նոր քայլ մըն է հայ եգիպտական յարաբերութիւններ ամրապնդելու ուղղութեամբ: Իսկ ազգային պատկերասրահի տնօրէն՝ Շահէն Խաչատրեան աւելցուց որ, այսօր ալ բազմաթիւ արուեստագէտներ կ'ապրին եւ կը ստեղծագործեն Եգիպտոսի մէջ: Վերջաւորութեան, Պր. Խաչատրեան դեսպանի տիկնոջ նուիրեց հայկական արուեստի պատմութեան պատկերազարդ գիրք մը:

## ՎԻԵՆՆԱԿԱՆ ԵՒ ՎԵՆԵՏԻԿԵԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԻՐԱՐՈՒ ՄԻԱՑԱՆ

### Միացեալ Միաբանութեան Կեդրոնը Կը Մնայ Վենետիկի Ս. Ղազար Մայրավանքը

*Վենետիկեան ու Մխիթարեան զոյգ Միաբանութիւնները որոշեցին միանալ: Այս պատմական որոշումին մասին հրատարակուած պաշտօնական հաղորդագրութիւնը կը հրատարակենք ստորեւ:*

Մխիթարեան Միաբանութիւնը Վենետիկի ու Վիեննայի իր պատմական զոյգ ճիւղաւորումներով յետ երկարամեայ բանակցութիւններու եւ քննարկումներու, Վենետիկի Ս. Ղազար մայրավանքին մէջ 10-21 Յուլիս 2000 թուականներուն կազմակերպեց միացեալ ընդհանուր արտակարգ ժողով մը, մասնակցութեամբ երկու հաստատութիւններու բոլոր միաբաններուն: Սոյն ժողովին միաբան վարդապետները միաձայնաբար որոշեցին անմիջական ու ամբողջական միութիւն մը իրականացնել, ստեղծելով Մխիթարեան միացեալ մէկ միաբանութիւն, մէկ կեդրոնական վարչութեամբ:

Պատմական այս քայլը կը զուգադիպի Մխիթար Վարդապետ Սեբաստացիի կողմէ հիմնուած Միաբանութեան 300ամեակին, Քրիստոնէութեան 2000ամեայ յոբելեանին, ինչպէս նաեւ Հայաստանի մէջ Քրիստոնէական կրօնքի պաշտօնական ընդունման 1700ամեակին:

Ընդհանուր ժողովի Յուլիս 19-ի նիստի ընթացքին Հոգշ. Հայր Եղիա Վրդ. Քիլաղպեան ընտրուեցաւ որպէս 15րդ Ընդհանուր Աբբահայր Մխիթարեան Միացեալ Միաբանութեան:

Ներկայ հաղորդագրութեամբ կը յայտարարենք թէ այսուհետեւ գոյութիւն ունի մէկ Մխիթարեան Միաբանութիւն, որուն գլխաւոր կեդրոնատեղին է Վենետիկի Սուրբ Ղազարի Մայրավանքը, իսկ Վիեննայի վանքը կը դառնայ իբրեւ առաջին գլխաւոր մենաստան: Վիեննայի այս Մենաստանը իր կարգին պիտի ունենայ Տեղական Աբբահայր տիտղոսը կրող Վանահայր մը:

Զոյգ Միաբանութիւններու բոլոր առաքելավայրերն ու կեդրոնները պիտի կառավարուին նորընտիր Ընդհանրական Աբբահօր կողմէ եւ իր Միացեալ Վարչական Խորհուրդէն:

**ԴԻՒԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ**

*23 Յուլիս 2000*

ՎԵՆԵՏԻԿ, ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

*(ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՀԱԿԻՐՃ ՊԱՏՄԱԿԱՆԸ՝ ՏԵՍ ԷՋ 2)*

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ՍՏՈՐԱԳՐԵՑ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՀԵՏ

Անցեալ Կիրակի, Ուաշինկթըն ժամանեց Հայաստանի Պաշտպանութեան Նախարար Սերժ Սարգսեան եւ յաջորդ օրն իսկ տեսակցութիւն մը ունեցաւ իր ամերիկացի պաշտօնակից՝ Ուիլիըմ Քոհէնի հետ, աւարտին համաձայնագիր մը ստորագրելով զանգուածային բնաջնջումի զէնքերու տարածման կապակցութեամբ: Լուրը Ինթէրնէթի վրայ հաղորդուեցաւ Փենթակոնի կողմէ: Փենթակոնի մէջ կայացած հանդիպումէն ետք, Քոհէն ընդգծեց ստորագրուած փաստաթուղթին նշանակութիւնը, որու երումով, Հայաստան պիտի կարենայ բարելաւել իր մաքսային ու սահմանային հսկողութիւնը, զսպելու համար զանգուածային զէնքերու ապօրինի շրջանառութիւնը: Աւելէ զատ, շարունակեց ան, համաձայնագիրը պիտի ամրացնէ Հայաստանի եւ Ամերիկայի գործակցութիւնը: Այս ծիրին մէջ, Ամերիկա 300,000 տոլար արժողութեամբ սարքեր եւ համապատասխան մարզում պիտի տրամադրէ Հայաստանի: Այս սարքերու շնորհիւ կարելի պիտի ըլլայ երեւան հանել հիւլէական, քիմիական եւ կենսաբանական զէնքերու ապօրինի շրջանառութիւնը: Քոհէն ըսաւ նաեւ, որ Ամերիկա նախապէս խոստացած էր օգնել Հայաստանի՝ ականազերծման սարքերու եւ համապատասխան մարզումի առումով, որպէսզի Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան գօտին կարելի ըլլայ ականազերծել:

Իր կարգին, Սերժ Սարգսեան ըսաւ, որ Քոհէնի հետ քննած է երկկողմանի հետաքրքրութիւն ներկայացնող հարցեր, աւելցնելով, որ Արցախի հակամարտութեան լուծումէն ետք, Հայաստան-Ամերիկա զինուորական գործակցութիւնը պիտի վերսկսի, միաժամանակ յոյս յայտնելով, որ հակամարտութիւնը շուտով պիտի լուծուի:

Պատասխանելով լրագրողներու հարցումներուն, Քոհէն յստակացուց, թէ ստորագրուած համաձայնագիրը չ'ենթադրեր թէ ամերիկեան ուժեր պիտի տեղադրուին Հայաստանի մէջ, այլ միայն պիտի տրամադրուին սարքաւորումներ եւ պիտի կատարուի համապատասխան մարզում: Ասիկա պիտի տրամադրուի Պաշտպանութեան Նախարարութեան եւ Էֆ. Պի. Այ. ի քաղաքային մասնագէտներու միջոցով:

Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութիւնը հաղորդեց, թէ նախարար Սարգսեան հանդիպումներ պիտի ունենայ նաեւ Արտաքին Նախարարութեան բարձրաստիճան պաշտօնատարներու հետ, քննելով Արցախի, ինչպէս նաեւ շրջանային ապահովութեան եւ կայունութեան վերաբերող հարցեր:

ԵՐԵՒԱՆ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐԷՆ ՉՈՐՍ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ ՄԵԿՆԵՑԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

*Տեղեկացանք թէ Շաբաթ 15 Յուլիսի երեկոյեան, եգիպտահայ ազգային վարժարաններու հայագիտական նիւթերու ուսուցիչներէն, Գալուստեան վրժ.էն՝ Տիկին Շահանդուխտ (Շաքէ) Արթինեան, Նուպարեան վրժ.էն՝ Տիկին Ալիս Զաքարեան եւ Աղեքսանդրիոյ Պօղոսեան վարժարանէն՝ Օր. Թամար Ազնաւուրեան եւ Սուրիահայ Պր. Աւետիս Տիգյան Հայաստան մեկնած են, Երեւանի մէջ հետեւելու Սփիւռքի հայկական վարժարաններու ուսուցիչներու վերապատրաստման միամսեայ դասընթացքներուն:*

*Բացման արարողութիւնը տեղի ունեցած է Երկուշաբթի 17 Յուլիսի առաւօտեան, որուն ներկայ գտնուած են կրթութեան եւ գիտութեան նախարար Էդուարդ Ղազարեան եւ Սահմանադրական դատարանի նախագահ, «Հայաստան» հիմնադրամի փոխնախագահ Գագիկ Յարութիւնեան:*

*Յայտնենք թէ, տասը տարիներու ընդմիջումէ ետք, վերսկսած այս դասընթացքներուն կը մասնակցին աշխարհի բոլոր երկիրներէն՝ նախակրթարանի 25 ուսուցիչ - ուսուցչուհիներ: Անոնք 12 նիւթերու դասընթացքներէն անկախ, պիտի ծանօթանան նաեւ հայրենիքի պատմամշակութային յուշարձաններուն:*

*Դասընթացքներու կազմակերպման նիւթական աջակցութիւն տրամադրած է «Հայաստան» Հիմնադրամը, իսկ ծրագիրը պատրաստած է Երեւանի Մանկավարժական համալսարանի «Սփիւռք» գիտա - ուսումնական կեդրոնի անձնակազմը:*

*Օգոստոս 1-էն սկսեալ, պիտի սկսի նաեւ միջնակարգի եւ երկրորդական դպրոցներու ուսուցիչներու վերապատրաստման միամսեայ դասընթացքները:*

## ԳԱՐԵԳԻՆ Բ. ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏԻ ՀԵՐԹԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵՐԵՒԱՆԻ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻ

### Հոգեհանգստեան Պաշտօն Ի Յիշատակ Ալեք Եւ Մարի Մանուկեաններու

21 Յուլիսին, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետը, ընկերակցութեամբ Արարատեան Հայրապետական թեմի Առաջնորդական Փոխանորդ՝ Գերշ. Տ. Նաւասարդ Եպս. Կճոյեանի եւ Արժանթինի թեմի Առաջնորդ՝ Գերշ. Տ. Գիսակ Արք. Մուրատեանի, հերթական այցելութիւն մը տուաւ Երեւանի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի, որուն կառուցումը կը շարունակուի:

Այս այցելութեան ընթացքին Վեհափառ Հայրապետին հետ միասին եկեղեցի եկած էին նաեւ Հայաստանի Գիտութիւններու Ազգային Ակադեմիոյ (ԳԱԱ) Նախագահ Ֆատէյ Սարգսեան եւ Ակադեմիոյ նախագահութեան անդամները, որոնց նպատակն էր ծանօթանալ շինութեան աշխատանքին եւ իրենց զօրակցութիւնը յայտնել հայ եկեղեցւոյ եւ ազգային այս մեծ կառոյցը իրականացնող վարպետներուն:

Այցելութեան ընթացքին, կիսաւարտ եկեղեցիին մէջ, Գարեգին Բ. Հայրապետի հանդիսապետութեամբ կատարուեցաւ Հոգեհանգստեան Պաշտօն ի յիշատակ եկեղեցւոյ բարերարներ՝ Ալեք եւ Մարի Մանուկեաններու: Ազգային Հերոս տիտղոսի արժանացած, հայ եկեղեցւոյ նուիրեալ բարերար՝ Ալեք Մանուկեան, որու մահուան 4րդ տարելիցը կը նշուի այս օրերուն, Երեւանի Մայր Տաճարի հիմնական բարերարն է: Ալեք Մանուկեանի մահէն ետք, անոր բարերարին բարեպաշտ զաւակները՝ Լուիզ-Սիմոն եւ Ռիչըրտ Մանուկեանները, իրականացնելով իրենց ծնողքին խոստումը, երեք միլիոն տոլար նուիրաբերեցին եկեղեցւոյ շինութեան: Գարեգին Բ. Կաթողիկոսը երախտագիտութեամբ եւ օրհնութեամբ նշեց որ վերջերս Ալեք Մանուկեանի զաւակները երկու միլիոն տոլար եւս նուիրեցին այս նպատակին:

Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Եկեղեցին, որ իր չափերով աննախադէպ է Հայ եկեղեցաշինութեան պատմութեան մէջ, կը կառուցուի Քրիստոնէութեան 1700ամեակի առիթով:

## ՄԻՆՉ ՆԱԽԱԳԱՀԸ ՄԵԿՆԵՑԱՒ ՀԱՆԳՍՏԱՆԱԼՈՒ, ՑՈՒՑԱՐԱՐ ՄԱՅՐԵՐ ԾԵԾԻ ԵՆԹԱՐԿՈՒԵՑԱՆ ՊԱԼԱՏԻՆ ԱՌՋԵՒ

Յուլիս 24-ին, մինչ նախագահ Ռոպերթ Քոչարեան մեկնած է տասնօրեայ արձակուրդի, որ պիտի անցրնէ Հայաստանի մէջ, նախագահական պալատին առջեւ մի քանի օրէ ի վեր ցոյց կատարող մայրեր ծեծի ու խոշտանգումի ենթարկուած են:

Արդարեւ՝ «Զինուորի Մայր» հասարակական կազմակերպութիւնը, Երիտասարդ Իրաւաբաններու Հայկական ասոցիացիան եւ Սախարովի անուան մարդու իրաւունքներու պաշտպանութեան հիմնադրամը, Յուլիս 25-ին համատեղ յայտարարութիւն տարածեցին խաղաղ պայմաններու տակ բանակէն ներս զոհուածներու մայրերու նրկատմամբ իրաւապահ մարմիններու կիրառած բռնութեան կապակցութեամբ:

«Յուլիսի 24-ին Երեւանում, ՀՀ Նախագահի նստավայրի առջեւ տեղի է ունեցել հայ իրականութեանը խորթ մի երեւոյթ. խաղաղ պայմաններում զոհուած զինուորների մայրերին, որոնք եկել են ներկայացնելու իրենց պահանջները, ոստիկանների մի մեծ խումբ բռնութեան է ենթարկել», ըսուած է յայտարարութեան մէջ:

Յայտարարութեան հեղինակները կը յայտնեն, որ եթէ

↳ 4

**ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ**

# ՄԵԾ ՇՈՒՔՈՎ ՆՇՈՒԵՑԱՒ ՔՍԱՆ ԿԱԽԱՂԱՆՆԵՐՈՒՆ 85-ԱՄԵԱԿԸ

## «ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԱՄԵՆԱԴԺՆԴԱԿ ՊԱՀԵՐՈՒՆ ՉԷ ՅՈՒՍԱԼՔՈՒԱԾ»

## «ՄԵՆՔ ԿԸ ՀԱՒԱՏԱՆՔ ՀԱՅՈՒ ԱՆԿՈՏՐՈՒՄ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ, ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԶՈՀՈՂՈՒԹԵԱՆ ՈԳԻԻՆ»

## ՅԱՅՏԱՐԱՐԵՑ ԸՆԿԵՐ ՎԱՀՐԻՃ ՃԵՐԷՃԵԱՆ

*Հնչակեան 20 կախաղաններու 85- ամեակի յուշահանդէսը այս տարի եւս տեղի ունեցաւ մեծ շուքով, Կիրակի 9 Յուլիս, 2000-ի, երեկոյեան ժամը 7:00-ին, Փասատինայի Աղաճանեան սրահէն ներս համախմբուած 800 հայորդիներու ներկայութեան:*

*Որպէս գլխաւոր բանախօս, Պէյրութէն, հրաւիրուած էր Ընկ. Վահրիճ Ճերէճեան, Ս.Դ.Հ.Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան նախագահ, որ կուռ ճառով մը վեր առաւ 20 կախաղաններու մարտիրոսացման հետ կապուած բազմաթիւ հարցեր, խոր վերլուծման ենթարկելով այդ երեւոյթի քաղաքական, ազգային-հասարակական եւ գաղափարական տարողութիւնները, յատկապէս անոնց պատգամին անդրադարձը այսօրուայ մեր սփիւռքեան եւ Հայաստանեան իրականութեան:*



*Ընկ. Վահրիճ Ճէրէճեան ելոյթի ընթացքին*

*Սրահէն ներս յատկապէս կը տեսնուէին Հայաստանի գլխաւոր հիւպատոս Արմէն Մելքոնեան, Կուսակցական ղեկավար ընկերներ, Հայ Յեղափոխական Դաշնակցութեան ներկայացուցիչներ, գաղութային մտաւորական եւ կրթական շրջանակէն անձնաւորութիւններ եւ համակիրներ:*

*Օրուայ հանդիսավար Տիկ. Սեդա Խոտանեան հրաւիրեց ներկաները վայրկեան մը յոտնկայս յարգելու քսան նահատակներու յիշատակը: Ապա երգուեցան ամերիկեան եւ հայկական քայլերգները համակրելի երգիչ Արամ Անասեանի կողմէ:*

*Բեմ հրաւիրուեցաւ նոր լոյս տեսած «ANFILADA» կամ «Անմահութեան Սենեկաշար Քսան Կախաղանների» գիրքի հեղինակը՝ Գարուշ Հարեանց, տաղանդաւոր բանաստեղծ, թատերագիր եւ բեմադրիչ: Ան յուզիչ եւ առինքնող ընթերցում մը րրաւ իր ստեղծագործութենէն, յատկապէս նուիրուած 20 կախաղաններէն իւրաքանչիւրին: Համակրելի բանաստեղծին ընթերցումը ընդունուեցաւ երկար եւ խանդավառ ծափահարութիւններով:*

*Ս.Դ.Հ.Կ. Վարիչ Մարմնի անունով ելոյթ ունեցաւ Ընկ. Թովմաս Եթերեան: Ան յատկապէս խօսեցաւ Հայաստանի վերջին 10 տարիներու ձեռքբերումներու եւ բացթողումներու մասին:*

*Համակրելի ասմունքող Թագուհի Արզումանեան, որ Քսաններէն Թովմաս Թովմասեանի եղբօր թոռնիկն է ապրումով եւ ներշնչումով ասմունքեց Պարոյր Սեւակի «Անլռելի Զանգակատունէն» հատուած մը, «Ղօղանջ Եղեռնական», Ցեղասպանութեան նուիրուած:*

*Խանդավառ ծափերու տակ բեմ բարձրացաւ, օրուայ գլխաւոր բանախօս Ս.Դ.Հ.Կ. Կեդրոնական Վարչութեան նախագահ Ընկ. Վահրիճ Ճէրէճեան՝ կուսակցութեան հեղինակաւոր խօսքը փոխանցելու:*

*Ընկերոջ ելոյթը, շուրջ կէս ժամ տեւողութեամբ, բազմաթիւ անգամներ ընդմիջուեցաւ խանդավառ ծափահարութիւններով: Սոյն ելոյթը ունէր երկու բաժիններ, որոնք սերտօրէն կապուած էին իրարու: Առաջին մասը կը վերաբերէր 20-ներու ճակատագրին անոր տուն տուող պատճառներուն, որ կը ծնէին կուսակցութեան 7-րդ, Քէօսթէնճէի համագումարի ընթացքին առնուած յեղափոխական որոշումներէն, ինչպէս նաեւ այն պատգամը որ 20-ները հաւաքաբար մեզի կը փոխանցէին, պատգամ որ յագեցուած էր հայրենասիրութեամբ, քաղաքական գիտակցութեամբ եւ ազգային ծառայութեան գերագոյն զոհաբերութեամբ:*

*Յարգելի բանախօսը ապա անդրադարձաւ Հայաստանի ներկայ իրականութեան, իր տարբեր երեսներով, դրական եւ ժխտական: 20-ներու երազած ազատ, անկախ Հայաստանը եթէ այսօր իրականութիւն է, որուն համար Ս.Դ.Հ.Կ.-ը աւելի քան հարիւր տարիներու պայքար մը մղած է, եւ ծովերով արիւն թափած, սակայն այս Հայաստանը խոցելի է ներկայիս իր մտահոգիչ եւ յուրջ թերութիւններով, որոնց շարքին յատկապէս Հայաստանի ժողովուրդի սոցիալ, տնտեսական անփառունակ վիճակը, աշխատանքային դժուարութիւնները, արտագաղթի երեւոյթը, թալանի, կաշառակերութեան, քաղաքական սպանութեանց, յանցագործներու նկատմամբ անբաւարար հետապնդման եւ պատժամիջոցներու չգոյութեան, եւ նման երեւոյթներու մասին, որոնք խոցելի կը դարձնեն պետութիւնն ու անոր իշխանութիւնները, թէ սեփական ժողովուրդի եւ թէ միջազգային հանրային կարծիքի առջեւ:*

*Ս.Դ.Հ.Կ.-ի թիւ մէկ դէմքը յատկապէս անդրադարձաւ այն կարեւոր երեւոյթին վրայ, որ Սփիւռք - Հայաստան փոխ - յարաբերութիւնները կը հանդիսանան, եւ որոնք այսօր, Հոկտ. 27-ի ոճրային սպանութիւններէն ետք, կարծես յման անշարժացած են: Մեկնելով կուսակցութեան գաղափարական կեցուածքներէն, յարգելի բանախօսը շեշտը դրաւ Հայաստանէն ներս ընկերային արդարութեան ստեղծման, իրաւադատական առողջ համակարգի մը հաստատման, ժողովուրդի կենսամակարդակի բարձրացման, տնտեսական կացութեան աստիճանական բարելաւման, արտագաղթի երեւոյթի կասեցման եւ նման կենսական հարցերու շուրջ Սփիւռքի պատասխանատուներու հետ - կուսակցական, ֆինանսական, բարեսիրական, մտաւորական եւ այլն, անկեղծ գործակցութեան:*

*Իր ելոյթի աւարտին Ընկ. Ճէրէճեան շեշտեց.-«Հայ ժողովուրդը տէր պիտի կանգնի արիւնով նուիրագործուած անկախութեան, նահատակներու արեամբ սրբագործուած իր հայրենիքին, Ղարաբաղին, հայուն հողին: Թող բոլոր անարժան իշխանաւորներն ու իրենց մանկլաւիկները յաւ գիտնան որ հայ վրիժառու ժողովուրդը չի ներեր...:*

*«Սփիւռքը պէտք է շարժի: Սփիւռքի մէջ պատասխանատու դեր վերցուցած համայնքապետեր, գործակցաբար պէտք է մշակեն ծրագիր եւ երթան Հայաստան ու Հայաստանի իշխանութիւններուն հետ գործակցաբար փնտռեն միջոցներ վերականգնելու տնտեսութիւնը, զօրացնելու համար երկրին ապահովութիւնը, բարելաւելու համար ժողովուրդին կենսամակարդակը: Անհրաժեշտ է աշխատցնել գործարանները եւ գործ հայթայթել անգործ ժողովուրդին որպէսզի չի մտածէ արտագաղթել:*

4

# ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ



*Ուրախութեամբ կը տեղեկացընենք, որ համայնքիս սիրուած երիտասարդներէն՝ ԿԱՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ անցեալ կրթաշրջանին Աչէր Ռամատանի «Բարձր Թեքնոլոժի» համալսարանը վերջացնելով, ստացած է B. Sc. «Electric Engineering - Communication» վկայականը «Շատ լաւ» յիշատակութեամբ:*

*Յիշենք թէ սիրելի Կարօն իր հայեցի ուսումը ստացած է Նուպարեան Ազգ. վարժարանին մէջ, ուրկէ երկրորդական բաժինը աւարտելով, շրջանաւարտ եղած է փայլուն յաջողութեամբ 1994-ին: Ան նաեւ ծանօթ պասքէթպոլիստ է եւ իր աւարտած համալսարանի պասքէթպոլի խումբին խմբապետն էր:*

*Այժմ Կարօն կը զբաղուի իր հօրը գործով՝ յուսանկարչութեամբ, առաւել իր նախասիրութիւնը դարձած՝ տեսերիզի նկարահանութեան արուեստով, բոլորին գնահատանքին արժանանալով:*

*Սրտանց կը շնորհաւորենք զինք եւ իր ծնողքը արուեստագէտ Վահէ Վարժապետեանի եւ մօր՝ Նուպարեան վարժարանի տնօրէնուհի Տոքթ. Հերմինէի, մաղթելով Պր. Կարօ Վարժապետեանին յառաջընթաց վերելք եւ նորանոր յաջողութիւններ:*

**ՈՒՐՈՒԿՈՒԷՅ**

# «ՌԱՏԻՕ ԱՐՄԵՆԻԱ»Ի 65-ԱՄԵԱԿԻ ՆՇՈՒՄԸ




*65-ամեակին նուիրուած դրոշմաթուղթը Ընկեր Յարութիւն Ռուբէնեանի նկարով*

Ուրուկուէյի մայրաքաղաք Մոնթեվիտէոյի մէջ այս օրերուն տեղի կ'ունենան «Ռատիօ Արմենիա»ի հիմնադրման 65-ամեակին նուիրուած շարք մը հանդիսութիւններ: Այս յիշարժան տարեդարձի առթիւ Ուրուկուէյի կառավարութիւնը հրապարակ հանած է յատուկ դրոշմաթուղթ, «Ռատիօ Արմենիա»ի հիմնադիր ողբ. ընկեր Յարութիւն Ռուբէնեանի նկարով: Հայաստանի նախագահ Ռոպերթ Քոչարեան եւ ԼՂՀ նախագահ Արկադի Ղուկասեան ուղարկած են շնորհաւորական նամակներ:

Յունիս 16-ին կայացած 65-ամեակի հանդիսութեան ընթացքին «Ռատիօ Արմենիա»ի ազգանուէր գործունէութեան մասին գնահատանքի խօսք րսած են Ուրուկուէյի խորհրդարանի պատգամաւորներ, կառավարութեան անդամներ եւ համայնքի կազմակերպութիւններու ներկայացուցիչներ, շեշտելով անոր հիմնադիր Յարութիւն Ռուբէնեանի աշխատանքը՝ ի նպաստ Հայ-ուրուկուէյական յարաբերութիւններու զարգացման ու բարգաւաճման:

# ԴՊՐՈՑԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

# ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, որ Վարժարանիս 1999-2000 ուսումնական տարեշրջանի Բ. եւ Գ. Երկրորդականի Պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

**Բ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ**

| (ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ) | 205-էն | Առ հարիւր |
|---|---|---|
| Անի Օհաննէսեան | 201.5 | 98.2 |
| Ռուբինա Այանեան | 201.5 | 98.2 |
| Գեղամ Կարսեան | 185.0 | 90.2 |
| Պօղոս Անանեան | 175.0 | 85.3 |
| Արթօ Գալըչեան | 160.0 | 78.0 |
| | 175-էն | Առ հարիւր |
| Արփինէ Շապոյեան | 172.0 | 98.2 (Ձերծ արաբերէն նիւթերէ) |

**Գ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ**

| (ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ) | 410-էն | Առ հարիւր | Առ հարիւր(*) |
|---|---|---|---|
| Լորա Գասապեան | 399.5 | 97.4 | 98.4 |
| Սթիվ Սիմոնեան | 398.0 | 97.0 | 98.0 |
| Ճեսիքա Երամեան | 357.5 | 87.1 | 87.9 |
| Ալէն Էմիրզեան | 355.5 | 86.7 | 87.7 |
| Ալիս Յակոբեան | 353.5 | 86.2 | 87.2 |
| Ռիթա Շահմիրեան | 351.0 | 85.6 | 86.3 |
| Թալին Յակոբեան | 332.5 | 81.0 | 82.1 |

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

*(*) Անգլերէն լեզուի (High level) նիշերը աւելցնելէ վերջ: «Զ»*

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք՝ յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն Վարժարանիս 1999 - 2000 ուսումնական տարեշրջանի Գ. Երկրորդականի (Սանաուէյա) պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով.

**ԳՐԱԿԱՆ ՃԻՒՂ**

| | | | |
|---|---|---|---|
| Անժէլ Ուանիս Գազանճեան | 410-էն | 388.5 | 94.7 % |

**ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ**

| | | | |
|---|---|---|---|
| Աբրահամ Վարուժան Թահթապրունեան | 410-էն | 319.5 | 77.9 % |

Տնօրէնութիւնս եւ ուսուցչաց կազմը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները յառաջիկայ նորանոր նուաճումներու մաղթանքներով:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

# ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն որ 1999-2000 ուսումնական տարեշրջանին վարժարանիս երկրորդական բաժնի աշակերտները պետական քննութիւններուն արձանագրած են հետեւեալ արդիւնքները:

| ԳՐԱԿԱՆ ՃԻՒՂ | Առ հարիւր |
|---|---|
| Անուշ Արթին Միսքճեան | 92 |
| **ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ** | |
| Ջաւէն Գէորգ Կասեան | 80 |

Հոգաբարձութիւնն ու Տնօրէնութիւնը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները, իրենց մաղթելով յաջողութիւններ:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

*Խմբագրութիւնս եւս կը շնորհաւորէ ազգային վարժարաններու տնօրէնութիւնները, ուսուցչական կազմերն ու յաջողած աշակերտները, այս փայլուն արդիւնքներուն համար, մաղթելով նորանոր յաջողութիւններ:*

# ՀԱԿԻՐՃ ՊԱՏՄԱԿԱՆ՝ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

Մեր ընթերցողներուն ներկայացնենք հակիրճ պատմականը Մխիթարեան Միաբանութեան, որուն հիմնադիրն էր Մխիթար Սեբաստացի Վարդապետ, ծնած 1676ին, Սեբաստիոյ մէջ: Ան փոքր տարիքէն Ս. Նշան վանքին մէջ ուսած եւ սարկաւագ ձեռնադրուած էր Առաջնորդ՝ Անանիա Եպիսկոպոսի ձեռամբ, 1691ին: Իր մէջ ուսանելու բուռն փափաքէն թելադրուած, գացած էր Էջմիածին, Սեւանայ վանք, Երուսաղէմ եւ այլուր, ուսման փափաքը յագեցնելու համար: Ապա վերադարձած էր Սեբաստիա եւ հոն 1696ի Ապրիլ ամսուան մէջ կուսակրօն Աբեղայ ձեռնադրուած էր Կեսարացի Սահակ Եպիսկոպոսի կողմէ: Երբ 22 տարեկան էր, որպէս Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ ուսումնատենչ կրօնաւոր, եկած էր Պոլիս եւ Հայոց Մելքիսեդեկ Պատրիարքի կողմէ մեր Ղալաթիոյ միջավայրին մէջ յարաբերութիւն հաստատած էր Լատին կրօնաւորներու հետ, միշտ ուսման փափաքով եւ ժամանակ մը վերջ ունեցած էր նաեւ աշակերտներու փոքր խումբ մը: Այնուհետեւ սկսած էր ուսման եւ կրթական բոյն մը փնտռել: Զանազան քաղաքներ երթալէ վերջ ի վերջոյ հասած էր Վենետիկ: Իրեն տրուած էր կղզի մը, Ս. Ղազար անունով: Ան հոն 1717ին հաստատեց իր Միաբանութիւնը, այնուհետեւ մտնելով Հռովմի եկեղեցիի գերիշխանութեան տակ: Ինք ու իր Միաբանութիւնը դժուար պայմաններու մէջ, բայց մեղուաջան աշխատանքներ տարին այդ կղզիին մէջ հայ լեզուին, գրականութեան, պատմութեան, տպագրութեան, թարգմանութեան եւ այլ բարի գործերուն համար: Մխիթար Սեբաստացի Աբբահայր 74 տարեկանին վախճանեցաւ 1749ին Վենետիկի մէջ, անձնամատոյց եւ անհամեմատ արդիւնալից կեանքէ մը վերջ եւ թաղուեցաւ Ս. Ղազար կղզիի եկեղեցւոյ մէջ:

Իրեն յաջորդ ընտրուեցաւ Ստեփաննոս Վրդ. Մելքոնեան:

1772 թուականին, Մխիթարեան Միաբանութիւնը ներքին անհամաձայնութեան մը պատճառաւ երկուքի բաժնուեցաւ: Մէկ մասը՝ Ս. Ղազար մնաց, միւս մասն ալ նախ գնաց Թրիէսթէ, ապա հոնկէ անցաւ Աւստրիոյ Վիեննա մայրաքաղաքը եւ հոն կազմուեցաւ Վիեննական Մխիթարեան Միաբանութիւնը: Վիեննական եւ Վենետիկեան Միաբանութիւնները անմոռանալի ծառայութիւններ ունեցան հայ գիրին, գրականութեան եւ մշակոյթին համար: Տրուած պայմաններու տակ, մաղթելի է որ այս վերամիացումով Մխիթարեան Միաբանութիւնը աւելի զօրացած, շարունակէ հաւատարիմ մնալ Սեբաստացի Մխիթար Վարդապետի ժառանգին եւ ուխտին, միշտ ծաղկեցնելով հայ լեզուն եւ մշակոյթը:

*«ՄԱՐՄԱՐԱ»*

# ԱԶԳԱՅԻՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ 60-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

## ԸՆԿ. ՎԱՀՐԻՃ ՃԷՐԷՃԵԱՆԻՆ ՇՆՈՐՀՈՒԵՑԱՒ Ս. ՍԱՀԱԿ- Ս. ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ ՇՔԱՆՇԱՆԸ

*8 Յուլիս 2000 Թուական, Շաբաթ երեկոյեան մեծարանքի տպաւորիչ ձեռնարկ մը տեղի ունեցաւ Կլէնտէյլի «Հիլթըն» հիւրանոցի սրահներէն ներս, նուիրուած Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան նախագահ Ընկ. Վահրիճ Ճէրէճեանի ազգային-հասարակական գործունէութեան 60-ամեակին:*

*Ձեռնարկը, նախաձեռնութիւնն էր Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Արեւմտեան Ամերիկայի Շրջանի Վարիչ Մարմնի եւ անոր քաղաքական թեւ՝ Հայ Ամերիկեան Խորհուրդի որ անցաւ խիստ հաճելի:*



Տէր. Արշակ Քհն. Խաչատուրեան շքանշանը կ'անցընէ Ընկ. Վ. Ճէրէճեանի կուրծքին:

*Ձեռնարկը սկսաւ կ.ե. ժամը 7:00-էն սկսեալ երբ ընտրանի հասարակութիւնը առիթը ունեցաւ ողջունելու Ընկ. Ճէրէճեանը եւ իր համեստափայլ տիկինը, որոնք յատկապէս Պէյրութէն ժամանած էին մեծարանքի սոյն հանդիսութեան ներկայ ըլլալու համար:*

*Առաջին առիթով Հայ Ամերիկեան Խորհուրդի անունով, բարի գալուստի խօսք րսաւ Ընկ. Փիթըր Տարագճեան, որուն յաջորդեց ամերիկեան եւ հայկական քայլերգներու յոտնկայս ունկնդրութիւնը, կատարողութեամբ ծանօթ երգիչ Արամ Անասեանի կողմէ, դաշնակի ընկերակցութեամբ Փրոֆ. Լեւոն Աբրահամեանի:*

*Ապա սեղանօրհնէքի արարողութիւնը կատարեց Արշակ Քհն. Խաչատուրեան, որ կը ներկայացնէր արտասահման գտնուող Արեւմտեան Ամերիկայի Թեմի Առաջնորդ Վաչէ Արք. Յովսէփեանը:*

*Օրուայ հանդիսավարութիւնը կատարեց Ընկ. Տոքթ. Յարութիւն Սաղըրեան, հայերէնով եւ անգլերէնով, տրուած ըլլալով բազմաթիւ ամերիկեան քաղաքական դէմքերու ներկայութիւնը մեծարանքի սոյն ձեռնարկին: Բարի գալուստի եւ գնահատական իր խօսքերէն ետք, հանդիսավարը ընթացք տուաւ օրուայ ճոխ յայտագրի գործադրութեան:*

*Ելոյթներ ունեցան, ու իրենց գնահատանքի խօսքը րսին Քալիֆորնիոյ խորհրդարանի անդամ Պր. Ճէք Սքաթ, Գոնկրէսմէն Ճէյմզ Ռոկընի անունով Լենա Քաժմեան, նահանգային խորհրդարանի հայազգի թեկնածու Կրէկ Միսաքեան, Մաշտոց Գոլէճի նախագահ Դոկտ. Կարպիս Տէր Եղիայեան, Լիբանանի հիւպատոս՝ Տիար Ժօն Մաաքարոն, որուն ելոյթը ունէր յատուկ զգացական եւ խորհրդանշական իմաստ:*

*Երբ յարգելի հիւպատոսը բեմ հրաւիրուեցաւ, նաեւ բեմ ելաւ երգչուհի էլիզապէթ Փէհլիվանեան, իր մօրը դաշնակի ընկերակցութեամբ երգելու Լիբանանի քայլերգը, զոր երգեցին նաեւ հիւպատոսը եւ ներկաներէն բազմաթիւ լիբանանահայեր, որոնք այս առիթով կը վերյիշէին իրենց նախկին հայրենիքը:*

*Հայաստանի գլխաւոր հիւպատոս Արմէն Մելքոնեան ունեցաւ երկլեզու ելոյթ մը վեր առնելով մեծարեալ Վահրիճ Ճէրէճեանի անհատական բարեմասնութիւններն ու ծառայութիւններ հայ ժողովուրդին:*

*Հ.Մ.Մ.-ի Կեդրոնական Վարչութեան ատենապետ Ընկ. Տիգրան Սարաֆեան դրուատեց Ընկ. Ճէրէճեանի երկարամեայ ծառայութիւնները Հ.Մ.Մ.-եան կազմակերպութեան եւ անոր յանձնեց գնահատանքի կրծքանշան մը:*

*Ս.Դ.Հ. Կուսակցութեան Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմինի ատենապետ Ընկ. Գրիգոր Խոտանեան կարճ ելոյթէ մը ետք, մեծարեալին յանձնեց գնահատանքի տախտակ մը շրջանի Հնչակեան շրջանակի անունով:*

*Յոտնկայս ունկնդրուեցաւ Մեծի Տանն Կիլիկիոյ գահակալ Արամ Ա.-ի գնահատանքի կոնդակը, որու ընթերցումը կատարեց Արժ. Տէր Վիգէն Քհնյ. Վասիլեան:*

*Ընկ. Մանուէլ Ադամեան, յատկապէս Լոնտոնէն շրջանս գտնուող, գեղեցիկ ուրուագիծ մը կատարելով, ներկայացուց Ընկ. Վահրիճ Ճէրէճեանի ազգային - հասարակական վաստակի տարբեր հանգրուաններն ու ընդհանուր բովանդակութիւնը:*

*Օրուայ հանդիսավարը, փոքր ներածականէ մը ետք, բեմ հրաւիրեց համեստափայլ Տիկ. Վերժին Ճէրէճեանը, որ իր մեծարեալ ամուսնու կողքին գտնուած էր ամբողջ տասնամեակներու ընթացին, եւ քաջաբար դիմագրաւած ազգային- հասարակական կեանքի նուիրուած բոլոր դժուարութիւնները: Յատուկ ծաղկեփունջ մը մատուցուեցաւ Տիկ. Վերժինին, որ յատկապէս յուզուած, իր շնորհակալական խօսքը արտասանեց սոյն մեծարանքի ձեռնարկի առիթով:*

*Տէր. Արշակ Քհն. Խաչատուրեան, իբրեւ ներկայացուցիչը շրջանի ծրաջան Առաջնորդ Վաչէ Արք. Յովսէփեանի, որ առաքելութեամբ մը երկրէն դուրս կը գտնուէր, կարդաց Ամենայն Հայոց Գարեգին Բ. Կաթողիկոսի սրբատառ կոնդակը, որ դարձեալ ունկնդրուեցաւ յոտնկայս: Սոյն կոնդակով Վեհափառ Հայրապետը Ընկ. Ճէրէճեանին կը շնորհէր Ս. Մեսրոպ Մաշտոցի շքանշանը:*

*Երեկոյի աւարտին, բեմ հրաւիրուեցաւ Ընկ. Վահրիճ Ճէրէճեանը, որ հասկնալիօրէն յուզուած, իր շնորհակալական անկեղծ խօսքերը արտասանեց սոյն մեծարման առիթով, եւ գեղեցիկ բանաձեւումներով նկարագրեց իր եւ պատկանած կուսակցութեան հաւատոյ հանգանակը ազգային ծառայութեան, եւ սեփական ժողովուրդի շահերու հետապնդման գծով:*

*Մեծարանքի սոյն ձեռնարկը ունէր գեղարուեստական ճոխ յայտագիր մը եւս: Ճաշի սպասարկութեան ընթացքին, ջութակահար Մերուժան Վարդանեան, սօլօ ջութակի վրայ գեղեցիկ մեղեդիներով, իսկական վայելքի պահեր պարգեւեց ներկայ հասարակութեան: Մայր եւ դուստր՝ Արփինէ եւ էլիզապէթ Փէհլիվանեաններ իրենց ճոխ երգացանկէն երգեցին չորս զուգերգներ, բոլորն ալ մեծապէս արժանանալով ներկաներու խանդավառ ծափահարութեանց: Արդարեւ վաւերական արուեստագէտներ են Փէհլիվանեանները, որոնց դաշնակի վրայ ճարտարօրէն կ'ընկերանար տաղանդաւոր եւ համակրելի Փրոֆ. Լեւոն Աբրահամեան:*

*Անվարան կարելի է ըսել որ մեծարանքի սոյն ձեռնարկը, Ընկ. Վահրիճ Ճէրէճեանի ազգային - հասարակական գործունէութեան 60-ամեակի առիթով, իրապէս եզակի ձեռնարկ մըն էր Հնչակեան շրջանակի կողմէ, ի պատիւ իր ղեկավար ընկերոջ:*

ԹՂԹԱԿԻՑ

## Կ'ԱՆՑՆԻՆ ԼՌԻՆ»

**ՍԵԴԻ ԳՕԶՈՒՆԵԱՆ**

Կ'անցնին լռին հովերու պէս
Յուշերն անուշ անդարձ կեանքիս.
Լուսնի Ոսկի շողին վրայ,
Ժպտուն դէմքդ դեռ կը մնայ.
Դուն ալ ինծ հետ կարծես հոն ես՝
Ծովուն վրայ մանեակի պէս:

Օրերն անցեալ, ալ չեն դառնար
Աստղերն վկայ մեզ չեն մոռնար:

Անցաւ գարուն եկաւ ձմեռ,
Անցեալ գարնան քեզ եմ սիրեր,
Ու երբ լուսին, աստղեր շողան,
Հոգւոյս մէջ մութ ջահեր դեռ կան,
Սիրտս թափուր դեռ կը մնի
Որպէս բոյն մը առանց քեզի:

Օրերն անցեալ, ալ չեն դառնար
Աստղերն վկայ մեզ չեն մոռնար:

*Գահիրէ, Փետրուար 1952*

## «Արշակ Բ.» Օփերայի Յանձնախումբը Կը Տեղեկացնէ

*ՍԱՆ ՖՐԱՆՍԻՍՔՕ – Չորրորդ դարի Հայաստանի արքունիքի մեծաշուք եւ գունագեղ համայնապատկերով, պիտի սկսուի Տիգրան Չուխաճեանի «Արշակ Բ.» օփերայի Սան Ֆրանսիսքոյի օփերային բեմում ներկայացնելու փրեմիերային նուիրուած տօնախմբութիւնը (Gala): Բացման հանդիսութիւնը տեղի պիտի ունենայ Սեպտեմբեր 8. 2001 թուականին, պիտի բաղկանայ ներկայացման նախորդող պաշտօնական ընթրիքից եւ ներկայացման յաջորդող երեկոյթից:*

*«Արշակ Բ.»ի վեց յաջորդական ներկայացումները պիտի բեմադրուեն Սան Ֆրանսիսքոյի օփերայի գլխաւոր տնօրէն՝ Լոթֆի Մանսուրիի կողմից: Օփերայի անդրանիկ ներկայացումը համընկնում է Հայաստանում քրիստոնէութիւնը որպէս պետական կրօն հռչակելու 1700-ամեակին:*

*«Մենք երկար ամիսներ աշխատել ենք բացման երեկոյի մանրամասները ապահովելու համար», նշում է յանձնախմբի փոխ-ատենապետ՝ Գարոլ Ռուստիկեանը. «Մենք շատ ոգեշնչուած ենք այս յայտարարութեամբ, որովհետեւ բացման երեկոն խոստանում է լինել յիշատակելի մի ձեռնարկ: Բացման երեկոյի հանդիսութիւնը ոչ միայն արժանի պիտի լինի համաշխարհային համբաւ վայելող Սան Ֆրանսիսքոյի օփերային, այլեւ պիտի լինի դրամահաւաք, բարեսիրական բնոյթ հաղորդելով տօնախմբութեան»:*

*«Օփերայի փրեմիերային իրենց մասնակցութիւնը պիտի բերեն նշանաւոր եւ բարձրաստիճան հիւրեր, աշխարհի բոլոր ծայրերից», նշեց յանձնախմբի փոխ-ատենապետ՝ Ֆլորա Դունայեանցը:*

*«Յանձնախմբի պատուաւոր անդամների շարքում են Գոնկրէսի անդամ՝ Ճէքի Սպայերը, Սան Ֆրանսիսքոյի քաղաքապետը՝ Ուիլի Պրաունը: Մենք խրախուսում ենք որ իւրաքանչիւր ոք իր օրացոյցում նշի Սեպտ. 8. 2001 թուականը», աւելացրեց Դունայեանցը:*

*Յանձնախումբը տեղեկացնում է նաեւ իր համացանցի հասցէն, www.arshakopera.com որով կարելի է հետեւել «Արշակ Բ.»-ի վերաբերեալ լուրերին եւ աշխատանքներին:*

*Սոյն ծրագրին առընթեր, Սան Ֆրանսիսքոյի օփերան հիմնել է Մշակութային Խորհրդատու Յանձնախումբ, բաղկացած նշանաւոր գիտնականներից: Դրանց շարքում են Դոկտ. Ռիչըրտ Յովհաննիսեանը (UCLA), Դոկտ. Ճէյմս Ռասէլը (Harvard University), Դոկտ. Գէորգ Բարդակչեանը (University of Michigan) եւ Դոկտ. Տիգրան Գույումճեանը (Fresno State University):*

*«Արշակ Բ.» օփերայի յանձնախումբը համադրել եւ պատրաստել է հասարակական եւ մշակութային ձեռնարկների հարուստ եւ հետաքրքրական ծրագիր՝ օփերայի ներկայացման համար: Սոյն ծրագիրը կեանքի կոչուեց 1999 թուականի Մարտին, Հայ համայնքի կողմից օփերայի բեմադրութեան համար պահանջուող մէկ միլիոն տոլարի դրամահաւաքի յաջող աւարտից յետոյ:*

*Տեղեկութիւնների համար կարելի է հեռախօսել (415) 249-9149 համարով:*

ԿԱՏԻԱ ՔՈՒՇԷՐԵԱՆ
*(Թարգմանութիւն անգլերէնէ)*

## ԻՐԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ՝ ՄՈՒՀԱՄՄԷՏ ԽԱԹԷՄԻ 120 ՀԱԶԱՐ ՏՈԼԱՐ ՆՈՒԻՐԵՑ ԹԵՀՐԱՆԻ «ԱՐԱՐԱՏ»ԻՆ

Ընդառաջելով Մեծի Տանն Կիլիկիոյ Արամ Ա. Կաթողիկոսի փափաքին, Իրանի Իսլամական Հանրապետութեան Նախագահ Մուհամմէտ Խաթէմի 120 հազար տոլար նուիրեց Թեհրանի «Արարատ» մարզական մշակութային միութեան «Արարատ» ֆութպոլի խումբին: Նախագահը խոստացաւ յառաջիկայ տարիներուն եւս օժանդակել միութեան: Անցեալ շաբաթ, Արամ Ա. Կաթողիկոս հանդիպում ունեցած էր նախագահ Խաթէմիի հետ: Հանդիպման ընթացքին Արամ Կաթողիկոս ներկայացուցած էր իրանահայութեան կարիքներն ու մտահոգութիւնները: Նախագահ Խաթէմի խոստացաւ մօտ ապագային ընթացք տալ կատարուած բոլոր առաջարկներուն:

## ՍՐԲՈՒՀԻ ՏԻՒՍԱԲ ԿՆՈՋ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՀԱՅ ՄԱՐՏԻԿԸ

Հայ պատմական ու ընկերային հարցեր շօշափող ողջունելի հրատարակութիւն մըն է անգլերէն լեզուով Ազատուհի Սիմոնեան *«Tribute to the First Armenian Feminist Writer - Serpouhi Dussap»* - «Սրբուհի Տիւսաբ - Գնահատանք Առաջին Հայ Ֆէմինիսթ Գրողին»: Փորձագրութիւնը որակաւոր վերլուծում մըն է Տիւսաբի (1840-1901) կնոջ ու մասնաւորապէս հայ կնոջ ազատագրական հարցի վերաբերեալ հարուստ գաղափարներուն, որոնք այսօր իսկ կը մնան խիստ դաստիարակիչ:



*Սրբուհի Տիւսաբ*

Սրբուհի Տիւսաբ իր կարծիքները մշակեց ու դրսեւորեց երեք վէպերու ու հրապարակագրական այլ գրութիւններու միջոցաւ: Առնց նիւթին տիրապետած ու առնցմով ալ խանդավառուած, Տիկին Սիմոնեան «Մայտա», «Արաքսի» ու «Սիրանոյշ» վէպերէն բազմաթիւ խօսուն մէջբերումներով անգլիախօս աշխարհին կը պարզէ վաւերական, համամարդկային մակարդակով մտաւորականի մը տիպարը: Ա՛լ աւելի շեշտելու համար Ս. Տիւսաբի միջազգային տարողութիւնը, հեղինակը զայն կը համեմատէ Քէյթ Շոբէնին ու Բէրքինզ Կիլմանին հետ. նման կարծիքներով տոգորուած 19-րդ դարու երկու այլ ամերիկացի ֆէմինիսթ արուեստագէտներ:

Սրբուհի Տիւսաբ իր ժամանակին մտաւորական ամէնէն խիզախ անձնաւորութիւններէն էր որ Տիկին Սիմոնեանի բառերով, «տասնըինններորդ դարուն պայքարեցաւ յանուն հայ կնոջ իրաւունքներուն»: Պատմական Հայաստանի գաւառներուն մէջ հայ կինը ճնշուած, «կ'ապրէր աղքատութեան խորը ու տգիտութեան մատնուած»: Նոյնիսկ յարաբերաբար աւելի զարգացած Պոլսոյ միջավայրին մէջ Հայ կինը «ազատութիւն չունէր ու կը մնար հպատակ արական սեռի հեղինակութեան»: Տիւսաբ իր իմացական կարողութիւնները - գեղարուեստական ու հրապարագրական մարզերու - նուիրեց պայքարելու այս իրականութեան դէմ: Այս տեսանկիւնէն իր գրական ժառանգը կը պահպանէ տակաւին իմացական արժէք, անկախ՝ որեւէ գեղարուեստական արժեւորումէ:

Տիւսաբ, հակառակ Գրիգոր Զոհրապի նման հանրայայտ հակառակորդներու, զինք վարկաբեկողներէն շատ աւելի զարգացած ու մշակուած իմացականութիւն մըն էր: Իր ժամանակակիցներէն աւելի լաւ ըմբռնեց որ մարդկային հաւասարութեան ու իրաւունքի գաղափարները - իրենց ընկերային ու իմաստասիրական ըմբռնումով - չեն կրնար առանց խորտակիչ ինքնահակասութեան, իգական սեռին հաւասարութիւնն ու իրաւունքը զանցառել: Այսպէս, «Մայտա»յի տիպարներէն մին կ'առարկէ.- Ի՞նչ տեսակի հաւասարութիւն է որ մարդկութեան կէսը արական սեռին իբր ծառայ կը դնէ: Ի՞նչպիսի ազատութիւն է որ կնոջ կը զլանայ ընդդիմանալու, գործելու, ձեռնամուխ ըլլալու կարողութիւնը:

Իբր կամուրջ իգական սեռին ամբողջական ազատագրումին, Տիւսաբ պայքարեցաւ ձեռք բերելու հայ կնոջ ուսանելու եւ աշխատելու իրաւունքը: Այս քայլը իր ժամանակին մեծ խիզախութիւն էր, ունենալով հիմնական նշանակութիւն՝ խախտելու հայ կնոջ աւանդական ճնշիչ մեկուսացումը ընկերային կեանքի հոսքէն:

Սրբուհի Տիւսաբ անզիջող քննադատն էր նաեւ ընկերային այն օրէնքներուն ու հաստատութիւններուն, որ կը պարտկէին կամ կ'ամրապնդէին «մարդկութեան կէսին» ճնշումը: «Օրէնքը կնոջ վզին չուան է որ այս կամ այն պատեհութեամբ կը սեղմուի կամ կ'արձակուի»: Իսկ «կրօնքը որ տառապող մարդկութեան համար յոյս պիտի ըլլար, եղած է անողորմ գործիք որ կը ծառայէ կղերականին անհատական շահուն հետապնդումին»:

Սիմոնեանի փորձագրութեան նպատակը տալ չէ մեզի գեղարուեստական վերլուծումը Տիւսաբի վէպերուն: Այնուհանդերձ կարելի է նշել առնց հակիրճ ու հաւասարակշռուած արժեւորումը: Տիպարներուն «կը պակսի ընդհանրապէս կեանքի փորձառութիւնը» ու «Մայտա»ն աւելի «խորհրդածութիւն է քան գեղարուեստական վէպ»: Հակառակ որ «Սիրանոյշ»ը «վարպետօրէն կը միահիւսէ գաղափար ու պատում», «Արաքսի»ին է «գեղարուեստական տեսակէտէն ամէնէն յաջող գործը»:

Ներկայացնելով Տիւսաբի այս ու շատ մը այլ կարծիքները, Տիկին Սիմոնեան յաջողած է մեր առջեւ գծել ազգային մտաւորականի մը դիմանկարը. մէկը որ սեւեռելով հայ կնոջ ազատագրութեան ու իրաւունքի հարցին, իսկական կշիռով նպաստեց համայն ազգին վերածնունդի աշխատանքին:

«*«Tribute to the First Armenian Feminist Writer - Serpouhi Dussap*» արդէն երկրորդ տպագրութեան արժանացած է: Յոյսով ենք որ մօտ օրէն կը թարգմանուի նաեւ հայերէնի ու կը տարածուի Հայաստան, ուր պիտի հանդիսանայ հայ կնոջ ու կնոջ ազատագրական հարցերուն վերաբերեալ գեղեցիկ ու դաստիարակիչ մեկնաբանութիւն մը:

*«ՅԱՌԱՋ»* *ԺԻՐԱՅՐ ՔԷՇԻՇԵԱՆ*

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Ուրբաթ, 11 Օգոստոս 2000-ի առաւօտեան ժամը 7.30-ին

**ԶԲՕՍԱՊՏՈՅՏ ԴԷՊԻ ...**

(Մանրամասնութիւնները յաջորդիւ)

### ՅԻՇԱՏԱԿԻ ՆԿԱՐ

**Էյն Սոխնայի «MENA OASIS BEACH» Զբօսապտոյտէն**



Նկարին մէջ երեւցած մասնակցողներուն դէմքերու ուրախ ու զուարթ արտայայտութիւններէն եւ տրամադրութիւններէն մեկնելով, կը հետեւցընենք թէ Հայկական Ընթերցասրահի կազմակերպած ծովեզերեայ զբօսապտոյտը, որ տեղի ունեցաւ Կիրակի 16 Յուլիսի ամբողջ օրը, դէպի Կարմիր Ծովի՝ էյն Սոխնայի «Mena Oasis Beach» շքեղ պանդոկը, անցած է բացառիկ յաջողութեամբ, եւ անմոռանալի օր մը անցուցած ըլլալու գոհունակութեամբ:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### ԵՂԻԱՅԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿ

### 2000 - 2001 ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆ

Եղիայեան Կրթաթոշակի Յանձնաժողովը 2000 - 2001 ուսումնական տարեշրջանի համար, վերանորոգելի կրթաթոշակներէն զատ, պատրաստ է յատկացնել նաեւ նոր կրթաթոշակներ, արժանաւոր ուսանողներու.-

Սիրելի ուսանող ուսանողուհի,

Եթէ աւարտած ես երկրորդական ուսումդ եւ ստացած եգիպտական երկրորդական ուսման վկայական «ՍԱՆԱՈՒԷՅԱ ԱՄՄԱ» **ԳՐԻԳՈՐ ԵՂԻԱՅԵԱՆ** պիտի փափաքէր որ դուն ստանայիր նաեւ համալսարանական կամ հիմնարկային կրթութիւն: Ճիշդ այդ պատճառաւ ան հաստատեց իր Հիմնադրամը, այն ժամանակ երբ համալսարանական ուսումը անվճար չէր, ինչպէս է Եգիպտոսի մէջ 1952-ի Յեղափոխութենէն ետք:

Ուրեմն, եթէ կը փափաքիս շարունակել մասնագիտական ուսումդ Եգիպտական Պետական կամ ոչ-Պետական Համալսարաններու, Հիմնարկներու մէջ, եւ կը կարօտիս աջակցութեան կրնաս դիմել:

Նոյնպէս կրնաս դիմել եթէ կը փափաքիս Հայաստանի Հանրապետութեան Համալսարաններէն կամ Հիմնարկներէն մէկը յաճախել Հայագիտական նիւթեր ուսանելու եւ կամ Կրօնական ուսում ստանալու Հայկական դպրեվանքերէն մէկուն մէջ:

Մանրամասնութեան համար անձամբ ներկայանալ մեր հասցէին.-

**Եղիայեան Համալսարանական Կրթաթոշակի Յանձնաժողով**
**Առաջնորդարան Հայոց,**
**179 Ռամսէս պողոտայ, Գահիրէ**

Հանդիպման Օր.-Ուրբաթ առաւօտեան ժամը 11-1

Ուր քեզ հետ պիտի հանդիպի Յանձնաժողովի անդամներէն մին: Ան պէտք եղած լուսաբանութիւնը հաղորդելէ ետք, պիտի յանձնէ քեզի յատուկ դիմումնագիր-հարցաթուղթը APPLICATION FORM, զոր լեցնելէ ետք կը վերադարձնես մեզի ինքնութեան թուղթի եւ վերջին վիճակացոյցի պատճէններու եւ երկու անձնական լուսանկարներու հետ միատեղ:

1999-2000 Ուսումնական տարեշրջանի դիմումնագրերու ստացման վերջին պայմանաժամ՝ Ուրբաթ, Օգոստոս 11, 2000:

Այդ թուականէն շաբաթ մը ետք Յանձնախումբս պիտի ընտրէ արժանաւոր նոր կրթաթոշակառուները, վերանորոգելի կրթաթոշակառուներէն զատ, համաձայն հիմնադրամի կանոնագրին:

<u>ԿԱՐԵՒՈՐ</u>

1.- Նոյն ընտանիքէն երկու եղբայրներ կամ քոյրեր չեն կրնար արձանագրուիլ Եղիայեան Կրթաթոշակի միաժամանակ:

2.- Նախընտրութիւն կը տրուի անոնց, որոնք հայկական վարժարաններէ շրջանաւարտ են:

3.- Եղիայեան Կրթաթոշակի վճարումները կ'ըլլան փոխգիրով «չէք»ով, ուղղուած տուեալ համալսարանի կամ հիմնարկի անունին:

4.- Թեկնածուն անձնապէս կը ներկայանայ Առաջնորդարան Ուրբաթ օր մը եւ Յանձնաժողովի անդամներէն կը ստանայ դիմումնագիրը եւ լեցնելէ ետք անձամբ կը յանձնէ Առաջնորդարանի դիւանապետին:

5.- Դիմումներու վերջին թուականն է 11 Օգոստոս 2000:

Յաջողութեան մաղթանքներով՝

**ԵՂԻԱՅԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ**



## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Ալեքս եւ Յասմիկ Ալեքսանեաններ անցեալ 3 Յունիս 2000-ին, բախտաւորուած են երկրորդ մանչ զաւակով, զոր անուանակոչած են Նոր:

Այս բարեբաստիկ առիթով, մեր ջերմ շնորհաւորութիւնները կը յայտնենք մանկան ծնողքին եւ մեծ ծնողներուն՝ Տէր եւ Տիկին Վարդ եւ Նուէր Ալեքսանեաններուն եւ Տէր եւ Տիկին Արթէմ եւ Գոհար Գէորգեաններուն, մաղթելով բախտաբեր եւ արեւշատ կեանք նորածինին:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իր շատ սիրելի եղբօր, Ողբ. Օննիկ Ֆինճանճեանի, ինչպէս նաեւ իր հօր, մօր եւ քրոջ հոգւոյն եւ անոնց քաղցր յիշատակին Տիար Կարպիս Ֆինճանճեան կ'ընէ հետեւեալ նուիրատուութիւնները.

| | |
|---|---|
| Գահիրէի Առաջնորդարանին | 300 |
| Գալուստեան Ազգ. վարժարանին | 300 |
| Նիբր - Իսք Հայկական Ակումբին | 200 |
| Հայ Կարիքի Խաչին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |
| Հայկական Ընթերցասրահին | 100 |

(Ստանալ «Արեւ»էն)

### ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Տիկին Ազատուհի Գալայճեան-Սիմոնեանի աշխատասիրութիւնը՝ «Tribute to the First Armenian Feminist Writer, SERPOUHI DUSSAP»:

30 էջնոց գրքոյկի երկրորդ տպագրութիւնը հրատարակութիւնն է «Շիրակ» հրատարակչատան, Պէյրութ՝ Մարտ 2000 :

### ՄԻՆՉ ՆԱԽԱԳԱՀԸ ՄԵԿՆԵՑԱՒ ՀԱՆԳՍՏԱՆԱԼՈՒ, ՑՈՒՑԱՐԱՐ ՄԱՅՐԵՐ ԾԵԾԻ ԵՆԹԱՐԿՈՒԵՑԱՆ ՊԱԼԱՏԻՆ ԱՌՋԵՒ

1

Հայաստանի մէջ հայ ոստիկանը մայրաքաղաքի կեդրոնը, ձեռք կը բարձրացնէ մօր վրայ, այդ կը նշանակէ, որ մեր հասարակութիւնը հիւանդ է, եւ կ'արժէ այս պարագայով լրջօրէն մտահոգուիլ:

### ՄԵԾ ՇՈՒՔՈՎ ՆՇՈՒԵՑԱՒ ՔՍԱՆ ԿԱԽԱՂԱՆՆԵՐՈՒՆ 85-ԱՄԵԱԿԸ ...

2

*Միասնական ուժերով ծրագրուած գործունէութեամբ եւ հայրենասիրական զոհողութիւններով միայն կարելի է բարելաւել ներկայի դրութիւնը:*

*«Մենք դէմ ենք յուսալքութեան: Հնչակեան Կուսակցութիւնը ամենադժնդակ պահերուն չէ յուսալքուած: Մենք կը հաւատանք հայու անկոտրում հայրենասիրութեան, նախաձեռնութեան եւ զոհողութեան ոգիին: Մենք որոշած ենք աշխատիլ ու պայքարիլ այս ուղղութեամբ, ձեզի հետ, բոլոր հայրենասէր ուժերուն հետ»:*

*Յայտագրի աւարտին՝ ղեկավարութեամբ խմբավար Հենրիկ Անասեանի՝ «Սիփան» երգչախումբը եւ Հայկական Ժողովրդական Գործիքներու Համոյթը կէս-համերգի համազօր յայտագիր մը ներկայացուցին, հաճելի եւ նոր ստեղծագործութիւններու կատարումով, յայտագիր՝ որ արժանացաւ ներկաներու որոտընդոստ ծափերուն: Մենակատարներն էին Ալիս Լոմեան եւ Արամ Անասեան:*

*Տպաւորիչ յայտագիրը վերջ գտաւ յոտընկայս երգեցողութեամբ Ս.Դ.Հ.Կ.-ի քայլերգին:*

## ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏ ԼԵՒՈՆ ԵԿԱՒԵԱՆ ՈՉ ԵՒՍ Է

Սրտի անհուն կսկիծով տեղեկացանք մահը նախկին եգիպտահայ, այժմ ամերիկահայ սիրուած արուեստագէտ, երգիչ - երգահան՝

### ԼԵՒՈՆ ԵԿԱՒԵԱՆԻ

որ պատահեցաւ անցեալ Հինգշաբթի 20 Յուլիս 2000-ի գիշերը, անյաջող գործողութեան մը զոհ երթալով, 48 տարեկան հասակին:



Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ երէկ, Չորեքշաբթի 26 Յուլիսի առաւօտեան, ի ներկայութեան ընտանեկան անդամներու, ազգականներու եւ բարեկամներու, որմէ ետք հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան չիրիմին մէջ:

Նշենք թէ հանգուցեալ արուեստագէտը հաւատաւոր անդամներէն էր «Ջահակիր»ի շրջանակին, եւ ուրեմն թերթիս հիմնադրութեան 50-ամեակին առիթով 1998-ին, Լոս Անճելըսէն Գահիրէ ժամանելով, նոյթ ունեցած էր խմբագրութեանս սարքած ճաշկերոյթ - Պարահանդէսին, խանդավառելով հանդիսականները:

Յուսանք որ Ողբ. Լ. Եկաւեան աւարտած ըլլայ իր սրտատրոփ պատրաստած չորրորդ գասէթ-ալպոմը՝ հայկական էսթրատային երգերու ձայներիզն ու տեսերիզը, որ սիրային բառերու չարահիւսութիւնն ու հայաշունչ երաժշտութիւնը յօրինումն է նոյնինքն՝ հանգուցեալ երգիչին:

*«Ջահակիր» եւ իր շրջանակը իրենց խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնեն Ողբացեալի այրիին՝ Տիկին Անիի, դուստրերուն՝ Անթուանէթի եւ Ռոզիկի, մօր՝ Տիկին Ռոզի, քրոջ՝ Տէր եւ Տիկին Միշէլի եւ Ազնիւի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն եւ բարեկամներուն:*

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՋԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ 1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Ջագըր Հիմնադրամը 2000-2001 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանաւոր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով երկու լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը եւ վերջին տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները, կրնան իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան:

Սաթենիկ Ճ. Ջագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանի ա. եւ բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր եւ վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է, Աղեքսանդրիոյ համար 13 Օգոստոս 2000 եւ Գահիրէի համար 15 Օգոստոս 2000:

o

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*ՀԲԸՄ-ի Գահիրէի Մասնաճիւղի Անդամական Տարեկան Ընդհանուր Ժողովը տեղի պիտի ունենայ 18 Հոկտեմբեր 2000-ին եւ ըստ Ընկերային Գործոց Նախարարութեան պայմանին, պիտի կատարուի վարչական կազմի ամբողջական նոր ընտրութիւն (9 վարչական անդամ):*

*Այն անդամները, որոնք կը փափաքին մաս կազմել վարչական ամբողջական նոր կազմին, պարտին ներկայացնել իրենց թեկնածութիւնը գրաւոր, Գշ. 1 Օգոստոսէն մինչեւ Եշ. 10 Օգոստոս 2000, դիմելով Միութեանս կեդրոնատեղին, 15 Էմատ Էլ Տին Փողոց, Գահիրէ, առաւօտեան ժամը 9.30-էն յ.մ. ժամը 3. բացի Կիրակի եւ տօնական օրերէն:*

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Սփիւռքահայ երիտասարդութեանը ազգային մշակոյթին, պատմութեանը ծանօթացնելու եւ փոխ-համագործակցութեան դաշտի ստեղծմանը օժանդակելու նպատակով, Հայաստանի Մանկավարժական Գիտութիւնների Ակադեմիան ս/թ Հոկտեմբերի 7-16-ը կազմակերպում է համահայկական փառատօն-օլիմպիադա՝ «Մարդկային ազատութիւնները եւ բնապահպանութեան հիմնախնդիրները» թեմայով:

Ներկայացուած մրցոյթ-օլիմպիադայում գետեղուած թեմաներն են՝

1. Ազատ կամքի դրսեւորման եւ բնապահպանական խնդիրների ներդաշնակութիւնը:

2. Էթնոմշակոյթ, էթնոժառանգականութիւն եւ բնապահպանութիւն:

Միջոցառումը նախատեսւում է անցկացնել Հայաստանի Հանրապետութեան Կոտայքի մարզի Ծաղկաձոր քաղաքում:

Միջոցառման ժամկէտն է 7-16 Հոկտեմբերի 2000թ:

Միջոցառման մասնակիցների տարիքը սահմանուած է 15-20 տարեկան:

Միջոցառումը ֆինանսաւորւում է համայնքների չահագրգիռ կազմակերպութիւնների եւ անհատ անձանց միջոցներով: Միջոցառմանը մասնակցելու 10-օրեայ ժամկէտի համար իւրաքանչիւր անձ կազմկոմիտէին պէտք է մուծի 300 ԱՄՆ տոլար, որի մէջ մտնում են հիւրանոցի, սննդի եւ միւս միջոցառումների ծախսերը:

Միջոցառմանը մասնակցել ցանկացողները մինչեւ ս/թ Սեպտեմբերի 10-ը պէտք է ներկայացնեն գրաւոր դիմում Մանկավարժական Գիտութիւնների Ակադեմիայի նախագահ, ակադեմիկոս Գ. Մուսայելեանի անունով:

Միջոցառումների ծրագրին եւ փառատօն-օլիմպիադայի անցկացման պայմաններին ծանօթանալ ցանկացողները կարող են դիմել Գահիրէում ՀՀ դեսպանութիւն:

**ԳԱՀԻՐԷՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel: 4530327, Fax: (202)4522282
E-mail:tchahagir@journalist.com.


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1431 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 10 ՕԳՈՍՏՈՍ 2000 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. — عدد رقم ١٤٣١ — الخميس ١٠ غسطس ٢٠٠٠


## «ՔԱՐԵՐ ԺՈՂՈՒԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ»

*Անցեալ տարի Երեւանի մէջ կայացած Հայաստան-Սփիւռք խորհրդաժողովին առիթով կազմակերպուած քարոզչութեան ծիրէն ներս, հրապարակուած էին մեծ ծանուցաթուղթեր, որոնց վրայ բացի սրտառուչ պատկերներէ առկայ էին ազգաշունչ լոզունգներ ու այժմէական կարգախօսներ. անոնցմէ մին վերնագրուած էր՝ «Քարեր ժողուելու ժամանակը»: Խօսքը առնուած է Աստուածաշունչէն եւ ի հարկէ կը վերաբերի հոգեւոր ոլորտին, սակայն, այստեղ ակնարկութիւնը կ'ուղղուէր մեր ազգութեան, հայ մարդիկ ժողուելու եւ կանոնք հայրենիքին կօղելու. այստեղ ժողուելու եւ համախմբելու դերը ստանձնած էր Հայաստան, իսկ քարերը աջ ու ահեակ սփռուած հայութիւնն է, ցաք ու ցրիւ եղած մեր ժողովուրդին բեկորներն են ու համայնատարած հայ անհատներն են՝ որոնք կարիքը ունին խթանի եւ խայծի՝ համալրուելու հայրենի հողին շուրջ:*

*Հայրենիք ունենալը երկարաշունչ պայքարի մը առաջին փուլն է. այլ պայքար կ'ենթադրէ հայրենիք պահպանելը. իսկ երրորդ փուլը կ'առընչուի հայրենիք կառուցելու հանգրուանին, որ նոյնպէս յանձնառութիւն պատասխանատուութիւն պարտադրող ծանրակշիռ լուծ է: Առաջին պայքարին նուիրուեցան մեզմէ նախորդ սերունդներուն բիւրաւոր ներկայացուցիչները, որոնք իրենց արիւնը շաղախելով հայրենի հողին հետ՝ կայն վերածեցին սրբավայրի: Հայրենիք պահպանելու առաքելութիւնը կը վերապահուի ռազմական ոլորտին, որուն անդամագրուած մարտիկները, սահմանապահ վինուորներն ու Հայաստանի ռազմական սպայակոյտը պատուով կատարեցին ու կը կատարեն իրենց վստահուած նուիրական գործը: Երրորդ փուլը պատասխանատուութիւն կը դնէ իւրաքանչիւր հայու, որ իր թէկուզ չնչին մասնակցութեամբ կրնայ բաժնեկից դառնալ Հայաստանի ամրապնդման ու կառուցման անտարակոյս, այս հանգրուանն ալ իր հերթին ունի դժուարութիւններ, պահանջելով նոյնպէս երկար ու անդադրում պայքար:*

*Մենք դարեր հայրենազուրկ ապրած ժողովուրդ եղած ենք, հայուն համար հայրենիք բառը այլ իմաստ ու քաղցրութիւն ունի, քան այն երկրի քաղաքացիէն, որ երբեք չէ ապրած հայրենազուրկ ըլլալու դառնութիւնը, պատահականօրէն անկախացած ու հեշտութեամբ հայրենիքի տէր եղած անձ մը այնքան սրտառուչ կերպով չի հնչեր հայրենիք բառը, որքան հայու նման դժուար ու արեամբ հայրենիքի տէր դարձած անհատ մը: Իրօք, սերունդներ ամբողջ հայրենիք բառին միախառնուած են երազը, կարօտը, պայքարը, յարատեւութեան կզացումը, շունչն ու արիւնը: Հայրենիքը երբ հող էր, շատերու համար երազ էր, որովհետեւ անկախ չէր. երբ երազ էր հող չէր. ոմանց համար՝ հող ու երազ միասին, որովհետեւ՝ հեռո՜ւ, հեռո՜ւ էին անոնք: Նորերու մէջ քիչերու համար միայն հող է, երբ անոր վրայ է ան, տէրը իր պապերու օճախին ու հող կտակած իր որդիներուն՝ երազելով հանդերձ բռնախլեալ հողերը արեւմտեան հայաշխարհին: Հետեւաբար, հայոց պատմութեան խոր անցեալէն այսօր հայրենիք բառը կզեցած է իւրայատուկ նշանակութիւն՝ ունենալով խորունկ ու անմեկնաբանելի իմաստ:*

*Անցեալին, պայքարին ողջ էութիւնը կեդրոնացած էր հայրենիք ունենալուն վրայ ապա հերթը եկաւ հայրենիք պահպանելուն եւ այժմ՝ կը գտնուինք կառուցելու հանգրուանի սեմին: Հայը իրաւունք չունի ինքզինք սեպելու հայրենազուրկ կամ անհող. բնա՛ւ. ունինք հանրապետութիւն, բանակ, սեփական պետական կառոյցներ ու ընդարձակ անմարդաբնակ տարածքներ, հսկայական հարըստութիւն ու մարդկային ներուժ, միտք ու բազուկ, հրետանի ու կոթող:*

*Հայրենիքի կառուցման քաղաքականութիւնը կամ յանձնառութիւնը չի սահմանափակուիր միայն Հայաստանի իշխանութիւններուն կամ հայրենիքին մէջ ապրող կանգուածին: Ան համազգային, համահայկական պարտաւորութիւն է, ամէն հայ իր մէջ ընդգրկող. այդ պարտաւորութիւնը պայման չէ որ ըլլայ նիւթական միայն. պարտաւորութեանց ծիրը լայն է ու տարողունակ. իւրաքանչիւրը իր կարողութեան համեմատ, իր մօտեցումին ու նախասիրութեան չափանիշով: Հիմնականը՝ մասնակցութիւնն է հայրենաշինութեան, որպէսզի բոլորիս խիղճերը հանգիստ ըլլան պատմութեան ու նահատակ սերունդներուն դիմաց: Եւ երբ այժմ կը գտնուինք երրորդ փուլին մէջ, ամէն խուսափում եւ անտարբերութիւն կը նկատուի անթոյլատրելի յանցագործութիւն:*

*Այս յանձնառութենէն մղուած եւ գիտակից պահի լրջութեան Հայաստանի իշխանութիւնները նախաձեռնակ եղած էին պատմական առաքելութեան մը՝ համախմբել ազգին ողջ ուժերը եւ սկիզբը դնել հայրենակառուցման նուիրական աշխատանքին. իսկապէս, նման համազգային առաջարկ կրնար կատարել միայն Երեւանը՝ որպէս կորիզը ու առաջնորդը ազգին, բոլորիս միաւորման անփոխարինելի վայրը:*

*Ամէն հայ փոքր քար մըն է հայրենիք կառուցող. վերոնշեալ ծանուցումը նկատի ունի հայ քարերը աշխարհացրիւ, որոնք պէտք է ժողուուին, որոնց պէտք է ժողուել, մէկտեղել, մէկ շաղախով միաձուլել, մէկ հնոցի մէջ կոփել եւ ապա այդ քարերով կերտել հայոց ապարանքը՝ Հայաստանը, այդ քարերով շքեղացնել հայոց տունը, որ անցեալին արքունիք էր, ապա դարձաւ խրճիթ մը «անհիւրընկալ պատեր»ով:*

↳ 2

## ԵԳԻՊՏՈՍԻ ՎԱՐՉԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹԵՆԷՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ՝ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Երէկ, ՀՀ Նախագահ Ռոպերթ Քոչարեան, ԱԺի Նախագահ Արմէն Խաչատրեան եւ Վարչապետ՝ Անդրանիկ Մարգարեան ընդունեցին Եգիպտոսի Վարչական Վերահսկողութեան Ծառայութեան *(Րէքապա Իտարէյա)* պատուիրակութիւն մը, որ երկու օրէ ի վեր շփումներ կը հաստատէ Երեւանի մէջ:

Նախագահի հետ տեսակցութեան ընթացքին ընդգծուեցաւ որ հետեւողական կերպով կեանքի կը կոչուի այն համաձայնագիրը, որ ստորագրուած էր Նախագահի աշխատակազի վերահսկողական ծառայութեան եւ Եգիպտոսի վարչական վերահսկողութեան գերատեսչութեան միջեւ:

Ճեշտուեցաւ որ հայ-եգիպտական յարաբերութիւնները բնականոն կերպով կը զարգանան, իսկ նմանօրինակ այցելութիւնները կարելիութիւն

## ԵԳԻՊՏԱ-ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻԱՑԵԱԼ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ ՊԻՏԻ ԳՈՒՄԱՐՈՒԻ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

*Յառաջիկայ Սեպտեմբերին, եգիպտա-հայկական համագործակցութեան միացեալ յանձնաժողովի երրորդ նստաշրջանը պիտի գումարուի Երեւանի մէջ: Եգիպտական կողմը պիտի գլխաւորէ ծրագրումի եւ միջազգային համագործակցութեան նախարար Դոկտ. Ահմէտ էլ Տարչ, իսկ Հայկական կողմը՝ Հայաստանի առեւտուրի եւ արդիւնաբերութեան նախարար Կարէն Ճշմարիտեան:*

*Այս մասին յայտարարեց Հայաստանի Հանրապետութեան Եգիպտոսի դեսպան Դոկտ. Սերկէյ Մանասարեան, որ յաւեց, թէ իր երկիրը մեծ կարեւորութիւն կ'ընծայէ Եգիպտոսի հետ իր համագործակցութեան, որ անիկա ըլլայ երկու պետութիւններուն միջեւ առկայ քաղաքական իւրայատուկ յարաբերութիւններու մակարդակին վրայ, յատկապէս տնտեսական եւ առեւտրական մարզերէն ներս:*

*Յարգելի դեսպանը ցաւ յայտնեց, որ երկու պետութիւններուն միջեւ առեւտրական փոխանակման ծաւալը խիստ փոքր է ու զերոյի կը մօտենայ, չգերազանցելով մէկ կամ երկու միլիոն տոլարը:*

*Ան յայտնեց, որ եկող նստաշրջանին եգիպտական պատուիրակութիւնը պիտի ներառնէ նաեւ գործարարներ եւ առեւտուրի պալատի անդամներ ապա յոյս յայտնեց, որ անոնց ներկայութիւնը առիթ կը հանդիսանայ հայկական շուկայի ուսումնասիրման, իրենց հայ գործընկերներուն հետ կարծիքի եւ տեղեկութեան փոխանակման ու վերջապէս, իրենց միջեւ ուղղակի կապի հաստատման:*

*Դոկտ. Ս. Մանասարեան նաեւ յայտնեց, թէ նախատեսուած է չարք մը պայմանագրերու եւ վաւերագրերու ստորագրութիւն, գլխաւորաբար՝ կրկնակի մաքսատուրքի արգիլման, քաղաքային օդագնացութեան մարզին մէջ համագործակցութեան եւ առեւտրական ու տնտեսական գործակցութեան ամրապնդման յատուկ վաւերագրեր:*

## ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ԼԵՌՆԱԳՆԱՑՆԵՐԸ ՉԿՐՑԱՆ ԱՐԱՐԱՏ ԼԵՌ ՄԱԳԼՑԵԼՈՒ ԱՐՏՕՆՈՒԹԻՒՆ ՍՏԱՆԱԼ

### Արշաւախումբը Երէկ Բռնեց Վերադարձի Ճամբան

Ինչպէս նախապէս հաղորդուած էր, մտաւորականներէ, մարզիկներէ, հոգեւորականներէ բաղկացեալ արշաւախումբ մը Թուրքիա մեկնած էր Արարատ (Աղրը Լեռ) մագլցելու նպատակով: Խումբը Կարսի մէջ. թուրք իշխանութիւններու կողմէ շատ լաւ ընդունելութեան արժանացած էր, եւ Անիի աւերակները այցելած էր, նոյնիսկ առաջարկ ստացած էր որպէսզի Վան երթայ ու այցելէ նաեւ Աղթամարը: Բայց երէկ թերթերը կը գրէին որ թուրք իշխանութիւնները բացարձակապէս պիտի չարտօնէին որ խումբը մագլցի Արարատ: Պատճառաբանութիւնն ալ այն էր, թէ յայտնի չէր թէ ինչ էր արշաւախումբին նպատակը: Խումբին մէջ կը գտնուէր նաեւ իտալացի լեռնագնաց Անճէլօ Փարէկօ որ անցեալին գտած էր այն բեկորները, որոնք կը կարծուի թէ Նոյեան տապանի մնացորդներ են:

Արդարեւ թուրք իշխանութիւնները անհրաժեշտ արտօնութիւնը չտուին եւ խումբը չկրցաւ իրականացնել «Պիպլիական Արարատ» (Աստուածաշնչական Արարատ) մագլցումը: Այս զարգացումը ցոյց տուաւ որ արշաւախումբը Թուրքիա մեկնած էր առանց նախապէս ապահոված ըլլալու Արարատն ի վեր մագլցելու արտօնութիւն: Այս կէտն ալ բաւական զարմանալի է, որովհետեւ արշաւախումբը երկար ժամանակէ ի վեր կազմակերպած էր այս լեռնագնացութիւնը, զոր նուիրած էր Հայոց Քրիստոնէութիւնը պաշտօնապէս ընդունելու 1700-ամեակին:

Արշաւախումբին մաս կը կազմէ նաեւ Պարոյր Հայրիկեան, որ բացատրութիւններ տուաւ իրենց լեռնագնացութեան մասին: Յայտնեց թէ 1991-ին էր որ մշակուած էր Արարատ մագլցելու ծրագիրը, բայց այդ թուականներուն Արարատի ճամբան փակ էր, իսկ հիմա աւելի նպաստաւոր պայմաններ առկայ են:

Խումբը բաւական տանջալից ճամբորդութիւն մը ըրաւ մինչեւ Վրաստանի սահմանային դուռը:

Բայց երբ Թուրքիոյ կողմը անցան, ամէն ինչ աւելի հեզասահ

↳ 3

## ՔՈՉԱՐԵԱՆ-ԱԼԻԵՒ ՆՈՐ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՕԳՈՍՏՈՍ 18-ԻՆ ԽՐԻՄԻ ՄԷՋ

*Արտաքին նախարար Վարդան Օսկանեան յոյս յայտնեց, որ յառաջիկայ Հայաստանի եւ Ատրպէյճանի նախագահներուն միջեւ տեղի ունենալիք հանդիպումը յառաջդիմութիւն կ'արձանագրէ Ղարաբաղի հարցի լուծման ճամբուն վրայ:*

*Օսկանեան ըսաւ, թէ հանդիպումը տեղի պիտի ունենայ Օգոստոսի 18ին, Խրիմի մէջ, Անկախ Պետութիւններու Համարակապետութեան գերաստիճան ժողովին առիթով: Բայց, աւելցուց նախարարը, շատ կանուխ է լուծում մը ակնկալելու համար:*

*Մինսկի խմբակը, որուն մաս կը կազմեն Միացեալ Նահանգներ, Ռուսաստան եւ Ֆրանսա կ'աշխատի նոր առաջարկներու վրայ, որոնք սակայն յայտնի չէ թէ երբ պիտի ներկայացուին կողմերուն:*

↳ 2

### ԼՂ Նախագահ Արկադի Ղուկասեանի Յայտարարութիւնը

## ԱՌԱՆՑ ԱՐՑԱԽԻ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆՑ ԿԱՐԾԻՔԻՆ, ԱՆԿԱՐԵԼԻ Է ԼՈՒԾԵԼ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ

3 Օգոստոսի երեկոյեան, Լեռնային Ղարաբաղի (ԼՂ) Նախագահ Արկադի Ղուկասեան յայտարարեց, թէ Հայաստանի եւ Ատրպէյճանի Նախագահներու հանդիպումները կարեւոր են հակամարտութեան լուծման համար, սակայն՝ անբաւարար են եւ առանց ԼՂի կարծիքը հաշուի առնելու, անկարելի է լուծել այդ հակամարտութիւնը: Նախագահը իր այս յայտարարութիւնը ըրաւ ԼՂի պետական հեռատեսիլէն: Ան ըսաւ որ պաշտօնական Պաքուն, Հայաստանի հետ շփումներ ունենալով, կը փորձէ ցոյց տալ որ հակամարտութիւնը բացառապէս Հայաստանի հետ է: Սակայն, աւելցուց Ա. Ղուկասեան,

↳ 2

## ԵԳԻՊՏՈՍԻ Հ.Մ.Ը.Մ. -ՆՈՒՊԱՐԻ ՊԱՍՔԷԹՊՈԼԻ ՀԱՒԱՔԱԿԱՆԸ ԱՐԺԱՆԹԻՆ ԿԸ ՄԵԿՆԻ

Տեղեկացանք որ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ զոյգ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի պասքէթպոլի տղոց հաւաքականը յառաջիկայ Շաբաթ 12 Օգոստոսի առաւօտեան Արժանթին պիտի մեկնի, իր մասնակցութիւնը բերելու համար Սան Փաուլոյի մէջ կայանալիք Հ.Բ.Ը.Մ.-ի Նաւասարդեան Խաղերուն, որ պիտի տեւէ մինչեւ 20 Օգոստոս 2000:

Խումբին պատասխանատու նշանակուած է Տոքթ. Արթօ Արթինեան եւ մարզիչ՝ Տոքթ. Կարօ Աբգարեան:

Բարի երթ եւ յաջողութիւն կը մաղթենք Եգիպտոսի Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի պասքէթպոլի հաւաքականին:

Մամլոյ Հաղորդագրութիւն

## ՎԵՆԵՏԻԿԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ՄՇԱԿՈՅԹԻ ԱՄԱՌՆԱՅԻՆ ԽՏԱՑԵԱԼ ԴԱՍԸՆԹԱՑՔԸ ԿԸ ԲՈԼՈՐԷ ՏԱՍՆՀԻՆԳ ՏԱՐԵՇՐՋԱՆ

(1986–2000)

*11–12 Օգոստոսին պիտի նշուի ակադեմական եւ գեղարուեստական մասնաւոր հանդիսութիւններով 15ամեայ տարեդարձը Վենետիկի Կա Ֆոսկարի Պետական Համալսարանի Հայ լեզուի եւ մշակոյթի ամառնային խտացեալ դասընթացքին, որ 1986էն սկեալ ամէն տարի կրկնուած է Օգոստոս ամսին՝ առանց ընդմիջումի: Հայաստանի Կրթութեան եւ Մշակոյթի Նախարարութիւնները, ինչպէս նաեւ Վենետիկ Գաւառապետութիւնը շնորհած են իրենց բարոյական հովանաւորութիւնը:*

*Այս առթիւ մասնաւոր հրաւէրով Վենետիկ կը ժամանեն, բազմաթիւ հրաւիրեալներու կարգին, ՀՀ Իտալիոյ Դեսպան Տիար Գագիկ Բաղդասարեան, Երեւանի Պետական Համալսարանի Ռեկտոր՝ Ակադեմիկոս Փրոֆ. Ռադիկ Մարտիրոսեան, ՀՀ Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի փոխ-Նախագահ եւ Գիտական Քարտուղար՝ Ակադեմիկոս Փրոֆ. Վլադիմիր Բարխուդարեան, UCLAյի ամպիոնավար եւ հայ ժողովուրդի ժամանակակից պատմութեան մեծ հեղինակութիւն՝ Փրոֆ. Ռիչըրտ Յովհաննիսեան:*

*Գեղարուեստական յայտագրին պիտի մասնակցին Փարիզաբնակ դերասանուհիներ՝ Նորա Արմանի եւ Այա Սակակիբարա «Նանթո Նանթո» թատերախաղի բեմադրութեամբ, Միլանաբնակ դաշնակահարուհի Անի Մարտիրոսեան եւ դենոր Ժան Անսրյեան, հայկական ու եւրոպական նուագներու եւ երգերու կատարմամբ:*

*Այս առթիւ ՀՀ Սահմանադրական Դատարանի համակարգչային բաժանմունքը, Տիար Գր. Վահանեանի առաջնորդութեամբ, իրագործած է՝ 1993ին Վենետիկի Պետական Համալսարանի եւ Պո-Արաքս Մշակութային Միութեան համագործակցութեամբ արտադրուած «Հայերէն խօսինք» տիտղոսով հայերէն լեզուի ուսուցման դասերիգին ՍԻ-ՏԻ-Ռօմի վրայ փոխանցումը, որու՝ հանրութեան ներկայացումը կը սպասուի այս օրերուն: Նոյնպէս այս օրերուն պիտի ներկայացուի Երեւանցի յրագրողուհի Ռուզան Զաքարեանի խմբագրած «Վենետկեան Միջանուագ» հատորը, որ կը պարունակէ դասընթացքին մասին վկայութիւններ:*

**ԴԻՒԱՆ ՊՈ-ԱՐԱՔՍ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ**

## «ՔԱՐԵՐ ԺՈՂՈՒԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ»

*Մեր քարերը ամէնուր են, աշխարհի չորս ծագերուն. շատ մը քարեր կը սպասեն ժողուող մը՝ վիրենք ուղղելու հոն՝ ուր որ կարիքը կայ. շատ մը քարեր յուր իսկ չունին իրենց պարտականութենէն, ուրիշներ՝ ուծացած են արդէն, օտարացած, անուանափոխուած. քարեր կան օտար երկիրներ վարդարող, քարեր՝ ուրիշներու սպասարկող, քարեր՝ փշրուած ու յուսաբեկ, քարեր՝ ինքնամեկուսացած, քարեր՝ արդէն Հայաստան բառը մոռցած. վա՜յ քարեր ու քարեր ուշացած են ժողուողները, յամեցած ձեպի փնտռողները...:*

*«Քարեր ժողուելու ժամանակը» Հայաստանէն արձագանգուած էր, բայց՝ բոլոր յանձնառուներուն վերաբերող գործի մը ժամանակը կը յիշեցնէ, այսինքն՝ պէտք է ժողուել ազգութենէն հեռացածները, հայէ մը խրտչած ըլլալու պատճառով ազգին նկատմամբ քէն պահող տարրերը, հողին հանդէպ հաւատքն ու սէրը կորսնցուցած քարերը, հայրենիքին անծանօթ խճաքարերը, հայերէնը մոռցող փշուր-փշուր դարձած քարերը, կիսաձուլուած դիւրաբեկ քարակոյտերը:*

*Ինչպէ՞ս ժողուել ուսուցիչ-քարեր, որովհետեւ երբ ազգային դըպրոցներ դասաւանդեն կը մնան կիսասոված..., ինչպէ՞ս ժողուել գործիչ-քարեր, երբ ազգային գործիչ ըլլալուն համար կը մնայ անգործ եւ քաղցած..., ինչպէ՞ս ժողուել քարեր, երբ քարերը կկուած Արեւելքէն միայն ԱՄՆ կ'ուզեն սպրդիլ..., ինչպէ՞ս ժողուել քարեր, երբ կեանքի ու ընկերային անապահովութիւնը կը պարտադրէ շատերու փոխադրուիլ Արեւմուտք..., ինչպէ՞ս ժողուել քարեր, երբ հայ խմբագիրը կը մտմտայ անգործ մնալու սպառնալիքէն, ինչպէ՞ս ժողուել քարեր, երբ ամուսնալուծումներ, սակաւապաւակութիւններ, խառն ամուսնութիւններ, օտարացում եւ ուծացում կը հանդիսանան մեր ամէնօրեայ մտահոգութիւնները..., ինչպէ՞ս ժողուել քարեր, երբ շատեր յոգնած են «եան» կրելէ եւ ուրիշներ ամօթ կը զգան նման «չարագուշակ» ճակատագիրէ..., ինչպէ՞ս ժողուել քարեր, երբ քարերը մէկ-մէկ կը դառնան դասալիք..., ինչպէ՞ս ժողուել քարեր, երբ ոմանք տարիներ ազգին ու հայ մամուլին ծառայելէ ետք կը վարկաբեկուին եւ ոչ ոք անդրադարձ կ'ունենայ...: Հետեւաբար՝ շատ մը քարեր հեռացած են ու անմխիթար՝ անցեալին օգտակար քար եղած ըլլալնուն համար:*

*Եկած է «քարեր ժողուելու ժամանակը». եկած չէ՞ ժողուող քարեր փնտռելու եւ գտնելու ժամանակը, երբ ժամացոյցին սլաքը կը դառնայ ի հեճուկս «քարեր ժողուելու ժամանակ»ին...:*

(Յապաւումներով)

**ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

## ՔՈՉԱՐԵԱՆ-ԱԼԻԵՒ ՆՈՐ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՕԳՈՍՏՈՍ 18-ԻՆ ԽՐԻՄԻ ՄԷՋ

*Ոսկանեան ըսաւ, թէ Քոչարեան եւ Ալիեւ խաղաղութեան որոշ ծրագրի մը մասին պիտի չխօսին, այլ ընդհանուր խօսակցութիւններ պիտի ունենան:*

*Միւս կողմէ, բաւական յատկանշական են այն զեկուցումները, զորս Մինսկի խմբակին ամերիկացի պատուիրակը՝ Քէրի Քեւրնօ կու տայ Ամերիկայի Հայ Դատի յանձնախումբին կողմէ կազմակերպուած հաւաքոյթներու ընթացքին:*

*Ուշագրաւ է մանաւանդ կէտ մը: Ըստ ամերիկացի դիւանագէտին, միայն նախագահ Քոչարեան, իբրեւ Ղարաբաղի մէջ կռուած մարդ, կրնայ լուծում մը ընդունելի դարձնել ղարաբաղցիներուն: Եւ անշուշտ, այդ լուծումը համապատասխան կ'ըլլայ ամերիկեան շահերուն:*

## ԼՂ Նախագահ Արկադի Ղուկասեանի Յայտարարութիւնը

Ասիկա չի համապատասխաներ իրականութեան եւ միջազգային հանրութիւնը կը հասկնայ, որ առանց ԼՂի կարծիքը նկատի ունենալու, անկարելի է լուծել Ղարաբաղի հակամարտութիւնը: «Լեռնային Ղարաբաղը ի վիճակի է բանակցութիւններու ընթացքին պաշտպանելու իր շահերը եւ ես կը կարծեմ որ այդպիսի կարելիութիւն մը ի վերջոյ պիտի ընծայուի Ղարաբաղին: Մեր դիրքորոշումը փոփոխութիւն չէ կրած: Ղարաբաղը անկախութիւն հռչակած է եւ «տը ֆաքթօ» (գործնական գետնի վրայ) իրականացուցած է այդ անկախութիւնը: Որոշ առումով, հանրապետութեան անկախութիւնը իրականացած է նաեւ «տը իւրէ» (տեսական գետնի վրայ), քանի որ արդէն կարգ մը երկրներու մէջ կը գործեն Ղարաբաղի մնայուն ներկայացուցչութեան գրասենեակներ», ըսաւ Նախագահը:

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

*Տեղեկացանք որ համայնքիս ազգայիններէն՝ Պր. Յակոբ Գազազեան վերջերս անակնկալօրէն փոխադրուած է «Էլ Սալամ» հիւանդանոց, ուր աղիքի վիրաբուժական գործողութեան մը ենթարկուած է: Բարեբախտաբար գործողութիւնը անցած է յաջող եւ ան օրերս տուն վերադառնալով, ապաքինման շրջանի մէջ կը գտնուի:*

*Խմբագրութիւնս շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթէ իրեն:*

## ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ՆՇԱՆԱՒՈՐ ԽՄԲԱՎԱՐ ԷՄԻՆ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ՝ ՅԱՆԿԱՐԾԱՄԱՀ

Նախընթաց օր, յանկարծամահ եղաւ Հայաստանի Սենեկային նուագախումբի գլխաւոր խմբավար, Երեւանի Կոմիտաս երաժըշտանոցի օփէրային-սէմֆոնիք խմբավարութեան ամպիոնի փրոֆէսէօր՝ Էմին Խաչատուրեան: Մեծանուն խմբավարի մահը պատահեցաւ ՀՀ Կոտայք մարզի Փոքրիկ Ջորակ գիւղի իր ամարանոցին մէջ:

Էմին Խաչատուրեան իր ամբողջ կեանքը նուիրած էր երաժըշտական արուեստին ու կրթութեան: Ան աւելի քան 30 տարիներ աշխատած էր Մոսկուայի լաւագոյն սէմֆոնիք նուագախումբին հետ եւ իբրեւ գեղարուեստական եւ գլխաւոր ղեկավար, նոյն նուագախումբին հետ ձայնագրած էր մօտաւորապէս 1500 շարժապատկերներու երաժշտութիւն: Արդէն ան ինքնին հեղինակն է աւելի քան 10 շարժապատկերներու երաժշտութեան: Կատարած է նաեւ բազմաթիւ մշակումներ, որոնցմէ ամէնէն յատկանշականը Արամ Խաչատուրեանի «Սպարտակ»ն է: Ան բազմաթիւ համերգներ սարքած է զանազան երկիրներու մէջ նաեւ՝ Եգիպտոս: Էմին Խաչատուրեան 1990ին է որ վերջնականապէս հաստատուած էր Հայաստան: Իր մահը մեծ կորուստ է հայ երաժշտական մշակոյթին համար:

## ՄԱԺԱԿ ՕՀԱՆԵԱՆ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՈՂԻՄՊԻԱԿԱՆՆԵՐՈՒ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՄԻՏԷԻ ԱՆԴԱՄ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ

Համահայկական Ողիմպիականներու Կոմիտէի Նախագահ Աշոտ Մելիք Շահնազարեան նամակ մը ուղարկած է Իսթանպուլի մասնաճիւղի Ընդհանուր Քարտուղար՝ Մաժակ Չաքըր Օհանեանին եւ յայտնած է թէ ինք բաւական նեղ կացութեան մատնըւած է, երբ Իսթանպուլի մասնաճիւղը Համահայկական խաղերու Համաշխարհային Կոմիտէի անդամակցութեան համար Իսթանպուլէն առաջարկած է երեք անուններ եւ խնդրած է որ ինք կատարէ անոնցմէ մէկուն ընտրութիւնը: Պր. Մելիք Շահնազարեան իր նամակին մէջ կը նշէ որ առաջարկուած երեք անունները ալ արժէքաւոր անուններ են (Յարութիւն Վարդանեան, Մաժակ Օհանեան, եւ Վարուժան Ասլանեան) կը դժուարանայ ընտրութիւն ընելու, որովհետեւ երեքին հետ ալ կրնայ աշխատիլ: Բայց, աւելցուցած է ան, որ եթէ իրեն ձգուի, ինք պիտի նախընտրէ համաշխարհային կոմիտէի անդամակցութեան համար ընտրել

3

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

ՊԱՍՔԷԹՊՈԼ

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐԻ ԽՈՒՄԲԸ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑԱՇԱՐՔԻ ԲԱԺԱԿԻՆ ՏԻՐԱՑԱՒ

Խրախուսիչ երեւոյթ մըն է, որ վերջին քանի մը տարիներուն, գաղութէս ներս կը կազմակերպուին պասքէթպոլի համահայկական մրցաշարքեր, առանց ընդհատումի: Ամէն միութիւն տարուոյն ընթացքին իր մրցաշարքը կազմակերպելով, իր դաշտը կը հրաւիրէ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ միւս մարզական միութիւնները: Թէեւ ատեն - ատեն կը պատահի որ մրցաշարքի մը հինգ միութիւններու բոլոր խումբերը իրենց մասնակցութիւնը չի բերեն, անախորժ վիճակ մը ստեղծելով, սակայն այսքանն ալ գոհացուցիչ կը համարենք, երբ մարզասէր հասարակութիւնը, համագործակցական ոգիով տարին հինգ անգամ քով-քովի գալով, հաճելի եռուզեռ մը կը ստեղծէ քաջալերելով մեր հայ մարզիկները:



*Պր. Պերճ Թէրզեան բաժակը կը յանձնէ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի պասքէթպոլի խմբապետ՝ Արթօ Թօսունեանին: Ձախին՝ Պր. Գէորգ Կարապետեան, եւ աջին՝ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի նախագահ՝ Պր. Վրէժ Սէֆէրեան:*

Այս տարուան մրցաշարքերուն երկրորդը տեղի ունեցաւ Աղեքսանդրիոյ մէջ, Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի դաշտին վրայ, մարզասէր հոծ բազմութեան մը ներկայութեան, Ուրբաթ 21, Շաբաթ 22 եւ Կիրակի 23 Յուլիսին, բարեբախտաբար Եգիպտահայ բոլոր մարզական միութիւններու մասնակցութեամբ: (Գահիրէէն՝ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի, Հ.Մ.Ը.Մ.-Արարատի եւ Սէնթ-Թէրէզ հայկական ակումբներուն, իսկ Աղեքսանդրիայէն՝ Հ.Մ.Ը.Մ.-Կամքի եւ կազմակերպող միութեան՝ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի խումբերուն միջեւ):

Այս տարի, վարչութիւնը իր մրցաշարքը նուիրած էր այժմու իր մարզական կեդրոնի 40-ամեակին, որ սիրայօժարօրէն Միութեան տրամադրած է Հ.Բ.Ը. Միութիւնը:



*Յաղթական Խումբը՝ Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի կազմը: Ձախէն աջ. կանգնած, մարզիչ՝ Խալէտ Իպրիս, Ռաֆֆի Իսրայէլեան, Կարպիս Ճնճռեան, Կարօ Թօսունեան, Կարէն Ճնճռեան, Յակոբ Կորլեան, Արթօ Թօսունեան եւ խումբին պատասխանատու՝ Տոքթ. Արթօ Արթինեան. նստած՝ Ալէն Ժարժուրա, Այգ Գույումճեան, Սարգիս Արսէնեան եւ Վան Իսրայէլեան:*

Մրցաշարքին հովանաւորութիւնը սիրով ստանձնած էր Եգիպտահայոց առաջնորդ՝ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան եւ նախագահութիւնը՝ ասկէ 40 տարի առաջ, 1960-ին, այժմու կեդրոնի անդրանիկ վարչութեան ծրաջան փոխ ատենապետ՝ Պր. Գէորգ Կարապետեանի եւ իր ազնիւ տիկնոջ: Բաժակը նուիրած էին Հ.Բ.Ը. Միութեան ատենապետ՝ Պր. Պերճ Թէրզեան եւ իր ազնիւ տիկինը, իսկ մետայլները նուիրած էին համայնքիս մարզասէր ազգայիններէն՝ Տէր եւ Տիկին Վարդ Ալեքսանեանները:

Առաջին մրցումը սկսաւ Ուրբաթ երեկոյեան ժամը 8.30ին, Հ.Մ.Ը.Մ.-Արարատի եւ Գահիրէի Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի խումբերուն միջեւ, որ վերջացաւ ի նպաստ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի 54-38 արդիւնքով:

Երկրորդ մրցումը տեղի ունեցաւ նոյն օրը՝ գիշերուան ժամը 10-ին, Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի եւ Սէնթ-Թէրէզի խումբերուն միջեւ, որուն յաղթական դուրս եկաւ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի խումբը 54-29 արդիւնքով:

Յաջորդ օրը՝ Շաբաթ երեկոյեան, տեղի ունեցաւ մէկ մրցում մը. Գահիրէի Հ.Մ.Ը.Մ.-Նուպարը հետաքրքրական մրցում մը խաղաց Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Կամքի հետ, որուն աւարտին Հ.Մ.Ը.Մ.-Նուպարը կարողացաւ շահիլ մրցումը 1 թիւի տարբերութեամբ՝ 69-68 արդիւնքով:

Աւարտական մրցումը տեղի ունեցաւ Կիրակի 23 Յուլիսի երեկոյեան, Ուրբաթ օրուան յաղթական՝ Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.- Նուպարի եւ Շաբաթ օրուան յաղթական՝ Գահիրէի Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի խումբերուն միջեւ: Սուր մրցակցութենէ մը ետք, Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի խումբը յաջողեցաւ յաղթել մրցումը 68-57 արդիւնքով եւ տիրանալ մրցաշարքի բաժակին:

Կը շնորհաւորենք յաղթական խումբը՝ Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի կազմը եւ յատկապէս գնահատութեան խօսք ունինք նոյնինքն մրցաշարքը կազմակերպող վարչութեան, որ յաջողած էր լաւագոյնս կազմակերպել եւ գոհացում տալ բոլորին: Վարձքերնիդ կատար բոլորիդ:

**Մ. Պ.**

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ - (ԱՂԵՔՍ.)

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.- Նուպարի Սկաուտական եւ Կայտական Շարժումը ներկայիս կուգայ իր խորին շնորհակալութիւնները յայտնել Միութեանս անդամ-անդամուհիներուն, Տիկնանց Յանձնախումբի տիկիններուն, ինչպէս նաեւ Շարժումիս սկաուտներուն եւ կայտերուն ծնողաց, որոնք մեծապէս օժանդակեցին Շարժումիս կազմակերպած Կիրակի, 25 Յունիս 2000-ին «Քէրմէս»-ին յաջողութեան համար:

---

Հ.Մ.Ը.Մ. Նուպարի Աղեքսանդրիոյ վարչութիւնը ներկայիս կու գայ իր խորին շնորհակալութիւնները յայտնել Եգիպտահայ բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի, որ բարեհաճեցաւ իր հովանաւորութիւնը ընծայել եւ ներկայ գտնուիլ Միութեանս 23 Յուլիս 2000-ի Համահայկական Պասքէթպոլի մրցաշարքին, նաեւ Տէր եւ Տիկին Գէորգ Կարապետեանի, որ ստանձնեցին մրցաշարքին նախագահութիւնը, Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեանի, որ սիրայօժարօրէն նուիրեցին մրցաշարքին բաժակը եւ Տէր եւ Տիկին Վարդ Ալեքսանեանի, որ սիրով նուիրեցին մրցաշարքին մետայլները, ինչպէս նաեւ շնորհակալութիւններ Եգիպտահայ բոլոր մարզական Միութիւններուն, որոնց մասնակցութեամբ կարողացանք յաջող մրցաշարք մը ունենալ:

Շնորհակալութիւններ նաեւ բոլոր ազնիւ նուիրատուներուն, որոնք քաջալերեցին մեր մարզական ձեռնարկը:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### ԵՂԻԱՅԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿ

### 2000 - 2001 ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆ

Եղիայեան Կրթաթոշակի Յանձնաժողովը 2000 - 2001 ուսումնական տարեշրջանի համար, վերանորոգելի կրթաթոշակներէն զատ, պատրաստ է յատկացնել նաեւ նոր կրթաթոշակներ, արժանաւոր ուսանողներու.-

Սիրելի ուսանող ուսանողուհի,

Եթէ աւարտած ես երկրորդական ուսումդ եւ ստացած եգիպտական երկրորդական ուսման վկայական «ՍԱՆԱՈՒԷՅԱ ԱՄՄԱ» **ԳՐԻԳՈՐ ԵՂԻԱՅԵԱՆ** պիտի փափաքէր որ դուն ստանայիր նաեւ համալսարանական կամ հիմնարկային կրթութիւն: Ճիշդ այդ պատճառաւ ան հաստատեց իր Հիմնադրամը, այն ժամանակ երբ համալսարանական ուսումը անվճար չէր, ինչպէս է Եգիպտոսի մէջ 1952-ի Յեղափոխութենէն ետք:

Ուրեմն, եթէ կը փափաքիս շարունակել մասնագիտական ուսումդ Եգիպտական Պետական կամ ոչ-Պետական Համալսարաններու, Հիմնարկներու մէջ, եւ կը կարօտիս աջակցութեան կրնաս դիմել:

Նոյնպէս կրնաս դիմել եթէ կը փափաքիս Հայաստանի Հանրապետութեան Համալսարաններէն կամ Հիմնարկներէն մէկը յաճախել Հայագիտական նիւթեր ուսանելու եւ կամ Կրօնական ուսում ստանալու Հայկական դպրեվանքերէն մէկուն մէջ:

Մանրամասնութեան համար անձամբ ներկայանալ մեր հասցէին.-

**Եղիայեան Համալսարանական Կրթաթոշակի Յանձնաժողով**
**Առաջնորդարան Հայոց,**
**179 Ռամսէս պողոտայ, Գահիրէ**

Հանդիպման Օր.-Ուրբաթ առաւօտեան ժամը 11-1

Ուր քեզ հետ պիտի հանդիպի Յանձնաժողովի անդամներէն մին: Ան պէտք եղած լուսաբանութիւնը հաղորդելէ ետք, պիտի յանձնէ քեզի յատուկ դիմումնագիր-հարցաթուղթը APPLICATION FORM, զոր լեցնելէ ետք կը վերադարձնես մեզի ինքնութեան թուղթի եւ վերջին վիճակացոյցի պատճէններու եւ երկու անձնական լուսանկարներու հետ միատեղ:

1999-2000 Ուսումնական տարեշրջանի դիմումնագրերու ստացման վերջին պայմանաժամ՝ Ուրբաթ, Օգոստոս 11, 2000:

Այդ թուականէն շաբաթ մը ետք Յանձնախումբս պիտի ընտրէ արժանաւոր նոր կրթաթոշակառուները, վերանորոգելի կրթաթոշակառուներէն զատ, համաձայն հիմնադրամի կանոնագրին:

<u>ԿԱՐԵՒՈՐ</u>

1.- Նոյն ընտանիքէն երկու եղբայրներ կամ քոյրեր չեն կրնար արձանագրուիլ Եղիայեան Կրթաթոշակի միաժամանակ:

2.- Նախընտրութիւն կը տրուի անոնց, որոնք հայկական վարժարաններէ շրջանաւարտ են:

3.- Եղիայեան Կրթաթոշակի վճարումները կ'ըլլան փոխգիրով «չէք»ով, ուղղուած տուեալ համալսարանի կամ հիմնարկի անունին:

4.- Թեկնածուն անձնապէս կը ներկայանայ Առաջնորդարան Ուրբաթ օր մը եւ Յանձնաժողովի անդամներէն կը ստանայ դիմումնագիրը եւ լեցնելէ ետք անձամբ կը յանձնէ Առաջնորդարանի դիւանապետին:

5.- Դիմումներու վերջին թուականն է 11 Օգոստոս 2000:

Յաջողութեան մաղթանքներով՝

**ԵՂԻԱՅԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ**



## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ Հինգշաբթի 27 Յուլիս 2000-ին, մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Մանուէլ եւ Սիւզան Գրիգորեաններ բախտաւորուած են առջինեկ դստրիկով մը, զոր անուանակոչած են Վարդուհի:

Այս ուրախ առիթով խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորածինին ծնողներուն եւ ընտանեկան բոլոր պարագաներուն, մաղթելով բախտաբեր եւ երկար կեանք նորածին մանկան:

* * *

Ուրախութեամբ տեղեկացանք, որ անցեալ Շաբաթ 5 Օգոստոս 2000-ին, մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Ռուբէն եւ Ասիա Սիմոնեաններ բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Նուպար:

Այս բարեբաստիկ առիթով մեր ջերմ խնդակցութիւնները կը յայտնենք մանկան ծնողքին եւ մեծ ծնողներուն՝ Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեաններուն եւ Տիկին Մարիէտա Կապրիէլեանին(Հայաստան), ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն, մաղթելով արեւշատ եւ երջանիկ կեանք նորածինին:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատութիւն Թերթիս ազգօգուտ գործունէութեան, Տիկին Պեթի Յակոբեան (Մոնթրէալ) կը նուիրէ 50 գանատական տոլար:

Տէր եւ Տիկին Օննիկ Ֆրունճեան (Թորոնթօ) կը նուիրեն 50

## Հ.Բ.Ը.Մ.- (Գահիրէ)

Ռմն. (ընկալ. Թիւ 4623) կը նուիրէ 2800

## Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ(ԱՂԵՔՍ.)

Միութեանս կազմակերպած Համահայկական Պասքէթպոլի Մրցաշարքին յաջողութեան առթիւ, շնորհակալութեամբ ստացած ենք հետեւեալ նուիրատուութիւնները:

| | |
|---|---|
| *Տէր եւ Տիկին Գէորգ Կարապետեան* | *3500* |
| *Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան* | *2000* |
| *Տէր եւ Տիկին Անդրանիկ Մեսրոպեան* | *1000* |
| *Տէր եւ Տիկին Լեւոն Գաղթացեան* | *1000* |
| *Տէր եւ Տիկին Նուպար Սիմոնեան* | *1000* |
| *Տէր եւ Տիկին Վարուժան Գազանճեան* | *1000* |
| *Տէր եւ Տիկին Յակոբ Վարձապետեան* | *1000* |
| *Տիկին Նուրիկ Զամպաքեան* | *1000* |
| *Սէսիլ Հաստատութիւն* | *1000* |
| *Տէր եւ Տիկին Դանիէլ Ճոճոեան* | *1000* |
| *Տոքթ. եւ Տիկին Արթօ Արթինեան* | *1000* |
| *Տէր եւ Տիկին Յովսէփ Կիւմիւշեան* | *500* |
| *Տէր եւ Տիկին Արամ Սահակեան* | *500* |
| *Տէր եւ Տիկին Էտուար Դաւիթեան* | *500* |
| *Տէր եւ Տիկին Հրաչ Սիմոնեան* | *500* |
| *Տէր եւ Տիկին Մուշեղ Պասմաճեան* | *500* |
| *Տիար Վրէժ Սէֆէրեան* | *500* |
| *Տէր եւ Տիկին Բարսեղ Գրգրյեան* | *300* |
| *Տէր եւ Տիկին Պերճ Ասատուրեան* | *300* |
| *Տէր եւ Տիկին Հայկ Ասատուրեան* | *300* |
| *Տիար Կարօ Ասատուրեան* | *300* |
| *Տէր եւ Տիկին Միսաք Լէյլէկեան* | *300* |
| *Տէր եւ Տիկին Ֆրէտի Գարակէօզեան* | *300* |
| *Տէր եւ Տիկին Ճորճ Գայօմարխ* | *300* |
| *Միքայէլեան ընտանիք* | *300* |
| *Տէր եւ Տիկին Միսաք Չէչճէնեան* | *200* |
| *Տէր եւ Տիկին Մանուկ Գայփաքճեան* | *200* |
| *Տէր եւ Տիկին Նուպար Շահպազեան* | *200* |
| *Տէր եւ Տիկին Արթօ Ճոճոեան* | *200* |
| *Տիկին Ալիս Ճամճեան* | *100* |

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Կիրակի, 13 Օգոստոս 2000-ին, ՏՕՆ է ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԿՈՅՍ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ:*

*Այս առիթով, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ:*

*Պիտի պատարագէ եւ քարոզէ*

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**

*Ս. Եկեղեցւոյ դպրաց դասը պիտի ղեկավարէ Բարեշնորհ Աւագ Սարկաւագ Նշան Վարդեան:*

*Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.00-ին:*
*Ս. Պատարագ - - 10.00-ին:*

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՋԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

### 1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Ջագըր Հիմնադրամը 2000-2001 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանաւոր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով երկու լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը եւ վերջին տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները, կրնան իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան:

Սաթենիկ Ճ. Ջագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանի ա. եւ բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր եւ վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է, Աղեքսանդրիոյ համար 13 Օգոստոս 2000 եւ Գահիրէի համար 15 Օգոստոս 2000:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## <u>ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ</u>

*10 Դեկտեմբերի 2000-ին տեղի պիտի ունենայ Աղեքսանդրիայի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները:*

*Բոլոր Աղեքսանդրահայերը որ.-*

*1)Հայ Առաքելական եկեղեցիին անդամ են,*

*2)Անձնական կամ հօրմէ Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան հպատակութիւն ունին,*

*3)Ընտրութեան օրը լրացուցած կ'ըլլան 21 տարիքը,*

*4)Առնուազն 2 տարիէ ի վեր կը բնակին Աղեքսանդիա, կամ Աղեքսանդրիայի պատկանող շրջանները,*

*ներկայանան Աղեքսանդրիոյ Առաջնորդարանը, իրենց հետ ունենալով ինքնութեան քարթը եւ հպատակութեան վկայագիրը լեցնելու համար հարկ եղած դիմումնագիրը, ամենաուշը մինչեւ 30 Սեպտեմբեր 2000:*

*Ընտրելու իրաւունք ունեցող երկսեռ Աղեքսանդրահայերու անուանացանկը 10 Հոկտեմբեր 2000-ին կախուած պիտի ըլլայ Առաջնորդարանին սրահին մէջ:*

**ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ**

<u>ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆՆԵՐ</u>

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԻ 9-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**
**Ուրբաթ, 22 Սեպտեմբեր 2000**
**ԳԱՀԻՐԷ**
**Կիրակի, 24 Սեպտեմբեր 2000**

**ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՋՈՅԳ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆՆԵՐՈՒ**

## <u>ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ</u>

Սփիւռքահայ երիտասարդութեանը ազգային մշակոյթին, պատմութեանը ծանօթացնելու եւ փոխ-համագործակցութեան դաշտի ստեղծմանը օժանդակելու նպատակով, Հայաստանի Մանկավարժական Գիտութիւնների Ակադեմիան ս/թ Հոկտեմբերի 7-16-ը կազմակերպում է համահայկական փառատօն-օլիմպիադա՝ «Մարդկային ազատութիւնները եւ բնապահպանութեան հիմնախնդիրները» թեմայով:

Ներկայացուած մրցոյթ-օլիմպիադայում գետեղուած թեմաններն են՝

1. Ազատ կամքի դրսեւորման եւ բնապահպանական խնդիրների ներդաշնակութիւնը:

2. Էթնոմշակոյթ, էթնոժառանգականութիւն եւ բնապահպանութիւն:

Միջոցառումը նախատեսւում է անցկացնել Հայաստանի Հանրապետութեան Կոտայքի մարզի Ծաղկաձոր քաղաքում:

Միջոցառման ժամկէտն է 7-16 Հոկտեմբերի 2000թ:

Միջոցառման մասնակիցների տարիքը սահմանուած է 15-20 տարեկան:

Միջոցառումը ֆինանսաւորւում է համայնքների չահագրգիռ կազմակերպութիւնների եւ անհատ անձանց միջոցներով: Միջոցառմանը մասնակցելու 10-օրեայ ժամկէտի համար իւրաքանչիւր անձ կազմկոմիտէին պէտք է մուծի 300 ԱՄՆ տոլար, որի մէջ մտնում են հիւրանոցի, սննդի եւ միւս միջոցառումների ծախսերը:

Միջոցառմանը մասնակցել ցանկացողները մինչեւ ս/թ Սեպտեմբերի 10-ը պէտք է ներկայացնեն գրաւոր դիմում Մանկավարժական Գիտութիւնների Ակադեմիայի նախագահ, ակադեմիկոս Գ. Մուսայէլեանի անունով:

Միջոցառումների ծրագրին եւ փառատօն-օլիմպիադայի անցկացման պայմաններին ծանօթանալ ցանկացողները կարող են դիմել Գահիրէում ՀՀ դեսպանութիւն:

**ԳԱՀԻՐԷՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

ՀԱՅԱՍՏԱՆ

# Ս.Դ.Հ.ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԸ

Օգոստոսի 3-ին Երեւանի կենտրոնում գտնուող Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան նորաբաց կենտրոնական գրասենեակում հիւրընկալուեց Լիբանանի Հանրապետութեան դեսպան պարոն՝ Թոնի Պատարին:

Բարեկամ երկրի դեսպանը Ս.Դ.Հ.Կ. վարչութեան անդամներին ներկայացրեց Հայ - լիբանանեան միջպետական յարաբերութիւնների հետագայ զարգացման, տնտեսական կապերի ընդլայնման, արաբ - հայ ժողովուրդների բարեկամութեան ամրապնդման անհրաժեշտութեան մասին:

Պր. Թոնի Պատարին ներկայացրեց նաեւ Լիբանանի ներքաղաքական զարգացումների առաջիկայ պառլամենտական ընտրութիւնների նախապատրաստման ընթացքի մասին:

Ատենապետ ընկ. Ծորճ Յակոբեանը արաբերէն լեզուով դեսպանին ծանօթացրեց Հայաստանում Հնչակեան Կուսակցութեան գործունէութեան, երկրի քաղաքական-տնտեսական իրավիճակի մասին:

Զրոյցին մասնակցեցին վարչութեան անդամներ Հրանդ Ամիրեանը եւ Մանուկ Ստեփանեանը:

* * *

Տեղի ունեցաւ Սոցիալ Դեմոկրատ Կուսակցութեան վարչութեան հերթական նիստ: Նիստում քննարկուեցին Արմաւիրի, Վայոց Ձորի մարզային կազմակերպութիւնների գործունէութեան աշխուժացման, համահնչակեան 17-րդ համագումարի նախապատրաստման, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման եւ այլ հարցեր:

Ս.Դ.Հ.Կ. վարչութեան անդամ ընկ. Հրանդ Ամիրեանը նիստի մասնակիցներին պատմեց կուսակցութեան արխիւի հետ առնչուող հարցերի մասին:

Նիստում հանդիսաւոր պայմաններում Հնչակեան Կուսակցութեան անդամատոմս յանձնուեց Հայոց Ցեղասպանութեան Ինստիտուտ-Թանգարանի տնօրէն պատմագիտութեան դոկտոր՝ ընկ. Լավրենտի Բարսեղեանին:

«Հնչակեան կուսակցութեան անդամ լինելը մեծ պատիւ է ինձ համար, ասաց ընկ. Բարսեղեանը: Խոստանում եմ իմ ամբողջ ուժն ու աւիւնը նուիրել մեր փառապանծ կուսակցութեանը»:

* * *

2000. թիւի հոկտեմբերին լրանում է Հաճրնի հերոսամարտի 80-ամեակը: Պանծալի տարելիցը պատշաճ ձեւով նշելու համար Կոտայքի մարզի Նոր Հաճրնի քաղաքապետարանը մշակել է միջոցառումների ընդարձակ ցանկ:

Հաշուի առնելով, որ Հաճրնի հերոսամարտում իրենց դրօշը փառքով պսակեցին Հնչակեան ֆետայիները, ծրագրին ծանօթացնելու նպատակով Նոր Հաճրն էին հրաւիրուել Ս.Դ.Հ.Կ Վարչութեան ատենապետ ընկ. Ծորճ Յակոբեանը եւ վարչութեան անդամ ընկ. Հրանդ Ամիրեանը:

Նոր Հաճրնի քաղաքապետ պարոն Քեչիչեանի հետ հանդիպման ժամանակ քննարկուեցին այդ կարեւոր միջոցառմանը Հնչակեան Կուսակցութեան օժանդակութեան առնչուող հարցեր:

* * *

Սահմանադրական դատարանում տեղի ունեցաւ սեմինար, նուիրուած Անկախութեան հռչակագրի 10-ամեակին:

Սահմանադրական Դատարանի նախագահ, Իրաւագիտութեան դոկտոր Գ. Յարութիւնեանը սեմինարի մասնակիցներին շնորհաւորեց Անկախութեան հռչակագրի յոբելեանի առթիւ եւ նշեց նրա դերը մեր երկրի իրաւական ամբողջ համակարգի ձեւաւորման ու պետականութեան յետագայ զարգացման ասպարէզում:

Սեմինարին որպէս հրաւիրեալ մասնակցում էր ՍԴՀԿ-ի ատենապետ ընկ. Ծորճ Յակոբեանը:

* * *

Օգոստոսի 27-ին, կենտրոնական գրասենեակում մէջ ՍԴՀԿ-ի ատենապետ Յակոբեանին ընդունեց Հայաստանի Ժողովրդական Կուսակցութեան նախագահի պաշտօնակատար Ստեփան Դեմիրճեանը: Զրոյցի ընթացքում քննարկուեցին միջկուսակցական յարաբերութիւնների, Հայաստանի ներքաղաքական իրաւիճակի, ահռելի չափերի հասնող արտագաղթի եւ բազմաթիւ այլ հարցեր:

Կողմերը չեչտեցին միջկուսակցական շփումների անհրաժեշտութիւնը եւ պայմանաւորուեցին յառաջիկայ հանդիպման համար:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՃԱՏՐԱԿԻ ԱԽՈՅԵՆՈՒԹԵԱՆ ՄՐՑՈՒՄՆԵՐ

Երեքշաբթի, 29 Օգոստոսին, «Տիգրան Պետրոսեան» Ճատրակի Կեդրոնական Տան մէջ կայացաւ Հայաստանի ճատրակի 60րդ ախոյեանութեան մրցումներու առաջին հանգրուանը, որու ընթացքին յաղթական դուրս եկան ճատրակի բարձր վարպետներ Աշոտ Անաստասեան եւ Լեւոն Արոնեան: Առաջին օրուան մրցումներուն ճատրակի վարպետ, հանրապետութեան բազմակի ախոյեան Աշոտ Անաստասեան պարտութեան մատնեց իգական սեռի միակ ներկայացուցիչ Էլինա Դանիէլեանը, իսկ Լեւոն Արոնեան՝ Արտաշէս Մինասեանը:

Յիշեցնենք, թէ Հայաստանի Ճատրակի Ֆետէրասիոնի եւ Հայաստանի մօտ Իրանի դեսպանատան կողմէ կազմակերպուած այս մրցաշարքը նուիրուած է հայ-իրանական բարեկամութեան, որուն խորհրդանիշը կը հանդիսանայ Մեղրիի կամուրջը:

# ՍԵՒ ԾՈՎԵԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ԾԻՐԷՆ ՆԵՐՍ

## Հայաստան Ներկայացուցչութիւն Մը Պիտի Բանայ Թուրքիոյ Մէջ

1 ⇨ Սակայն, Փոխ-Նախարարը շեշտեց, թէ այս քայլը պէտք չէ այն սխալ տպաւորութիւնը ձգէ, թէ անոր միջոցաւ երկու կողմերուն միջեւ դիւանագիտական յարաբերութիւններ հաստատելու նախաքայլը առնըւած է եւ կամ Թուրքիա փոփոխութեան ենթարկած է Հայաստանի հետ կապերը բնականոնացնելու ուղղութեամբ մշակուած իր կեցուածքը: Ան աւելցուց, որ յիշեալ կեդրոնը բանալու աշխատանքները պիտի սկսին նիւթական կարգ մը հարցերու լուծումէն ետք: Մարտիրոսեանի համոզումով, Թուրքիա հաստատուած հայ դիւանագէտներուն հիմնական պարտականութիւնը պիտի ըլլայ Սեւ Ծովեան Տնտեսական Համագործակցութեան ծիրէն ներս տնտեսական գործակցութիւնը սերտացնել, սակայն ըստ Փոխ-նախարարին հայ դիւանագէտները հաւանաբար դժուարութիւններ պիտի կրեն պաշտօնական յարաբերութեանց բացակայութեանց հետեւանքով:

ՖՐԱՆՍԱ

# ՄԵԾԱՆՈՒՆ ՆԿԱՐԻՉ ԳԱՌԶՈՒ ՈՉ ԵՒՍ Է

Օգոստոս 12-ին մահացած է ֆրանսահայ մեծատաղանդ նկարիչ, Ֆրանսայի Գեղարուեստից Ակադեմիայի անդամ՝

## ԳԱՌԶՈՒ (ԳԱՌՆԻԿ ԶՈՒԼՈՒՄԵԱՆ)

Համաշխարհային համբաւ վայելող արուեստագէտը երկու տարիէ ի վեր հիւանդ էր ու կ'ապրէր մեկուսացած, Փէրիտժէօ քաղաքին մէջ: Այդ քաղաքի հիւանդանոցին մէջ է որ, մեծանուն նկարիչը իր մահկանացուն կնքած է, 93 տարեկանին:

Թաղումը կատարուած է Չորեքշաբթի, Օգոստոս 16-ին:

ԳԱՆԱՏԱ

# ՀՐԴԵՀ ՄՈՆԹՐԷԱԼԻ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻԷՆ ՆԵՐՍ

Հինգշաբթի, Օգոստոս 17-ի երեկոյեան ժամը 9-ին Մոնթրէալի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պատահած հրդեհ մը մեծ վնաս հասցուցած է յատկապէս գրադարանին, որուն կից գտնուող խոհանոցի բաժինէն ծայր առած է կրակը:

35 հրշէջներ աւելի քան մէկ ժամ աշխատած են կրակը մարելու եւ յաջողած զայն սահմանափակել նոյն տարածքին մէջ՝ առանց որ հասնի եկեղեցիէն ներս:

Եկեղեցւոյ հովիւ՝ Տէր Արարատ Գալթագճեան լրագրողներուն յայտնած է որ, տակաւին նոր աւարտած էին վերանորոգութիւնները, որոնք արժած էին 700 հազար տոլար:

Հրդեհը հաւանաբար արդիւնք էր ելեքտրական խանգարումի:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՍՏԵՓԱՆ ԴԵՄԻՐՃԵԱՆ ԿԸ ՔՆՆԱԴԱՏԷ ԻՐ ԿՈՒՍԱԿԻՑՆԵՐՈՒՆ ԴԷՄ ԿԱՏԱՐՈՒՈՂ «ՋԱՐԴԸ»

Օգոստոս 22-ին «Ազատութիւն» ռատիոկայանին տրուած հարցազրոյցի մը ընթացքին, Հայաստանի Ժողովրդական Կուսակցութեան (ՀԺԿ) ղեկավար Ստեփան Դեմիրճեան խիստ քննադատութեան ենթարկեց Հայաստանի կառավարութեան վարած քաղաքականութիւնը իր կուսակցութեան անդամներուն նկատմամբ:

Դեմիրճեան անընդունելի նկատեց «անձնական ջարդը», որու արդիւնքով Ժողովրդական Կուսակցութեան անդամ երեք փոխ-նախարարներ եւ այլ պաշտօնեաներ վերջին շրջանին հեռացուեցան իրենց պաշտօններէն: Դեմիրճեան յայտնեց թէ, քատրային այս քաղաքականութիւնը չի համապատասխաներ հանդուրժողութեան եւ յայնախոհութեան սկզբունքին:

Ստեփան Դեմիրճեան յայտնեց, որ, «Իրաւունք եւ Միաբանութեան» հետ իր գործակցութիւնը չի նշանակեր որ Ժողովրդական Կուսակցութիւնը կը պատրաստուի ընդդիմադիր ուժ դառնալ: «ՀԺԿ համագործակցութեան կողմնակից ուժ է, որ պատրաստ է բանակցելու այլ կուսակցութիւններու հետ՝ որոշ սկզբունքներու շուրջ: Սակայն այդ չի նշանակեր, որ պատրաստ ենք վազելու մէկ դաշինքէն միւսը»,- ըսաւ Ստեփան Դեմիրճեան:

ՀԺ Կուսակցութեան եւ վարչապետ Անդրանիկ Մարգարեանի միջեւ յարաբերութիւններու վատթարացումէն ետք վարչապետը սկսած է մէկ առ մէկ իրենց պաշտօներէն հեռացնել Ժողովրդական Կուսակցութեան անդամները:

Վերջին զոհը հանդիսացաւ տարածքային կառավարման եւ քաղաքաշինութեան փոխ նախարար ⇨ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՆ ԿԸ ԴԱՏԱՊԱՐՏԷ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒՐՈՊԱՅԻՆ ԽՈՍՏԱՑԱԾ ԵՆ ՕՐԻՆԱԿԱՆԱՑՆԵԼ ԱՅՐԵՐՈՒ ՄԻՋԵՒ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆԸ

## ԱՂԱՆԴՆԵՐՈՒ ԱՃՈՒՄԻ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆ Է, Կ'ԸՍԷ ԱՐՍԷՆ ԱՐՔ. ՊԵՐՊԵՐԵԱՆ

*Հայաստնեայց եկեղեցւոյ, բարձրաստիճան եկեղեցականներէն մէկը՝ Արսէն Արք. Պէրպէրեան Հայաստանէն ներս զանազան աղանդներու գործունէութեան յարաճուն սաստկացումին համար մեղադրեց երկրին իշխանութիւնները, որոնք «պէտք եղածին չափ չհակազդեցին անոնց գործունէութեան զարգացումին»:*

*Արսէն Արք. ըսաւ. «Թէեւ կրօնական ոգիի որոշ արթնացում եւ յառաջդիմութիւն արձանագրուեցաւ վերջին տասր տարիներու ընթացքին, բայց դպրոցներէն ներս կրօնական դաստիարակութեան բացակայութիւնը հետզհետէ աւելի զգալի դարձաւ: Եթէ երկրորդական վարժարաններէ ներս կրօնագիտութեան դասաւանդութիւններ ըլլան, երեխաներ կրնան հեռու մնալ աղանդներէն: Ամէն պարագայի տակ, մեր գլխաւոր յոյսը հոգեկան իմաստութիւնն է հայ մարդոց, որոնք իրենց ետին ունին Քրիստոնէութեան 1700 տարիները»:*

*Պէյրպէրեան Արք., որ Զուիցերիոյ հայ համայնքին հոգեւոր հովիւը եղած է, այս յայտարարութիւնները ըրաւ Ազդակ մամլոյ ակումբին մէջ: Եկեղեցականը ըսաւ նաեւ, թէ Հայաստանի իշխանութիւնները, Եւրոպայի Խորհուրդին անդամ ըլլալու համար, մտած են բազմաթիւ յանձնառութիւններու տակ, որոնք ներհակ են հայ ժողովուրդի մտայնութեան: Այդ յանձնառութիւններէն մէկը, որոնց տակ մտած են Հայաստանի պետական իշխանութիւնները, այրերու միջեւ ամուսնական կապերու օրինականացումն է:*

*Արքեպիսկոպոսը ըսաւ նաեւ, թէ խորհրդարանէն ներս կղերականներու բացակայութիւնը թոյլ չի տար, որ Քրիստոսի խօսքը յսուի Ազգային Ժողովին մէջ:*

ՄԱՄԼՈՅ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՇՈՒՔՈՎ ՏՕՆՈՒԵՑԱՒ ՎԵՆԵՏԻԿԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ՄՇԱԿՈՅԹԻ ԱՄԱՌՆԱՅԻՆ ԽՏԱՑԵԱԼ ԴԱՍԸՆԹԱՑՔԻ 15 ԱՄԵԱԿԸ

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՌՈԲԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ Կ'ՈՂՋՈՒՆԷ ԴԱՍԸՆԹԱՑՔԻ ՆՈՒԱՃՈՒՄՆԵՐԸ

11 եւ 12 Օգոստոսին համազգային շուքով նշուեցաւ Վենետիկի Կա Ֆոսկարի Համալսարանի Հայ Լեզուի եւ Մշակոյթի ամառնային խտացեալ դասընթացքին 15-ամեակը: Հանդիսութեան պաշտօնական հիւրերն էին՝ ՀՀ Իտալիոյ Դեսպան Տիար Գագիկ Բաղդասարեան, Երեւանի Պետ. Համալսարանի Ռեկտոր Ակադեմիկոս Փրոֆ. Ռադիկ Մարտիրոսեան, ՀՀ Գիտութիւնների Ազգային Ակադեմիայի Փոխ-Նախագահ եւ Ակադեմիկոս Քարտուղար Փրոֆ. Վլադիմիր Բարխուդարեան, UCLA-ի Հայ Արդի Պատմութեան ամբիոնավար Ակադեմիկոս Փրոֆ. Ռիչըրտ Յովհաննիսեան, Երեւանի Գեղարուեստի Ակադեմիայի Համակարգչային կրաֆիքայի, Արտամենեջմենտի եւ Գովազդի ամբիոնի վարիչ Դոկտ. Գրիգոր Վահաննեան եւ «Գարուն» ամսագրի մշակոյթի եւ արուեստի բաժնի խմբագիր Ռուզան Զաքարեան: Ուրիշ հիւրեր եւս յատկապէս ժամաներ էին Վենետիկ Ֆրանսայէն, Պելճիքայէն, Աւստրիայէն եւ Թուրքիայէն: Տօնախմբութիւնը կը հովանաւորէին ՀՀ Կրթութեան եւ Մշակոյթի նախարարները, Տեարք Էդուարդ Ղազարեան եւ Ռոլան Շառոյեան, Կա Ֆոսկարիի Ռեկտոր Փրոֆ. Մաուրիցիոյ Ռիսպոլիի ուղղուած շնորհաւորագրերով, ինչպէս նաեւ Վենետեան Նահանգի Խորհրդարանի ու Վենետիկի Գաւառային Վարչութեան Նախագահները եւ Վենետիկի Քաղաքապետը: Շնորհաւորագիր մը հասեր էր նաեւ ՀՀ ԳԱԱյի Նախագահ Փրոֆ. Ֆադէյ Սարգիսեանէ:

Հանդիսութիւնները սկսան Ուրբաթ 11 Օգոստոս կեսօրէ վերջ Համալսարանի Սանտա Մարգերիտա Աուդիտորիումին մէջ, հիւրերու, Կա Ֆոսկարիի Ռեկտորին եւ դասախօսներու, Մխիթարեան Միաբանութեան նախկին Աբբահայր Գերյ. Հ. Վարդան Քեչիչեանի, դասընթացորդներու եւ համակիր բազմութեան մը ներկայութեան: Նախ Դեսպան Բաղդասարեան կարդաց ՀՀ Նախագահ Տիար Ռ. Քոչարեանի խօսքը, ուղղուած՝ Ռեկտոր Ռիմպոլիի, որ կը շեշտէր դասընթացքին նպաստը հայ լեզուի եւ մշակոյթի պահպանման եւ ազգային դաստիարակութեան գործին, յատկապէս սփիւռքի տարածքին: Դասընթացքի հիմնադիր եւ վարիչ Հ. Լեւոն Զէքիեան կարդաց ուղերձին իտալերէն թարգմանութիւնը: Ապա երկու Ռեկտորները ողջունեցին հանրութիւնը հաստատելով կամքը շարունակելու եւ ամրացնելու համալսարաններուն փոխադարձ համագործակցութիւնը, ու փոխանակեցին նուէրներ: Հուսկ Ռեկտոր Մարտիրոսեան Երեւանի Պետական Համալսարանի ոսկեայ մետալով պարգեւատրեց Հ. Լ. Զէքիեանը: Օրուան գլխաւոր բանախօսն էր Փրոֆ. Ռ. Յովհաննիսեան, որ հատու վերլուծում մը կատարեց, անգլերէնով, հայ կեանքին եւ մշակոյթին մէջ դասընթացքին ստանձնած նշանակութեան եւ դերին, նկատելով զայն իբր «Ուղենիշ մը հայագիտական ուսումներու համար»: Այս ակադեմական բաժինը փակուեցաւ 1993ին հրատարակուած Հայերէն Խօսինք լսատեսողական դասերիգին Սիտի-Ռոմի (CD Rom) վերածման ներկայացումով: Վերածումը կատարուած է, իբր նուէր դասընթացքի տարեդարձին, Երեւանի Գեղարուեստի Ակադեմիայի Համակարգչային կրաֆիքայի ամբիոնին կողմէ ղեկավարութեամբ Դոկտ. Գրիգոր Վահանեանի, որ անձամբ բացատրեց մշակման մէջ գտնուող ծրագրին բնոյթը եւ նպատակները: Օրուան երկրորդ եւ գեղարուեստական բաժինը կը բաղկանար ՆԱՆԹՈ ՆԱՆԹՈ թատերական ներկայացումէն, Նորա Արմանիի եւ Այա Սակակիբարայի բեմադրութեամբ ու դերերով, նոյնպէս իբր նուէր դասընթացքի տարեդարձին: Փարիզաբնակ դերասանուհիներուն արդէն յաջողութիւն արձանագրած այս գործը, որ Վենետիկ եւս արժանացաւ ջերմ ծափերու, բազմալեզու (գլխաւորապէս անգլերէն) քաղուածք մըն է միջազգային քերթուածներու, արձակի եւ երաժշտութեան՝ Ուղեգնացութեան ու Սիրոյ առանցքային բնանիւթերուն շուրջ:

Շաբաթ օրուան հանդէսը տեղի ունեցաւ Մուրատ-Ռափայէլեան Վրժ.ի գեղաշուք «Հայելիներու դահլիճին»ին մէջ: Երեկոյթը բացուեցաւ Մխիթարեան Միաբանութեան նախկին Առաջնորդ, ներկայիս Հայաստանի կաթողիկէ Հայերու Առաջնորդ եւ Հ. Լ. Զէքիեանի Ս. Ղազարու մէջ ⇨ 4

## ԲԱՑ ՆԱՄԱԿ
## ՆԱԽԱԳԱՀ ՊՐՆ. ՌՈՊԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆԻՆ

Մեծայարգ Տիար Նախագահ,

Այսու կուգանք Ձեր ուշադրութեան յանձնելու յետագայ կարեւոր հարցը, որ վրդովում յառաջացուցած է սուրիահայ գաղութի լայն զանգուածներու մօտ:

Սուրիահայ այլազան կազմակերպութիւններու ներկայացուցիչներս եւ ազգայիններս զարմանքով վերահասու եղանք որ հայրենի պետութեան աջակցութեամբ եւ առանձին կազմակերպութիւններու նախաձեռնութեամբ Ամերիկայի Միացեալ Նահանգներէն Երեւան փոխադրուած է Դաշնակցական գործիչ Դրաստամատ -Դրօ- Կանայեանի աճիւնները, ամփոփելու համար Բաշ- Ապարանի 1918-ի ճակատամարտի հերոսներու յիշատակին նուիրուած Յուշակոթողին կողքին:

Թոյլ տուէք խոնարհաբար ըսելու, որ ըստ երեւոյթին Դուք մօտէն ծանօթ չէք Դրաստամատ -Դրօ- Կանայեանի կեանքին ու գործին այլազան հանգրուաններուն, զոր կու գանք լուսաբանել:

Ծանօթ է բոլորիս, որ Հայրենական Պատերազմի տարիներուն (1941-1945), շուրջ 300.000 հայ երիտասարդներ եւ մի քանի տասնեակ հայ զօրավարներ Կարմիր Բանակի շարքերուն մէջ կեանքի ու մահուան պայքար մղեցին Գերմանական Ֆաշիստ յորդաներուն դէմ, որպէսզի պաշտպանեն հայրենի սրբազան հողը եւ հայու պատիւը:

Մինչդեռ ի՞նչ բրաւ այդ օրերուն Գերմանիա հաստատուած Դրոն: Այսպէս կոչուած «Ազգային Խորհուրդը» գրաւեալ Եւրոպայի մէջ կազմեց «Հայկական Հիթլէրական Լեգէոն» մը: Ահա այդ բանակին գլուխն անցած Դրոն, Գերմանական բանակի կողքին արշաւեց Կովկաս, հասաւ մինչեւ Արմաւիր, Հայաստան ներխուժելու եւ Հիթլէրի բթամատին տակ կառավարութիւն խաղալու սին երազով:

Բարեբախտաբար 1943-ին, գերմանական ջախջախուած բանակի յառաջխաղացքը կանգ առաւ «Վոլկա»ի մօտ եւ Խորհրդային բանակի շարքերուն մէջ կռուող հայկական զօրաբաժիններու եւ «Սասունցի Դաւիթ»ի անուան թանքային զօրասիւնի հակայարձակումներուն տեղի տալով, դիմեց խուճապահար փախուստի:

«Պաղ Պատերազմ»ի տարիներուն Դրօ Կանայեան կը յայտնուի նախ Եգիպտոսի, ապա Լիբանանի մէջ, ուր գործուղուած էր մասնաւոր առաքելութեամբ: Ան Հ.Յ.Դ.-ի ղեկավարութեան մէջ կը հասնի պատասխանատու պաշտօններու: Կը կազմէ ինքնուրոյն կուսակցական գաղտնի բջիջներ եւ կը լծուի ընդյատակեայ գործունէութեան:

Օտար գաղտնի սպասարկութեան մը հրահանգով, կը ձեռնարկէ Սուրիոյ մէջ փրօ-արեւմտեան պետական հարուած մը յառաջացնելու դաւադիր աշխատանքին:

Իրեն ենթակայ շարքայիններու միջոցաւ զէնք, զինամթերք եկեղեցիներու, ակումբներու եւ դպրոցներու սալայատակներուն, որմնադարաններուն եւ դարմանատուներու սառնարաններուն մէջ յարմար առիթով օգտագործելու համար եւ հայ եւ արաբ եղբայրներու դէմ:

Դրօ կը մահանայ 1956-ին Պոսթոն գտնուած մէկ շրջանին, բայց իր հաւատարիմ հետեւորդները կը շարունակեն ընդյատակեայ անպատուաբեր արկածախնդրութիւնը:

«Չիք ինչ ծածուկ, որ ոչ յայտնեցի» կ'ըսէ ժողովրդական առածը: Անխուսափելին պատահեցաւ եւ սուրիական իշխանութիւնները տուեալ շարժումին մի քանի ղեկավարները ձերբակալելով ծանօթացան դաւադրութեան ծալքերուն բոլոր մանրամասնութեանց: Յայտնաբերուեցան զէնքերու մթերանոցները, խաբ- խայտառակ ընելով սուրիահայ գաղութը յաչս մեր սուրիացի արաբ եղբայրներուն:

Մենք կորսնցուցինք հաւատարիմ քաղաքացիի մեր համբաւը, զոր վերականգնելու համար ճիգ եւ աշխատանք թափեց մեր ժողովուրդը: Բարեբախտաբար սուրիական արդարադատ կառավարութիւնը գիտցաւ «չորը» «թացէն» զանազանել, յանցաւորը անմեղէն եւ առաջքը առաւ մասսայական հալածանքի հալածանքի:

Ահա Տիար Նախագահ, վարքագիծը «Զօրավար Դրօ»ին, «Հերոս Դրաստամատ Կանայեան»ին, որուն աճիւնները հանդիսաւոր արարողութեամբ են «ի ձայն փողոց եւ թմբուկի» յանձնեցիք Բաշ Ապարանի սուրբ հողին:

Որպէս հայկական պետութիւն եւ հայոց դարաւոր հայրենիքի նախագահ, արժանավայել շուքով եւ մեծաշուք հանդիսաւորութեամբ կը տօնէք «Մայիս 9» որպէս գերմանական Ֆաշիզմին դէմ հայ ժողովուրդին տարած փառապանծ յաղթանակի տարեդարձը եւ նոյն ամսուան մէջ հայրենի հողը կը սրբապղծէք պատմութեան դատավճիռով որպէս հայրենադաւ հռչակուած Դրոյի աճիւններով:

Սփիւռքահայութեան, յատկապէս սուրիահայութեան ջանքերով, նիւթա-բարոյական զոհողութեամբ եւ հայրենի կառավարութեան բարձր հովանաւորութեամբ հայութիւնը Արաբ ժողովուրդի հանդէպ երախտագիտութեան յուշարձան կը բարձրացնէ Երեւանի սրտին վրայ, մինչ Դուք այդ կոթողի պաշտօնական բացումին նախորդող օրերուն սուրիացի արաբ ժողովուրդին հանդէպ դաւադրութիւն սարքող տխրահռչակ անձնաւորութեան մը աճիւնները կը հիւրընկալէք հայրենիքի մէջ:

Այս անյարիրի գործելակերպը մենք կը գտնենք Հայաստանի Հանրապետութեան նախագահին հեղինակութեան եւ վայելած վարկին տրամագծօրէն խոտոր համեմատող վերաբերմունք, որ կը ծառայէ ոտնահարելու 1999-ին Երեւան կայացած հայկական համազգային Հայրենիք-Սփիւռք, այնքան յեղյեղուած եւ ջատագովուած Ազգային համերաշխութիւնը, որուն գլխաւոր ռահվիրաներէն մին Դուք հանդիսացաք, Ձեր խօսած ճառով:

Առ այդ, մեր ցանկութիւնն է որ Դուք ջանաք գտնել յարմար միջոցը դարմանելու համար գործուած աւերը որ պիտի վատ անդրադարձ ունենայ Սփիւռք-Հայրենիք յառաջիկայ փոխ յարաբերութեանց վրայ:Այս բոլորէն ետք, Ձեր ուշադրութեան կ'ուզենք յանձնել նաեւ մէկ այլ ուշագրաւ հանգամանք: Դուք կը ջանաք Հայաստանը ընդունիլ տալ Եւրոպական Միութեան մէջ: Ի՞նչ կը պատահի եթէ Եւրոպական Միութեան հակաֆաշիստ ուժերը իմանան Նիւրէնպէրկի վճիռներէն մազապուրծ ազատած մէկու մը աճիւններուն հանդիսաւոր տեղափոխումը Հայաստան...

Այս մասին ալ պարտիք մտածել:

Յարգանքներով՝

**ՍՈՒՐԻԱՀԱՅ ՄՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐ
ԵՒ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՈՐԾԻՉՆԵՐ**

## ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ ՍԹԱՄՊՈՒԼԻ ՄԷՋ
## ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ՓՐՈՖ. ՌԻՉԸՐՏ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԻ ՀԵՏ

*2000 թ. Յունիսի 15-19-ին Ստամպոլի Պողազիչի Համալսարանում (նախկինում Ռոբերդ Գոլէճ) տեղի ունեցաւ բանաւոր պատմութեան միջազգային ընկերութեան երկու տարին մէկ կազմակերպուող Հերթական՝ 11-րդ գիտաժողովը, ուր ողջ աշխարհի բանաւոր պատմաբանները Հաւաքուել էին քննարկելու «Պատմութեան քառուղիները, փորձառութիւն, յիշողութիւն, բանագիտութիւն» թեման: Գլխաւոր ենթաթեմաներից մէկն էր «Բռնութեան եւ Հակամարտութեան յիշողութիւնը», որի շուրջ Լոս Անճելըսում գտնուող Գալիֆորնիայի պետական Համալսարանի (U.C.L.A.) Փրոֆ. Ռիչըրտ Յովհաննիսեանը կազմակերպեց քննարկում, վերնագրուած «Հակամարտութեան եւ տառապանքի դէմքը քսաներորդ դարում, Հայկական փորձը»: Թէպէտ ընդամէնը մի քանի օր առաջ թեման Հանուել էր գիտաժողովի ծրագրից, Յունիսի 16-ի նիստն ի վերջոյ ընթացաւ լեփ- լեցուն դահլիճում:*

*Ստորեւ ներկայացւում է Փրոֆ. Ռիչըրտ Յովհաննիսեանի Հետ Անահիտ Մինասեանի Հարցազրոյցը: Վերջինս գիտաժողովում Հանդէս է եկել «Ֆրանսահայերի Հայրենադարձութիւնը 1940-ականներին, Հայեացք ներսից» զեկուցմամբ:*

*- Փրոֆ. Յովհաննիսեան, ի՞նչը չեզ դրդեց սթամպուլեան գիտաժողովում Հայոց Ցեղասպանութեան վերապրողների յիշողութիւնների հիման վրայ քննարկում կազմակերպել:*

-1999 թ. գարնանը տեղեկացայ, որ Բանաւոր Պատմութեան Միջազգային Ընկերութիւնն իր Հերթական գիտաժողովը կ'անցկացնի 2000 թ. Սթամպուլում՝ նուիրուած 20-րդ դարը յիշելուն, եւ ենթաթեմաներից մէկը լինելու է բռնութեան եւ Հակամարտութեան յիշողութիւնը: Անմիջապէս այսպիսի միտք յղացաւ, Լոս Անճելըսի Գալիֆորնիոյ պետական Համալսարանում իմ ուսանողների օգնութեան Հայոց Ցեղասպանութեան վերապրողների աւելի քան 800 բանաւոր պատմութիւններ ենք Հաւաքել, եւ պատշաճ կը լինի կազմակերպել առանձին նիստ-քննարկում՝ Հիմնուած Եղեռնի վերապրողների յիշողութիւնների վրայ, մանաւանդ որ գիտաժողովը տեղի էր ունենալու Սթամպուլում, ուր նիւթուել ու սաղմնաւորուել է Ցեղասպանութիւնը:

Իմ թեման էր «Դառնաչունչ յուշեր, օսմանահայերի վերջին սերունդը»: Ես սկսեցի 800 Հարցազրոյցների ժողովրդագրական վերլուծութեամբ, ապա ներկայացրի դրանց մասնակիցների երջանիկ մանկութեան յիշողութիւնների Համառօտագիրը, նրանց առօրեան, դպրոցական տարիները, արձակուրդները, սովորութիւնները, այնուհետեւ, այդ կեանքի յանկարծակի ընդհատումը, բռնագաղթի եւ կոտորածների պատճառած տեւական կսկիծը, որոշ թուրք պաշտօնեաների ու անհատների օժանդակութիւնը, որոնք ընդդիմացան Երիտ-Թուրքերի կառավարութեան վարած Ցեղասպանութեան քաղաքականութեանը: Վերջում անդրադարձայ վերապրածների փրկութեանը, նրանց յիշողութիւններին ու վերաբերմունքին՝ Սփիւռքում մի քանի տարի ապրելուց յետոյ:

*-Ովքե՞ր էին գիտաժողովի միւս մասնակիցները եւ ի՞նչ թեմայի շուրջ ելոյթ ունեցան:*

-Հայերի բանաւոր պատմութեան առնչութեամբ բնական է յիշատակել Տոնալտ Ե. Միլլըրի եւ նրա տիկնոջ՝ Լորնա Տուրեանի անունները, որոնք միասին Հարիւրից աւելի փրկուածներից Հարցազրոյց են վերցրել, Հաւաքած նիւթերի Հիման վրայ գիրք եւ մի շարք յօդուածներ գրել: Պրն. Միլլըրը, որ Հարաւային Գալիֆորնիոյ Համալսարանի Կրօնի եւ քաղաքացիական մշակոյթի կենտրոնի գործադիր տնօրէնն է, ելոյթ ունեցաւ «Ցաւագին կենսագրութիւնների յիշողութիւնը, 1915 թ. Հայոց Ցեղասպանութեան վերապրողների Հետ Հարցազրուցելիս» թեմայով: Սովորականի նման նա խորագիտակ էր եւ չիտակ՝ չջանալով թաքցնել իր մտքերը եւ սրաթափանց վերլուծութիւնը:

Քննարկման երրորդ մասնակիցը Մեծ Բրիտանիայի Բաց Համալսարանի դասախօս Ճոաննա Պորնատն էր: Ես նախկինում չէի Հանդիպել Դոկտ. Պորնատին, սակայն նամակագրական կապի մէջ էի նրա Հետ, 1988 թ. աղէտաբեր երկրաշարժից յետոյ ծեր գիւմրեցիներից (նախկինում Լենինական, Ալեքսանդրապոլ) վերցրած Հարցազրոյցների ծրագրի առնչութեամբ: Նա եւ Պամ Շէյքսփիրը, ինչպէս նաեւ իրենց Հայ Համագործակից Մարիամ Յարութիւնեանը Հարցազրոյցում գրել են, թէ ժամանակը փլուզուեց, եւ այդ ողբերգութեան թողած Հոգեխեղումն անմիջապէս կապուեց առաջին աշխարհամարտի ժամանակ ծայր առած թուրքական բռնագրաւման եւ բռնութիւնների Հետ: Նրա թեման էր «Սովորել յիշողութիւններից, աղէտեալ քաղաքի աշխատաւորների եւ ծերերի որոշ խնդիրներ»:

*-Գիտաժողովի վայրը եւ թուրքական կառավարութեան կողմից Եղեռնի շարունակական մերժումը որեւէ դժուարութիւն յարուցեցի՞ն քննարկման կազմակերպման ճանապարհին:*

-Գուցէ ընդամէնը թիւրիմացութիւն էր, սակայն ես, ի տարբերութիւն բոլոր միւս մասնակիցների, երկար ժամանակ ոչ մի ծանուցում չէի ստացել քննարկման ընդունման կապակցութեամբ: Դոկտ. Պորնատն ու ես Հետաքրքրուեցինք՝ պարզելու ուշացման պատճառները, ի պատասխան յայտնեցին, որ քննարկման առաջարկը մոռացութեան է մատնուել եւ ներողութիւն խնդրեցին: Ի վերջոյ ծանուցեցին, որ նիստն ընդունուել է:



Փրոֆ. Ռ. Յովհաննիսեանը

Աւելի ուշ իրազեկ աղբիւրներից տեղեկացանք, որ Հայկական նախաձեռնութեան վերաբերեալ տեղի են ունեցել անդրքուլիսեան խօսակցութիւններ: Փաստօրէն, դրանց պատճառով գիտաժողովի վայրը փոխուեց: Կարծիք կար, որ գիտաժողովի տեղական Հովանաւորների թւում կը լինեն Թուրքիայի Պատմութեան Հիմնարկը եւ Բանաւոր Պատմութեան Ընկերութիւնը: Նախատեսուած էր, որ նիստերի մեծ մասը տեղի կ'ունենայ Թագաւորական դրամահատարանում եւ Հին Սթամպուլի պատմական այլ չէնքերում՝ Թուրքիայի Պատմութեան Հիմնարկի Համագործակցութեան միջոցով: Հետագայ ծանուցումներում մասնակիցները տեղեկացան, որ բոլոր նիստերը կ'ընթանան Պողազիչի Համալսարանում: Միայն Սթամպուլ Հասնելուց յետոյ իմացայ, որ տեղական կազմկոմիտէի եւ Թուրքիայի Պատմութեան Հիմնարկի միջեւ տարաձայնութիւն է եղել Հայկական քննարկման վերաբերեալ, Հիմնարկը պահանջել է, որ Հայկական նիստը ծրագրից Հանուի: Թուրքական կազմկոմիտէն եւ Պողազիչի Համալսարանի պատմութեան ֆակուլտետի Բանաւոր Պատմութեան Միջազգային Ընկերութեան Միջազգային ծրագրի կոմիտէի Հետ մէկտեղ մերժեցին այդ պահանջը եւ որոշեցին քննարկումը շարունակել առանց Հիմնարկի օժանդակութեան, որը՝ Հետաքրքրական է, աւելի շատ «ձախակողմեան» Համարում ունի, երբ խօսքը վերաբերում է Թուրքական քաղաքականութեանը:

*-Հիմնարկն ի՞նչ պատճառով էր առարկում քննարկմանն ու չեր մասնակցութեանը:*

-Սոյն պատմութեան մէջ Հաւանաբար սա ամենավրդովեցնողն է: Ջանալով պատրուակ գտնել խոչընդոտելու Համար քննարկման ընդգրկմանը եւ յատկապէս անձամբ իմ մասնակցութեան, Հիմնարկը ներկայացրեց իրականում ապշեցուցիչ մամուլի Հաղորդագրութիւն, որ «H-Turk» Թուրքական Հետազօտութիւնների Web site-ում զետեղել էր Armenian Forum եռամսեայ ամսագրի խմբագիր Պրն. Վինսենթ Լիման:

Տարեսկզբին Շիքակոյի Համալսարանում մի շարք Թուրք եւ Հայ գիտնականների միջեւ կայացած նախնական երկխօսութեան մասին այդ Հաղորդագրութիւնում Պրն. Լիման վկայակոչելով իմ բացակայութիւնը՝ ինձ բնութագրել էր որպէս ռասիստ, որը Հակուած չէ նման փոխ-չփումների: Դա անհիմն յայտարարութիւն էր եւ ժամանակին ու ըստ արժանւոյն Հերքուեց, սակայն նշանակութիւն չունի՝ քանի որ Թուրքիայի պատմութեան Հիմնարկը Հզօր զէնք գտաւ պնդելու իր այն պատճառաբանութիւնը, թէ «Յովհաննիսեանն ասել է, որ ինքը Թուրքերի Հետ երբեք չի նստի բանակցութիւնների սեղանի շուրջ»:

Հետաքրքրաշարժ է, որ Շիքակոյի խորհրդաժողովին մասնակցող Թուրք գիտնականները նման տպաւորութիւն էին ստացել: Թէեւ կասկած չկայ, որ Լիմայի մամուլի Հաղորդագրութիւնը յոկ օգտագործուել է որպէս յարմար առիթ՝ կանխելու Համար Ցեղասպանութեան բաց քննարկումը Բանաւոր Պատմութեան Միջազգային Ընկերութեան գիտաժողովի ընթացքում, այնուամենայնիւ, դատապարտելի է, որ Հնարաւորութիւն ընձեռուեց Հայկական աղբիւրն օգտագործել՝ նպաստելու քննարկման կայացումն արգելելու ջանքերին:

Թերեւս բոլոր կողմերին բաւարարելու նպատակով, որպէս Թուրքական Կազմկոմիտէի վերջին ճիգ, Հայկական քննարկումը չնչուեց նախնական ծրագրում, որը Հաղորդուեց Բանաւոր Պատմութեան Միջազգային Ընկերութեան գիտաժողովի Web site-ով՝ սկսուելուց անմիջապէս առաջ: Բաց թողման վրայ իմ ուշադրութիւնը Հրաւիրեց Դոկտ. Պորնատը, եւ մենք երկուսով բողոք ներկայացրեցինք կոմիտէին: Նրան պատասխանեցին, որ աւելի յարմար էր նկատուել իր զեկոյցը զետեղել երկրաշարժերի վերաբերեալ յուշերին նուիրուած նիստում եւ որ իմ ու Միլլըրի ներկայացումներին առհասարակ լաւագոյնս կը Համապատասխանեն Հակամարտութեան եւ տառապանքի մասին լիագումար ենթանիստին: Մէկուկէս ժամանոց այդ ենթաբաժինն ունէր աւելի քան 10 ներկայացնողներ, այսինքն արտայայտուելու Համար իւրաքանչիւրը մօտաւորապէս 5 րոպէ պիտի ունենար: Մենք դա անընդունելի Համարեցինք, եւ մեր պնդման արդիւնքում առանձին քննարկումը վերջիվերջոյ վերահաստատուեց, մեզ՝ երեքիս, մեր նիստի Համար երկու ժամ յատկացուեց: Ինչպէս ինքներդ ականատես եղաք՝ դա ամենաշատ մասնակիցներ ունեցած եւ ամենաաշխոյժ քննարկումներից մէկն էր, եւ շատերի կարծիքով՝ չորս օրեայ գիտաժողովի ամենաարդիւնաւէտը:

*-Ինչպիսի՞ն են չեր տպաւորութիւնները՝ Սթամպուլում կայացած ընդունելութեան եւ գիտաժողովի արդիւնքների վերաբերեալ:*

-Ընդունելութիւնը քաղաքավարի էր եւ ջերմ: Ուսանող-օգնականները եկել էին միջազգային

4

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail:tchahagir@journalist.com.

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1433 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2000 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. — عدد رقم ١٤٣٣ — الخميس ١٤ سبتمبر ٢٠٠٠


## ԱԳՌԱՒՆԵՐԸ ԹԱՌԵՑԱՆ

Դժուար է գտնել հայ մը, որուն սիրտը չփղձկայ երբ կը լսէ անմահ Կոմիտասի յօրինած «Կռունկ» երգը: Մեր ողջ պատմութեան ողբերգութիւնը ամփոփուած է այդ յուզաթաթաւ երգին տողերուն եւ երաժշտական վերիվայրումներուն մէջ՝ կարծէք թարգմանը հանդիսանալով հայոց ողբին ու անմեկնաբանելի տուայտանքներուն: Եթէ հայոց ողբերգապատումը պիտի գրուէր բիւրաւոր էջերու մէջ, ապա բաւ է «Կռունկ»ն ու «Տըլէ Եաման»ը, որպէսզի այդ բիւրաւոր էջերը դառնային երաժշտութիւն՝ մեղեդի մը ամենադաժան քար սիրտն անգամ արիւնող: Արդարեւ, տարագիր կարօտաբաղձ հայն է որ կը կրուցէ կռունկին հետ. հայրենիքէն լուր մը կը սպասէ անկէ, ով գիտէ ուր ապաստանած է ու պանդխտացած, բայց կարօտը հայրենի կը տանջէ սիրտը անոր: Կռունկին պարտականութիւնն է բարի լուր մը տալ իր արմատներէն հարկադրաբար հեռացած հայուն, սփոփել անոր խռովեալ ու կարօտեալ հոգին, հայրենատրոփ ջերմ սիրտը անոր, որ օտարութեան ցուրտ ու դժխեմ պայմաններու տակ կ'երազէ վերադառնալ Հայաստան՝ կոչուի ան Վան թէ Բալու, Կարս թէ Մանազկերտ: Մեր ողբի պատմութիւնը՝ ահա իր ամբողջական բովանդակութեամբ եւ էութեամբ կը մեկնաբանուի պարզ ու վճիտ երգով մը՝ «Կռունկ». մեղեդի մը, որ կրնայ խլել արցունքները հայոց պատմութեան անգիտակ օտարականէն նոյնիսկ:

«Կռունկ» մնաց իր արտառուչ եւ հոգեցունց երաժշտականութեամբ երգ մը յատկապէս տարագիր հայոց մօտ, որոնք Եղեռնէն առաջ թէ անկէ ետք, մնացին հայրենիքի կարօտով ու անոր ծարաւով: Երգը յուզեց եւ կը յուզէ անոնց, որոնք ակամայ լքած են իրենց հայրենի բնօրանները եւ հանգրուանած օտար ափեր, հայրենիքէն հեռու ոստաններ:

Սակայն, այլ երգ մը եկաւ ու պահ մը մխիթարեց «Կռունկ»ին դառնութիւնը, կարծէք ըլլար սպեղանի մը երկնառաք: Խորհրդային Հայաստանի ծնունդէն եւ ապա անոր ամրապնդումէն ետք, ահա «բարի արագիլ»ով կռունկին ժխտական դերը վերածուեցաւ դրական երեւոյթի, քանզի հայը պիտի երգէր «ես ոչ անտուն եմ, ոչ էլ տարագիր, ունեմ հանգրուան, ունեմ օթեւան» եւ բարի արագիլը հայոց որդիները պիտի հրաւիրէր հոն՝ Հայաստան, որուն առաքելութիւնն էր հայոց կաւակները համախմբել մէկ երդիքի տակ: Այո, այլ թռչնակցի մը պիտի դառնար փրկութեան եւ ուրախութեան լաստ, հայրենախմբումի կոչ-հրաւէր, որպէսզի արագիլը աւետէր Հայաստանի բարգաւաճումը ի հեճուկս թշնամիներու փափաքին ու եղերամայրերու սեւացրէքեան քարոզչութեան: Արագիլին վստահուած էր կռունկին փոխարէն լաւ լուրեր հաղորդել վերածնուած եւ փառապանծ Հայաստանէն, բազմացող եւ ուռճացող Հայաստանէն, օթեւան ու իջեւան անվտանգ Հայաստանէն: Երէկի սեւ էջը փակուած էր, որպէսզի մեր սիրտերը կովանային պայծառ էջով մը շնորհիւ արագիլին, բարի արագիլին, որ հայոց կաւակները կ'ուղղէ Հայաստան, հայոց որդիները կ'առաջնորդէ Մասիսի ստորոտ: Բարեբախտաբար, ողջունելի էջ մը բացուած էր մեր պատմութեան մէջ:

Բայց... անկէ ետք, ապատ, անկախ Հայաստանը, որ կը թուէր դառնալ ոչ թէ կռունկներու եւ արագիլներու Հայաստան, այլ «արծիւներու» Հայաստան նուաճելու եւ հզօրանալու աւիւնով ու եռանդով, ահա կը յուշէ այլ թռչնակցի մը մասին: Այս անգամ դարձած է շրջագայող ու թառող «ագռաւներու» երկիր, ուր կենդանի ու արարող մարդկանց փոխան, կը վերադառնան աճիւններ, ուր կենսախինդ ու կենսաժպիտ փողոցներու եւ դէմքերու փոխան կ'երեւին անմարդ աւաններ ու խոժոռ հայեացքներ, ան կարծէք ըլլար հանդիպավայրը անշարժ հերոսներու, անկենդան արարածներու եւ լռութիւնը սիրող մարմիններու:

Կռունկին ու արագիլին փոխարինած է ագռաւը, որ կարծէք կը յուշէ մօտալուտ մահուան մասին, մահացող հոգիներու մասին, դեսպանատուներու առջեւ հերթեր ստեղծող գաղթողներու մասին: Անոնք կենդանի մեռելներ չե՞ն միթէ, որոնք կամաց-կամաց, սերունդէ-սերունդ պիտի մոռնան ազգութիւն ու հայրենիք, պիտի լքեն հող ու երդիք, օտար տափաստաններու մէջ իրենց կեանքը շարունակելու: Կիլիկիոյ հայութիւնն ու արեւմտահայութիւնը սպասեցին կռունկին խապրիկին ու մնացին հեռաւոր, ուծացան ու ձուլուեցան յուլօրէն, ապա Խ. Հայաստանի բնակիչները արագիլներ առաքեցին հոն՝ ուր հայ կայ, որպէսզի կատարուի ազգահաւաքը երանելի. անոնց յիշատակներուն վրայ, հայրենի ազատ, անկախ հանրապետութեան կերտիչները, իշխանութիւնները այժմ ցոյց կու տան ագռաւներ թառած Զանգեզուրէն մինչեւ Լոռի, Տաւուշէն մինչեւ Կումայրի:

Ագռաւները թառեցան հոն, ուր կային, կը սաւառնէին ու պէտք է սաւառնէին խիզախաբար Անդրանիկի ու Վազգէն Սարգսեանի նման արծիւներ ազատատենչ:

Ագռաւները բազմացան, որպէսզի արծիւները հեռանան, որովհետեւ՝ Կովկասի վերեւ եւս կը շրջին ագռաւներ մահագուժ՝ ժամանած հեռուներէն՝ ովկիանոսի անդիէն...:

Նոր արծիւներու սպասումով կ'ուզենք կռունկ եւ արագիլ՝ որպէսզի ալ չթառին ագռաւները մեռելաշունչ:

**ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ԱՄԵՐԻԿԱՑԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒ ՏԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԸ ԱՅՍՕՐ ՕՐԱԿԱՐԳԻ ԿԸ ԲԵՐԷ «ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԲԱՆԱՁԵՒ»Ը

Այսօր Միացեալ Նահանգներու Ներկայացուցիչներու Տան Միջազգային Յարաբերութիւններու Կոմիտէն օրակարգի պիտի բերէ Հայկական Ցեղասպանութեան բանաձեւը:

398 թիւ բանաձեւը Միացեալ Նահանգներու Նախագահէն կը պահանջէ որ Արտաքին Նախարարութեան բոլոր պաշտօնեաները ուսուցին հայկական ցեղասպանութեան նիւթին մէջ: Նոյն բանաձեւը Միացեալ Նահանգներու Նախագահէն կը պահանջէ որ 24 Ապրիլի յայտարարութիւններուն մէջ արտասանուին «Հայկական Ցեղասպանութիւն» բառերը:

Թուրք-ամերիկեան հաստատութիւնները, Ներկայացուցիչներու Տան անդամներուն ղրկուած բողոքի նամակներով եւ այցելութիւններով

➩ 3

## Նիւ Եորքի Հազարամեակի Վեհաժողովին Մէջ Հայկական Ցեղասպանութեան Ճակատում ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԹՈՒՐՔԻԱՆ ՀՐԱՒԻՐԵՑ ՃԱՆՉՆԱԼՈՒ «ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ»Ը

ՄԱԿ-ի Հազարամեակի Վեհաժողովի նիստը միջոց մը տագնապալից փուլի մէջ մտաւ երբ հայկական ցեղասպանութեան մասին խիստ բանավէճ մը ստեղծուեցաւ Թուրքիոյ ու Հայաստանի Նախագահներուն միջեւ: Հայաստանի Նախագահ Ռոպերթ Քոչարեան, որուն ճառախօսութիւնը տեղակայուած էր Թուրքիոյ Նախագահին ճառախօսութենէն երեք կարգ առաջ, իր ելոյթի ընթացքին անակնկալ կերպով անդրադարձաւ Հայկական Ցեղասպանութեան հարցին եւ ցաւ յայտնեց թէ Թուրքիա շարունակ կը մերժէ ճանչնալ այս հարցը: Քոչարեան ըսաւ որ ի՞նչ մեղք որ հայ ժողովուրդը կը ստիպուի 21րդ դար փոխադրել հարցեր, զորս ապրած է 20րդ դարու մէջ: «Թուրքիոյ այս մերժումը մեր մօտ կը հրահրէ արդար պատմութիւն որոնելու ցանկութիւն մը», ըսաւ Քոչարեան եւ աւելցուց, որ պատմութեան մէջ բազմաթիւ ազգեր անցեալի մէջ այսպիսի դժուարութիւններ ապրած են, սակայն կրցած են զանոնք յաղթահարել: Ջղջում արտայայտելը նուաստացուցիչ ու ամօթալի արարք չէ, ինք վստահ է թէ Հայաստան ու Թուրքիա կրնան հաստատել շինիչ երկխօսութիւն եւ բարի դրացութեան յարաբերութիւններ:

Նախագահ Քոչարեանի այս խօսքերը պաղ ջուրի ազդեցութիւն գործեցին ներկայ թուրք դիւանագէտներուն վրայ: Տրուած ըլլալով որ Նախագահ Սէզէր աւելի վերջ պիտի խօսէր, ան իր ճառախօսութեան մէջ վերջին վայրկեանին աւելցուած պարբերութեամբ մը պատասխանեց Նախագահ Քոչարեանի ակնարկութիւններուն եւ ըսաւ որ ցաւով դիմաւորած է Հայաստանի Նախագահին արտայայտութիւնները: Ան աւելցուց որ ո՛չ մէկը կրնայ որեւէ յաջողութիւն արձանագրել պատմութիւնը խեղաթիւրելով: Սէզէր յայտնեց թէ պատմութեան մասին վճիռ արձակելը միայն պատմաբաններուն գործն է:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՐԶԻԿՆԵՐԸ ՍԻԴՆԻ ԺԱՄԱՆԵՑԻՆ

Sydney 2000 — ARMENIA

Հայաստանի Ազգային Կոմիտէի հաղորդումով, տեղեկացանք թէ Սիտնիի 27-րդ Ողիմպիական Խաղերուն կը մասնակցին 35 հայ մարզիկ-մարզիկուհիներ, որոնք անցեալ Չորեքշաբթի օր Սիտնի ժամանած են:

Անոնք պիտի մրցակցին զանազան խաղերով, ինչպէս՝ թենիս, ծանրաբարձութիւն, յունա-հռոմէական ըմբշամարտութիւն, բռնցքամարտութիւն, նետաձգութիւն, լողալ, ճուտօ, նշանառութիւն եւ այլ խաղերով:

Այսօր՝ ինը մարզաձեւերէն Սիտնի 2000 Ողիմպիականին մասնակցելու իրաւունք նուաճած են Հայաստանցի 35 մարզիկներ: Մարզիկներուն կը միանայ մէկ այլ պահեստային մարզիկ (Training partner), 18 մարզիչներ ու մարզական պաշտօնական ներկայացուցիչներ, 6 բժիշկներ, 6

➩ 2

ՎՐԱՍՏԱՆ

## ՌՈՒՍԱԿԱՆ ԶՕՐՔԻՆ ՀԵՌԱՑՈՒՄԷՆ ԵՏՔ ՋԱՒԱԽՔ ԿՐՆԱՅ ԲՌՆԿԻԼ ՈՒ ԴԱՌՆԱԼ ԵՐԿՐՈՐԴ ՂԱՐԱԲԱՂ ՄԸ

*Երկրորդ Ղարաբաղ մը կրնայ ծնունդ առնել Ջաւախքի մէջ, ուրկէ ռուսական զօրքը կը պատրաստուի քաշուիլ:*

*Հարաւային Վրաստանի այս մարզը, որուն բնակչութիւնը ջախջախիչ մեծամասնութեամբ կը բաղկանայ հայերէ, կը գտնուի բռնկումի մը նախօրեակին*

*Հայերը դէմ են ռուսական զօրքին Ախալքալաքէն հեռացման, որովհետեւ շրջանը կրնայ խոցելի դառնալ թրքական ծաւալապաշտութեան եւ քանդել տեղական տնտեսութիւնը:*

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ԳԼԽԱՒՈՐԱԾ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԱՄԵՐԻԿԱՅԷՆ ԵՐԵՒԱՆ ՎԵՐԱԴԱՐՁԱՒ

ՀՀ Նախագահ Ռոպերթ Քոչարեանի գլխաւորած պատուիրակութիւնը, որ 4 Սեպտեմբերին Ամերիկա մեկնած էր ՄԱԿ-ի Հազարամեակի Վեհաժողովին մասնակցելու համար, Կիրակի, 10 Սեպտեմբերին Երեւան վերադարձաւ: Նախագահը օդանաւակայանին մէջ զինքը շրջապատող լրագրողներուն ըսաւ. «Ըստ իս, ՄԱԿ-ի այս վեհաժողովին Հայաստանի պատուիրակութեան մասնակցութիւնը անհրաժեշտ էր ելոյթներու, գնահատանքներու, նաեւ շփումներու առումով: Ըստ իս, գործարար շրջանակներու հետ հանդիպումներու որպէս արդիւնք, մօտիկ ապագային Հայաստանի մէջ քանի մը հազար աշխատատեղիներ պիտի բացուին»:

Խօսելով Ալիեւի հետ իր հերթական հանդիպումի մասին, Նախագահ Քոչարեան դիտել

➩ 2

## ՀՌՈՄԻ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊՕՂՈՍ Բ. ՊԱՊԸ ՅՈՒՆԻՍ 2001-ԻՆ ՊԻՏԻ ԱՅՑԵԼԷ ՀԱՅԱՍՏԱՆ

Ընդառաջելով Գարեգին Բ. Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետի եւ նախագահ Ռոպերթ Քոչարեանի հրաւէրին, Հայաստան պիտի այցելէ Կաթոլիկ եկեղեցւոյ պետ Յովհաննէս-Պօղոս Բ. Պապը: Հռոմի Պապի այցելութեան թուականը ճշդուած է Յունիս 2001:

ԼԻԲԱՆԱՆ

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱՐԴԻՒՆՔԷՆ ՀԻԱՍԹԱՓ ԱՐԱՄ Ա. ՄԻԱՍՆԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԿՈՉ ԸՐԱՒ ՀԱՅ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ

Մեծի Տանն Կիլիկիոյ կաթողիկոս Արամ Ա., մշակութային հանդիսութեան մը ընթացքին խօսք առնելով իր հիասթափութիւնը յայտնեց անցեալ ընտրութեանց արդիւնքներուն համար:

Վեհափառ ըսաւ, թէ իր հիասթափութեան պատճառն այն է, որ նորընտիր հայ երեսփոխանները իրենց խորհրդարանական աթոռները ապահովեցին առանց հայկական քուէներու մեծամասնութիւնը ունենալու:

«Պիտի նախընտրէի, որ հայ բոլոր կուսակցութիւնները բոլոր շրջաններու մէջ ընտրապայքարի իջնէին միացեալ ճակատով: Բայց պէտք է ընդունինք ընտրութեանց արդիւնքը, ինչ ալ ըլլան անոնք», շեշտեց կաթողիկոսը, աւելցնելով, թէ հաւասարապէս թիկունք կանգնած է շահած ու կորսնցուցած թեկնածուներուն:

(Լիբանանի Խորհրդարանի ընտրութիւններուն մանրամասնութիւնները՝ տես էջ 2)

ՀԱՅԱՍՏԱՆ

# Ս.Դ.Հ.ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԸ

## ՆԱԽԱՐԱՐ ՕՍԿԱՆԵԱՆ ԸՆԴՈՒՆԵՑ «ՀԱՅՐԵՆԻՔ-ՍՓԻՒՌՔ» ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՀԱՄԱԿԱՐԳՈՂ ԿՈՄԻՏԷԻ ԱՆԴԱՄՆԵՐԸ

Սեպտեմբերի 1-ին «Հայրենիք-Սփիւռք» համագործակցութիւնը համակարգող կոմիտէի նախագահութեանը ընդունեց ՀՀ Արտգործնախարար Պրն. Վարդան Օսկանեանը: Կոմիտէի նախագահի տեղակալ, Ս.Դ.Հ.Կ Հայաստանի կազմակերպութեան ատենապետ Ճորճ Յակոբեանը նախարարին ներկայացրեց Հնչակեան Կուսակցութեան նկատառումները «Հայրենիք-Սփիւռք» կապերի սերտացման ասպարէզում, արեց կոնկրետ առաջարկութիւններ:

Կողմերը պայմանաւորուեցին հանդիպումների ու խորհրդակցութիւնների միջոցով բիւրեղացնել իրենց նկատառումները հայ ժողովրդի ցրուած հատուածների շփումների ջերմացման, համահայկական կառոյցների ստեղծման գաղափարի իրագործման ուղղութեամբ:

«Հայրենիք-Սփիւռք» համագործակցութիւնը համակարգող կոմիտէի եւ ՀՀ Արտգործնախարարութեան շփումներն կ'աշխուժանան նախարարութեան կազմում նորաստեղծ Սփիւռքի պետական քարտուղարութեան միջոցով:

Հանդիպմանը մասնակցեցին եւ իրենց կարծիքները արտայայտեցին «Հայրենիք-Սփիւռք» համագործակցութիւնը համակարգող կոմիտէի նախագահ Պրն. Հ. Տէր-Եսայեանը («Հայրենիք-Սփիւռք» միութիւն կուսակցութիւն), նախագահի տեղակալներ Ա. Պետրոսեանը (ՍԻՄ) – պատմագրութեան Դոկտ.-Փրոֆ. Ս. Ստեփանեանը (Հայաստանի միացեալ առաջադիմական Կոմկուս):

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՐԶԻԿՆԵՐԸ ՍԻՏՆԻ ԺԱՄԱՆԵՑԻՆ

Sydney 2000 — ARMENIA

1 ➩ լրագրողներ, 3 մրցավարներ (իրաւարար) եւ 3 պատանեկան ճամբարի (Olympic youth camp) ներկայացուցիչներ: Պատուիրակութեան մաս կը կազմեն նաեւ Հայաստանի Ազգային Ողիմպիական Կոմիտէի (ՀԱՈԿ) 6 ներկայացուցիչներ, 8 կառավարական պաշտօնեաներ եւ 5 արուեստագէտներ: Մէկ խօսքով՝ աւելի քան 80 Հայրենի հիւրեր, որ Աւստրալահայ գաղութին համար աննախրնթաց երեւոյթ մըն է:

Տեղեկացանք թէ վաղը՝ Սեպտեմբեր 15-ին, Խաղերու բացման հանդիսաւոր արարողութեան ժամանակ, Հայաստանի Հանրապետութեան դրօշը կրելու պատիւր պիտի տրուի յունա-հռոմէական ոճի 130 քկ. կարգի ըմբիշ, Հայկազ Գալստեանին:

Վերոյիշեալ կազմակերպութեան մէջ կը գործեն՝ ՀԲԸՄ, ՀՄՄ, ՀՄԸՄ եւ Աւստրալիոյ Հայ Արեւտուրի Գրասենեակի (Armenian Chamber of Commerce) ներկայացուցիչները, յանձն առնելով դժուարին պարտականութիւնր կազմակերպելու եւ օժանդակելու Հայրենի հիւրերու եւ գաղութի միջեւ նախատեսուած բոլոր աշխատանքները:

Խաղերու մասնակցումը ինքնին յաղթանակ մըն է, նկատի առնելով Հայրենիքի նեղ պայմանները: Արդարեւ, ամէն մէկ մետալ, որ Հայաստանի պատուոյ ցանկին կը միանայ նուաճումն է շնորհիւ հսկայական նուիրումի ու անձնազոհութեան եւ միայն ջնջին նիւթական օժանդակութեան: Մեզի համար մետալները, ինչ մետաղ որ ալ ըլլան՝ ադամանդի նման յարգի են, որովհետեւ միայն հայն է որ իրապէս կը հասկնայ անոնց ետին տարուած անժխտելի իրականութիւնր:

Աթլանթայի 1996 թուականի ողիմպիականին, Հայաստան ապահովեց երկու մետալ՝ մէկ ոսկի եւ մէկ արծաթ: Սակայն մարզակեանքը կամ սպորտը մեր ժողովուրդի նկարագրի անբաժանելի մասնիկը ըլլալուն, այն ժամանակուայ Հայաստանի մարզական մեկնաբաններու գնահատումով Հայ մարզիկներու ելոյթը կը նկատուէր անբաւարար: Հակառակ որ, Հայաստան 197 երկիրներու մէջ գրաւած էր 41-րդ տեղը, առաջ անցնելով շարք մը մեծ երկիրներէն:

Ընդունուած խօսք է, թէ հիմնականը ողիմպիականին մասնակցիլն է եւ ոչ թէ միայն վերջնական յաղթանակը:

Յաջողութիւն կը մաղթենք մեր մարզիկներուն ու անհամբեր կը սպասենք Հայաստանի Հանրապետութեան հիմն ու դրօշի շարունակ բարձրացումը մարզադաշտերէն ներս:

*Սիտնի* **ՄԱՆՈՒԿ ՏԷՄԻՐՃԵԱՆ**

***

# ԸՆԿ. ՄԱՆՈՒԿ ՏԷՄԻՐՃԵԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ՈՂԻՄՊԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻ ՍԻՏՆԻԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ

*ՍԴՀԿ Աւստրալիոյ Շրջանի մարզական թեւը՝ Հայ Մարմնամարզական Միութիւնը (ՀՄՄ), իր ներկայացուցիչները ունի Հայաստանի Ազգային Ողիմպիական Կոմիտէի Սիտնիի Մասնաճիւղին մէջ, ուր ընկեր Մանուկ Տէմիրճեան կը վարէ Քարտուղարի պաշտօնը:*

*Ուրախ ենք յայտարարելու նաեւ, որ ընկ. Տէմիրճեանը նոյնպէս իրաւունք ստացած է որպէս թղթակից, մաս կազմելու 6 հոգիէ բաղկացած կազմին մէջ: Այս առթիւ կ'ուզենք Ձեզ տեղեկացնել թէ ընկ. Տէմիրճեան նոյնպէս պատրաստ է սոյն լուրերը փոխանցելու մեր լրատուական կեդրոններուն, որպէսզի աւելի շուտ միջոցներով անոնք ստացուին:*

*Արդէն իսկ որոշ ժամանակէ ի վեր ընկերը տեղեկութիւններ կը հաղորդէր «Նոր Սերունդի Ձայն» Ռատիոժամէն, Սիտնի:*

*Անոնք որոնք կ'ունկնդրեն գայն Internet-ի վրայ, նոյնպէս կարելիութիւնր ունին այդ տեղեկութիւնները քաղելու, որովհետեւ ընկերը պիտի շարունակէ տալ իր շաբթուայ հաղորդումները:*

*Internet-ի հասցէն է.-*

*http://www.hunchak.org.au*

*"Media" բաժինը "Voice of Nor Serount" Radio*

*Հայաստանի Ազգային Ողիմպիական Կոմիտէի Սիտնիի Մասնաճիւղի Internet-ի էջի հասցէն է - http://www.armenian-noc-sydney.org.au*

**ՍԴՀԿ ԱՒՍՏՐԱԼԻՈՅ ՎԱՐԻՉ ՄԱՐՄԻՆ**

# ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Տեղեկացանք որ մեր բարեկամներէն՝ Պր. Խաչիկ Գասապեան վերջերս անակնկալօրէն ստամոքսի վիրաբուժական գործողութեան մը ենթարկուած է «Քելէոփաթրա» հիւանդանոցին մէջ, որ բարեբախտաբար անցած է յաջող:

Ան այժմ իր բնակարանը վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ: Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀԱՅ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ՊԱՏՆԷՇԻ ՎՐԱՅ

…Յուլիսի երկրորդ կէսին Հարաւային Քորէայի մէջ տեղի ունեցաւ Թուաբանութեան Համաշխարհային Ողիմպիականը, որուն մասնակցեցան նաեւ վեց հայ դպրոցականներ: Հայ աշակերտներէն հինգ հոգին արժանացան երկու արծաթ եւ պրոնզ մետալներու: Անոնք աշակերտներն են Հայաստանի Կրթութեան եւ Գիտութեան Նախարարութեան ենթակայութեան տակ գործող ֆիզիք-թուաբանութեան դպրոցին եւ «Քուանտ» վարժարանին:

Հայ ողիմպիականները, խմբային հաշուարով, ԱՊՀի անդամ երկիրներու շարքին գրաւեցին 4րդ կարգը: Նշենք, որ Վրաստանի խումբին նուաճած միայն մէկ արծաթէ մետալը նոյնպէս կը պատկանի հայազգի աշակերտի մը, իսկ Ատրրպէյճեան որեւէ գրական արդիւնքի չէ հասած:

Այս ողիմպիականներու յաղթականները կրնան համապատասխան մասնագիտութիւններու գծով առանց ընդունելութեան քննութիւններու, մուտք գործել Հայաստանի համալսարաններէն ներս:

## ԿԱՐԵՒՈՐ ԾԱՌԱՏՆԿՄԱՆ ԾՐԱԳԻՐ

Լոս Անճելըսի Հայ Ճարտարագէտներու ու Գիտնականներու Կազմակերպութեան կողմէ յայտարարուեցաւ, թէ ծրագրուած է Հայաստանի մէջ գործադրել արագ աճող ծառերու նախագիծը, որու նպատակն է զարգացնել բնական փայտարտադրութեան ոլորտը ու ստեղծել տնկատարաններ՝ Արարատեան դաշտի աղային ու կրային անորակ հողատարածքներուն վրայ, որոնք չեն օգտագործուիր գիւղատնտեսութեան նպատակով: Բացի այդ, արագ աճող բարտիներն ու կաղամախիները հաւանաբար օգտագործուին ուժանիւթի, անտառատնկման եւ հողերու քայքայումը կանխելու նախագիծերուն վրայ:

«Ամերիկայի Ձայն»ի հաղորդման համաձայն, կը նախատեսուի յառաջիկայ 10 տարուան ընթացքին ստեղծել խաչասերմուած կաղամախիներու շատ ընդարձակ տնկադաշտեր: Շուրջ 130 հազար ամերիկեան ու գանատական արագ աճող բարտիներ ու կաղամախիներ արդէն իսկ տնկուած են Հայաստանի զանազան վայրերուն մէջ, 1994 թուականէն ի վեր՝ որպէս արագ աճող ծառերու ծրագրին մէկ մասը:

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ԳԼԽԱՒՈՐԱԾ 1 ➩ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ

տուաւ որ ինք եւ իր ազերի պաշտօնակիցը բացի հանդիպումներ ունենալէ, որեւէ համաձայնութիւն չեն կնքած իրարու հետ: «Թէ՛ ես, թէ՛ Ալիեւ ցանկութիւն ունինք շարունակելու մեր հանդիպումները, սակայն երկուքս ալ կը դժուարանանք գտնելու այնպիսի լուծում մը, որ ընդունելի ըլլայ հակամարտող կողմերու համար», ըսաւ Ռ. Քոչարեան:

ԼԻԲԱՆԱՆ

# ԼԻԲԱՆԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՌԱՖԻՔ ՀԱՐԻՐԻԻ ՑԱՆԿԵՐԸ ԻՐԵՆՑ ՀԱՅ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐՈՎ ԱՐՁԱՆԱԳՐԵՑԻՆ ՄԵԾ ՅԱՂԹԱՆԱԿ


Տոքթ. Եղիա Ճէրէճեան


Յակոբ Գասարճեան


Ժան Յովասափեան


Սերժ Թուրսարգիսեան


Ճորճ Գասարճի

Կիրակի, Սեպտեմբեր 3-ին տեղի ունեցան Լիբանանի խորհրդարանի ընտրութիւններու վերջին հանգրուանը, որոնց ընթացքին նախկին վարչապետ Ռաֆիք Հարիրիի գլխաւորած ընդդիմադրութեան ցանկերը տարին մեծ յաղթանակ՝ տիրանալով մայրաքաղաք Պէյրութի բոլոր 18 աթոռներուն, որոնց մէջ կային նաեւ հայկական չորս աթոռներ:

Պէյրութի շրջանին մէջ Հարիրիի ցանկերուն արձանագրած չչմեցուցիչ արդիւնքներուն գլխաւոր զոհերը դարձան վարչապետ Սալիմ Հոս իր կառավարութեան երեք անդամներով եւ Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը, որու ներկայացուցած չորս թեկնածուները կրեցին ծանր պարտութիւններ:

Հարիրիի ցանկերով յաղթական դուրս եկան նախկին երկու խորհրդարաններուն մէջ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան երեսփոխան Տոքթ. Եղիա Ճէրէճեան, Ռամկավար Ազատական Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան ատենապետ Յակոբ Գասարճեան, որ դարձաւ Լիբանանի պատմութեան մէջ առաջին Ռամկավար երեսփոխանը, անկուսակցական Ժան Յովասափեան եւ անկուսակցական Սերժ Թուրսարգիսեան: Առաջին երեքը գրաւեցին Հայ Առաքելական համայնքին սահմանուած աթոռները, իսկ Թուրսարգիսեան տիրացաւ Հայ Կաթողիկէ համայնքի աթոռին:

Դաշնակցութեան կողմէ ներկայացուած չորս թեկնածուներ՝ Յակոբ Բագրատունի (Լիբանանի ՀՅԴ ԿԿ-ի ներկայացուցիչ), նախարար Արթիւր Նազարեան (անկուսակցական), Ստեփան Ապաճեան (անկուսակցական) եւ Աբրահամ Տէտէեան (անկուսակցական) կորսնցուցին ձայներու բաւական մեծ տարբերութեամբ: Պարտուողներու շարքին էր նաեւ Ս.Դ. Հնչակեան կուսակցութեան ներկայացուցիչ Միհրան Սէֆէրեան:

Պէյրութէն դուրս, Պեքաայի նահանգի հայկական միակ աթոռին տիրացաւ անկուսակցական Ճորճ Գասարճի, որ մրցակից չունէր իր դէմ: Իսկ, Լեռնալիբանանի մէջ, շաբաթ մը առաջ տեղի ունեցած ընտրութիւններուն յաղթական դուրս եկաւ Դաշնակցութեան ներկայացուցիչ՝ Երեսփոխան Սեպուհ Յովնանեան:

Դաշնակցութիւնը, որ անցնող 50 տարիներուն օրուայ իշխանութիւններու հովանաւորած ցանկերով կը մասնակցէր ընտրութիւններուն ու պետական միջամտութիւններու եւ ճնշումներու շնորհիւ կը գրաւէր հայկական աթոռները, այս ընտրութիւններուն եւս մասնակցեցաւ պետական հովանաւորութիւն ունեցող ցանկերով: Սակայն, այս անգամ պետական ցանկերը անկարող եղան կասեցնելու Ռաֆիք Հարիրիի լաւ ֆինանսաւորուած ընտրարշաւը:

Ըստ ոչ պաշտօնական տուեալներու, միայն 8500 Հայ ընտրողներ մասնակցած են քուէարկութեան ու անոնց ձայները բաժնուած են երկու հակադիր ցանկերուն միջեւ:

Հարիրիի ցանկերով ընտրուած Հայ թեկնածուները յայտարարեցին թէ, նոր խորհրդարանէն ներս պիտի պահեն հայկական պլոքը, որ անցեալին կը ղեկավարուէր Դաշնակցութեան կողմէ: Անոնք յայտնեցին թէ, պիտի հրաւիրեն նաեւ Դաշնակցութեան անդամը, որպէսզի մաս կազմէ այդ պլոքին, միասնաբար պաշտպանելու ու հետապնդելու համար Հայ համայնքի շահերն ու իրաւունքները: Իսկ, ինչ կը վերաբերի ընդհանուր Լիբանանեան քաղաքական հարցերուն, անոնք չեշտեցին թէ, պիտի հետեւին իրենց ընտրական պլոքին:

**ՀԱՅ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐՈՒ ՍՏԱՑԱԾ ՁԱՅՆԵՐԸ.-**

| | |
|---|---|
| ՃՈՐՃ ԳԱՍԱՐՃԻ | 27027 |
| ՅԱԿՈԲ ԳԱՍԱՐՃԵԱՆ | 26233 |
| ԵՂԻԱ ՃԷՐԷՃԵԱՆ | 26157 |
| ԺԱՆ ՅՈՎԱՍԱՓԵԱՆ | 26088 |
| ՍԵՐԺ ԹՈՒՐՍԱՐԳԻՍԵԱՆ | 26062 |
| Արթիւր Նազարեան | 13628 |
| Ստեփան Ապաճեան | 13267 |
| Յակոբ Բագրատունի | 13183 |
| Միհրան Սէֆէրեան | 12209 |
| Աբրահամ Տէտէեան | 11088 |

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՄԵԾԱՄՕՐ ՀԻՒԼԷԱԿԱՅԱՆԸ ՆՈՅԵՄԲԵՐԻՆ ՊԻՏԻ ՎԵՐՍԿՍԻ ԳՈՐԾԵԼ

Մեծամօր հիւլէական գործարանը, որ Յուլիսին կանգ առած էր՝ ծրագրուած քննութիւններու եւ նորոգութիւններու համար, պիտի վերսկսի գործել Նոյեմբերի վերջերը, ըսաւ Ուժանիւթի նախարար Կարէն Գալստեան: Նախարարը աւելցուց, թէ ներկայիս արդիական կազմածներ կը զետեղուին գործարանին մէջ, զայն հիմնակուրնէ աւելի ապահով դարձնելու համար:

Խորհրդային իշխանութեան օրով կառուցուած այս գործարանը կ'արտադրէ Հայաստանի ելեկտրականութեան 40 առ հարիւրը: Երկրաշարժէն ետք, նախզգուշութեան համար փակուեցաւ, բայց 1995ին վերսկսաւ գործել, դարմանելով Հայաստանի մէջ տիրող ելեկտրականութեան տագնապը:

Եւրոպական Միութեան հետ գոյացած համաձայնութեան մը հիման վրայ, Հայաստանի կառավարութիւնը 2004 թուականին պարտաւոր է փակելու այս գործարանը, Բայց Ուժանիւթի նախարարութեան բարձրաստիճան պաշտօնատարներ ըսին, թէ հիւլէակայանը պիտի չփակուի այնքան ատեն, որ ուրիշ աղբիւր մը չէ գտնուած ելեկտրականութիւն արտադրելու համար:

Գալստեան ըսաւ, թէ մինչեւ հիմա 40 միլիոն տոլար ծախսուած է Մեծամօր ապահովութեան չափանիշերը բարելաւելու համար:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ԱՐԱՄ ԱՐԹԻՆԵԱՆ**

ընդ

**ՋԻՋԷԹ ԹԱՏՐՈՍԻ**

ԳԱՀԻՐԷ — ԿԻՐԱԿԻ 27 ՕԳՈՍՏՈՍ 2000

*Այս բարեբաստիկ առիթով խմբագրութիւնս իր խնդակցութիւնները կը յայտնէ հարսին ու փեսին, իրենց ծնողաց՝ Տէր եւ Տիկին Նակիպ Արթինեանի եւ Տէր եւ Տիկին Ադէլ Թադրոսի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն, մաղթելով նորապսակ ամոլին երջանիկ եւ անամպ կեանք:*

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ԿԱՐՕ ԱՍԱՏՈՒՐԵԱՆԻ**

ընդ

**ՍԻԼՎԱ ԿԱՊԷԵԱՆԻ**

ԳԱՀԻՐԷ — ԿԻՐԱԿԻ 3 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2000

*«Ջահակիր» այս ուրախ առթիւ իր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնէ նորապսակ ամոլին, իրենց ծնողած՝ Տիկին Աննա Ասատուրեանի եւ Տէր եւ Տիկին Սարգիս Կապէեանի, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն, մաղթելով հարսին ու փեսին արեւշատ եւ երջանիկ կեանք:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԻ 9-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Բարձր Հովանաւորութեամբ
Հ.Հ. ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ
**Ն.Գ. ՍԵՐԳԷՅ ՄԱՆԱՍԱՐԵԱՆԻ ԵՒ ԱԶՆՈՒԱՓԱՅԼ ՏԻԿՆՈՋ**
Հովանաւորութեամբ
**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐՈՒՆ**
Նախաձեռնութեամբ
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**
Մասնակցութեամբ
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՅԿԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ**
Ուրբաթ, 22 Սեպտեմբեր 2000, երեկոյեան ժամը ճիշդ 9-ին
**ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԵԼԳՈՆԵԱՆ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**
Հանդիսութեան ընթացքին
**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ ՅԱՏՈՒԿ ՀՐԱՒԷՐՈՎ**
ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ
ՕՓԵՐԱՅԻ ԵՐԳԻՉՈՒՀԻ
**ԱՆՆԱ ՄԱՅԻԼԵԱՆ**
ԴԱՇՆԱՄՈՒՐ
**ԷԼԷՆԱ ՄԵԼԻՔԵԱՆ**
ՍԻՐԱԼԻՐ ՀՐԱՒԷՐ ԲՈԼՈՐԻՆ

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ**

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ -ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՏԱՐԵԿԱՆ ԱՆԴԱՄԱԿԱՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.- Նուպարի տարեկան անդամական ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ Ուրբաթ 13 Հոկտեմբեր 2000-ի երեկոյեան ժամը 8-ին, Միութեանս «Նազարէթ Զամպաքեան» սրահին մէջ, հետեւեալ օրակարգով.-

1- Ընթերցում եւ վաւերացում նախորդ ընդհանուր ժողովի ատենագրութեան:

2- Ընթերցում եւ վաւերացում վարչութեան բարոյական համարատուութեան 1/7/99-էն 30/6/2000:

3- Ընթերցում եւ վաւերացում վարչութեան նիւթական համարատուութեան 1/7/99-էն մինչեւ 30/6/2000:

4- Ընթերցում 1999-2000 տարեշրջանի հաշուեքննիչի տեղեկագրին:

5- Ընթերցում եւ վաւերացում 2000-2001 տարեշրջանի պիւտճէի նախահաշիւին:

6- Ընթերցում եւ վաւերացում 2000-2001 տարեշրջանի գործունէութեան ծրագրին:

7- Ընտրութիւն 2000-2001 տարեշրջանի հաշուեքննիչին եւ պատուագինի որոշման:

Որոշեալ ժամուն մեծամասնութիւն չգոյանալու պարագային, ժողովը կը յետաձգուի մէկ ժամով, որմէ ետք օրինական կը նկատուի:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց չատ սիրելի եւ անմոռանալի Ողբ. Անի եւ Ռէյմոն Սուլթանեանի մահուանց 5-րդ տարելիցին առթիւ Տիկ. Աստղիկ Արապեան Տէր եւ Տիկ. Պերճ Օտապաշեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 200 |
| Եկեղեւոյ Տիկ. Խնամակալ. | 200 |
| Գահիրէի Աղքատախնամին | 200 |
| Այծեմնիկ Հանգստեան Տան | 200 |
| Հայ Կարիքի Խաչին | 200 |
| «Արեւ»ին | 200 |
| «Յուսաբեր»ին | 200 |
| «Ջահակիր»ին | 200 |

(Ստանալ Գահիրէի Ազգ. Առաջնորդարանէն)

Ողբ. Հայկ Օհաննէսեանի եւ Ողբ. Մարի Սօսոյեանի անթառամ ու քաղցր յիշատակին Տիկին Շաքէ Օհաննէսեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 25 |
| «Արեւ» | 25 |
| «Յուսաբեր»ին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

(Ստանալ «Արեւ»էն)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այսու կու գամ յայտնել իմ երախտագիտական եւ խորին շնորհակալութիւններս Տոքթ. Գէորգ Մազլումեանին, որուն խորհուրդներուն հետեւելով անմիջական գործողութեան ենթարկուեցայ եւ այսպէսով զիս ազատեց մեծ վտանգէ մը, ինչպէս նաեւ Տոքթ. Ուսամա Էլ Աքրաշին, որ յաջողութեամբ կատարեց գործողութիւնը:

Շնորհակալութիւն նաեւ բոլոր անոնց որոնք անձամբ, հեռաձայնով, կամ ծաղկեկողով դրկելով, շուտափոյթ ապաքինում մաղթեցին զիս:

**ՅԱԿՈԲ ԳԱԶԱԶԵԱՆ**

## ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԵԱՆ

**Հեռաձայնի նոր թիւերն են.-**

**7374157, 7374159**

**ՖԱՔՍ՝ 7374158**

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**

ՀԻՆԳՇ. 5 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2000

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**

ԿԻՐԱԿԻ 5 ՆՈՅԵՄԲԵՐ 2000

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն դրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք դրկել « M. BALAYAN »ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

## ԳԱՀԻՐԷ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԻ, ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 9-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԲԱՐԵԲԱՍՏԻԿ ԱՌԹԻՒ

Կիրակի, 24 Սեպտեմբեր 2000-ի առաւօտեան յընթացս Ս. Պատարագի տեղի պիտի ունենայ

**ԳՈՀԱԲԱՆԱԿԱՆ ՄԱՂԹԱՆՔ ՄԱՅՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ, ԱՆՍԱՍԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԲԱՐԳԱՒԱՃՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ**

Կը հրաւիրենք մեր համայնքի զաւակներն ու հաւատացեալները ներկայ ըլլալու արարողութեանց, աղօթելու համար մեր Հայրենիքի անկախութեան ամրապնդման եւ մեր ժողովուրդի բարօրութեան համար:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԻ 9-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Բարձր Հովանաւորութեամբ
Հ.Հ. ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ
**Ն.Գ. ՍԵՐԳԷՅ ՄԱՆԱՍԱՐԵԱՆԻ ԵՒ ԱԶՆՈՒԱՓԱՅԼ ՏԻԿՆՈՋ**
Հովանաւորութեամբ
**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐՈՒՆ**
Նախաձեռնութեամբ
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**
Մասնակցութեամբ
**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ**
Կիրակի, 24 Սեպտեմբեր 2000, երեկոյեան ժամը ճիշդ 9-ին
**ԳԱՀԻՐԷԻ ՊԵՏԱԿԱՆ ՕՓԵՐԱՅԻ ՓՈՔՐ ԴԱՀԼԻՃԻՆ ՄԷՋ**
Հանդիսութեան ընթացքին
**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ ՅԱՏՈՒԿ ՀՐԱՒԷՐՈՎ**
ԵԼՈՅԹ Կ'ՈՒՆԵՆԱՅ
ՕՓԵՐԱՅԻ ԵՐԳԻՉՈՒՀԻ
**ԱՆՆԱ ՄԱՅԻԼԵԱՆ**
ԴԱՇՆԱՄՈՒՐ
**ԷԼԷՆԱ ՄԵԼԻՔԵԱՆ**
Մուտքը հրաւէրով

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հայաստանի Հանրապետութեան Ազգային Տօնի 9-րդ Տարեդարձի տօնակատարութեան առթիւ, Կիրակի 24 Սեպտեմբեր 2000-ին, Գահիրէի Պետական Օփերայի Փոքր Դահլիճին մէջ կայանալիք հանդիսութեան հրաւէրները կարելի է ստանալ հետեւեալ կեդրոններէն.

- Գահիրէի Ազգային Առաջնորդարան
- Գահիրէի Հայ Կաթողիկէ Պատրիարքարան
- Գալուստեան Ազգ. վարժարան
- Նուպարեան Ազգ. վարժարան
- Կոկանեան Սրահ
- Հայկական Ընթերցասրահ
- Հ.Բ.Ը.Մ.
- Հ. Գ. Մ.
- Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ
- Յուսաբեր Մշակութային Միութիւն (Հել.)

## ՋԵԿՈՅՑ

Յաւէտ ողբացեալ Տէր եւ Տիկին Բարսեղ Ներսէսեան, իրենց վաղամեռիկ եւ միամօր զաւկին, Ողբ. Մատթէոս Ներսէսեանի քաղցր յիշատակին, հաստատած էին Հիմնադրամ մը:

Ներկայիս գոհունակութեամբ կը տեղեկացնենք թէ, ըստ սոյն Հիմնադրամի կանոնագրին, ընթացիկ տարուայ տոկոսային եկամուտները պիտի բաշխուին հետեւեալ կերպով.-

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 370 |
| Հայ Աղքատախնամ Ընկերակցութեան (Գահիրէ) | 370 |
| Գալուստեան Ազգ. Վարժարանին | 370 |
| Նուպարեան Ազգ. Վարժարանին | 370 |
| «Այծեմնիկ» Տիկնանց Միութեան | 370 |
| Հայ Կարիքի Խաչին | 370 |
| Ազգային Առաջնորդարանին | 246 |
| Եգ. ոսկի | 2466 |

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

**ՕՐ. ԿԱՐԻՆԷ Ն. ՏԷՕՎԼԷԹԵԱՆ**

Ընդ

**ՊՐ. ԷՄՄԱՆՈՒԷԼ Մ. ՍԻԿԱԼԱՍԻ**

ԳԱՀԻՐԷ — ՇԱԲԱԹ 16 ՍԵՊՏ. 2000

*Այս ուրախ առիթով խմբագրութիւնս իր խնդակցութիւնները կը յայտնէ խօսեցեալ զոյգին, իրենց ծնողաց՝ Տէր եւ Տիկին Նորայր Տէօվլէթեաններուն եւ Սիկալաս ընտանիքի անդամներուն, մաղթելով երջանիկ կեանք խօսեցեալներուն:*

## ՍՏԱՑԱՆՔ «ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԷՆ

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ, ինչպէս ամէն տարի, Գահիրէի Ազգային Իշխանութենէն Ե.Ո. 500 գումարը, «ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ» Հիմնադրամի հաշւոյն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այսու կու գանք խորին շնորհակալութիւններ յայտնելու մեր ընտանիքներուն, ազգակիցներուն, բարեկամներուն՝ Մոնթրէալ, Աղեքսանդրիա, Գահիրէ, Միացեալ Նահանգներ եւ բոլոր անոնց որոնք մասնակցեցան եւ իրենց ուրախութիւնը բաժնեցին մեզ հետ բոլոր միջոցներով մեր հարսանիքին առիթով, որ տեղի ունեցաւ 12 Օգոստոս 2000-ին, Մոնթրէալի Ս. Յակոբ եկեղեցիին մէջ, Տէր Արմէն Քհնյ. Իշխանեանի պսակադրութեամբ:

Շնորհակալութիւն բոլորին:

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԳԷՈՐԳ ԵՒ ԹԱԼԻՆ ՁԵՐՔԷՁԵԱՆՆԵՐ**

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այսու կու գամ իմ խորին շնորհակալութիւններս յայտնելու Տոքթ. Գէորգ Մազլումեանին, որուն խորհուրդներուն հետեւելով, անմիջական գործողութեան մը ենթարկուեցայ, նաեւ Տոքթ. վիրաբոյժ Ուսամա էլ Աթրաշին, որ յաջողութեամբ կատարեց բարդ վիրահատումը:

Երախտագիտութիւնս կը յայտնեմ նաեւ «Ջահակիր» շաբաթաթերթի խմբագրութեան, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք անձամբ, հեռաձայնով կամ ծաղկեկողով ղրկելով չուտափոյթ ապաքինում մաղթեցին ինծի:

Քաջառողջութեան մաղթանքներով բոլորին՝

**ԽԱՉԻԿ ԳԱՍԱՊԵԱՆ**

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ -ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՏԱՐԵԿԱՆ ԱՆԴԱՄԱԿԱՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.- Նուպարի տարեկան անդամական ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ Ուրբաթ 13 Հոկտեմբեր 2000-ի երեկոյեան ժամը 8-ին, Միութեանս «Նազարէթ Զամպաքեան» սրահին մէջ, հետեւեալ օրակարգով.-

1- Ընթերցում եւ վաւերացում նախորդ ընդհանուր ժողովի ատենագրութեան:

2- Ընթերցում եւ վաւերացում վարչութեան բարոյական համարատուութեան 1/7/99-էն 30/6/2000:

3- Ընթերցում եւ վաւերացում վարչութեան նիւթական համարատուութեան 1/7/99-էն մինչեւ 30/6/2000:

4- Ընթերցում 1999-2000 տարեշրջանի հաշուեքննիչի տեղեկագրին:

5- Ընթերցում եւ վաւերացում 2000-2001 տարեշրջանի պիւտճէի նախահաշիւին:

6- Ընթերցում եւ վաւերացում 2000-2001 տարեշրջանի գործունէութեան ծրագրին:

7- Ընտրութիւն 2000-2001 տարեշրջանի հաշուեքննիչին եւ պատուագինի որոշման:

Որոշեալ ժամուն մեծամասնութիւն չգոյանալու պարագային, ժողովը կը յետաձգուի մէկ ժամով, որմէ ետք օրինական կը նկատուի:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ԾԱՆՈՒՑՈՒՄ

Կը ծանուցանենք մեր սիրելի հաւատացեալ ժողովրդեան, որ Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը սկսած է գանձել Գերեզմանատան բարեզարդման, շիրիմներու եւ դամբարաններու խնամատարութեան 1996-2000 Թ.Թ. սակերը:

Կը խնդրուի մեր սիրելի ժողովուրդէն, պատրաստակամ գտնուիլ այս յոյժ յարգելի պարտականութիւնը կատարելու:

Կը խնդրուի նաեւ Արտասահմանի Հայ Մամուլէն արտատպել սոյն յայտարարութիւնը ի գիտութիւն նախկին Աղեքսանդրահայերուն:

Ցանկալի կ'ըլլար, որ նախկին Աղեքսանդրահայերը այստեղ ապրող իրենց ազգականներու եւ ծանօթներու միջոցաւ հոգան իրենց պատկանող շիրիմներուն դամբարաններուն կամ ղրկեն Ազգային Առաջնորդարան:

**Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Լեւոն Եկաւեանի (ԱՄՆ) մահուան եւ քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տիկին Անահիտ Սարգիս | 30 |
| Օր. Նարդուհի Թիւրապեան | 20 |

## ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք երաժշտագէտ խմբավար Եդուարդ Յակոբեանի «ԱՀԱ ԴՊՐՈՑԸ ՀԱՅԿԱԿԱՆ», բանաստեղծ Ժագ Յակոբեանի քերթուածներու եւ հեղինակին խմբերգներու գիրքը, տպագրութեամբ «Նուպար» տպագրատան, Գահիրէ 2000:

- «ՎԵՆԵՏԻԿԵԱՆ ՄԻՋԱՆՈՒԱԳ» աշխատասիրութիւնը՝ Ռուզան Զաքարեանի: Յօդուածներու եւ հարցազրոյցներու ժողովածու մը, նուիրուած Վենետիկի Հայ Լեզուի եւ Մշակոյթի Խտացեալ Դասընթացքի 15-ամեակին: Մաքուր տպագրութիւն, 168 էջ: Հրատարակութիւն «Ապոլոն»՝ Երեւան, 2000 Թ.:

- ՎԵՆԵՏԻԿԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ՄՇԱԿՈՅԹԻ ԱՄԱՌՆԱՅԻՆ ԽՏԱՑԵԱԼ ԴԱՍԸՆԹԱՑՔԻ հաւաքածօն պատրաստուած ՊՈ-ԱՐԱՔՍ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ նախաձեռնութեամբ, անոր 15-ամեակին առիթով:

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅՈՑ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ
ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ
ՄԱՐԳԱՐԻՏ-ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆ

ԱՀԱ
ԴՊՐՈՑԸ
ՀԱՅԿԱԿԱՆ

Ա.
ԺԱԳ ՅԱԿՈԲԵԱՆ
ՔԵՐԹՈՒԱԾՆԵՐ

Բ.
ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ
ԽՄԲԵՐԳՆԵՐ

Դաշնամուրի նուագակցութեամբ

Փափաքողներուն կը տրուի անվճար.

Ստանալու համար դիմել Գահիրէի կամ Աղեքսանդրիոյ Առաջնորդարաններու քարտուղարութեանց:

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**

ԿԻՐԱԿԻ 5 ՆՈՅԵՄԲԵՐ 2000

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## Կ'ՈՒԶՈՒԻ

Գահիրէի Ազգ. Առաջնորդարանը կարիքը ունի քարտուղարուհի մը, որ քաջատեղեակ ըլլայ հայերէն եւ արաբերէն լեզուներու, ինչպէս նաեւ համակարգիչի աշխատանքներուն:

Կը խնդրուի ձեռագիր ներկայացնել դիմումնագրերը, անհրաժեշտ տեղեկութիւններով (CV) Ազգային Առաջնորդարանի դիւանին, մինչեւ 15 Հոկտեմբեր 2000:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՎԵՐԱՊԱՏՈՒԵԼԻ ՄՈՎՍԷՍ ՃԱՄՊԱԶԵԱՆ
## ՅԱՆԿԱՐԾԱՄԱՀ

*Երկուշաբթի, Սեպտեմբեր 25-ին, Նիւ Ճըրզիի իր գրասենեակին մէջ, սրտի ծանր կաթուածի հետեւանքով, 55 տարեկանին յանկարծամահ եղած է Ամերիկայի Հայ Աւետարանչական Ընկերակցութեան գործադիր տնօրէն Վերապատուելի Մովսէս Ճամպազեան:*

*Ան եղած է նուիրեալ ղեկավար մը, սիրուած եւ յարգուած ոչ միայն Հայ Աւետարանչական համայնքներու կողմէ, այլ համայն հայ ազգին՝ հայրենիքի թէ արտերկրի մէջ:*

*Այս մեծ կորուստին փխուր առիթով «Ջահակիր» կը յայտնէ իր խորազգաց ցաւակցութիւնները Ամերիկայի Հայ Աւետարանչական Ընկերակցութեան եւ հանգուցեալի ընտանեկան բոլոր պարագաներուն:*

## ՃԱՇԿԵՐՈՅԹ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

Ի պատիւ

**Ամենայն Հայոց Կաթողիկոս**

**Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ**

Կազմակերպութեամբ

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**

ՆԱՅԼ ՀԻԼԹԸՆ Պանդոկի «Կաուհարա» սրահին մէջ

Շաբաթ 14 Հոկտ. 2000-ին յ.մ. ժամը 8.30-ին

*Փոխան նուիրատուութեան տոմսեր ստանալու համար դիմել Գահիրէի Ազգ. Առաջնորդարան:*

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՀՐԱՒԷՐ

## Ի ՊԱՏԻՒ ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏ Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Օրհնաբեր այցելութեան՝ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնը կը կազմակերպէ **պաշտօնական ճաշկերոյթ**, որ տեղի պիտի ունենայ Ուրբաթ, 13 Հոկտեմբեր 2000-ին «CLUB D'ALEXANDRIE»-ի շքեղ հիւրասրահին մէջ:

Կը հրաւիրենք համայնքի ազգայիններուն ներկայ գտնուելու այս եզակի եւ հանդիսաւոր ճաշկերոյթին:

Հրաւէրները ստանալու համար դիմել Աղեքս. Առաջնորդարան:

**ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

## 1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ԵՒ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒՄԻ ՀԱՆԴԷՍ

Հինգշաբթի, 5 Հոկտեմբեր 2000, երեկոյեան ժամը 8.30ին

«ՊԼԸՔՏԱՆԵԱՆ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Հովանաւորութեամբ

ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

ԱՏԵՆԱՊԵՏ ԳԱՀԻՐԷԻ ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ

## ՋՈՒԹԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳ

**ՆԱՅԻՐԻ ՔՐԷՏԵԱՆ – ՓՈՒՋԻԿԵԱՆԻ**

ԴԱՇՆԱԿԻ ՆՈՒԱԳԱԿՑՈՒԹԵԱՄԲ

**ՏԷՅՎԻՏ ՀԷՅԼՁԻ**

**ՅԱՅՏԱԳԻՐ**

**Սոնաթներ՝ Մոցարթէն, Կարէն Խաչատուրեանէն եւ Սեզար Ֆրանքէն**

Կիրակի, 29 Հոկտեմբեր 2000, կ.ե. ժամը 8-ին

**ԳԱՀԻՐԷԻ ՊԵՏԱԿԱՆ ՕՓԵՐԱՅԻ ՓՈՔՐ ԴԱՀԼԻՃԻՆ ՄԷՋ**

Կը խնդրուի նկատի ունենալ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),



Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail:tchahagir@journalist.com.



Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1435 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2000 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 50 եգ. Դհկ. عدد رقم ١٤٣٥ — الخميس ٢٦ أكتوبر ٢٠٠٠


## Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ՇՆՈՐՀԱԲԵՐ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՄԲ ԺԱՄԱՆԵՑ ԵԳԻՊՏՈՍ

Իրաւամբ, համայն եգիպտահայութիւնը անհուն բերկրանքի պահեր ապրեցաւ անցեալ 12-էն 18 Հոկտեմբերի օրերուն, երբ Մայր Աթոռ Ս. Էջմիածինէն Իր օրհնութիւնները բերելով, Ամենայն Հայոց 132-րդ Ազգընտիր Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Հայրապետ Իր անդրանիկ այցը կու տար Եգիպտոսի, ընդառաջելով Խպտի Ուղղափառ եկեղեցւոյ պետ՝ Ամեն. Շնուտա Գ. Պատրիարքի հրաւէրին:

Վեհափառ Հայրապետը Հինգշաբթի 12 Հոկտ.ի յետմիջօրէին, Գահիրէի միջազգային օդանաւակայան հասաւ, ընկերակցութեամբ՝ Ռումանիոյ Հայոց Թեմի առաջնորդ Գերշ. Տ. Տիրայր Արք. Մարտիկեանի, Ս. Էջմիածինի միաբան Գերշ. Տ. Արսէն Արք. Պէրպէրեանի, Ս. Էջմիածինի միջ-եկեղեցական յարաբերութիւններու պատասխանատու Գերշ. Տ. Եղնիկ Եպս. Պետրոսեանի, Կոտայքի առաջնորդ Գերշ. Տ. Առաքել Եպս. Քարամեանի, Վեհափառին գաւազանակիր Հոգշ. Տ. Արշէն Արդ. Սանոսեանի եւ ՀՀ Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի նախագահ ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեանի:

Բարձրաստիճան հիւրերու սրահին մէջ, Հայրապետին դիմաւորելու եկած էին Եգիպտոսի Արտգործ նախարարի ներկայացուցիչը, Խպտի Պատրիարք Շնուտա Գ. Պապի անձնական ներկայացուցիչը, յունաց Պատրիարքի փոխանորդը, ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Դոկտ. Սերկէյ Մանասարեան, Եգիպտահայ Թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, եգիպտահայ համայնքի ներկայացուցիչներ եւ ՀՀ դեսպանութեան անձնակազմը:



Վեհափառ Կաթողիկոսը կը պատգամէ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ. ձախին՝ Գերաշնորհ Սրբազան Հայրը, աջին՝ գաւազանակիր Հոգշ. Տ. Արշին Աբղ. Սանոսեան եւ Գահիրէի հոգեւոր հովիւ Արժ. Տ. Յովսէփ Քհնյ. Ալեքսանեան:

Ապա Վեհափառն ու Իր շքախումբը առաջնորդուեցան Ապպասիայի Խպտոց Անպա Ռուէս Պատրիարքարանը, ուր Շնուտա Գ. Պատրիարքը պաշտօնապէս դիմաւորեց Վեհին եւ խորհրդակցական հանդիպում մը ունեցաւ: Ապա յաջորդաբար հայրապետական պատգամ ուղղեցին երկու Հոգեւոր Առաջնորդները Ս. Մարկոս տաճարին մէջ ներկայ գտնուող աւելի քան հինգ հազար հաւատացեալներու առջեւ:

### ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻ

Երեկոյեան ժամը 9-ին, Վեհափառ Կաթողիկոսը Իրեն ուղեկցող շքախումբին հետ, «Հրաշափառ»ով մուտք գործեց Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր տաճար եւ ամպհովանիի ներքեւ, զանգակներու ղօղանջներով դիմաւորուեցաւ ներկայ հաւատացեալներուն կողմէ, գլխաւորութեամբ եգիպտահայոց առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի եւ ՀՀ դեսպան Դոկտ. Սերկէյ Մանասարեանի:

Ջերմ բարի գալուստի խօսքով ելոյթ ունեցաւ Առաջնորդ Սրբազան Հայրը եւ իր ուրախութիւնը յայտնեց այս օրհնաբեր այցելութեան առթիւ, որմէ ետք հրաւիրեց Վեհափառը, որ Իր անդրանիկ պատգամը փոխանցէ ներկաներուն:

Իմաստալից Իր խօսքին մէջ, Ամենայն Հայոց Կաթողիկոսը նախ ողջունեց ներկաները, ապա շեշտը դրաւ հաւատքի զօրութեան: Անդրադարձաւ հայրենի հողի նշանակութեան եւ հայրենիքի արժէքին եւ անոր զօրակցելու անհրաժեշտութեան: Վեհափառ Իր օրհնութիւնները բաշխեց բոլորին եւ սրտի Իր գոհունակութիւնը յայտնեց այն անձնաւորութիւններուն, որոնք յաջողցուցին այս այցը Եգիպտոս:

Այնուհետեւ փառաշուք թափորով Վեհափառ առաջնորդուեցաւ Ազգային Առաջնորդարանի դահլիճը: Պատշաճ խօսքով ելոյթ ունեցան Գերաշնորհ Սրբազան Հայրն ու Գերշ. Տ. Արսէն Արքեպիսկոպոսը, որմէ ետք խօսք առնելու հրաւիրուեցաւ Վեհափառ Տէրը: Ան կուռ խօսքերով արտայայտուեցաւ Մայր Աթոռ Ս. Էջմիածինէն ներս կատարուած բեղուն գործունէութեան Հայաստան քրիստոնէութիւնը պետական կրօն ➪ 3

ԷՋՄԻԱԾԻՆ

## Գարեգին Բ. Կաթողիկոսի Ուղերձը Հոկտեմբեր 27-ի Ողբերգական Իրադարձութիւններում Տարելիցին Առիթով

### Հոկտեմբեր 29-ին Սբ. Էջմիածինի Մէջ Տեղի Պիտի Ունենայ Հոգեհանգստեան Արարողութիւն՝ Ի Յիշատակ Հոկտեմբեր 27-ի Ոճրագործութեան Զոհերուն

«Սիրելի ժողովուրդ հայոց

Լրացաւ մէկ տարին ցաւալի այն իրադարձութիւնների, որոնք 1999 թ. Հոկտեմբերի 27-ին ցնցեցին և վշտով համակեցին համազգային հասարակական մեր կեանքը: Այսօր իւրաքանչիւր հայորդի իր հոգու խորքում մէկ անգամ ևս դատապարտում և մերժում է այն անմարդկային բռնութիւնը, որ արժեցաւ մեր ժողովրդի ութ զաւակների՝ պետական-քաղաքական բարձրաստիճան գործիչների կեանքերը և վտանգեց հայրենի մեր պետութեան կայունութիւնը: Ոգեկոչելով ու յարգելով յիշատակը Հայաստանի Հանրապետութեան զոհուած պետական այրերի, որոնց նուիրական երազն էր տեսնել մեր Հայրենիքի զօրացումն ու բարօրութիւնը՝ մեր ժողովուրդն այսօր հաստատում է օրինայարգ հասարակութիւն կերտելու իր կամքը և հաւաստում հայրենի անկախ պետութեան լուսաւոր գալիքի հանդէպ իր վստահութիւնը:

Յանուն Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան Մենք մէկ անգամ ևս Մեր անկեղծ ցաւակցութիւնն ենք բերում զոհուած պետական գործիչների՝ Աժ Նախագահ Կարէն Դեմիրճեանի, Վարչապետ Վազգէն Սարգսեանի, Եուրի Բախշեանի, Ռուբէն Միրոյեանի, Հենրիկ Աբրահամեանի, Արմենակ Արմենակեանի, Միքայէլ Քոթանեանի, Լեոնարտ Պետրոսեանի հարազատներին և աղօթք բարձրացնում առ Աստուած, որ երանաւէտ Իր բարձունքներում խաղաղութիւն և լոյս պարգևի նրանց հոգիներին: Թող Ամենակարող Տէրը զօրակից լինի մեզ բոլորիս առ Հայրենիքն ունեցած մեր պարտքի մէջ, որպէսզի մեր բոլորի համատեղ ջանքերով, անկեղծ նուիրումով ու անխարդախ սիրով իրական դառնայ զոհուածների լուսեղէն երազը՝ բարեշէն վաղուայ օրը մեր Հայերնիքի:

Խունկ և խնկարկում, երկնային օրհնութիւն հայոց երջանկայիշատակ պետական գործիչների շիրիմներին. անթառամ պսակ նրանց յիշատակին:

ԳԱՐԵԳԻՆ Բ.

ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

## Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ՈՃՐԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ Ա. ՏԱՐԵԼԻՑԻ ԱՌԹԻՒ

Արդէն տարի մը անցաւ այն սեւ թուականէն երբ Հոկտեմբեր 27, 1999-ին անարգ եւ անմարդկային ոճիրի ենթարկուեցան Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովի նախագահ Կարէն Դեմիրճեան, վարչապետ Վազգէն Սարգսեան եւ վեց այլ խորհրդարանի անդամներ: Հայաստանի պետականութեան եւ անոր գլխաւոր ներկայացուցիչներու դէմ ուղղուած մահացու հարուած մըն էր այս, յաւապէս ծրագրուած եւ վայրագօրէն գործադրուած:

Ոճիրէն տարի մը ետք, Հայաստանի եւ արտասահմանի լայն զանգուածներուն տակաւին անծանօթ կը մնան ոճիրին հետ կապուած թաքուն ծալքերը: Ոճրագործները, շիտակ է, կը մնան բանտարկուած, եւ սակայն, դէպքէն ահաւասիկ տարի մը ետք, ամէն ինչ մթութեան մէջ է: Այնպէս կը թուի թէ ոճիրին հետ կապուած կը մնան ամէնէն միամիտ եւ ամէնէն բարդ վարկածները, միամիտ նկատուելով անոր «անհատական նախաձեռնութիւն» ըլլալու հանգամանքը, զոր ամբողջովին կը մերժենք, իսկ բարդ վարկածը, որ միջազգային մեծ դաւ մը ըլլալու ենթադրութիւնն է:

Ամէնուն պէտք է յստակ ըլլայ թէ պետական յեղաշրջում մըն էր եղածը, որուն ետին կանգնած էին տասնեակ մը պատասխանատու հոսանքներ, սկսելով երկրի պետական աւագանիէն, անցնելով որոշ քաղաքական շրջանակներէն, հասնելու համար միջազգային այն հոսանքներուն, որոնք Հայաստանը եւ ընդհանրապէս տարածաշրջանը կ'ուզեն տեսնել քաղաքականապէս անապահով վիճակի մը մէջ:

Անուրանալի իրողութիւնը այն է որ Լեւոն Տէր-Պետրոսեանի իշխանութեան յաջորդող քաղաքական իշխանութիւնները, Նախագահ Ռոպերթ Քոչարեանի գլխաւորութեամբ, գիտակցաբար կամ ապիկարութեամբ, Հայաստանը հասցուցին այսօրուայ անմխիթար վիճակին: Օրէնսդիր եւ գործադիր իշխանութիւնները կազմալոյծ վիճակի մէջ են: Տնտեսական վիճակը կը մնայ ողբալի: Արտագաղթը ստացած է ահաւոր տարողութիւն: Անգործութիւնը ու անոր ընկերացող ընկերային եւ բարոյական սայթաքումները կը մնան տիրող երեւոյթներ: Երկիրը կը գտնուի անդունդի եզրին, ազգային, հասարակական կեանքի բոլոր մարզերու մէջ:

Ոճիրներու, յատկապէս Հոկտեմբեր 27-ի ոճիրի իրաւական հետազօտութիւնը կը մնայ քաղաքական իշխանութեանց հակակշռին տակ, որ անկարելի կը դարձնէ ոճիրի ծալքերուն յայտնաբերումը եւ յանցագործներու պատիժի ենթարկումը: Ինչ որ ոմանք, ներքին քաղաքական կայունութիւն կը նկատեն՝ խորքին մէջ քաղաքական լճացում մըն է, ճահճացում մը, որ երկրի մը բռնատիրական կարգերու յատուկ է: Դիտելով այս բոլորը, ➪ 2

## ԳԼԻՆԹԸՆԻ ՄԻՋԱՄՏՈՒԹԻՒՆԸ ՁԱԽՈՂՑՈՒՑ ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԲԱՆԱՁԵՒԸ

Հինգշաբթի, Հոկտեմբեր 19-ի երեկոյեան, Միացեալ Նահանգներու Ներկայացուցիչներու Տան խօսնակ Տէնիս Հեսթըրթ ստիպուած եղաւ Հայկական Ցեղասպանութեան բանաձեւը դուրս հանել օրակարգէն, նախագահ Պիլ Գլինթընի կտրուկ միջամտութեան եւ զգուշացումներուն պատճառաւ:

Արդարեւ, այն պահուն երբ Գոնկրէսը կը պատրաստուէր քննարկելու Ցեղասպանութեան բանաձեւը, Տէնիս Հեսթըրթ նամակ մը ստացաւ Սպիտակ Տունէն, որ ձեռքով յանձնուեցաւ իրեն: Նամակին մէջ Գլինթըն կը յայտնէր թէ բանաձեւի վաւերացումը կը սպառնայ Ամերիկայի Ազգային շահերուն եւ աւելի կը բորբոքէ կիրքերը Միջին Արեւելքի շրջանէն ներս:

Նամակին յաջորդած հեռաձայնային խօսակցութեան ընթացքին Գլինթըն զգուշացուցած է, որ Բանաձեւի վաւերացումը վտանգի տակ կը դնէ ամերիկացիներու կեանքը:

Խօսնակ Հեսթըրթ յայտարարութիւն մը հրապարակելով յայտնեց, որ ինք համաձայն էր բանաձեւի քննարկումին եւ վստահ էր անոր յաջողութեան: «Սակայն երբ նախագահ Գլինթըն դիմեց ինծի եւ մտահոգութիւն յայտնեց, որ ամերիկացիներու կեանքը խնդրոյ առարկայ է՝ տագնապի այս ➪ 4

## ՈՒՐՈՒԿՈՒԷՅԻ ԾԵՐԱԿՈՅՏԸ ՄԻԱՁԱՅՆՈՒԹԵԱՄԲ ՃԱՆՉՑԱՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

Ուրուկուէյի հանրապետութեան Ծերակոյտը Հոկտեմբեր 18-ին միաձայնութեամբ ընդունեց որոշում, ըստ որու »Ապրիլ 24-ը կը յայտարարուի 1915 թուականի Հայոց Ցեղասպանութեան Նահատակներու յիշատակման օր«:

Ուրուկուէյը աշխարհի առաջին երկիրն էր, որ 1965-ին Ապրիլ 24-ը յայտարարեց որպէս Հայ նահատակներու ոգեկոչման օր:

Նիստի ընթացքին օրինագիծի հեղինակը՝ ծերակուտական Ալպերթօ Սիտ յայտնած է թէ, իրենց նպատակն է մնայուն կերպով վերահաստատել Ուրուկուէյի կեցուածքը, գրաւոր օրէնքի միջոցով:

Բացատրելով իր դրական քուէն, ծերակուտական Եամանդու Ֆաուն ըսած է.- «Այս երկրորդ դատապարտումով, երկրորդ անգամ է որ արդարութիւն կը կատարենք օրէնսդրական ճանապարհով հայերու դէմ գործուած ոդբերգութեան համար: Ու նաեւ միջազգային համայնքին կը յայտնենք, թէ ինչ լաւ պիտի ըլլար, եթէ օրինակ վերցնէին այս փոքր ու համեստ երկրէն Ցեղասպանութեան կապակցութեամբ»:

➪ 4

ԾԱՅՐԱԳՈՅՆ ՊԱՏՐԻԱՐՔ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ — ՄԱՅՐ ԱԹՈՌ Ս. ԷՋՄԻԱԾԻՆ

## Ամենայն Հայոց Կաթողիկոսի Բարձր Տնօրինութեամբ Նշանակուած է Գերագոյն Հոգեւոր Խորհուրդի Նոր Կազմը

### Անդրանիկ Նիստը Պիտի Գումարուի Նոյեմբերի 6էն 7-ը

Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոսի բարձր տնօրինութեամբ նշանակուել է Գերագոյն Հոգեւոր Խորհրդի նոր կազմը:

Ի պաշտօնէ Գերագոյն Հոգեւոր Խորհուրդը նախագահում է Ամենայն Հայոց Կաթողիկոսը, Խորհրդի ատենապետներ են Երուսաղէմի Հայոց Պատրիարք Ամենապատիւ Տ. Թորգոմ Արք. Մանուկեանը եւ Կոստանդնուպոլսի Հայոց Պատրիարք Ամենապատիւ Տ. Մեսրոպ Արք. Մութաֆեանը:

Գերագոյն Հոգեւոր Խորհրդի կազմում ընդգրկուած են`

1. Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան
2. Գերշ. Տ. Վաչէ Արք. Յովսէփեան
3. Գերշ. Տ. Գիւտ Արք. Նագգաշեան
4. Գերշ. Տ. Աղան Արք.. Պալիօզեան
5. Գերշ. Տ. Մեսրոպ Արք. Գրիգորեան
6. Գերշ. Տ. Պարգեւ Արք. Մարտիրոսեան
7. Գերշ. Տ. Գիսակ Արք. Մուրադեան
8. Գերշ. Տ. Խաժակ Արք. Մարտիրոսեան
9. Գերշ. Տ. Յովնան Արք. Տէրտէրեան
10. Գերշ. Տ. Եզնիկ Եպս. Պետրոսեան
11. Գերշ. Տ. Սեպուհ Եպս. Չուլջեան
12. Գերշ. Տ. Նաւասարդ Եպս. Կճոյեան
13. Գերշ. Տ. Փառէն Եպս. Աւետիքեան
14. Ակադեմիկոս Վլատիմիր Բարխուդարեան
15. Փրոֆ. Ռաֆայէլ Պապայեան
16. Տիար Ազատ Պողոյեան
17. Տիար Էդուարդ Ժաքեան

Վեհափառ Հայրապետի նախագահութեամբ Գերագոյն Հոգեւոր Խորհուրդը նոր կազմով իր անդրանիկ նիստը կը գումարի Նոյեմբերի 6-7-ը:

## ԳԱՐԵԳԻՆ Բ. ԿԱԹՈՂԻԿՈՍ. «ԵՐԱՆԻ ՆՐԱՆՑ, ՈՎՔԵՐ ԹՈՂՆՈՒՄ ԵՆ ԱՐԺԱՆԻ ԳՈՐԾԵՐ»

Մայր Աթոռի մամլոյ դիւանից ԱՐՄԷՆՓՐԵՍԻՆ յայտնեցին, որ Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոսը, աւարտելով պաշտօնական այցը Եգիպտոս եւ Եթովպիա` Խըպտի եւ Թեւահեդո քոյր եկեղեցիների հոգեւոր պետերին, Հոկտեմբերի 22-ին վերադարձաւ Մայր Աթոռ Սբ. Էջմիածին:

Հոկտեմբերի 23-ին Վեհափառ Հայրապետը ներկայ է գտնուել Վազգէն Սարգսեանի յիշատակին նուիրուած «Ոգու փորձութիւն» գրքի շնորհանդէսին եւ իր շնորհաւորանքը, գնահատանքն ու օրհնութիւնն է տուել գրքի հրատարակութիւնը նախաձեռնած ՀՀ Սահմանադրական դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեանին, գրքի հովանաւոր Հրայր Յովնանեանին ու միւս հրատարակիչներին:

Շնորհանդէսին ներկայ էին ՀՀ ԱԺ նախագահ Արմէն Խաչատրեանը, բարձրաստիճան պետական պաշտօնեաներ, պատգամաւորներ, մտաւորականներ:

## ԱՆՑԱՆ ՏԱՐԻՆԵՐԸ

Գացին լաւ օրերը
Տարի՛ր այդ լաւ օրերը
Անվերադարձ գացին,
Ա՜խ, եթէ կարենայի վերադարձնել, ափսոս...

Առանց քեզ ես ի՞նչ ընեմ,
Խելագարի պէս կը փնտռեմ,
Չեմ գիտեր, թէ ի՞նչ ընեմ,
Կարենայի քեզ գտնել:

Իմ սիրելիս ո՞ւր գացիր, ինչո՞ւ.
Անցան ամիսներն ու տարիները
Ու պիտի անցնին դեռ տարիները
Իսկ ես կը մնամ մինակ, միս մինա՜կ...

*Գահիրէ, Հոկտ. 2000թ.* **ԽԱՉԻԿ ԳԱՄՊԷՐԵԱՆ**

## Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ՈՃՐԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ Ա. ՏԱՐԵԼԻՑԻ ԱՌԹԻՒ

1 ➪ այն տպաւորութիւնը կը ստացուի որ դաւ մը միջազգային յուրջ դաւ մը հիւսուած է Հայաստանի գոյութիւնն իսկ վտանգելու, որու մեղսակից են նաեւ երկրի իշխանութիւնները:

Այս բոլորը յուզումով եւ մեծ ցաւով է որ կ'արձանագրենք: Պիտի ուզէինք յուսալ որ, քանի դեռ ուշ չէ, երկրի պատասխանատու շրջանակները հարկ եղած քայլերը կ'որդեգրեն կացութեան մէջ որոշակի փոփոխութիւններ մտցնելու: Այլապէս դժուար է նախատեսել՝ թէ ի՞նչ կրնան ըլլալ յուսահատ ցանգուածները:

Առաջին առիթով, սակայն, խոնարհելով Հոկտեմբեր 27-ի զոհերուն յիշատակին առջեւ, կը սպասենք որ արդարութիւնը ի գործ դրուի եւ ոճիրին ետին կանգնող անահատներն ու շրջանակները ստանան իրենց արժանի պատիժը:

**ՍՈՑԻԱԼ ԴԵՄՈԿՐԱՏ ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՐԵՒՄՏԵԱՆ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՎԱՐԻՉ ՄԱՐՄԻՆ**

**Հոկտեմբեր 24, 2000**

## «ՀԻՒՐՐԻՅԷԹԻ» ԹՂԹԱԿԻՑԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ ՏԵՍԱԿՑԱԾ Է ԱՍԱԼԱ-Ի ԱՆԴԱՄՆԵՐԷՆ ԳԷՈՐԳ ԿԻՒՋԷԼԵԱՆԻ ՀԵՏ

ՊՈԼԻՍ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 17, (ՄԱՐՄԱՐԱ): «Հիւրրիյէթ»ի թղթակից Ֆարուք Պիլտիրիճի որ հայկական բանաձեւի սա օրերուն Երեւան գացած էր, թերթին երէկուան թիւին մէջ ունէր զգայացունց թղթակցութիւն մը: Ան Երեւանի մէջ հանդիպում մը ունեցած էր Գէորգ Կիւզէլեանին հետ, որ ԱՍԱԼԱի այն ահաբեկիչն է եղեր, որ 24 Սեպտեմբեր 1981-ին Փարիզի թրքական հիւպատոսարանին վրայ գործուած յարձակումի ընթացքին սպաննեեր է թուրք ոստիկան Ճեմալ Էօզէնը: Կիւզէլեան, այդ արարքէն 19 տարի վերջ այսօր կ'ապրի Երեւանի մէջ: Բայց ան կ'ընէ իսկապէս զգայացունց յայտարարութիւն մը: Կը պնդէ թէ Փարիզի հիւպատոսարանին վրայ գործուած յարձակումին վերջ տուին, երբ թուրք պետութիւնը ազատ արձակեց 15 դատապարտեալներ, որոնց արձակումը կը պահանջէր ԱՍԱԼԱ: Ասոնք էին 5 հայ, 5 քիւրտ եւ 5 թուրք քաղաքական դատապարտեալներ: Կիւզէլեան կ'ըսէ թէ իրենց արարքի ընթացքին հեռաձայնով կը խօսէին Արտաքին Նախարարութեան հետ: Երբ լսեցին թէ դատապարտեալներ Փարիզ բերուեցան, իրենք ալ վերջ տուին հիւպատոսարանի գրաւման:

Որոշեցին անձնատուր ըլլալ, որովհետեւ կ'ուզէին որ դատ բացուէր իրենց դէմ եւ իրենք ալ հայկական հարցի մասին խօսէին:

Անցարա պիտի ընդունի՞ Գէորգ Կիւզէլեանին պնդումը: Շատ ալ հաւանական չէ: Ամէն պարագայի Կիւզէլեան կ'ըսէ որ ինք պայքարեցաւ հայ ժողովուրդին համար: «Եթէ ԱՍԱԼԱ չըլլար, ամբողջ աշխարհ ոչի՛նչ պիտի գիտնար հայկական հարցի մասին», կ'ըսէ ան:

Իսկ ԱՍԱԼԱ ինչո՞ւ կործանեցաւ: Կիւզէլեանի պնդումն այն է թէ ԱՍԱԼԱ չկործանեցաւ, այլ իր գործունէութեան վերջ տուաւ, որպէսզի ուրիշներ նոյն աշխատանքը տանին քաղաքական գետնի վրայ:

*Ծ.Խ. Ընկ. Գէորգ Կիւզէլեան Արցախեան պատերազմի ընթացքին գլխաւորած էր «Մեծն Մուրատ» ջոկատը: Այժմ ան կ'ապրի Երեւան եւ մաս կը կազմէ Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի Վարչութեան:*

## ՌԻՄԱ ԴԵՄԻՐՃԵԱՆ ԵՒ ԱՐԱՄ ՍԱՐԳՍԵԱՆ ԹԵՐԱՀԱՒԱՏ ԵՆ ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ՆԱԽԱՔՆՆՈՒԹԵԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

Հայաստանի մէջ այս օրերուն տեղի կ'ունենան շարք մը միջոցառումներ, տարի մը առաջ Ազգային Ժողովէն ներս կատարուած ոճրագործութեան տարելիցին առթիւ ու կը կատարուին յայտարարութիւններ յատկապէս կապուած նախաքննութեան ու սպասուող դատավարութեան հետ:

Ազգային Ժողովի նախկին նախագահ Կարէն Դեմիրճեանի այրին` Ռիմա Դեմիրճեան լրագրողներու հետ իր ունեցած հարցազրոյցի ընթացքին, դժգոհութիւն յայտնելէ ետք նախաքննութեան վերաբերեալ ըսած է,- «հասարակութեանը փաթաթում են այն միտքը, թէ ոճրագործների յետեւում ուժ չկայ կանգնած: Դա բացարձակ սուտ է, նրանց յետեւում կան մարդիկ, եթէ չլինէին, ապա նրանք այդ քայլին չէին գնա, չէին մտնի ԱԺ»:

Հոկտեմբեր 27-ի ոճրագործութեան անդրադարձաւ նաեւ Վազգէն Սարգսեանի եղբայրը` նախկին վարչապետ Արամ Սարգսեանը: Ան ըսաւ, որ Հոկտեմբեր 27–էն ետք նախագահ Քոչարեան երկու անգամ հրաժարական պատրաստած էր:«Ես դէմ եմ եղել ու թոյլ չեմ տուել: Ինչո՞ւ: Որովհետեւ խնդիր կար նախաքննութեան հետ ու կարծում էի, որ թէ՛ նախագահը եւ թէ՛ այն մարդիկ, որոնք մեղադրւում են տուեալ գործի համար` ամէն ինչ կ'անեն, որ գործը բացայայտուի»:

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## Նուպարեան Ազգային Վարժարանի Ամավերջի Յաջող Հանդէսը

*Նուպարեան Ազգ. վարժարանի 1999-2000 կրթաշրջանի հանդիսութիւնը տեղի ունեցաւ Հինգշաբթի 5 Հոկտեմբերի երեկոյեան, «Պըրքտանեան» հանդիսասրահին մէջ, հովանաւորութեամբ Թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի եւ նախագահութեամբ Պր. Անդրանիկ Մեսրոպեանի ու իր ազնիւ տիկնոջ, ի ներկայութեան հանգամանաւոր անձերու, ուսուցիչներու, ծնողներու եւ աշակերտներու:*

*Հանդիսութիւնը սկսաւ Եգիպտոսի եւ Հայաստանի հիմներգներու ապա վարժարանի մաղթերգի երգեցողութեամբ: Հակիրճ բացման խօսքով ելոյթ ունեցաւ դպրոցի ուսուցիչներէն՝ Տիկ. Սօսէ Կրպոյեան, որուն մէջ յայտնեց թէ հանդիսութեան յայտագրի առանցքը պիտի առնէ «Հայաստան» նշանաբանը:*



*Դպրոցի երկսեռ երգչախումբը ելոյթի պահուն, խմբավարութեամբ հայրենի երաժիշտ՝ Հրանդ Աղաճանեանի*

*Իսկապէս ալ աշակերտական հայրենաշունչ յայտագիրը կը պարփակէր հայրենի բանաստեղծներու յօրինումներով՝ արտասանութիւններու ծաղկաքաղ մը, նուագ, պար եւ խմբերգ: Հակառակ որ վերամուտէն միայն երկու շաբաթ անցած էր, այդ խանդավառ հայորդիները ինքնավստահ եւ համարձակ իրենց կատարումներով, կարողացան ներկաներուն ջերմ գնահատանքին արժանանալ: Ուշագրաւ էր աշակերտներէն Արփինէ Տապոյեանի եւ Գեղամ Կարսեանի հայկական տարազ հագած յաջող հանդիսավարութիւնը, որոնք յայտագրի ընթացքին, մէջընդմէջ մեզի ներկայացուցին հայրենիքը, հայ գրականութիւնը, հայ երաժշտութիւնը, նաեւ անդրադարձ մը՝ Եգիպտոսի 6 Հոկտեմբերի պանծալի յաղթանակին շուրջ: Գնահատելի էր Ե. Չարենցի գլուխ-գործոցներէն՝ «Ես իմ անուշ Հայաստանի» քերթուածի մեկնաբանութիւնը, որոնք մէկը միւսին գերազանցելով, հասկացողութեամբ արտասանեցին չորս լեզուներով, յանձին՝ Ռուպինա Ասլանեանի (հայերէն), Արթօ Գալիչեանի (արաբերէն), Բաւլօ Անանեանի (անգլերէն) եւ Անի Օհաննէսեանի (փրանսերէն): Խոր տպաւորութիւն թողեցին Տաթեւիկ Տապոյեանի եւ Տարօն Կապէյեանի դաշնակի նուագածութիւնը, ապա՝ յատկապէս Արփինէ Տապոյեանի հայկական հեղաճկուն մեծապարը:*



*Նստած, ձախէն՝ Ռիթա Շահմիրեան, Ալիս Յակոբեան, Ճէսիքա Երամեան եւ Թալին Յակոբեան. ոտքի ձախէն՝ Սթիվ Սիմոնեան, Լորա Գասապեան եւ Ալէն Էմիրզեան:*

*Հանդէսի վերջաւորութեան բեմ բարձրացաւ դպրոցի երգչախումբը եւ մեզ ներկայացուց հայկական երգերու փունջ մը, խմբավարութեամբ հայրենի երաժիշտ Հրանդ Աղաճանեանի եւ դաշնակի նուագակցութեամբ հայազգի դաշնակահարուհի Էյլէնայի: Մեզի կը մնայ «պրաւօ» ըսել, որ այսքան կարճ ժամանակամիջոցի մէջ, Մօ. Աղաճանեան յաջողած էր սրտապնդել զանոնք եւ սորվեցնել երկձայն այդ դպրոցական երգերը:*

*Մշակութային բաժնի գեղեցիկ յայտագրին առիթով, շնորհաւորանքի արժանի են բոլոր հայագիտական նիւթերու ուսուցիչ-ուսուցչուհիները, մասնաւորապէս՝ Տիկին Շուշան Տապոյեանի պատրաստած խնամուած աշխատանքը:*

*Ապա բեմ բարձրացաւ խօսք առնելու եւ տարեկան տեղեկագիրը ներկայացնելու, վարժարանի ժրաջան տնօրէնուհի Տոքթ. Հերմինէ Վարժապետեան: Ան նախ վեր առաւ հայ դպրոցի առաքելութիւնն ու դերը սփիւռքի մէջ, շեշտելով՝ «Ազգային գիտակցութիւնն ու պատկանելիութեան զգացումն է որ կու տան մեր հայկական վարժարանները»: Ազնիւ տնօրէնուհին բծախնդրօրէն ներկայացուց 1999-2000 տարեշրջանի «Հուսկ բանք»ը: Նշեց տարուած համագործակցական աշխատանքը, դպրոցի մակարդակը բարձրացնելու կապակցութեամբ ապա յիշատակեց ազգային, կրթական եւ մշակութային կատարուած բեղուն գործունէութիւնները ժամանակագրական կարգով: Ան հպարտութեամբ յայտնեց, թէ Եգիպտոսի կրթական նախարարութիւնը գնահատելով դպրոցին պատրաստական եւ երկրորդական բաժիններու փայլուն արդիւնքները, երկու պատուագիրներ ուղարկած է տնօրէնութեան, որոնք կարդաց արաբերէն լեզուով:*

*Տիկին Հ. Վարժապետեանի շնորհակալական եւ երախտագիտական խօսքերուն յաջորդեց բոլոր բաժիններու աշակերտութեան մրցանակաբաշխութիւնը: Ապա ան ընդգծեց թէ այս տարեշրջանին վարժարանը ունեցած է երրորդ երկրորդական բաժնէն բացառիկ յաջողութեամբ աւարտած եօթը շրջանաւարտներ, յանձին՝ Լորա Գասապեանի, Սթիվ Սիմոնեանի, Ճէսիքա Երամեանի, Ալէն Էմիրզեանի, Ալիս Յակոբեանի, Ռիթա Շահմիրեանի եւ Թալին Յակոբեանի: Իսկ իբրեւ օրինակելի աշակերտներ յիշատակուեցան Ալէն Էմիրզեան եւ Ալիս Յակոբեան: Տիկին տնօրէնուհին խօսքը ուղղելով շրջանաւարտներուն, շնորհաւորեց զանոնք եւ չեշտը դնելով ըսաւ. «Մի մոռնաք ձեր դպրոցը եւ հպարտ եղէք ձեր ազգութեամբ, ամրապնդելով սէր՝ հանդէպ ձեր ծնողքին, վարժարանին եւ հայրենիքին:*

➪ 4

# Ամենայն Հայոց Կաթողիկոս Ն.Ս.Օ.Ս.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ՇՆՈՐՀԱԲԵՐ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՄԲ ԺԱՄԱՆԵՑ ԵԳԻՊՏՈՍ

1

հռչակման 1700-ամեակին առթիւ, եւ իր յորդորները տուաւ, թէ հայը ուր որ ալ գտնուի, կառչած մնայ իր Հայրենիքին ու իր հաւատքին: Որմէ ետք խօսք առաւ Ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեան եւ անդրադարձաւ ներկայ պայմաններուն տակ Հայրենիքի կացութեան ու կարգ մը տեղեկութիւններ յայտնեց տնտեսական գետնի վրայ կատարուած հարցերու շուրջ:

Սոյն ջերմ ընդունելութիւնը վերջ գտաւ աջահամբոյրով:



*Ս. Մարկոս եկեղեցւոյ մէջ Վեհափառ Տէրը Ս. խորանին վրայէն Իր անդրանիկ պատգամը կու տայ հինգ հազար խուռն հաւատացեալ ժողովուրդին:*

## ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԸ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՄԷՋ

Նորին Սրբութիւնն ու Իր չքախումբը Աղեքսանդրիա ժամանեցին Ուրբաթ 13 Հոկտեմբերի յ. մ. ժամը 1.30-ին: Աղեքսանդրաբնակ հայ հասարակութիւնը տօնական օրի նման, խուռներամ եկած էր դիմաւորելու Վեհին Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցի: Ան ամպհովանիով, զանգի ղօղանջներով, «Հրաշափառ»ի երգեցողութեամբ մուտք գործեց եկեղեցւոյ կամարներէն ներս:

Գերաշնորհ Սրբազան Հօր հակիրճ «բարի գալուստ»ի խօսքէն ետք, ողջոյնի ջերմ արտայայտութիւններով պատգամեց Վեհափառ Կաթողիկոսը, որուն ընթացքին ներկայացուց չքախումբի անդամները եւ Իր աղօթքը ընելէ ետք, թափորով առաջնորդուեցաւ Ազգային Առաջնորդարան, ուր տեղի ունեցաւ պատշաճ ընդունելութիւն:

Ներկայ էին Թեմակալ Առաջնորդ Սրբազանը, ՀՀ դեսպան Դր. Սերկէյ Մանասարեան, Ազգ. Իշխանութեան ներկայացուցիչներ, համայնքի հանգամանաւոր դէմքեր, Պօղոսեան Ազգ. վրժ.ի աշակերտներ եւ հաւատացեալ ժողովուրդ մը: Ապա յատուկ այցելութեամբ ժամանեց Աղեքսանդրիոյ սիրուած եւ ժրաջան քաղաքապետ Լեուա Մոհամէտ Ապտէլ Սալամ էլ Մահկուպ:

Առաջնորդ Սրբազան Հօր կուռ խօսքերէն յետոյ, խօսք առնելու հրաւիրուեցաւ Լեուա էլ Մահկուպ: Ան «բարի գալուստ» արտասանելէ ետք, վեր առաւ արաբ եւ հայ ժողովուրդի սերտ բարեկամութիւնը: Յարգելի քաղաքապետը վստահութիւն յայտնեց, որ Հայրապետին այցելութիւնը Եգիպտոս նոր լիցք եւ որակ կը հաղորդէ երկու ժողովուրդներու դարաւոր բարեկամական ու մշակութային համագործակցութեանը:

Այնուհետեւ Իր խօսքը տալու հրաւիրուեցաւ Նորին Սրբութիւնը, որ երախտագիտական խօսքերով Իր գոհունակութիւնը յայտնեց անոնց որոնք առիթը ընծայեցին Իրեն այս հովուապետական շրջագայութիւնը կատարելու: Յաջողութիւն մաղթեց եգիպտացի արաբ ազնիւ ժողովուրդին եւ հրճուանքով նշեց թէ քանի մը օրեր առաջ Երեւանի մէջ հիմնաքարը դրուած է հայ եւ արաբ բարեկամութեան յուշարձանին: Ապա որպէս երախտագիտութիւն, Նորին Սրբութիւնը քաղաքապետին նուիրեց գեղեցիկ փայտէ պնակ մը: Որմէ ետք հոգեբուխ իր խօսքի առանցքը առաւ քրիստոնէական հաւատքի եւ Հայրենի հողի ամրապնդումը: Աւարտին՝ Վեհափառը քրիստոնէութիւնը Հայաստան պետական կրօն հռչակումը խորհրդանշող գորգ մը նուիրեց Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ եւ Մայր Աթոռ Ս. Էջմիածինի օրհնութիւնները բաշխեց հաւատացեալ հասարակութեան, որմէ ետք ներկաները արժանացան աջահամբոյրի, որուն ընթացքին Ան սիրելով մատչաշ աշակերտները, անոնց նուիրեց Ս. Էջմիածնի օրհնուած խաչեր:

Ժամը 3-ին, ի պատիւ Ամենայն Հայոց Կաթողիկոսին «Club d'Alexandric»ի շքեղ սրահին մէջ տեղի ունեցաւ ճաշկերոյթ-ընդունելութիւն: Ծոխ սեղաններու շուրջ տեղ գրաւած էին Հայրապետի կողքին, բոլոր հանգամանաւոր հիւրերն ու ներկայացուցիչները, ուր Վեհափառը կատարեց սեղանօրհնէքը: Ճաշի սպասարկումէն ետք, բացման խօսքով ելոյթ ունեցաւ Սրբազան Հայրը, ապա հրաւիրեց Նորին Սրբութիւնը:

Վեհափառ Տէրը Իր բովանդակալից ճառին մէջ շնորհակալութիւն ուղղեց եւ Իր գնահատութիւնը յայտնեց բոլոր անոնց որոնք նուիրուած են հայապահպանման նուիրական գործին: 1700-ամեակին մասին անդրադառնալով, տեղեկացուց թէ 31 Դեկտեմբեր 2000-ին պիտի նշուի ամեակը հանդիսաւորապէս: Ներկաներու երկարատեւ ծափողջոյններէն յետոյ, Աղեքսանդրիոյ Քաղաքական ժողովի ատենապետ Պր. Մկրտիչ Խանճեան խօսք առնելով, շնորհակալութիւն յայտնեց Վեհափառ Հօր այս օրհնաբեր այցելութեան առիթով եւ յանուն Ազգային Իշխանութեան արժէքաւոր արծաթէ պնակ մը նուիրեց Վեհին:

Ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեան իր կարգին խօսք առնելով, շեշտեց Հայրենիքի ամրապնդման եւ անոր զօրակցելու անհրաժեշտութեան: Աւարտին, Վեհափառ Հօր «Պահպանիչ»ով վերջ գտաւ ընդունելութիւնը:

Ապա Կաթողիկոսն ու իր չքախումբը այցելեցին Եգիպտոսի եւ համայն Աֆրիկէի Յունաց Պատրիարքին: Հանդիպումի աւարտին, Վեհը Պատրիարքին հրաւիրեց այցելել Հայաստան, 1700-ամեակին նուիրուած տօնակատարութիւններուն մասնակցելու:

## ՃԱՇԿԵՐՈՅԹ - ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ Ի ՊԱՏԻՒ Ն.Ս.Օ.Ս.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

Կը տեղեկանանք թէ, Շաբաթ 14 Հոկտեմբեր 2000-ի գիշերը, Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Բ.ի Եգիպտոս շնորհաբեր այցելութեան առիթով, Գահիրէի Ազգային Իշխանութիւնը ի պատիւ Իրեն, ճոխ ճաշկերոյթ մը կազմակերպած էր Գահիրէի «Նայլ Հիլթըն» պանդոկի «Կաուհարա» սրահին մէջ, որուն ներկայ էին Հայրապետին ընկերակցող չքախումբի անդամները, ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Դր. Սերկէյ Մանասարեան եւ տիկինը, Առաջնորդ Սրբազան Հայրը, Հայ Կաթողիկէ համայնքի Գերյարգելի Հայր Մխիթար Վրդ. Պօղոսեան, Հայրապետական չքանշանակիր ազգայիններ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեանց ներկայացուցիչներ, համայնքի հանգամանաւոր անձնաւորութիւններ, դեսպանութեան անձնակազմը եւ ընտիր հասարակութիւն մը: (Յայտնենք թէ եգիպտահայ մամուլը չէր հրաւիրուած այդ գիշեր):

Վեհափառ Կաթողիկոսի սեղան-օրհնութեան յաջորդեց ճաշի սպասարկութիւնը:

Յանուն Ազգ. Իշխանութեան խօսք առաւ Տոքթ. Սուրէն Պայրամեան, որ «բարի գալուստ»ի պատշաճ խօսքեր ուղղելէ ետք, անդրադարձաւ գաղութի բոլոր կառոյցներուն եւ ընդհանուր համայնապատկեր մը տալէ յետոյ, իր գոհունակութիւնը յայտնեց Վեհափառ Հօր հայրենիքէն եւ Ս. Էջմիածինէն բերած օրհնութիւններուն համար: Ապա խօսք առաւ Ռումանիոյ Թեմի առաջնորդ Գերշ. Տ. Տիրայր Արք. Մարտիկեան: Ան յիշեց թէ Եգիպտոս իր կատարած այս այցելութիւնը չորրորդն է, եւ ուրեմն կը մնայ երեք անգամ եւս խմել Նեղոսի ջուրէն..., «Ով կու գայ Եգիպտոս եւ կը խմէ Նեղոս գետի ջուրէն, անպայման եօթն անգամ կը խմէ անկէ», ինչպէս համոզուած են եգիպտացիք:



*Ճաշկերոյթի ընթացքին Գերշ. Տ. Զաւէն Արքեպիսկոպոս Վեհափառ Հայրապետին կը նուիրէ ոսկեզօծ սկիհը:*

Ելոյթ ունենալու հրաւիրուեցաւ նաեւ Ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեան, ուր լայն տեղեկութիւններ տալով ներկայ տնտեսական եւ գիտական հարցերու կապակցութեամբ, ոգեւորեց ներկաները: Խօսք առնելու հրաւիրուեցաւ նաեւ Գերշ. Տ. Արսէն Արք. Պէրպէրեան, որ հպանցիկ անկարկ մը նետեց Ս. Էջմիածինի տարած բեղուն գործունէութեան շուրջ: ՀՀ դեսպան Դր. Ս. Մանասարեան ելոյթ ունենալով իր հրճուանքը յայտնեց Նորին Սրբութեան այցելութեան առիթով, եւ բարի մաղթանքներ յայտնեց Հայրենիքին ու Մայր Աթոռ Ս. Էջմիածինի: Նոյնպէս խօսք առնելու հրաւիրուեցաւ եւ յանուն Հայ Կաթողիկէ համայնքին իր ողջոյնները յայտնեց Հայր Մխիթար Վրդ. Պօղոսեան: Ան արտայայտուեցաւ սերտ գործակցութեան Հայաստանեայց եւ Կաթողիկէ եկեղեցիներուն միջեւ պարզելով, թէ Վեհափառը ոչ միայն Հայ Առաքելական եկեղեցւոյ այլ հայ ժողովուրդի ընդհանրական Հայրապետն է:

Ապա խօսք առնելով Գերշ. Տ. Զաւէն Արքեպիսկոպոս, իր ողջոյնները յայտնեց Վեհափառ Հօր եւ տեղեկացուց թէ Ազգային Իշխանութիւնը Երեւանի մէջ կառուցուող Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին կը նուիրէ Գահիրէի Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ ունեցած յարգի մէկ ոսկեզօծ սկիհը, քրիստոնէութիւնը պետական կրօն հռչակման 1700-ամեակին առիթով:

Ընդհանուր ծափահարութեանց ներքեւ հոգեպարար ելոյթ մը ունեցաւ Վեհափառ Հայրապետը եւ իր ջերմ երախտագիտութիւնը հաղորդելէ ետք Ազգ. Իշխանութեան, յայտնեց թէ Երեւանի Ս. Գրիգոր Տաճարին բացման օրը՝ 21 Սեպտ. 2001-ին, Ս. Պատարագին՝ պիտի գործածուի սոյն նուիրուած սկիհը:

Ամենայն Հայոց Կաթողիկոսը շեշտելով եգիպտահայ համայնքի խոր սէրը հանդէպ Մայր Աթոռ Ս. Էջմիածինի, յարեց թէ յառաջիկայ 31 Դեկտեմբեր 2000-ին պիտի նշուի 1700-ամեակը եւ Ինք պիտի փոխանցէ պատգամը համայն հայութեան այդ պատմական առիթով:

Ներկաները խորապէս տպաւորուած, մեկնեցան կէս գիշերին:

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏ ԳԱՐԵԳԻՆ Բ. ԵՒ ԱՄԵՆ. ՇՆՈՒՏԱ Գ. ՊԱՏՐԻԱՐՔԸ ԻՐԵՆՑ ՊԱՏԳԱՄԸ ՏՈՒԻՆ ՀԱՒԱՏԱՑԵԱԼ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ

Անխառն ոգեւորութեամբ դիմաւորեց գահիրէաբնակ հայ ժողովուրդը Ն.Ս.Օ.Ս.Տ. Գարեգին Բ. Կաթողիկոսին, Կիրակի 15 Հոկտեմբերի առաւօտեան, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:

Վեհափառն ու Իր չքախումբը նախ այցելեցին Ազգային Առաջնորդարան: Մինչ եկեղեցիէն ներս Ս. Պատարագը կը մատուցանէր Գերշ. Տ. Եղնիկ Եպս. Պետրոսեան, մուտք գործեց Խպտի եկեղեցւոյ պետ Շնուտա Գ. Պատրիարքը: Այնուհետեւ մեծ շուքով, ամպհովանիի ներքեւ զոյգ հովուապետները ուղղուեցան դէպի Ազգային Առաջնորդարան: Ապա բոլորը առաջնորդուեցան Մայր տաճար:

Յընթացս Ս. Պատարագի, Անոնք տուին իրենց պատգամը հաւատաւոր ներկայ հոծ հասարակութեան: Նախ Վեհափառ Տէրը Իր շնորհակալութիւնները յայտնեց Խպտի եկեղեցւոյ Պապին եւ անոր հաւատացեալ ժողովուրդին, Իրեն հանդէպ ցուցաբերած ջերմ պատուասիրութիւններուն համար, որմէ



*Խպտի Եկեղեցւոյ Պապ Ամեն. Շնուտա Գ. Պատրիարքը Ամենայն Հայոց Կաթողիկոսին հետ, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ:*

ետք ոգեշունչ արտայայտութիւններով պատգամեց ներկաներուն, վեր առնելով Ս. Գրիգոր Լուսաւորչի հաստատած մեծ բարեփոխումները.- «Առաջին՝ լուսոյ խորանը պետականութեան հաստատումն է, երկրորդ՝ խորանը մեր հողին վրայ, դա Սուրբ Սեղանն է Հայոց եկեղեցու, որ քրիստոնէական Աւետարանի լոյսն է ճառագայթում մեր ժողովուրդի մէջ, իսկ երրորդ՝ լոյսի խորանը. դա հայ դպրոցի լոյսի խորանն է», եզրակացուց Վեհը:

Իր գոտեպնդիչ խօսքի աւարտին, Նորին Վեհափառութիւնը գնահատելով Թեմիս բարեջան առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արքեպիսկոպոսի երկարամեայ վաստակը, անոր նուիրեց եպիսկոպոսական պանակէ մը եւ համայնքին՝ Հայաստանի քրիստոնէութեան 1700-ամեակին առթիւ շինուած ճաշակաւոր գորգ մը:

Խպտի եկեղեցւոյ՝ Ամեն. Շնուտա Գ., իր պատգամը տալով նշանակալից խօսքերով գնահատեց հայ ժողովուրդի հայեացքը իր արմատներուն, իր հաւատքին եւ սովորութիւններուն: Ան վեր առաւ Հայաստանի մէջ կատարուած վերազարթօնքի գծով տարուած աշխատանքները:

Զոյգ հովուապետներու պատգամներու թարգմանութիւնը կատարեց համայնքիս ծանօթ ազգային դէմքերէն՝ Պր. Պերճ Թէրզեան:

Ս. Պատարագի աւարտէն ետք, Շնուտա Գ. Պատրիարքը հրաժեշտ առաւ, մինչ Վեհափառ Հայրապետն ու Խպտի Պատրիարքին ներկայացուցիչ՝ Ամպա Պիշոյ թափորով ուղղուեցան Առաջնորդարանի դահլիճը:

Ընդունելութեան ընթացքին, Առաջնորդ Սրբազան Հայրը հրաւիրեց Վեհափառը որ Իր սրտաբուխ խօսքը յայտնէ ներկայ հասարակութեան: Նորին Սրբութիւնը Իր երախտագիտութիւնը յայտնեց Թեմիս Առաջնորդին, յարգելի դեսպան Դր. Ս. Մանասարեանին ու Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան ներկայացուցիչներուն, նաեւ յատուկ շնորհակալութեան խօսք ուղղեց Խպտի Ուղղափառ եկեղեցւոյ Պետ Շնուտա Գ. Պատրիարքին, Իր ցուցաբերած եղբայրական ընդունելութեան համար եւ կրկին Իր օրհնութիւնները բաշխեց բոլորին: Վեհափառ Հօր խանդավառ խօսքերը ողջունուեցան բուռն ծափերով:

Անպա Պիշոյի ողջոյնի հակիրճ արտայայտութիւններէն ետք, յանուն Ազգային Իշխանութեան խօսք առաւ Պր. Կարպիս Եազըճեան: Ան բովանդակալից խօսքին մէջ ողջունեց Վեհափառին օրհնաբեր այցը Եգիպտոս, տրուած ըլլալով որ Վեհը Իր գահակալութենէն ետք, յատուկ ուշադրութեան արժանացընելով մեր գաղութը, առաջիններէն կ'այցելէ այստեղ: Պր. Եազըճեան դրուատելով Նորին Սրբութեան բարձր արժանիքները, յայտնեց թէ՝ «Վստահ ենք որ Ձեր նուիրումով ու բարձր կարողութիւններով պիտի իրագործէք բոլոր դժուարութիւնները, քանի որ կը հաւատանք որ այդ դժուարութիւնները ժամանակաւոր են»:

Հուսկ ուրեմն ներկայ հաւատաւոր ժողովուրդը արժանացաւ աջահամբոյրի ու մեկնեցաւ գոհունակ:

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՀԱՐՑԱԶՐՈՅՑԸ ԵԳԻՊՏԱԿԱՆ NILE TV ՀԵՌՈՒՍՏԱԿԱՅԱՆԻՆ ՀԵՏ

Այնուհետեւ Նորին Սրբութիւնը Առաջնորդարանին մէջ հարցազրոյց մը ունեցաւ եգիպտական արբանեակային Nile TV հեռուստակայանին հետ: Ան հոգեւորական հարցերու մասին տեղեկութիւններ տալէ ետք, իր խոր մտահոգութիւնը յայտնեց Միջին Արեւելքի տարածաշրջանին մէջ տեղի ունեցող իրադարձութիւններու վերաբերեալ, եւ կոչ ըրաւ բոլոր խոհեմ ուժերուն՝ միաւորուիլ խաղաղութեան անյապաղ հաստատման համար: Սոյն գրոյցը սփռուած է կայանէն, նոյն օրը քանի մը անգամներով:

## ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏ ԳԱՐԵԳԻՆ Բ.Ի ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ ՀԵՏ

Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Բ. Երեքշաբթի 17 Հոկտ.ի յետմիջօրէին, «Մարիօթ» պանդոկին մէջ հանդիպում մը ունեցաւ եգիպտահայ մամուլի խմբագիրներուն հետ, ի ներկայութեան Ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեանի եւ ՀՀ դեսպան Դր. Սերկէյ Մանասարեանի:

Պատասխանելով տրուած տարբեր հարցումներուն, Վեհափառը յանօրէն անդրադարձաւ Մայր Աթոռ Ս. Էջմիածնի կողմէ կատարուած զանազան աշխատանքներուն, քրիստոնէութեան վերազարթօնքի կապակցութեամբ, միջ-եկեղեցական կապերու կարեւորութեան, Աֆրիկէի քանի մը երկիրներու հայ համայնքներու կացութեան, Ս. Էջմիածնի ու Կիլիկիոյ Կաթողիկոսութեանց հետ Թեմերու կնճռոտ հարցի եւ այլ հարցերու շուրջ, որոնց մասին կ'անդրադառնանք յառաջիկային:

4

**ԹՈՒՐՔԻԱ**

## Թուրքի Մը Սպառնալիքները Արժ. Տէր Պարգեւ Քհնյ. Նալպանտեանին
### Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղեցւոյ Ապակիները Փշրուած

6 Հոկտեմբերի կէս գիշերին, Սկիւտարի մէջ Թուրք մը արտակարգօրէն գրգռուած հոգեվիճակի մէջ, թերեւս դեղի ազդեցութեան տակ, տնկուեցաւ Արժ. Տ. Պարգեւ Քհնյ. Նալպանտեանի տան դրան առջեւ եւ սկսաւ շատ ծանր հայհոյութիւններ ընել հայոց քահանային եւ հայ ժողովուրդին հասցէին. *(Արժ. Տէր Հայրը Գահիրէ ձեռնադրուած է եւ շրջան մը Գահիրէի Հոգեւոր հովիւը եղած է «Ջ.»)*: Մարդը նաեւ քաշեց հացի դանակ մը եւ սկսաւ սպառնալիքներ ընել՝ «քեզ պիտի սպաննեմ» պոռալով: Այդ միջոցին արդէն տնեցիները իմաց տուած էին ահաբեկչութեան դէմ պայքարի ոստիկանութեան: Ոստիկանները հասան եւ չուտով չէզոքացուցին նախայարձակը եւ ոստիկանատուն տարին:

Զինիլի Թաղամասի ոստիկանատան կողմէ գրի առնուած փաստաթուղթին մէջ, Տէր Պարգեւ քահանայ յայտնեց թէ ինք գանգատող է նախայարձակէն:

Կիրակի 1 Հոկտ.ին, առաւօտ, յարձակում մը եւս գործուած էր Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյ վրայ, ուր առտու կանուխ անծանօթներ քարկոծելով, փշրած էին եկեղեցիին արտաքին ապակիները: Ինչպէս պիտի յիշուի, այդ Կիրակի եկեղեցւոյ մատաղօրհնութեան օրն էր: Սակայն որպէսզի անհանգստութիւն չստեղծուի, Թաղականները նախընտրած էին այդ օր գաղտնի պահել միջադէպը:

*«ՄԱՐՄԱՐԱ»*

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## «ՀԱՅԱՍՏԱՆ» ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ԱՅՑԸ ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ

«Հայաստան» Համահայկական Հիմնադրամի արեւելեան եւ արեւմտեան Ամերիկայի Վարչութեանց հրաւէրով, Միացեալ Նահանգներ կ՛այցելէ բարձրաստիճան պատուիրակութիւն մը, գլխաւորութեան Ղարաբաղի Հանրապետութեան Խորհրդարանի նախագահ Օլեկ Եսայեանի: Պատուիրակութեան մաս կը կազմեն նաեւ Հայաստանէն Շիրակի մարզպետ Ֆելիքս Փիրումեան, Հայաստանի գրողներու Միութեան նախագահ Հրանդ Մաթէոսեան, եւ ՀՀՀ-ի գործադիր տնօրէն Վահան Տէր- Ղեւոնդեան:

Ուրբաթ, Հոկտ. 27, 2000, Իրանահայ Միութեան սրահին մէջ, տեղի ունեցաւ մամլոյ ասուլիս մը, որուն ներկայ եղան գաղութի մամուլի, ռատիոյի եւ հեռատեսիլի պատասխանատուներ, եւ զանազան կազմակերպութեանց պատասխանատուներ: Բոլորն ալ շեշտեցին Նոյեմբեր 23-ին տեղի ունենալիք Թելեթոն 2000-ի կարեւորութիւնը, եւ անոր ունենալիք յաջողութիւնը բարոյական եւ նիւթական տեսակէտէ:

### ՀԱՆԴԻՊՈՒՄ ՀՆՉԱԿԵԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ՀԵՏ

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմնի պատուիրակութիւնը՝ անցեալ Շաբաթ Կլէնտէյլի Հիլթըն պանդոկին մէջ հանդիպում մը ունեցաւ այս օրերուն պաշտօնական ➪ 4

1 ➪

## ՊԱՂԵՍՏԻՆԵԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՕՐԻՆԱԿԵԼԻ ՈՃԸ ԵՒ... ՄԵՆՔ ՀԱՅԵՐՍ

Ֆրանսա բնակած, պատմաբան եւ ազգային գործիչ, գիրքերու հեղինակ Լեւոն Չորմիսեան այցելելով Խորհրդային Հայաստան աւելի մի քանի տասնամեակ առաջ, կը վկայէ. «Ամուսնութեանց վրայ կը խօսինք, աչք մը նետենք անոնց արդիւնքին վրայ: Երեւան՝ պարզապէս մանկաշխարհ է: Ես շատ տեղ շրջած եմ, բայց երբեք չեմ տեսած քաղաք մը ուր մանուկները այնքան բազմաթիւ ըլլան որքան Հայաստանի մայրաքաղաքին մէջ: Փողոցները, սրղոտաները, պատուհաններուն մէջ, խանութներու խորը կամ շուրջ բոլորը կը վխտան, ինչպէս մեղուներու պարսերը իրենց փեթակներուն բոլորտիքը, կիսամերկ, ոմանք հագուած, բայց առ հասարակ պատառատուն հագուստներով: Կը պոռան, կը խաղան, կը կռուին, իրար կը հալածեն...»: Իսկ այսօր կարծէք ծերացած է մեր մայրաքաղաքը. այսօր հայ մանուկն ու պատանին իր ծնողներուն հետ ճամպրուկներ կը պատրաստէ արտագաղթելու, կարծէք նոր հայրենիքներ որոնելու: Մինչ անդին, պաղեստինցիք հողին վրայ քարով ու արեամբ հայրենիք կը կերտեն, հող ու արժանապատուութիւն կը պաշտպանեն, մենք հողէն առաւել եւս կը հեռանանք եւ կը նուազինք, կը նօսրանանք: Իսկ Արաֆաթի նման քանի՞ ղեկավար կայ, որ կը համարձակի հաստատուիլ հողին վրայ, թէկուզ Արեւմտեան Հայաստան, կամ Ղարաբաղ՝ հոնկէ շարունակելու ազատագրական պայքարը: Օրինակելի չէ՞ Արաֆաթ, որ հաւատաց, թէ պայքարն ու *ինթիֆատան* կը յաջողին Պաղեստինի մէջ եւ հողին համար կը կռուին միայն հողին վրայէն եւ ոչ թէ հեռաւոր ԱՄՆէն կամ Նիւ Զելանտայէն:

Երկու օր առաջ, հայ կիներու միջազգային կազմակերպութիւնը իր երրորդ համագումարը կատարեց Երեւանի մէջ, որուն կը մասնակցէր նաեւ հերոսածին Վազգէն Սարգսեանի մայրը՝ Կրեթթա Սարգսեան. ան լրագրողուհիի մը հարցումին պատասխանեց՝ թէ հայ կանանց առաջին մտահոգութիւնը պէտք է ըլլայ արտագաղթի հարցը եւ դիպուկ հարց մը տուաւ, «ո՞ւր են գնում, ո՞ւմ են թողնում այս երկիրը». այո, որո՞ւ թողուլ երկիրը, ինչո՞ւ չհաւատալ հողին զօրութեան, ինչո՞ւ չբազմանալ հողին վրայ, չխտանալ եւ մանուկներով Երեւանը չդարձնել Լ. Չորմիսեանին նկարագրածին պէս: Ինչպէ՞ս պիտի յաջողէր *ինթիֆատան*, եթէ չըլլար յեղափոխաշունչ պատանիները, անոնց մարտական դաստիարակութիւնը, քարերով պատերազմ մղելու եւ թշնամիին սարսափեցնելու ոգին եւ մանաւանդ հողապաշտ ղեկավարութիւնը Արաֆաթի օրինակով, որ անցեալի նստավայրերը լքեց հասնելու համար հող՝ Պաղեստին, ըլլալու անոր ազատագրական պայքարին օրինակելի եւ հողապաշտ ղեկավարը:

Էրզրումի լեռներէն սկսած հայոց յեղափոխական շարժման նուիրուած երգին մէջ կ'ըսուի՝ *«Հայրենիքիս ազատութիւն տեսնեմ ու մեռնիմ, տեսնեմ ու մեռնիմ»:*

1991-էն ետք կ'երեւի մարդիկ բառերը փոխելով կ'երգեն՝ *«Հայրենիքիս ազատութիւն տեսնեմ ու փախչեմ, տեսնեմ ու փախչիմ»:*

Պաղեստինեան նորագոյն պայքարը օրինակելի չէ՞ հայոց՝ մեր ղեկավարութեան, երիտասարդութեան, կանանց, պատանիներուն եւ մեր «հայրենասէր» ճարտասաններուն:

**ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

## «ՏԸ ՊԻՐՍ» ԱԴԱՄԱՆԴԻ ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Համաշխարհային ադամանդային արդիւնաբերութեան «Տը Պիրս» բրիտանական ընկերակցութեան պատուիրակութիւն մը, ընկերակցութեան գործադիր տնօրէններէն՝ Փիթըր Սամնէրի գլխաւորութեամբ, անցեալ Ուրբաթ, 3 Նոյեմբերին Երեւան գնաց, տեղւոյն վրայ ծանօթանալու Հայաստանի մէջ արտադրութեան այս ոլորտի կարելիութիւններուն:

Բրիտանական պատուիրակութիւնը Երեւան գացած է Հայաստանի ադամանդի Տի-Սի-Էյ ընկերութեան նախագահ՝ Գագիկ Աբրահամեանի հրաւէրով: Հիւր պատուիրակութեան նախագահ Փիթըր Սոմնէր, լրագրողներու հարցումներուն պատասխանելով, դիտել տուաւ որ իրենց եւ հայ ադամանդագործներու միջեւ համագործակցութիւնը սկսած է 1995ին: Գնահատելով ➪ 4

1 ➪

## ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱՁԵՒԸ ՎԱՒԵՐԱՑՈՒԵՑԱՒ ՖՐԱՆՍԱՅԻ ԾԵՐԱԿՈՅՏԻ ԿՈՂՄԷ

որոնք, բուռն ճիգ վատնելով, շարժման անցած էին այս բանաձեւի քննարկումը կանխարգիլելու ուղղութեամբ, այս անգամ չյաջողեցան: Հակառակ որ Նախագահ Սէզէր. Վարչապետ Էճէվիտ, Պաշտպանութեան Նախարար Չաքմաքօղլու իրենց պաշտօնակիցներուն նամակներ ուղարկելով, զգուշութեան հրաւիրած էին զանոնք, բանաձեւը երէկ երեկոյեան ընդունուեցաւ քուէներու ճնշիչ մեծամասնութեամբ:

Ֆրանսայի Ծերակոյտին երէկուան նիստը սկսաւ գիշերուան ուշ ժամուն եւ աւարտեցաւ առտուան 5.30ին: Որպէս արդիւնք՝ Ծերակոյտը ճանչցաւ հայերու ցեղասպանութիւնը 40ի դէմ 164 քուէներով: Նիւթը քննարկումի առնուեցաւ առտուան ժամը 2ին եւ վիճարկումը տեւեց 3 ժամ: Ապա, հրապարակային գաղտնի քուէարկութեամբ «Ֆրանսա հրապարակաւ կը ճանչնայ 1915ի հայերու ցեղասպանութիւնը» բանաձեւը 208 ներկաներէ 204 քուէարկողներու 164 թեր ձայնով ընդունուեցաւ: Դէմ քուէարկեցին 40 ծերակուտականներ:

Հարցը վերջնական բնոյթ ստացած պիտի նկատուի, եթէ քաղաքական խմբաւորում մը առարկութիւն չներկայացնէ: Այլապէս, օրէնքի նոր առաջարկը պիտի վերադառնայ Ազգային Ժողով եւ բանաձեւը կրկին քննարկութեան պիտի դրուի:

Երէկուան նիստի ընթացքին օրէնքի առաջարկը ներկայացուեցաւ քաղաքական հինգ խմբաւորումներու կողմէ: Առաջին խօսք առնողն էր Ֆրանսա-Թուրքիա բարեկամութեան խումբին նախագահը՝ Ժագ Ռիշար Տըլոն, որ անյատեհ նկատեց նման բնագրի մը վաւերացումը, զայն «հակասահմանադրական» որակելով: Քանի մը այլ ելոյթներէ ետք ճնշիչ մեծամասնութեամբ որոշուեցաւ հարցին մասին անմիջական քննութիւն կատարել:

Երբ քուէարկութիւնը կ'աւարտէր առաւօտեան այդ ժամուն, Ծերակոյտի շէնքին առջեւ աւելի քան 200 հայեր կը սպասէին արդիւնքին: Սրահի ունկնդիրներու բաժանմունքներու մէջ ալ կարեւոր թիւով հայեր հետեւեցան նիստին:

Միւս կողմէ, ինչպէս ծանօթ է, նախընթաց օր, Ֆրանսայի Ծերակոյտի Նախագահը մերժած էր ընդունիլ թուրք երեսփոխաններէ բաղկացեալ պատուիրակութիւնը, պատճառաբանելով թէ ինք խիստ բազմազբաղ է:

*«ՄԱՐՄԱՐԱ»*

## ԿՈՒԶԷ՞Ս ՆԱՐՏ ԽԱՂԱԼ ՀԱՄԱՑԱՆՑԻ (INTERNET-ի) ՎՐԱՅ

*Վերջերս, մեր բարեկամներէն՝ Տիկին Լուսի Հայաթեան - Վարդուկեան նամակ մը ուղարկած է խմբագրութեանս, որուն մէջ կը հաղորդէ, թէ կարելի է նարտ (թաւլու) խաղալ internet-ի (համացանցի) միջոցաւ, շնորհիւ կազմուած ակումբի մը, ընդգծելով թէ նարտ խաղալը հայերուս համար միշտ ալ եղած է հետաքրքրական եւ գրաւիչ խաղ:*

*Տիկին Լուսին իր նամակին ներփակած է ակումբի վարչութեան մէկ գրութիւնը, ուր կը յիշուի թէ ի՞նչ պայմաններու բերումով կազմուած է ակումբը internet-ի վրայ, վարչութեան ատենապետուհի Վարդուհի Տօլապճեանի կողմէ, միաժամանակ թուելով կարգ մը տեղեկութիւններ ակումբի գործունէութեան մասին:*

*Ստորեւ կը հրատարակենք հետեւեալ հետաքրքրական գրութիւնները, բոլոր անոնց համար որոնք նարտ խաղալու սիրահարներ են, նոյնպէս բաժնելով այն կարծիքը՝ որ այս ակումբին միջոցաւ կարելի է հայերու ծանօթանալ քիլօմեթրներով հեռու երկիրներու մէջ եւ բարեկամութիւններ հաստատել անոնց հետ:*

**ԽՄԲ.**

Պատուարժան խմբագրութիւն
«Ջահակիր» Շաբաթաթերթի
Աստ

Յարգելի խմբագիր,

Մօտ ամիս մը անցած է այն օրէն, երբ internet-ի վրայ կ'այցելէի, առիթը ունեցայ հանդիպելու վայր մը, ուր կարելի է ՆԱՐՏ (թաւլու) խաղալ եւ զրուցել խաղընկերներու հետ: Այդ օրէն ի վեր գրեթէ ամէն օր կը յաճախենք այնտեղ ամուսինս՝ Բենիամինը եւ ես: Ինչո՞ւ. որովհետեւ հայերուս համար մանաւանդ, ան միշտ եղած է հաճելի ու հետաքրքրաշարժ խաղ մը: Այնտեղ կը հանդիպիմ բարեկամներու, ազգականներու, նախկին եգիպտահայերու եւ այլ հայերու, որոնք քիլօմեթրներով հեռու են մեզմէ:

Ուստի կը յանձնարարեմ այս ակումբը այցելել երիտասարդներու թէ երէցներու, հաճելի զրոյց ունենալու հայրենակիցներու հետ, կամ նոր բարեկամութիւններ հաստատելու տարբեր անձերու հետ եւ յատկապէս՝ բոլոր անոնց որոնք ՆԱՐՏ խաղալու սիրահարներ են:

Ակումբը յղացումն ու պատրաստութիւնն է հայուհիի մը յանձին՝ **ՎԱՐԴՈՒՀԻ ՏՕԼԱՊՃԵԱՆԻ**, որ հայրենիքէն գաղթելով, հաստատուած է Միացեալ Նահանգներ, եւ հայրենակարօտ իր փափաքին գոհացում տալու համար ձեռնարկած է այս գործին:

Յայտնենք թէ հաւաքավայրը ներկայիս բազմաթիւ հաւատաւոր անդամներ ունի եւ պատրաստ է նորեր ընդունելու:

Յուսամ հաճելի ժամանակ կ'անցրնէք բոլորդ, եթէ յաճախէք սոյն նարտի հաւաքավայրը internet-ի միջոցաւ:

Յարգանօք՝

**ԼՈՒՍԻ ՀԱՅԱԹԵԱՆ - ՎԱՐԴՈՒԿԵԱՆ**

***

## ԱՌԱՋԻՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍԱՅՊԸՐ ՆԱՐՏԻ ԱԿՈՒՄԲԸ

Հաճոյքով կը տեղեկացնենք, թէ անցեալ Օգոստոս ամսուն, ի վերջոյ կարելի եղաւ կազմել առաջին միջազգային հայկական սայպըր նարտի ակումբը internet-ի վրայ, շնորհիւ Վարդուհի Տօլապճեանի ջանքերուն:

Ան քանի մը տարիներ առաջ հայրենիքէն գաղթելով, բաժնուած էր իր ընտանիքէն եւ բարեկամներէն: Շատ կը փափաքէր օտար աստղերու տակ հայերու հետ ծանօթանալ ու ճանչնալ: Հայերէն խօսիլ եւ հայ երգ իմանալ...: Հետեւաբար միակ ձեւը գտաւ ան, internet-ի միջոցաւ հայերու հետ հաղորդակցութեան մէջ մտնել:

Այսպիսով Վարդուհին կարողացաւ բարեկամութիւններ ստեղծել, հայկական շրջանակ կազմել: Գրիգոր, Գեղամ, Շուշան, Մովսէս, Վարդան Թագուհի իրարու հետ հայերէն կը զրուցէին, նարտ կը խաղային, հին օրեր կը յիշէին, հայրենիքի անցուդարձերով կը հետաքրքրուէին եւ հայերէնով կը կատակէին...: Սակայն չէր բաւեր այսքանը: Բոլորին մտահոգութիւնը նոյնն էր: Հարկ էր հաւաքավայր մը ունենալ:

Վերջապէս Վ. Տօլապճեան ըլլալով համակարգիչի մասնագէտ, երկու տարուայ հետազօտութիւններէ ետք, յաջողեցաւ internet-ի վրայ հիմնել վայր մը, որուն առաջին զբաղումը ըլլայ նարտ խաղալը: Բոլոր բարեկամները իրենց ուրախութիւնը կը յայտնէին: Ան նախ internet-ի միջոցաւ հազարաւոր հրաւիրագիրեր ղրկեց: Սկսան աշխարհի չորս կողմերէն անդամ արձանագրուիլ: Շրջանակը բազմացաւ, անչուշտ հայերու թիւն ալ բարձրացաւ:

Այսօր քսան տարբեր երկիրներու մէջ ունինք բազմաթիւ հայորդի անդամներ, որոնք յաճախելով ակումբ, հայրենակարօտ զգացումներով տարուած, բարեկամութիւններ կը ստեղծեն իրարու հետ, հայկական երաժշտութիւն կ'ունկնդրեն եւ անշուշտ նարտ կը խաղան միատեղ, ARZIV_անուան տակ: Վարդուհի Տօլապճեան ըլլալով նախկին նարտի ախոյեան, ամէն Կիրակի օրերը մրցումներ կը կազմակերպէ ու կը ղեկավարէ, նաեւ մրցանակներ կը բաշխէ շահող անձերուն: Ան խմբապետն է EURO եւ հայկական ARZIV_ խումբերուն:

Հետաքրքրականը այն է, որ նարտ խաղալու միջոցաւ տարբեր երկիրներու հպատակ հայեր, տարբեր յարանուանութեան պատկանող, տարբեր ասպարէզներու մէջ աշխատող, տարբեր տարիքի եւ տարբեր մտածողութեան տէր հայեր կը միանան հոն՝ նոյն հաւաքավայրը, նոյն հայկական ոգիով ու շունչով:

Եկէք խաղով միանանք իրարու, internet-ի միջոցաւ, բա՛յց միանանք: Մեր նշանաբանն է՝ **«Սիրենք զիրար ու միանանք խաղով»:**

Յայտնենք թէ օրերս «ARZIV» խմբակը որոշում առաւ նարտ խաղալու միջոցաւ, հայ երիտասարդին ալ տեղ տալ: Անոնք ակումբ յաճախելով, առիթ պիտի ունենան հաղորդակցութեան մէջ մտնելու երէցներու հետ, գաղափարներ փոխանակելու եւ իրենց մտահոգութիւնները յայտնելու:

Որպէսզի հայերը զիրար ճանչնան, կը խնդրենք որ նոր nick name-ով (կեղծանունով) արձանագրուիք ARZIV_ բառը առջեւ դնելով. օրինակ՝ ARZIV_susan:

Հրամմեցէք, www.zone.com/backgammon-ին միւս հայերուն հետ Dorm room-ին մէջ:

Այլ տեղեկութիւններ ստանալու համար կարելի է դիմել՝

Հասցէն է.-www.armenian-backgammon-club.com

E-mail : vdolabjian@armenian-backgammon-club.com

Ակումբին մէջ կը հանդիպինք: Շնորհակալութիւն:

**ՎԱՐՁՈՒԹԻՒՆ**

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


**ԼՈՅՍ ՏԵՍԱՒ**

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ

**2001 Տարւոյ «ԵՐԵՒԱՆ» Պատի Օրացոյցը**

**(58-ՐԴ ՏԱՐԻ)**

**Նկարազարդուած**

**Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ.**

**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ**

**Գեղատիպ Լուսանկարով**

**(Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ)**

**Լուսանկար՝ ծանօթ արուեստագէտ**

**ՎԱՀԷ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆԻ**

**ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ «ՆՈՒՊԱՐ ՏՊԱԳՐԱՏԱՆ»**

Ունենալու համար դիմել՝

**Գահիրէ՝** հեռ. 4530327, 7940949, 2563371 թիւերուն.

**Աղեքսանդրիա՝** ընկ. Վրէժ Սէֆէրեանի հեռ. 3924073

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը Եգիպտահայ համայնքին սիրով հրաւիրում է ներկայ գտնուելու դեսպանութեան տօնածառի շուրջ աւանդական տօնական հաւաքոյթին: Նոր տարի մուտք գործելու կապակցութեամբ միմեանց շնորհաւորելու եւ միասին ուրախ երեկոյ անցկացնելու նպատակով:

Տօնական հաւաքոյթը տեղի կ'ունենայ 2001 թուականի Յունուարի 1-ին, երեկոյեան ժամը 17.30 - 20.30, դեսպանութեան պարտէզում:

Երեխաների ներկայութիւնը ցանկալի է:

**ԵԳԻՊՏՈՍՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

## ԳԱՀԻՐԷԻ ԱՂՔԱՏԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

**Շաբաթ, 16 Դեկտեմբեր 2000, երեկոյեան ժամը 9-ին**

**«ՊԼԸՔՏԱՆԵԱՆ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

**ՏԱՐԵԿԱՆ ԱՒԱՆԴԱԿԱՆ ԱՆՈՒՇԱՊՈՒՐԱՍԵՂԱՆ**

Հովանաւորութեամբ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

**Բարեխնամ Առաջնորդ Եգիպտահայոց**

Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի Քաղաքական Ժողովը, գործադրելով, «Վ. Զագրեան» հայերէն եւ հայագիտական նիւթերու ուսուցչաց ֆոնտին յատուկ կանոնագրութեան տրամադրութիւնները, որոշեց 2000 Յունուար-Յունիս վեցամսեայ շրջանին համար, Գալուստեան, Նուպարեան եւ Պօղոսեան վարժարաններէն ներս այս նիւթերը դասաւանդող ուսուցիչ-ուսուցչուհիներուն եգ. ոսկի 2869.750 քաջալերական յատկացում կատարել 28 Նոյեմբեր 2000-էն սկսեալ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Առաջնորդարաններուն միջոցաւ:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌՆՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Նկատի առնելով օտար վարժարաններ յաճախող հայ աշակերտներու հետզհետէ աճող թիւը, որմէ ծնունդ առած համազգային մտահոգութիւն պատճառող պատասխանատուութիւնը, Պօղոսեան ազգային վարժարանի հոգաբարձութիւնը, տնօրինութեամբ Պատ. Քաղաքական Ժողովի, վարժարանին հետ պորտի կապը պահելու հեռանկարով, որոշեց «Շաբաթօրեայ Դպրոց» անուան տակ ստեղծել, ինչ-ինչ պատճառներով վարժարանէն հեռացած աշակերտներուն համար, վարժարանի պահերէն դուրս, հայոց լեզուի, պատմութեան եւ կրօնքի յատուկ դասընթացքներ, մղելով զանոնք մասնակցելու միաժամանակ վարժարանի ուղղակի գործունէութեան:

Ուստի բոլոր անոնք, որոնք կը փափաքին մասնակցիլ այս դասընթացքներուն, մանրամասնութիւններու համար կրնան դիմել ուսուցիչ Պր. Հայրապետ Կարապետեանին:

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎ**
**ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ ՀԱՅՈՑ - ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Տեղեկացանք թէ մեր յարգելի բարեկամներէն՝ Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի վարչութեան գործօն անդամուհիներէն եւ Աղեքսանդրիոյ Հայ Բարեսիրաց Մարմնի ատենապետուհի՝ Տիկին Արաքսի Դաւիթեան Աղեքսանդրիոյ «Սմուհա» հիւանդանոցին մէջ, վերջերս վիրահատման գործողութեան մը ենթարկուած է: Բարեբախտաբար վիրահատումը անցած է յաջող եւ ան իր բնակարանը վերադառնալով, այժմ ապաքինման շրջան մը կը բոլորէ:

Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք ազնիւ Տիկին Ա. Դաւիթեանին:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի քաջալերութիւն թերթիս տարած ազգօգուտ գործունէութեան, Ընկեր Սարգիս Սարգիսեան (Պէյրութ) կը նուիրէ ամերիկեան տոլար 100:

Գահիրէի Օփերայի դահլիճին մէջ արուեստագիտուհի Նայիրի Քրէտեան-Փուչիկեանի ջութակի ռեսիթալի գտած մեծ յաջողութեան առթիւ, իր ծնողքը՝ Տէր եւ Տիկ. Ալպէռ Քրէտեան կը նուիրեն 50

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրեցեալ Ողբ. Արաքսի Սիրքէճեանի մահուան Ա. տարելիցին առթիւ Սիրքէճեան ընտանիք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Այծեմնիկ՝ Հանգստեան Տան | 100 |
| «Արեւ»ին | 50 |
| «Յուսաբեր»ին | 50 |
| «Ջահակիր»ին | 50 |

*(Ստանալ Գահիրէի Ազգ. Առաջնորդարանէն)*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Վարժարանս շնորհակալութեամբ ստացաւ 11 լուսանկարչական գործիքներ նուիրուած՝ Պր. Շահէն Մազլումեանի կողմէ, առ ի գոհունակութիւն Վարժարանիս «Ճանչնանք Աշխարհը» մրցանքին:

Քաջալերական իր այս նուէրը մենք մեծապէս կը գնահատենք:

* * *

Այսու մեր շնորհակալութիւնը կը յայտնենք Հ.Ա.Հ. Կոկանեան Սրահի Վարչութեան որ ինչպէս ամէն առթիւ «Մոխրոտի» ներկայացումին եւս բեմական զգեստներ տրամադրեց մեզի:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**
**ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ**

## Ս.Դ.Հ. ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ Դ. ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆԻ ՀԵՏ

1 ➩ միջեւ օրըստօրէ խորացող անջրպետի կապակցութեամբ:

Պրն. Շահնազարեան խիստ մտահոգութեամբ անդրադարձաւ նաեւ Մեղրին Ատրպէյճանին յանձնելու այն ծրագիրներուն, որոնց համաձայն եղած են Հայաստանի ներկայ իշխանութիւնները:

Հնչակեան Կուսակցութեան ներկայացուցիչները յանձնառու եղան՝ առաւել աշխատանք տանիլ սփիւռքահայութիւնը այս ուղղութեամբ լուսաբանելու եւ նման դաւաճանական ծրագիրներ ձախողութեան մատնելու նպատակով:

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տնօրինութեամբ Ազգային Իշխանութեան եւ կարգադրութեամբ Ե.Գ.Մ. Հոգաբարձութեան, 1988 Դեկտ. 7-ին, Հայաստանի հիւսիսը պատահած աղէտալի երկրաշարժի զոհերուն հոգւոցն ի հանգիստ, հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի Կիրակի 10 Դեկտեմբեր 2000-ի առաւօտեան Ս. եւ անմահ Պատարագէն ետք, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին
Սկիզբ Ս. Պատարագին - - 10.00-ին
Հոգեհանգիստ - - 11.00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**Հինգշաբթի, 14 Դեկեմբեր 2000, երեկոյեան ժամը 8.00-ին**

**«Պլըքտանեան» Հանդիսասրահին մէջ**

**ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ**

Անգլերէն լեզուով

**Bernard Shaw-ի**

**"ARMS AND THE MAN"**

Բեմադրութիւն 3 արարով

Հովանաւորութեամբ

**ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ**

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ**

Մինչեւ 5 տարեկան փոքրիկներու մուտքը արգիլուած է

*Սիրալիր հրաւէր բոլորին*

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**Ամանորի Տօնակատարութիւն**

**Կաղանդ Պապա, Նուէրներ**

**Երգ, Պար Եւ Արտասանութիւն**

Կիրակի 24 Դեկտեմբեր 2000 Երեկոյեան ժամը 5-ին

**«Պլըքտանեան» Հանդիսասրահին մէջ**

Հովանաւորութեամբ

**ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ**

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՀԱՅԿ ԱՍԱՏՈՒՐԵԱՆԻ**

*Սիրալիր հրաւէր բոլորին*

## Հ.Բ.Ը.Մ. - Գահիրէ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ
## Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր
## ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Վարչութիւնս հաճոյքն ունի տեղեկացնելու, թէ բոլոր այն անձերը որոնք առաջին անգամ ըլլալով դիմումնագիր ներկայացուցած են եւ ընդունուած Առողջապահական Հոգատարութեան Ծրագրին մասնակցելու՝ 2001 տարեշրջանին համար, կրնան ներկայանալ 1 Դեկտեմբեր 2000-էն մինչեւ 19 Դեկտեմբեր 2000, ստորեւ յիշուած հասցէներուն եւ օրերուն Ե.Ո. 75 վճարելէ ետք ստանալ իրենց նկարը կրող ծրագրին մասնակցութեան փաստաթուղթը:

Միութեանս կեդրոններն են.-

**<u>ԳԱՀԻՐԷ</u>** - 15, Էմատ Էլ Տին փողոց, Ա. յարկ
Երկուշաբթիէն մինչեւ Շաբաթ (բացի Ուրբաթ օրերէն)
Առաւօտեան ժամը 10.00-էն կ.վ. 2.00

**<u>ՀԵԼԻՈՊՈԼԻՍ</u>** - 26, Մուրատ Բէկ փողոց - Հելիոպոլիս
Ուրբաթ օրերը կ.վ. ժամը 6.00-8.00

**<u>ԾԱՆՕԹ</u>**.- Մինչեւ վերոյիշեալ իւրաքանչիւր ժամկէտը չներկայացող - չվճարող բոլոր դիմողներուն դիմումնագիրները ինքնաբերաբար չեղեալ կը նկատուին եւ իրաւունք չեն ունենար 2001 թուականի ընթացքին մասնակցելու Ս. Ճ. Չագըր Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագրին:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՄԱՐՏԻԿ ԵՒ ՌՈՒԲԷՆ ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆ ԵՂԲԱՐՔ

### ԳՈՅԱՐԱՎԱՃԱՌ

<u>ՈՍԿԻԻՆ ՕՐՈՒԱՅ ԳԻՆԸ՝</u>

| | | |
|---|---|---|
| Ոսկեդրամը | Ե.Ո. | 233.00 |
| 21 կարատ՝ կրամը | | 29.15 |
| 18 կարատ՝ կրամը | | 25.00 |

4,Զողէպ փողոց, Ապտէլ Խալէք Սարուաթ, Գահիրէ Հեռ. 3901151

# ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ.-Ի ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ ՀԵՏ

1

*Ինչ կը վերաբերի դաստիարակչական եւ քարոզչական գործընթացին՝ նախ յիշենք արտաքին միջեկեղեցական յարաբերութիւնների բաժինը, սոցիալական հաստատութիւնների բաժինը: Նոյնպէս ունենք երեք կրթական հաստատութիւններ՝ Գէորգեան ճեմարանը, Վազգէնեան Հոգեւոր դպրոցը, ապա ունենք 250-ի չուրջ ուսանողներ Հոգեւոր կրթարանների մէջ:*

Հետաքրքրական հարցում մըն էր նաեւ, թէ որքա՞ն հոգեւորականներ ունինք հոգեւոր ծառայութեան նուիրուող:

Վեհափառ Հայրապետը այս հարցին մասին եւս տրուաւ սպառիչ տեղեկութիւններ: Ի միջի այլոց ըսաւ Ան.

*«Շատ հոգեւորականների պէտք ունենք: Ես մօտաւորապէս հաշւում եմ 2500-3000 եկեղեցական: Ամէն տարի մենք կ'ունենանք մօտ 25-30 չրջանաւարտ: Այդ իսկ պատճառով ծրագրել ենք մշակել, բայց 1700-ամեակը մեզ թոյլ չի տալիս ծրագիրը իրագործել: Այդ ծրագրով պիտի կարողանանք մանկավարժներին հրաւիրել գիւղերից. ծանուցում կատարել եւ որոնք որ կը ցանկան որպէս քահանայացու, կարող են ծառայել. երկու կամ երեք տարի պատրաստուելէ յետոյ, գոհացուցիչ թոշակ կը ստանան եւ թէ դպրոցին մէջ ուսուցչութիւն կը կատարեն ու հոգեւոր ծառայութեան կը նուիրուեն:*

*Եթէ կարողանանք երկու տարուայ մէջ մօտ 100-150 այսպիսի քահանաներ պատրաստել, մեծապէս կը փոխուի մեր վիճակը, բայց պատրաստելու համար պէտք ունենք միջոցների եւ հնարաւորութիւնների. կը յուսամ ապագային հնարաւոր դարձնենք»:*

Հարց եղաւ որ մեր ժամանակներուն մէջ, արդե՞օք քոյրեր. կան. որոնք կրօնական աշխատանք կը տանին:

Վեհափառը յայտնեց թէ՝ *«Հայաստանի մէջ կուսանոցներ չենք ունեցած: Բայց առանձին վեհանձն անձեր իրենց ծառայութիւնն են բերել: Այս նկատումը Վազգէն Կաթողիկոսի չրջանին ունեցանք, որ կարողանանք փաներ պատրաստել եւ այնտեղ հնարաւորութիւն տեղծել: Այդ աշխատանքը ընթացքի մէջ է, բայց ոչ որպէս կուսանոցներ, այլ որպէս մենաստաններ: Իրենք իրենց կանոնադրութիւնը մշակում են իբրեւ կրթական քոյրեր. մանկավարժներ եւ իբրեւ եկեղեցական արուեստի ծառայողներ»:*

*«Հայաստանի մէջ կան կաթոլիկ քոյրեր. որոնք չատ փութկոտ են, եւ մեր եկեղեցու առանձին անհատներ կը գործակցեն անոնց հետ»:*

Այն հարցումին թէ Հայաստանի մէջ թեմական համայնքային կազմակերպութիւնը ինչպէս կ'ընթանայ, Վեհափառը իր նեղութիւնը յայտնելով տեղեկացուց. *«Այդ մեր դժուարին եւ ցաւալի կողմն է, որովհետեւ մեզ մօտ այդ հաւկացողութիւնները չեն գործում, ինչպէս որ կը գտնուի արտասահմանում: Աստիճանաբար աշխատանքներ տարւում են ներկայիս գիւղերում: Մենք չունենք այնքան թաղի եկեղեցի, որ կարենանք համախմբել, համայնքներ կազմել, բայց ունենք փոքր համայնքային վարչութիւններ»:*

Ապա հարցուցինք թէ երբ ամուսնութիւններ եւ մկրտութիւններ կ'ըլլան, ատոնց արձանագրութիւնները կը կատարուի՞ն: Վեհափառը պատասխանեց.

*«Մենք տոմարներ ստեղծեցինք մկրտութեան եւ պսակի արձանագրութեանց համար, յետոյ տարբեր առիթներով ստեղծեցինք չրջաբերական նամակներ, հրաւիրելու համար այդ մարդկանց. այսպէս եկան մի քանիին. բայց ի՞նչ է կատարւում. Էջմիածնից կամ Հոկտեմբերեանից մարդը ուխտ է արել որ գնայ Երեւան Ս. Սարգիս եկեղեցում եւ հոն ամուսնացնի իր զաւկին: Կամ իր զաւկի մկրտութիւնը կատարի Գեղարդի վանքը: Ուրեմն պէտք է թաղերի, չրջանների բաժնուեն եւ եկեղեցականը անհատական աշխատանք տանի այդ չրջանի կամ թաղի հաւատաւոր ժողովուրդին հետ եւ կարողանայ ստեղծել համայնքային կեանքը»:*

Ինչ կը վերաբերի Աֆրիկեան չրջանի գաղութներու մատակարարական հարցերուն, ըլլայ ան Եթովպիոյ կամ Սուտանի մէջ ինչպէս եւ Հարաւային Աֆրիկէի մէջ եկեղեցի ունենալու անհրաժեշտութեան, Ամենայն Հայոց Կաթողիկոսը ընդգծեց.

*«Գիտեմ որ Եթովպիոյ մէջ կալուածների առընչութեամբ խնդիրներ կան: Քանի մը օրէն՝ մեր այցելութեան ընթացքին պիտի փորձենք զբաղուել բոլոր խնդիրներով, մասնաւորաբար օգտակար լուծում մը գտնել կալուածների եւ ունեցուածքների կապակցութեամբ: Սակայն կը դժուարանամ Խարթումի ունեցուածքի մասին բան մը ասել: Պիտի փորձենք ծանօթանալ հարցերուն եւ առաջնորդ Սրբազան Հօր խորհրդակցելուց յետոյ, խնդիրները ծրագրաւորել եւ ըստ այնմ լուծումներ գտնել»:*

Վեհափառը տեղեկանալէ ետք Հարաւային Աֆրիկէի համայնքի թիւին՝ որ կը հաշուէ մօտ 250 ընտանիք, նաեւ իմանալէ յետոյ թէ այնտեղ միայն մատուռ մը կառուցուած է, որուն սեփականատէրն է նախկին եգիպտահայ Գիրգոր Տէր Պալեան, յարեց. *«Պէտք է ասեմ թէ նման խնդիրներ ունենք նաեւ Հնդկաստանի եւ այլ քաղաքներում: Այս գծով մենք կ'աշխատենք այժմ տեղեկութիւններ հաւաքել բոլոր համայնքների ունեցուածքների եւ կալուածների մասին, յստակ պատկեր մը ունենալու համար, յետոյ պիտի նայենք ինչպէս կարելի*



Ձախէն՝ ՊՊ. Տիգրան Գէորգեան, Զաւէն Լիլոզեան, Գարեգին Բ. Կաթողիկոս, Ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեան, ՊՊ. Աւետիս Մովսէսեան եւ Յովհաննէս Տէր Պետրոսեան:

*է տէր կանգնել այդ ազգապատկան կալուածներին»:*

*«Առ այդ, Շնուտա Գ. Պատրիարքին հետ խօսեցինք այն որոշ տարակարծութիւնների մասին, որ կան Խպտի եւ Եթովպիոյ եկեղեցիների ու էրիթրիոյ եկեղեցւոյ միջեւ: Կը յուսամ հարթուին եւ ամուր լինի մեր արեւելեան եկեղեցիների ընտանիքի միասնականութիւնը»:*

Տեղեկանալով մէկ հարցումին, Վեհափառ Հայրապետը հետաքրքրուեցաւ այն հարցին, թէ հին Գահիրէի Խպտի կուսանոցի վանքի մը մեծաւորուհին հայ է, որուն անունն է քոյր Հոփսիմէ Թէրզիպաշեան: Նորին Սրբութիւնը հաղորդեց թէ միայն տեղեկացած է Շնուտա Գ. Պատրիարքէն, որ Եգիպտոսի մէջ երկու քոյրեր կ'ապրին: Հետեւաբար Ան Պատրիարքէն խնդրած է որ անոնք Հայաստան այցելեն եւ տեսակցութիւններ ունենան Հայասանի քոյրերուն հետ:

Հարց եղաւ թէ ի՞նչ վիճակի մէջ է հայ եկեղեցին Իրաքի մէջ ներկայիս: Վեհափառը պատասխանեց թէ բաւական լաւ է, ապա աւելցուց. *«Այդ երկրի Տ. Աւագ Սրբազանը իր չուրջ համախմբում է երիտասարդ հայորդիները, եւ կրօնական դաստիարակութիւն է ջամբում, աստուածաբանական գիտելիքներ տալով: Այս տարի, Վարդանանց տօնի կապակցութեամբ, Առաջնորդին խնդրանքին ընդառաջելով, եկեղեցականներ Մայր Աթոռ Ս. Էջմիածնի մէջ օծեցինք եւ վերադարձան Իրաք»:*

Ապա Վեհափառ Կաթողիկոսին առաջարկով, հարցադրումներ եղան Ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեանին, եւ ան իր կարգին չահեկան զրոյցով մը գոհացում տուաւ ներկայ լրագրողներուն:

Ան յայտնեց թէ՝ *«Միշտ էլ կառավարութեան եւ եկեղեցւոյ միջեւ յարաբերութիւնները եղել են սերտ: Մենք միշտ նկատի ենք ունեցել թէ՛ մեր հոգեւոր թէ՛ մշակութային արժէքները. եւ անոնք պահպանուել են չնորհիւ մեր եկեղեցիի գոյութեանը»:*

Յարգելի գիտնականը լայն տեղեկութիւններ տուաւ Հայաստանի մէջ գիտութեան զարգացման չուրջ, յայտնելով թէ Հայաստան այսօր գիտութեան զարգացման մէջ կու գայ երրորդ դիրքը, Ռուսիայէն եւ Ուքրանիայէն ետք: Ապա չեշտը դնելով Հայաստանի գիտութեան սպասարկութիւնը՝ հանրապետութեան միւս գիտական օճախներուն, յայտնեց թէ. *«Վեհափառ Հայրապետի կողմից տեղեկացնենք, թէ Ան ընտրուած է վերջերս «Միջազգային Ինֆորմաթիքայի Ակադեմիայ»ի անդամ. դա չատ մեծ պատիւ է մեզի համար, որովհետեւ Ակադեմիային մէջ ընդգրկւում են սոսկ գիտնականներ, Նոպէլեան մրցանակակիրներ, հանրապետութիւնների նախագահներ, ակադեմիկոսներ, եւ այլ որոշ նախագահներ, որոնք նպաստ բերած են մարդկութեան կամ գիտութեան զարգացման մէջ: Սա ցոյց է տալիս Հայաստանի գիտութեան մակարդակը»:*

Պր. Սարգսեան սպառիչ բացատրութիւններ տուաւ «Արմենիքում»ի «էյտծ»ի դարմանումի միջոցառման մասին: Իր հետաքրքրական զրոյցի ընթացքին ըսաւ ան.- *«Արմենիքում»ի կատարած կարեւոր դերը ամբողջ աշխարհի մէջ, արդիւնքն է 12 տարուայ հսկայ հետազօտութեանց»:*

Նախագահ-ակադեմիկոսը վեր առաւ նաեւ աթոմակայանի անհրաժեշտ դերը, «Նայրիտ» քաուչուկի գործարանի կարեւորութիւնը, Սեւանայ լիճի արդիւնաբերութիւնը եւ գիտական ծիրէն ներս այլ նշանակալի զարգացումներ:

Վերջին նիւթն էր, որ քննարկման հարց դարձաւ՝ Ս. Էջմիածնի եւ Կիլիկիոյ Կաթողիկոսութեան հետ թեմերու կնճռոտ խնդիրը: Արդարեւ սոյն հարցի մասին Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Բ.ի իմաստալից արտայայտութիւնները, մեծապէս գոհացում տուաւ մամլոյ ներկայացուցիչներուն: Բոլոր ներկաները կ'արտայայտուէին ամենայն անկեղծութեամբ, սրտբացօրէն եւ անկաշկանդ, որուն ընթացքին Վեհափառը յայտնեց իր մտահոգութիւնը.-

*«Այս հարցը ինձ զբաղեցնում է: Սա եկեղեցական խնդիր չէ միայն: Ասեմ թէ կացութիւնը վիճակ է ստեղծում»:*

Նոյն պահուն եղան արտայայտութիւններ, ինչպէս՝ «Հարցը հայ ժողովուրդին կը պատկանի»: «Այս մարդիկը այսքան տարի պահեցին ու կը պահեն այդ եկեղեցիները»: «Ո՞վ պիտի վճարէ գինը. որպէսզի այս պատահարը վերջ գտնէ. պէտք է մէկը գինը վճարէ, ըլլայ այդ բարոյական կամ նիւթական»: «Մարդոց քարկոծելով կարելի չէ լուծել հարցեր»: «Վերջերս Արամ Կաթողիկոսին դէմ գրուած էր պաշտօնաթերթի մը մէջ»: Եւ այս տեսակ արտայայտութիւններու ի տես՝ Վեհափառը հանդարտօրէն պատասխանեց այսպէս.

*«Թերթը իր տեսակէտը ունի. հազար մարդ, հազար բան կարող է ասել: Բայց դա Կաթողիկոսի խօ՞սք է, Էջմիածնի խօսքն է, պաշտօնապէս Անթիլիասին խօ՞սքն է, Արամ Վեհափառին խօ՞սքն է: Իսկ ես չեմ կիսում այն տեսակէտը, թէ պէտք է խնդիրը լուծի հայ ժողովուրդը. դա միայն ժողովուրդի հարց չի. ճիշդ մատնանշում չէ սա: Պէտք է ջանքերը համախմբել. եւ ժողովուրդ եւ եկեղեցի եւ պետութիւն, եթէ անհրաժեշտ է: Խնդիրը հետեւեալն է՝ արդեօ՞ք կացութիւնը թելադրող է. այս խնդիրը արծարծելու պահանջքը կա՞յ կամ ոչ: Բոլոր տարբերակներով եթէ նայինք հարցին, պիտի տեսնենք թէ պահն է այսօր լուծում գտնել: Չկայ մի հայ մարդ, որ չի հաստատի որ ազգային մեր կեանքին մէջ մեծ հիմնական վնաս է բերել: Մեր ուժերը ջլատող, մեր եկեղեցւոյ զօրացումն կասեցնող: Բնական չի սա»:*

Երբ հարց եղաւ թէ արդեօ՞ք խնդիրը այժմէական է, կամ ներկայիս Ղարաբաղի եւ այլ կարեւոր հարցեր աւելի առաջնահերթ են: Վեհափառը հաստատական չեշտով մը ըսաւ.-

*«Եթէ ընտանիքիդ մէջ հրատապ մի խնդիր կայ, որ լուծման կը կարօտի, որ ընտանեկան անդորրը խանգարում է, ուրեմն պէտք է այդ երեւոյթները հեռացնես, որպէսզի անդորրը վերագտնէ, որպէսզի արդիւնաւէտ ընթացքը չարունակի: Հարցը հարց է, որը լուծման անհրաժեշտութիւնը ունի: Ուստի պէտք աշխատանք կատարենք էս խնդիրը լուծման առաջնորդելու: Դա կը լինի վաղը, մէկ ամիս յետոյ, մէկ տարի յետոյ. խնդիրը կնճռոտ է, որ պէտք է բուժուի: Ճիշդ է որ համեմատութեան մէջ եթէ դնես Ղարաբաղի կամ Եղեռնի խնդրին, հարցը կը տարբերի: Սակայն հարցը առկայ է եւ մեր ուժերը քայքայող, ուրեմն նշանակում է առաջնահերթ խնդիր է: Վերջապէս հարցը արդար է եւ լուծում պահանջող»:*

Թեր ու դէմ արտայայտութիւնները կը չարունակուէր՝ «Այն օրէն որ եկեղեցին քաղաքականացաւ, այս անջատումը տեղի ունեցաւ»: «Ամերիկեան կառավարութիւնը չահագործեց այս խնդիրը»: «Արամ Կաթողիկոսին վրայ մեծ վստահութիւն ունինք. որքան որ ինք կամքը ունի, իրեն թոյլ չեն տար իր ետեւը կանգնող կուսակցութիւնը»:

Վեհափառը առարկելով յարեց. *«Ես չպիտի ցանկանայի նման եզրայանգումներ կատարել եւ Արամ Վեհափառի անունով խօսել: Ինք երբեք նման յայտարարութիւն չի արել: Ճիշդ չէ նման գնահատականներ*

4

## ԵԼ, ԱՆԴՐԱՆԻԿ

Արթնացիր մեծ զօրավար,
Փրկիր մեզ քաջ Անդրանիկ,
Հայրենիքը քո տառապեալ,
Նորից քեզ է սպասում:

Հայրենիքը քո լքուած,
Հայրենիքդ յուսահատ,
Նորից քեզ պէս անձնուէր
Ազնիւ տիրոջ է կարօտ:

Քո անձնազոհ կտրիճների ջոկատներով,
Արեւի պէս նորից չողայ դու երկնքում մեր մթնած,
Փրկիր դու մեզ քաջ զօրավար,
Բարոյազուրկ, թուրքաբարոյ այս տէրերի
Ոհմակներից ահաւոր,
Թէ արտաքին ու թէ ներքին թշնամու դէմ,
Նորից ելիր, տար մեզ մարտի վճռորոշ:

Աւերում են քո երկիրը սրբազան,
Այս տէրերը ազգադաւ
Աւերում են, թալանում են ու ծախսում ստորաբար,
Այն, ինչը որ մեր հայրերի, պապերի
Արդար արիւն եւ քրտինքով է ստեղծուած,
Ել կոչ արա դու նրանց դէմ,
Նոր Աւարայր բարոյական,
Եւ մի ուժգին ապտակ հասցրու նրանց դէմքին դու հայրաբար,
Որ ուչքի գան եւ ամաչեն իրենք իրենցից,
Ել, Անդրանիկ,
Ժողովուրդդ քո սուրը բազկի կարիքն ունի,
Հայրենաշունչ եւ իմաստուն քո խօսքերի կարիքն ունի,
Ել, որ գրեթէ ամայացած երկիրը քո,
Գոնէ իսպառ չամայանայ,
Ել, որ յոգնած, յուսալքուած ու մոլորուած ժողովուրդդ,
Իր արժանի ու սրտակից առաջնորդը ունենայ,
Ել, որ կրկին մեր սրտերում դառնացած,
Կրկին խինդի, երջանկութեան սերմեր ցանես,
Ել, որ կորսուած էն երգրի պէս, էս երկիրն էլ չկորցնենք,
Ել, որ քո մեծ, արդար ջանքով,
Այս աւերուած, այս բզկտուած երկիրը դու վերածնես,
Ել, որ զօրեղ ջոկատներդ կրկին տանես դու դէպի մարտ,
Դէպի Սասուն, դէպի Զէյթուն,
Դէպի Վան ու դէպ Արցախ,
Ել, որ ցրես մեր երկնքի մութ ամպերը բոլոր:

Արթնացիր մեծ զօրավար,
Փրկիր մեզ քաջ Անդրանիկ,
Հայրենիքը քո տառապեալ,
Նորից քեզ է սպասում:

**ՄԱՆՈՒԿ ՍՏԵՓԱՆԵԱՆ**

